# ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ —

## ԻՐ ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ

# ՔԱՆԻ ՄԸ ԽՕՍՔ

---

Այս աշխատութիւնը, որ այսօր կը ներկայացնեմ ընթերցող հասարակութեան, սկսած եմ շրջանի մը, երբ ամէն ժամանակէ աւելի անտրամադիր էի ատոր, բայց հզօրապէս ներթակայ ինձ համար շատ յարգելի ցանկութեան մը ազդեցութեան, երկար տատամսումներէ վերջ, սկսայ «Ապրումներ»ու յօդուածաշարքին, «Հայրենիք» ամսագրի մէջ: Եւ եթէ այսօր հնարաւորութիւն ունիմ այս հատորը լոյս ընծայելու, ատոր վարկը կ'երթայ նախ անոր, որ պատճառ դարձաւ իր ստիպումներով գրել սկսելուս, եւ երկրորդ «Հայրենիք»ի սիրելի խմբագրապետին, որ նախատակի մը համբերութեամբ տարաւ իմ բոլոր քմահաճոյքներս՝ անվերջ խըթանելով իմ անհոգութիւնն ու ծուլութիւնը: Ի հարկէ, պակաս դրդիչ ուժ մը չհանդիսացաւ ընթերցող հասարակութեան սիրալիր վերաբերմունքը, ներողամտաբար ընդունելով իմ «Ապրումներ»ս, որպէս հետաքրքրական եւ շահեկան գրուածք մը:

Ինձ համար եւս, քանի աշխատութիւնս կը յառաջանար, ճանճրալի պարտադրութեան զգացումը հետզհետէ տեղի կուտար հոգեկան գոհունակութեան, երբ երեւակայութեամբ վերստին կ'ապրէի հին ապրումները, կը վերյիշէի անցեալ դէպքերը եւ սիրելի դէմքերը, որոնցմէ շատեր ինկան հայկական Գողգոթայի ճամբուն եւ որոնց խոնարհ մէկ ընկերն էի եղած ես:

Ինչպէս ընթերցողը պիտի նկատէ՝ թերթելով այս աշխատութիւնը, բազմաթիւ նոր գլուխներ աւելցուցեր եմ նախօրոք «Հայրենիք» ամսագրի մէջ տպագրուածներուն վրայ: Այդ նոր գրուածներէն դուրս, արդէն հրատարակուածը ընդհանրապէս այնքան ընդլայներ եւ ամբողջացուցեր եմ, որ գրեթէ նոր աշխատութիւն մ'է, որ հրապարակ կուգայ: Սակայն, այս պարագան եւ պատկերներու անօրինակ նոխութիւնը անհնարին դարձուցին մէկ հատորի մէջ ամփոփելու այն ժամանակաշրջանը, որ անցեր էի «Հայրենիք» ամսագրի մէջ:

Յաջորդ հատորով, կը հաւատամ որ, պիտի յաջողիմ հասնիլ մինչեւ 1914 թուականը:

* * *

Չափազանց ներթակայական լինելով, այս աշխատութեամբ երբեք յաւակնութիւն չունեցայ պատմութիւն գրելու: Սահմանափակուելով անձնական ապրումներով՝ ես տուի հարազատօրէն այն՝ ինչ տեսեր, ապրեր եւ մտածեր էի: Անտեսելով ուրիշներու կարծիքը, ամէն բանէ առաջ աշխատեցայ անկեղծ լինիլ ինքս ինձ հետ, գրել այնպէս ինչպէս ես էի ապրեր ու մտածեր: Եւ գոհունակութեամբ կը նկատեմ որ, երբ այսօր տպագրութեան յանձնելէ առաջ վերստին աչքէ կ'անցընեմ գրածներս, ոչ մէկ տող ջնջելու հարկադրանքին տակ եմ:

Խանդակաթ զգացումով վերյիշեր եմ անցած գնացած այն դէմքերը, որոնց հետ անձնապէս շփման մէջ եմ գտնուեր: Աշխատեր եմ տալ անոնց դիմագծերը, անշուշտ իմ կարողութեան չափով, այնպէս ինչպէս ես եմ տեսեր ու հասկցեր, առանց սակայն ազդուելու արդէն կազմուած կարծիքներէն: Թերեւս քիչ մը երկարօրէն գրեր եմ ընդհանրապէս, ընդունուած մեծերու կարգին եւ կարգ մը շատ համեստ ուժերու մասին, որոնց հանդիպեր եմ գործունէութեանս ընթացքին: Ու այդ մասնաւոր խանդաղատանքով, որովհետեւ այդ համեստ ու անյայտ մնացած տիպերու հաւաքականութիւնն էր, որ հնարաւոր դարձուց գաղափարական յեղափոխութիւն մը գործնականացնել. անոնք էին որ համբաւներ կերտեցին, մեծերու աշխատանքը արժէքաւորեցին ու նոր պատմութիւն մը գրեցին իրենց արիւնով:

Եթէ յաջողեր եմ, թէկուզ մէկ երկուքը այդ համեստ կորածներէն վերապրեցնել գրքիս մէջ, այդ պիտի լինի իմ մեծ վարձատրութիւնը:

* * *

Նուիրելով այս աշխատութիւնս Հայ Յեղափոխական Դաշնակցութեան, իր քառասնամեակին առթիւ, բարոյական պարտք մը կատարած լինելու գոհունակութիւնը կը զգամ, որովհետեւ որքան ալ համեստ լինի իմ հասարակական արժէքս, այդ եղած քիչը ես ամբողջովին պարտական եմ այդ մեծ կուսակցութեան, որու աշխատաւորներէն մէկը եղայ 1896 թուականէն սկսեալ:

* * *

Այս քանի մը խօսքը վերջացնելէ առաջ, պարտք կը զգամ հրապարակով շնորհակալութիւն յայտնելու այն բոլոր ընկերներուս եւ բարեկամներուս, որոնք այնքա՛ն անձնուէր կերպով օժանդակեցին ինծի՝ այս դժուարին պայմաններու մէջ աշխատութիւնս հրատարակելու։ Մասնաւորաբար երախտապարտ կը զգամ Մկրտիչ Միքայէլեանին եւ Արամ Հայկազին, որոնց ընծեռած օժանդակութեան շնորհիւ, հնարաւորութիւն ունեցայ գիրքս զարդարել այսքան բազմաթիւ նկարներով։

ՄԱԼԽԱՍ

Փետրուար 1, 1931
Պոսթըն

# ԱՊՐՈՒՄՆԵՐ

---

## ԱՄԵՐԻԿԱ

1903 թուի Փետրուարի 4-ն էր, սովորականին պէս, կէս օրէ վերջ կ'երթայի բժիշկիս մօտ, որ տակէ քանի մը օր առաջ, կուրծքս քննելէ վերջ, շատ խորհրդաւոր կերպով մը գլուխը թափահարելով, յանձնարարած էր սրուակով մը խուխս տանիլ իրեն, քննութեան համար:

Ամբողջ ձմեռը, հիւանդկախ վիճակ մը ապրեր էի: Ցատկեկ մը կը հազայի, երբեմն ալ արեան բիծեր կ'երեւային թաշկինակիս վրայ, ողբերգական տրամադրութիւններ առաջացնելով մէջըս: Հինգ ոտք եօթ ինչես բարձրութեանս հակառակ, քաշս յամառօրէն 108 փաունտէն անդին չէր անցներ, որով արտաքին երեւոյթս կմախքէ մը շատ մեծ տարբերութիւն չունէր: Այդ ժամանակ, ես Ուաշինկթըն կը մնայի, միջնակ եղբօրս հետ միեւնոյն վաճառատան մէջ աշխատելով: Արմէնը գիշերները բժշկութիւն կ'ուսանէր, ես ալ երրորդ տարին ըլլալով, Քօրքրան Արթ Կէլըրիի նկարչութեան բաժանմունքը կը յաճախէի:

Այդ օր, ընկճուած տրամադրութեամբ կ'երթայի բժիշկիս մօտ, դատավճիռս լսելու համար: Ծերունի փրոֆէսորը, որ եղբօրս ուսուցիչներէն մէկն էր, ետ ու առաջ կուրծքս թխթխկացնելէ վերջ, անփութօրէն, կարծես որպիսութիւնս կը հարցնէր, յայտնեց, որ թոքախտի երկրորդ շրջանի մէջ կը գտնուիմ, ու հազիւ թէ վեց ամիս ապրիմ, եթէ չ'աճապարեմ Եգիպտոս երթալ, ուր հաւանականօրէն կեանքս մէկ երկու տարով կ'երկարի, եթէ մասնաւոր խնամք տարուի ինծի:

Դժուար չէ երեւակայել յուսահատութիւնս: Հազիւ քսանեւչորս տարեկան, եւ արդէն հաշտուիլ մահուան գաղափարի հետ: Այդ անսպասելի վճիռին դէմ ընդվզեցայ ամբողջ էութեամբս, ու բնականաբար մէջս առաջացաւ բուռն ցանկութիւն մը ապրելու, եթէ ատով իսկ դժբախտութիւն պիտի ունենայի շատ յարգելի փրոֆեսորը եւ բժշկական գիտութիւնը սուտ հանելու: Ի՜նչ ըրած, մարդ եսասէր կը ծնի:

Երկու օր վերջը մեկնեցայ Ուոշինկթընէն, քանի մը օր մնալու համար մօրս եւ փոքր եղբօրս հետ, որոնք Նիւ Եորք կ'ապրէին: Երկրորդ կարգի տոմսակ մը գնեցի Հոլանտ–Ամերիկէյն շոգենաւային ընկերութենէն, չեմ գիտեր ի՛նչ անուն շոգենաւին համար, որը 11 օրէն կը հասնէր Հավըր: Դժբախտաբար ատկէ աւելի կամաց գնացող շոգենաւ մը չգտայ: Կարծեմ Փետրուարի 8ին, սարսափելի ցուրտ օր մը, առաւօտեան ժամը 10–ին, շոգենաւը բացուեցաւ քարափէն, ու ես որպէս թէ վերջին մնաս բարով տուի Ամերիկային, եղբայրներուս եւ զիս ճամբու դնելու եկող ընկերներուս:

* * *

Հոս արժէ յետադարձ ակնարկ մը նետել Ամերիկա անցուցած եօթը տարիներուս վրայ: 1896 Թուականի Օգոստոսի սկիզբները փոքր եղբօրս՝ Յովսէփին հետ հասայ Նիւ Եոքր, Աւետեաց երկիրը, ուր եթէ կաթն ու մեղրը գետնէն չէին բխեր եւ ո՛չ ալ կանաչ տոլարները ճամբաներու երկայնքը ցանուած, գէթ այն մեծ առաւելութիւնը ունէր, որ հնարաւորութիւն կու տար ամէն գաղթականի՝ աշխատանքով իր հացը ճարելու, իր ճակատագրի տէրը լինելու: Միջնակ եղբայրս տարի մը առաջ եկած՝ կ'ուսանէր Էշպրնհամի Ակատէմիի մէջ, փոքր եղբայրս նոյնպէս ուսանելու կու գար, իսկ թէ ես ինչո՛ւ, չիտակը չէի գիտեր: Մինչ երկու եղբայրներս Էշպրնհամ գնացին, ես անցայ Ֆիլատելֆիա, Բիւզանդ եւ Հայկ Բագրատունիներու մօտ, որոնք մօտ ազգականներ էին ինձ: Հոն առաջին անգամ լինելով՝ հանդիպեցայ Յարութիւն Տէր Ստեփանեանին, որ Անգլիայէն կու գար ատամնաբուժութիւն ուսանելու:

Օգոստոսի վերջերուն էր, Ամերիկեան թերթերը զգայացունց վերնագիրներով Պանք Օթոմանի գրաւման լուրը հաղորդեցին: Այդ շշմեցնող լուրը, առաջին տպաւորութեամբ անհնարին ոգեւորութիւն պատճառեց հայ գաղութին: Վերջէն կուսակցական նրկատումներով ոմանք սկսան դատապարտել եղածը: Չեմ կրնար ըսել, թէ ի՞նչ էր պատճառը, որ պանքայի դէպքի լուրը, արճիճի ծանրութեամբ սրտիս բեռ եղաւ: Սաստիկ ամօթ կը զգայի որ Ամերիկա եմ եկեր, երբ անդին գործ կար կատարելու: Ի հարկէ, այս ինքնադատապարտումս հիմք չունէր, ես հազիւ պատանի մ'էի դեռ, տկարակազմ եւ անպէտք ծանր աշխատանքի: Բայց եւ այն–

պէս, այնքան այդ դէպքը ազդեր էր վրաս, որ օրին մէկը, Արաբկերցի երիտասարդի մը հետ միախորհուրդ՝ նամակ մը գրեցի Ժընէվ, Դաշնակցութեան Բիւրոյին, յայտնելով մեր պատրաստակամութիւնը, Երկիր անցնելու։ Բաւական ժամանակ անցնելէ վերջ, պատասխան ստացանք Ժընէվէն, որով կը յայտնէին Վահանեանի մօտալուտ գալուստը, որուն յանձնարարուած էր մեզ տեսնել։ Անցան ամիսներ, եւ Վահանեանէն լուր մը չստացանք։

Այդ ժամանակ Գուպայի ապստամբութիւնը եռման շրջանի մէջ էր։ Ամէն երեկոյ, երբ քանի մը ընկերներով կը հաւաքուէինք հայկական ճաշարանի կասկածելի մաքրութեամբ փայլող սեղանին չորս բոլորը, Յարութիւնը Ամերիկեան թերթերէն քաղելով կը տեղեկացնէր մեզ, այդ դժբախտ կղզիի մէջ, Սպանիական ուժերու կատարած վայրագութիւնները եւ այն սքանչելի պայքարը, որ սակաւաթիւ Գուպացի յեղափոխականներ կը մղէին Եւրոպայի ամենաբարբարոս, բռնակալ կառավարութեան լուծէն ազատագրուելու համար։ Գուպայի յեղափոխական շարժման պարագլուխներէն մէկն էր, Մաքսիմօ Քօմէզը, առասպելական հերոս մը, որու յանդգնութիւնը եւ կատարած քաջագործութիւնները աներեւակայելի ոգեւորութիւն մը առաջացուցած էին Ամերիկեան հասարակութեան մէջ։ Ապշեցուցիչ խիզախութեամբ եւ փոթորկային արագութեամբ այդ գուպացի ապստամբը կը հարուածէր Սպանիական ծանրաշարժ բանակը, օր մը հարաւէն միւս օրը հիւսիսէն, միշտ ալ յաջողելով ճողոպրիլ Սպանիական բանակի լարուած թակարդներէն։ Իմ յափշտակուող բնաւորութեամբս, ես ուղղակի սիրահարուած էի անոր։

Օր մ'ալ Յարութիւնը խանդավառութեամբ պատմեց ապստամբներու մեծ յաջողութեան մը մասին։ Յեղափոխականները շաքարեղէգի անծայր արտերու մէջ ծածկուած, աննկատելի կերպով մօտեցեր եւ յանկարծակի յարձակեր էին Սպանիական գունդի մը վրայ, ահագին վնաս հասցնելով անոնց։ Գնացի՛նք ֆօրնըրի սըլունը, տօնելու համար այդ մեծ յաղթութիւնը։ Այն երջանիկ օրերուն, երբ արգելականութիւնը գոյութիւն չունէր, եւ «ազնիւ փորձարկութիւն» մը խնդուք միայն կրնար յառաջացնել, սովորական մահկանացուներն ալ ի վիճակի էին հինգ սէնթի մը փոխարէն փրփրադէզ բաժակ մը լակր պիր խմել, ձրիաբար օգտըւելով բազմապիսի աղանդերներէն, որոնցմով կարելի էր կար-

գին կշտանալ։ Այս բոլորը այն ժամանակ տեղի կ'ունենար առանց Թունաւորուելու վախի սակայն, ո՛չ ալ հիմակուան պէս տասնապատիկ գին կը վճարէինք խմիչքի մը համար, որու կասկածելի խառնուրդը, մասնագէտ քիմիաբաններ իսկ կը դժուարանան տարրալուծել։ Այդ սըլունի մէջ, մէկ երկու բաժակ դատարկելով, Յարութիւնը, որ մեր ղեկավարը կը համարուէր, միտք յայտնեց կամաւոր գրուելու Գուպական յեղափոխութեան, որը անմիջապէս միաձայնութեամբ ընդունուեցաւ։

Քանի մը օր վերջը Յարութիւնը դիմեց Ամերիկօ-Գուպական կոմիտէին, որ մեզ ընդունին որպէս կամաւորներ, Գուպա երթալու, կռուելու ապստամբներու շարքերուն մէջ, յանուն այդ ճնշուած ժողովուրդի ազատութեան, որ աւելի քան հարիւր տարիներ կը կռուէր իր անկախութիւնը ձեռք բերելու համար։ Մեր խանդավառ պատրաստակամութիւնը, բանաստեղծական բացատրութեամբ, մեր կարմիր արիւնն ալ միախառնելու Գուպացի հայրենասէրներու արեան, դիմաւորուեցաւ շատ պրօզայիկ պատասխանով մը սակայն։ Կոմիտէն յայտնեց, որ կռուողներ շատ ունին իրենք, պէտք եղածը նիւթական օժանդակութիւն է, որուն խիստ մեծ կարիք ունին աղքատ Գուպացիները։ Մենք ալ թէեւ խանդավառութեամբ եւ զոհուելու ցանկութեամբ շատ հարուստ էինք, բայց գրպանով «աղքատ Ղազարոսներ», անմաս մնացինք Գուպայի համար նահատակուելու լուսաշող փառքէն։

* * *

Դեռ Նիւ Եորք եղած ժամանակ, հանդիպեր էի Հ. Յ. Դ. ներկայացուցիչ Սուրէնին (Սիմէօն Ճխեան), որը իմանալով իմ Դաշնակցական լինելս, օր մը հրաւիրեց ժողովի։ Այդ ժողովը տեղի ունեցաւ 27-րդ փողոցը, ներկայի «Վան» ճաշարանի երկրորդ յարկը, Սուրէնի սենեակի մէջ։ Դժբախտաբար ներկաներէն միայն Զախսուրը կը յիշեմ։

Այդ գեղեցիկ օրերուն, Ամերիկայի մէջ Դաշնակցական լինելը կապուած էր կարգ մը փորձանքներու հետ, որոնց գլխաւորը, ձրիաբար ծեծ ուտելն էր, եթէ նոյնիսկ պատճառ տուած չլինէիր։ Զարմանալի կերպով Հնչակեանները իրենց մտացածին կայսրութեան անբաժանելի մասը կը համարէին Ամերիկան, եւ ոեւէ ոտնձգութիւն այդ սրբազան հողամասի մէջ ուրիշներու կողմէ, անհանդուրժելի էր անոնց համար։ Հակառակ որ Հնչակ-

եաններու ներքին ճակատը խոշոր ճեղքուածք մը ունեցեր էր, եւ երկու մասի բաժնուած, կատաղօրէն զիրար կը բզքտէին, բայց ամէն անգամ որ հարցը գար Դաշնակցութեան գործունէութիւնը խանգարելու, նոր կը յիշէին բանաստեղծի խօսքերը՝ «Եղբայր ենք մենք, որ մրրկաւ էինք զատուած», ու սրտաշարժ համերաշխութեամբ իրար ձեռք կուտային:

Այս պայմաններու մէջ, զարմանալի չպիտի լինի, եթէ ըսենք որ հատ ու կտոր Դաշնակցականներ թէեւ կային զանազան քաղաքներու մէջ, բայց Դաշնակցութիւնը, որպէս կենդանի եւ գործօն կուսակցութիւն մը դեռ գոյութիւն չունէր Ամերիկայի մէջ: Այս կացութեան պատճառը եթէ մէկ կողմէ Հնչակեան երկու հատուածներու անհամբերողութիւնն էր, միւս կողմէ Դաշնակցութեան ներկայացուցիչի անկարողութիւնը: Սուրէնը որպէս գործիչ գալը պարզ թիւրիմացութիւն մ'էր: Բնաւորութեամբ խոհեմ եւ շատ զգուշաւոր, վախկոտ ու պայքարի անընդունակ, ան թէեւ պատրաստուած մէկը, բայց օգտակար չկրցաւ եւ չէր կարող լինել: Միակ խելօք քայլը որ առաւ, շոգենաւի տոմսակ մը գնելն էր, մեկնելու համար: Այդ օրերուն, անոր տեղը, թէկուզ քիչ պատրաստութեամբ, կինտօվարի մէկը աւելի օգտակար կրնար լինել:

1897-ի սկիզբներուն էր որ Ամերիկա եկաւ Վահանեանը (Յովհաննէս Եուսուֆեան): Ու անոր գալովն է որ կը սկսի Դաշնակցութեան գործունէութեան ընդլայնումը եւ աստիճանական զարգացումը:

Ֆիլատելֆիայէն մեկներ էի Ֆիչպուրկ քանի մը օրով եղբայրներս տեսնելու: Անկէ երեքով միասին գնացինք Վուստր, որ այդ ժամանակ (ըսենք որոշ չափով մ'ալ մինչեւ օրս) Հայոց մայրաքաղաքը կը համարուէր, եւ իսկական Ամերիկան: Այս «իսկական» բառը կրնայ թիւրիմացութիւններու պատճառ լինել, արժէ երկու խօսքով բացատրել: Կը պատմեն թէ, նոր Ամերիկա հասնող Խարբերդցիի մը, երբ Էլիզ Այլընտի մէջ կը հարցնեն, թէ ո՞ր քաղաքը պիտի երթայ, մեր բարեկամը անխռով կը պատասխանէ՝ Ամերիկա երթալ կ'ուզէ: Այս պատմութիւնը կրնայ շիտակ չլինիլ, բայց շատ հարազատ հոգեբանական պատկերացումն է այն ժամանակ Ամերիկա եկողներուն:

Անշուշտ իմ նպատակս չէ հոս Ամերիկահայ գաղութի ծագ-

ման ու զարգացման պատմութիւնը գրել, միայն կ՚ուզեմ քանի մը լայն գծերով ներկայացնել Վուստըրի հայ գաղութը, որ ճշմարիտ ներկայացուցիչը կը համարուէր Ամերիկահայութեան: Սըխալ չպիտի լինի ըսել, թէ հայերը այդ քաղաքին մէջ բնադրուած էին որոշ շրջան մը, ուրտեղէն բնիկ ամերիկացիները կ՚աճապարէին հեռանալ, գտնելով հայերու դրացութիւնը անցանկալի: Այս անախորժ դրութեան գլխաւոր պատճառը տեղացիներու ունեցած շատ աննպաստ կարծիքն էր, Թըրքերու (հայեր) մասին, որոնց կենցաղական ու կուլտուրական մակարդակը շատ հեռու էր Ամերիկեան ստանտարտէն: Արդար լինելու համար պէտք է խոստովանինք, որ հայերն ալ իրենց կողմէն գործնականօրէն ոչինչ կ՚ընէին այդ աննպաստ կարծիքը ցրելու:

Համեմատաբար, գտնուելով կուլտուրական եւ կենցաղական ցածր մակարդակի մը վրայ, մասնաւորապէս մինչեւ 96 թուականը, երբ Ամերիկահայութեան 90%-ը գիւղացիներէ կը բաղկանար, անոնք բերեր էին իրենց հետ, երկրի բոլոր սովորութիւնները եւ բացասական եւ դրական:

Աշխատունակ, չարքաշ եւ սակաւապէտ, միաժամանակ կոպիտ, տգէտ ու աղմկարար, հայկական շրջանէն անցնող մը անմիջապէս կը զգար, որ այդ փողոցը թէեւ Վուստրի մէջ, բայց Ամերիկայէն դուրս կը գտնուէր: Հայ անհատներու կատարած քանի մը վարկաբեկիչ դէպքերն ալ, Ամերիկեան մամուլի կողմէ զգայացունց վերնագիրներով կը հրամցուէին Ամերիկեան հասարակութեան, աւելի եւս խորացնելով անոնց անբարեացակամութիւնը:

Եթէ հայերու յարաբերութիւնը, տեղացիներու հետ այս ցաւագին վիճակին մէջ կը գտնուէր, անոնց ներքին կեանքն ալ խաղաղ ու համերաշխ լինելէ շատ էր հեռու: Կային տեղացիական անհամաձայնութիւններ եւ կուսակցական թունդ պայքարներ, որոնք նման հասարակութեան մը մէջ, անկասկած որ շատ տգեղ կերպով պիտի արտայայտուէին:

Անշո՛ւշտ հայ գաղութի այս պատկերը յատուկ չէր միայն Վուստրի; ամէն տեղ ալ հայ հասարակութեան ճնշող մեծամասնութիւնը նոյն պատկերը կը ներկայացնէր, այն տարբերութեամբ սակայն որ, մեծ քաղաքներու մէջ փոքրաթիւ եւ ցրուած գաղութ մը, շրջապատուած զանազան ազգութիւններով, աչքի չէր զարներ այնպէս, ինչպէս Վուստր, որ փոքր քաղաք մը լինելուն եւ

համեմատաբար հայկական մեծ գաղութ մը ունենալուն, անտարբեր չէր կրնար մնալ, հայերու մասին ըսուած եւ գրուած աննպաստ կարծիքներու հանդէպ:

Ինչպէս ամէն տեղ Ամերիկայի մէջ, Վուստրն ալ, Հնչակեան տիրապետութեան տակ կը գտնուէր ամբողջովին: Հազիւ վեց հոգինոց Դաշնակցական կոմիտէ մը գոյութիւն ունէր, որ Վուստըրի նման Հնչակեան միջնաբերդի մը մէջ, ստորերկրեայ գոյութիւն մը ունենալու դատապարտուած էր: Այդ կոմիտէին երկու ամիս անդամակցեցայ ես. ընկերներէն միայն Պոլսեցի Ալաճաճեանը կը յիշեմ:

Իմ եւ փոքր եղբօրս Ամերիկա գալէն վերջ, երբ մենք երեքով Վուստր կը գտնուէինք, Թուրքիայէն մայրս ալ եկաւ մեզ միանալու: Ստիպուած տուն մը վարձեցինք, թէեւ երկու ամիսէն մեկնեցանք Նիւ Եորք:

Այդ ժամանակ, թէեւ Վահանեանը Ամերիկա կը գտնուէր արդէն, բայց դեռ պատեհութիւն չէի ունեցեր անոր հանդիպելու: Մենք դեռ Վուստր էինք, կիրակի օր մը, մէկ ալ մեր դրան զանգը զարնուեցաւ: Հազիւ դուռը բացած, Եուսուֆեանը, Տրապիզոնի մեր սիրելի ուսուցիչը ժպտելով ներս մտաւ: Նոր միայն պարզուեցաւ մեզ համար, որ Վահանեան անուան տակ ծածկուած էր Յովհաննէս Եուսուֆեանը, Դաշնակցութեան սկզբնական շրջանի ամենատաղանդաւոր գործիչը: Ատկէ վերջը, Եուսուֆեանը շատ յաճախ մեզ կը հանդիպէր:

Դժուար պիտի լինի պատկերացնել անոր կենդանի նահատակութեան շրջանը Ամերիկայի մէջ: Շատ շատեր գրած են այդ մասին: Ծանօթ է բոլորին անոր առասպելական ապրելակերպը ու խնայողութիւնը, անոր քաղաքէ քաղաք ոտքով երթալը, ծայրայեղ չքաւորութիւնը, ու գրեթէ պըմի մը թափթփած զգեստները: Բայց այդ բոլորը ճշմարտութիւն լինելով հանդերձ, պէտք է ըսել, թէ Եուսուֆի նման ֆանաթիք մարդու մը համար, այդ արտաքին պատճառները չէին կրնար յուսալքիչ հանգամանք մը ստանալ, եթէ չլինէր ներքին, հոգեկան բեկումը:

Տրապիզոնի ու Պոլսոյ կենդանի յեղափոխական գործունէութենէն վերջ, ուր շրջապատուած էր մտաւորական անձնուէր աշակերտներով, Ամերիկայի անգոյն ու տափակ միջավայրը, չէր կրնար լիովին ապրեցնել անոր եռանդուն հոգին: Ժընեվի եւ հիմնադիր ընկերներու հետ իր ունեցած անհամաձայնութիւնն ալ հե–

տըգհետէ խորանալով ժամանակի ընթացքին, հասցուց զինք կատարեալ մեկուսացման:

Այդ հոգեբանական աւերը առաջ բերելու մէջ, պակաս դեր չկատարեցին եւ Ամերիկայի ընկերները: Մարդ կը սահմռկի որոշ պատմութիւններ վերյիշելով: Դաշնակցական ընկերներն ալ բնականաբար, հարազատ պատկերը կը կրէին Ամերիկահայ գաղութի: Եթէ այդ ընկերներու համար Ամերիկեան կեանքը իր բոլոր կողմերով մատչելի էր եւ այդ շատ բնական կը թուէր անոնց, գործիչի մը համար սակայն անոնք ունէին սեղմ սահմանափակումներ, ու ամէն ընկեր, ըստ իր հայեցողութեան կը պահանջէր որ գործիչը իր ըմբռնած ձեւով ապրէր: Մինչդեռ Եուսուֆեանը, երբեմն օրերով սոված, լռելեայն կը տանէր այդ տաժանելի կեանքը, «ընկերներ»ը կասկածելով, որ ոչ մէկ հիմք ունէր՝ ներս կը խուժէին իր սենեակը բռնութեամբ, ստուգելու թէ արդեօք իրենք չէի՞ն սխալուեր:

Եւ այս կը համարուէր կուսակցական պարտականութիւն:

Արդար լինելու համար պէտք է ըսենք, որ միայն Եուսուֆեանը չապրեցաւ այդ րէժիմը: Բոլոր եկող գացող գործիչներն ալ ենթակայ էին ատոր: Նոյնիսկ անմեղ հաճոյքներէ իսկ, ինչպիսին է թատրոն երթալը, զրկուած պէտք է մնար գործիչը: Ան պէտք էր իսկական ճգնաւոր մը լինէր: Իսկ թէ ան կրնար իր անձնական կեանքն ունենալ, իր անձնական ապրումները, այդ ըմբոստացուցիչ գաղափարը անընդունելի էր բացարձակապէս...

Ահա՛ այդպիսի ըմբռնողութեան տէր ընկերներով շրջապատուած, ենթակայ անհնարին զրկանքներու, Եուսուֆեանը* Ամերիկայէն մեկնելուն, ֆիզիքապէս ու հոգեպէս քայքայուած մարդ մ՚էր: Թերեւս աւելորդ չլինի ըսել, թէ, հակառակ Եուսուֆեանի ստացած շատ չնչին շաբաթականին, որմէ դեռ բաժին ալ կը հանէր ընտանիքաւոր ընկերոջ մը, մեկնելու ժամանակ, Ամերիկայի Կ. Կոմիտէն 100 տոլար ալ պարտական կը մնար անոր: Այսպէս, հակառակ որ 34 տարիներ անցեր են, դեռ Ամերիկայի Դաշնակցութիւնը բարոյական պարտքի մը տակ կը մնայ հանդէպ այդ յեղափոխական անձնազոհ գործիչին:

Ամերիկայի Դաշնակցութեան հիմնաւորման ամենածանր աշխատանքը բաժին ինկաւ Եուսուֆեանին: Իրականապէս, սխ-

---

*) Հակառակ իմ բոլոր ջանքերուս, դժբախտաբար անկարող եղայ այդ մեծ յեղափոխական գործիչի լուսանկարը ձեռք բերել:

Թեմաթիք կազմակերպութիւնը, կոմիտէներու ցանցը, Վռամեանի օրով է որ զարգացաւ, բայց իրաւ է եւ այն որ այդ յաջողութեան նախնական աշխատանքները Եուսուֆեանը կատարեց, իր աստանդական թափառումներով, քարոզչութեամբ, նոր կոմիտէներ ստեղծելով։ Եթէ անոր օրով Դաշնակցական կազմակերպութիւնը դեռ տկար էր, այդ գլխաւորաբար հետեւանք էր այն բանի որ Ամերիկայի մէջ, Դաշնակցութիւնը իր հիմնադրութենէն 5–6 տարի վերջ գործի կը սկսէր։

Օր մը, մեր տունը եկաւ Եուսուֆեանը։ Չեմ գիտեր՝ ուրտեղէ՞ն քալելով Վուստր եկած էր, սաստիկ յոգնած ու անօթի... Կ'ուզէր, որ Վուստրի մէջ հրապարակային ժողով մը ունենայինք։ Իսկապէս որ յանդուգն գաղափար մ'էր այդ՝ այն օրերուն, երբ շատ յաճախ Հնչակեաններու կուսակցական ժողովները կը վերջանային շատկեկ մը կոտրուած գլուխներով։ Ի՛նչ խօսք որ մեզ կրնար վիճակուիլ աւելի անփառունակ վախճան մը։

Շիտակը Վուստրի կոմիտէն շատ մեծ խանդավառութեամբ չէ որ համաձայնեցաւ այդ առաջարկին։ Ինչ որ ալ լինին մարդու մը ներքին համոզումները եւ որքան ալ բուռն յեղափոխական տրամադրութիւնը, սակայն չկոտրուած գլուխ մը ուսերու վրայ ունենալը հաճելի զգացում մ'է։ Եուսուֆը այնքան խօսեցաւ, որ վերջապէս յաջողեցաւ համոզել մայրս ալ, որ բեմ ելնէ խօսելու։ Այս անօրինակ նորութիւն մ'էր. ո՛չ մէկ կին ցարդ բարձրացած էր Դաշնակցութեան բեմին վրայ, հրապարակային ժողովի մը մէջ։

Մէյն Սթրիթի վրայ, երրորդ յարկը Հոլ մը վարձեր էինք։ Ժողովի չգացած, Եուսուֆեանը կ'ուզէ թելադրել մօրս իր խօսելիքը։ Մայրս նեղացած՝ կ'ըսէ, որ ինքը գիտէ խօսելիքը։ Այդ այնպիսի պատասխան մ'էր որ այլեւս առարկութիւն չէր վերցներ։

Կ'երթանք հրապարակային ժողովին։ Ըսեմ որ, բոլորս ալ շատ անհանգիստ տրամադրութեան մէջ ենք։ Արդեօ՞ք ժողովը առանց պատահարի պիտի անցնի՞։ Ես անձնապէս ուրիշ մտահոգութիւն մ'ալ ունիմ, որ գիս աւելի կը մտահոգէ քան որեւէ կռիւ. մայրս արդեօք ի՞նչ եւ ինչպէ՞ս պիտի խօսէր։

Ամբողջ սրահը լեցուեցաւ բազմութեամբ։ Շատեր ոտքի վրայ մնացին։ Եւ որքան որ արտաքին երեւոյթներէ կարելի էր դատել, բազմութեան տրամադրութիւնը բարեկամական էր։

«Մեր Հայրենիք»ով կը բացուի ժողովը, ու բեմ կը հրաւիրուի մայրս: Ես դուռը մօտեցեր եմ: Մէկ ալ մայրս կը խօսի հետեւեալ բնաբանով՝ «Տիկնայք փափկասունք հայոց աշխարհի»... Ես յանկարծակիի եկած դէպի փողոց կը կծկեմ...

Տասը վայրկեան վերջ, մտածելով որ մայրս անշուշտ ճառը վերջացուցած կը լլնի, ներս կը մտնեմ սրահէն: Թանկագին մայրս, դեռ բեմին վրայ, շատ հանդարտ, խելօք խօսքեր կ'ըսէր հանդիսականներուն, ու կը վերջացնէր իր առենախօսութիւնը հետեւեալ խօսքերով. «Ես երեք զաւակներ ունիմ, եւ երեքն ալ կը նուիրեմ իմ ազգիս»:

Խանդավառ ծափերով, մայրս կ'իջնէ բեմէն: Թէկուզ ճառով, երեք զաւակները ազգին նուիրելու առատաձեռնութիւնը աքանչելի տպաւորութիւն կ'առաջացնէ: Կը համոզուիմ որ, մեր ժողովը խանդարելու փորձ տեղի չպիտի ունենայ:



ՏԻԿԻՆ ԱՐՄԱՒԵՆԻ ՅՈՎՍԷՓԵԱՆ
(Մայրս)

«Դրօշակ»ի 97 թուականի կարծեմ Փետր. համարին մէջ, Եուսուֆեանը մօրս բեմ ելնելու առթիւ քանի մը տող բան գրեց՝ շնորհաւորելով հայ կինը, որ յեղափոխական գործին մէջ իր աշխատութեան բաժինըստանձնելու կուգար: Մայրս շատ հայրենասէր եւ ազգասէր կին մ'էր: Դեռ Տաճկաստանի մէջ եղած ժամանակ, երբ Եօզղատէն, Մարզուանէն, Սամսոնէն Հնչակեան բանտարկեալները բերուեցան Տրապիզոնի բանտը, թըշուառ վիճակի մը մէջ, Հնչակեաններու թելադրանքով մայրս եւ ուրիշ տիկին մը, տնէ տուն պտտելով, 15 ոսկիի գումար մը հաւաքեցին բանտարկեալներուն համար: Առանց

հօր մը խնամքին մեծցած, ես ու եղբայրներս շատ բան ենք պարտական մեր մօրը:

Անշուշտ վերջի բանախօսը Եուսուֆեանը եղաւ, իր երկարաշունչ ճառովը: Զարմանալի նմանութիւն մը կար Եուսուֆեանի եւ Վռամեանի խօսելակերպին մէջ: Երկուքն ալ սահուն խօսողներ էին, երկուքն ալ շատ կ՚ոգեւորուէին բեմի վրայ: Բայց մինչ Վռամեանը ոգեւորութեան նոյն չափով կ՚ընթանար, Եուսուֆեանը հետզհետէ տաքանալով, կը հասնէր դերվիշներու ինքնամոռաց էքստազի, փրփրոտ բերնով, աչքերը արիւնով լեցուած:

Այդպէս, անսպասելի յաջողութիւն մ՚ունեցաւ մեր առաջին հրապարակային ժողովը Վուստրի մէջ: Քիչ վերջը մենք ընտանիքով մեկնեցանք Նիւ Եորք, անկէ ալ Ուոշինկթըն, ու այդպիսով կտրուեցանք հայկական կեանքէ:

Եուսուֆեանը, որուն ես այլեւս չհանդիպեցայ Ամերիկայի մէջ, քանի մը ամիս վերջը կ՚անցնի Եւրոպա ու անոր տեղը կուտայ Վռամեանը:

* * *

Մօտ հինգ տարիներ մնալով 1902 Օգոստոսի 15ին, քիչ մը ձանձրացած Ուոշինկթըն քաղաքի միօրինակ կեանքէն, ուր այն ժամանակ միայն երեք հայեր կային, որոշեցի անցնիլ Պոստոնի շրջանը, որ ամերիկահայ գաղութի մտաւորական կեդրոնը կը համարուէր: Պոստոն կը հրատարակուէր ոչ միայն «Հայրենիք»ը, որ այն ատեն շաբաթաթերթ էր, այլ եւ «Կոչնակ»ը ու «Ձայն Հայրենեաց»ը:

Պոստոնը սակայն ուրիշ գրաւչութիւն մըն ալ ունէր ինծ համար. հոն էր Վռամեանը, Դաշնակցութեան ամենակարկառուն դէմքերէն մէկը, որու կեանքն ու գործունէութիւնը, փոթորկային թափով նոր սկսեր էր Ամերիկայի մէջ:

Այսպէս, ուրեմն, Օգոստոսի կէսերուն գացի Պոստոն: Կայարանէն ուղիղ ափ առի Էսէքս փողոցի վրայ գտնուող «Հայրենիք»ի խմբագրատունը, եթէ ճիշդ է գործածել այս բառը այն փոքր ծակի մասին, ուր միայն մէկ գրասեղան տրամադրուած էր «Հայրենիք»ին, եւ ուր պիտի կատարուէին բոլոր աշխատանքները:

Երբեմն, Ուոշինկթընէն Նիւ Եորք գալուս, արդէն հանդիպեր էի Վռամեանին: Դժուար թէ կարողանամ Վռամեանի մասին

այն ժամանակի տպաւորութիւններս հարազատօրէն արտայայտել, տարիներ վերջը։ Մենք վերջէն այնքան մօտիկ ընկերներ եղանք, որ գրեթէ անկարելի է այժմ առաջին տպաւորութեանս մասին խօսիլ՝ առանց հետագայ տարիներու կազմած կարծիքէն վճռապէս ազդուելու։

Հասուն երիտասարդ մ՚էր Վռամեանը Ամերիկա գալուն, արդէն կազմուած նկարագիր մը։ Կորուկ, քիչ մը չոր, վերին աստիճանի եռանդուն, զարմանալի կերպով աշխատունակ, սիսթեմաթիք, բարեկիրթ իր անձնական–ընկերական յարաբերութիւններուն մէջ եւ հեգնող ու անխնայ իր լրագրական բանավէճերուն մէջ, Վռամեանը կենդանի մարմնացումն էր պայքարի, որ իր էութենէն կը բխէր։ Դաշնակցական ոչ մէկ գործիչի շուրջը այն աստիճան խելագար պայքար մղուած է, ինչպէս անոր։ Ու ըսենք անմիջապէս, որ այդ պայքարը հրահրողը գլխաւորապէս ինքն էր, իր մտրակող բանախօսութիւններով, իր կրքոտ յօդուածներով։

Նիւ Եորքի առաջին հրապարակային ժողովէն վերջ, երբ քանի մը օրով եկեր էի մայրս տեսնելու, հարցուցի ընկերներուն իրենց տպաւորութիւնը նոր գործիչի (Վռամեանի) մասին։ Մէկը ընկերներէս, շատ սրամիտ կերպով, անոր ճառը նմանցուց թիթեղէ տանիքի մը վրայ փոթորկային կարկուտի մը հանած ձայնին։ Կարճ ու լեցուն նախադասութիւններ, անզսպելի արագութիւն, քիչ մը սուր ձայն, եւ տրամաբանօրէն զարգացող թէզ մը, որ նախօրօք ամբողջութեամբ գրի կ՚առնէր։

Ամբողջ օրը, մնացի «Հայրենիք»ի խմբագրատունը։ Գրաշարը Խորէն Գալուստեանն էր։ Գրաշար բնորոշումը անոր մասին շատ ալ ճիշդ չէ սակայն, որովհետեւ ան ե՛ւ գրաշար էր, ե՛ւ սրբագրիչ, ե՛ւ խմբագրի օգնական, ե՛ւ գրասենեակի վարիչ (թէեւ գրասենեակ մը գոյութիւն չունէր) ե՛ւ գործաւոր, թերթերը ծալելու հասցէագրելու համար, ե՛ւ փոխադրութեան միջոց, ըսել կ՚ուզեմ, թերթերու տոպրակները շալկած փոստը տանողբան մը, որ հիմա օթոմոպիլով տեղի կ՚ունենայ։ Այն երանելի օրերուն Դաշնակցական մը ամէն ինչ պատրաստ էր ընել, ինչ որ առնչութիւն ունէր կուսակցութեան հետ։ Շատ շատեր կուգային թերթը լոյս տեսած օրը եւ սիրայօժար կերպով կը մասնակցէին ընդհանուր աշխատանքին։ Խորէնը, հին օրերու Էմէքթար մ՚է ու «Հայրենիք»ի պատմութեան մէջ իր պատուաւոր տեղն ունի։

Երեկոյեան, Վռամեանը, Խորէնը եւ ես գնացինք Գօգոյի ճա–

ճարանը, որովհետեւ այն օրերուն ալ մեր հին ընկեր Գօգօն, ինչպէս եւ հիմա, կը հաւատար թէ, «ոչ միայն բանիւ, այլ հացիւն Գօգոյի, կեցցէ մարդ» եւ այս համոզումը գործնականացնելով, ճաշարան մը բացեր էր Նիլէնտ փողոցի անկիւնը, երկրորդ յարկի վրայ:

Գօգոյի ճաշացուցակը Վռամեանի համար երկու մասի կը բաժնուէր՝ կասկածելի ու անկասկածելի կերակուրներ: Լէմ չափս, մածուն, սալորի քոմբոտ, պլղուր փիլաւ, թարմ պամիա, կանաչ ֆասուլեա,— ասոնք ընդունելի ճաշացուցակ մը կը կազմէին: Ատոնցմէ դուրս բոլոր քիւֆթէները եւ տոլմաները, թիւրլի պաստիներով միասին, շատ կասկածելի հանգամանքով կը ներկայանային Վռամեանին, որ անոնց ձեռք չէր դպցներ, հակառակ Գօգոյի բոլոր հաւաստումներուն:

Ճաշարանի դէմն ու դէմն էր Խորէնի սենեակը, որ կը գործածուէր միեւնոյն ժամանակ որպէս ննջասենեակ, ընդունարան, պահեստ, առաքման գրասենեակ, ուր եւ կ'իջեւանէին մէկ երկու օրով Պոստոն եկած ընկերները, եթէ ուրիշ տեղ մը չունէին գիշերելու:

Ես ալ քանի մը օր Խորէնի հիւրասիրութիւնը վայելեցի, անոր հետ մնալով, մինչեւ որ դրութիւնս պարզուէր:

Այդ ժամանակ Դաշնակցութիւնը մեծ հանդէս մը պիտի ունենար Պոստոնի մէջ, զաւեշտի մասով: Վերջին իրիկունն էր: Խորէնի սենեակն էինք: Ազարիկն ալ հոն էր, որ Պոստոնի ծանօթ կատակաբանը կը համարուէր:

Չեմ գիտեր ինչպէս խօսք բացուեցաւ քուբլէթներու մասին. բոլորս ալ կ'ուզէինք որ Ամերիկահայ կեանքը ներկայացնող եւ օրուան հարցերու համապատասխան բան մը ունենանք: Ես ալ Վռամեանի թելադրանքէն ոգեւորուած՝ նստայ գրելու: Մինչեւ ժամը 1-ը արդէն քառասուն քուբլէթներ գրեցի: Յաջորդ օրը այդ երգը մեծ խանդավառութեամբ ընդունուեցաւ հասարակութեան կողմէ: Վերջէն ալ, մէկ մասը հրատարակուեցաւ ուրիշ մէկ քանի երգերուս հետ, Վազգէն Երգարանին ու անոր յաջորդող բոլոր երգարաններու մէջ: Այս երգը շատ ժողովրդական դարձաւ ատեն մը, գրեթէ ամէնքը գիտէին, «Ես հակոտնեայ աշխարհումը», որու վերնագիրն էր «Հայը Ամերիկայում»:

Բայց պատմեմ, թէ ես ինչպէ՞ս դարձայ «Հայրենիք»ի թերթօն գրողը:

Քանի մը օր վերջը, Վռամեանի հետ, խմբագրատունէն ելնելով, չիտակ իր սենեակը գացինք: Փոքր սենեակ մը ունէր Վռամեանը, որուն մէկ տոլար միայն կը վճարէր: Մահճակալ մը, սեղան մը, ու երկու աթոռ, վանականի մը սենեակի չափ պարզ:

Արդէն բաւական մը մտերմացեր էինք: Խօսք եղաւ անգլերէն սորվելու մասին: Ըսի որ լաւագոյն կերպը ամերիկեան ընտանիքի մը քով սենեակ վարձելն է, ուր հնարաւորութիւն կ'ունենար խօսիլ փորձելու, եւ ականջը վարժեցնելու: Եւ որոշեցինք, քանի որ ես ատեն մը Պոստոն պիտի մնայի, երկուքս միասին սենեակ մը վարձել:

Սենեակ վարձելու հոգը վրաս վերցուցի, քանի որ Վռամեանը իրապէս ազատ վայրկեան չունէր: Խօսքը դարձաւ «Հայրենիք»ի վրայ, Վռամեանը կը գանգատէր, որ պէտք եղածին չափ ուժեր չունի թերթը ընդարձակելու, երբեմն ինքն ալ ստիպուած՝ օրերով հեռու կը մնայ Պոստոնէն: Բայց մանաւանդ կը չեշտէր, որ անհրաժեշտ է թերթօնի բաժին մը հաստատել, ազգային, յեղափոխական բնոյթ կրող: Չեմ գիտեր՝ ինչպէ՞ս եղաւ, ըսի, թէ այդ շատ լաւ կը լինի, ես ալ մտածեր եմ այդ մասին, ու մէկ երկու պատկեր ալ ունիմ մտքիս մէջ:

Այդքան ըսելս պէտք էր արդէն, Վռամեանը օձիքս բաց չձգեց, ստիպեց որ անմիջապէս նստիմ ու սկսիմ: Ձեռքէն ազատուիլ անկարելի էր: Ու ակամայ, նստայ ու սկսայ գրել: Ինքն ալ անկողնոյն վրայ թերթ մը թուղթ դրած՝ որպէս թէ նամակ կը գրէր, աչքի պոչովը ինձ հետեւելով: Իմ կարճ խելքովս՝ թակարդը ինկած էի, սաստիկ կը սրտնեղէի, կը բարկանայի ինքս իմ վրաս, որ շատախօսութեամբ փորձանք բերեր էի գլխուս:

Կարծեմ երկու ժամ քրտնեցայ քանի մը էջ մրոտելով: Վերջէն նորէն խօսակցութեան բռնուեցանք: Ես ալ ուրախացած, որ անիծուած թերթօնի խնդիրը մոռահան է ըրեր Վռամեանը, ուշ ատեն գացի Խորէնի մօտ:

«Հայրենիք»ի Օգոստոս 23-ի թիւին մէջ, զարմանքով կարդացի իմ գրած պատմուածքի սկզբնաւորութիւնը, որը շարունակելի մնացեր էր: Ալ ատկէ վերջը հասկնալի է որ չէի կրնար օձիքս ազատել ու ստիպուած նստայ շարունակութիւնը գրելու: Այդ առաջի պատմուածքով սակայն կծիկի թելը քանդուած էր, անկէ վերջ, այլեւս ստիպուած պիտի գրէի:

Երկրորդ թերթօնը գրելուս, Վռամեանը գիս վերամկրտեր

էր Միր–Հազօր անունով։ Երբ զարմացած կը հարցնէի թէ այս Միր–Հազօր անունը ո՞րտեղէն բուսաւ, մեր Վռամեանը խորհրդաւոր շեշտով մը կը բացատրէր, թէ Միր կը նշանակէ իշխան, Հազօրն ալ Սասունցու անուն է. հետեւաբար, ես պէտք է որ Սասունցի իշխան մը լինիմ գէթ գրական կեղծանունով։

Սասնոյ իշխաններէն լինելու գաղափարը այնքան գրաւիչ էր, որ ատկէ վերջ սկսայ այդ անունը ստորագրել գրածներուս տակ։ Վերջէն այդ պատմուածքներէն 4 հատով առանձին գրքոյկ մը լոյս ընծայեց «Հայրենիք»ը «Յեղափոխական վէպիկներ» անունով, որ այժմ սպառած է։

* * *

Բայց դառնանք մեր միասին սենեակ վարձելու խնդրին, որ այնքա՛ն ձախաւեր վերջ մը ունեցաւ, եւ այնքա՛ն հոգեկան տառապանք պատճառեց Վռամեանին։

Ինչպէս ըսի, ես նոր եկած էի Պոստոն, հետեւաբար քաղաքին բոլորովին անծանօթ էի։ Ելայ իմ խելքովս լաւ սենեակ մը վարձելու։ Չեմ գիտեր ի՞նչ փողոցներ գացի եւ քանիերորդ տունը մտայ։ Վերջապէս, կոկիկ տան մը զանգը քաշեցի։ Սիրուն կին մը, շատ ալ լեզուանի, դուռը բացաւ։ Երկրորդ յարկը բարձրացանք սենեակը տեսնելու։ Սանդուխներու վրայ հանդիպեցայ աւելի սիրուն օրիորդի մը, որ սիրալիր բարեւեց։ Սենեակը այնքան ալ նշանաւոր բան մը չէր, մեծ անկողին մ'ունէր որու մէջ ապահովաբար ամբողջ ընտանիք մը կրնար «հանգստօրէն» քնանալ։

Բայց այդ սիրալիր տիկիններու ներկայութիւնը բաւական էր, որ ես սենեակը վարձէի, հակառակ որ երկու եւ կէս տոլար էր շաբաթականը, մեր որոշումէն 50 սէնթ աւելի, որու կէսը Վռամեանը պիտի վճարէր...

Թէեւ ան քանի մը անգամ կրկներ էր ինձ, որ մէկ տոլարէն ոչ մէկ սէնթ աւելի կրնար տալ սենեակի, բայց կը մտածէի, որ մեծ սենեակ, հաճելի տանտիրուհի եւ անգլիերէն խօսելու պատեհութիւն ունենալը, այնքան մեծ առաւելութիւններ էին, որ 25 սէնթի չնչին տարբերութիւնը շատ չպիտի տեսնէր մեր Վռամեանը, որ սովորութիւն ունէր սէնթը սէնթին հաշուել, իր ստացածով եօլա երթալու համար։

Առջի իրիկուն ուշ ատեն գնացինք սենեակ։ Առտու կանուխ, անտէր մնալիք զարթեցնող ժամացոյցը (այս ժամացոյցը անբաժան մասն էր Վռամեանին) այնպիսի ժխոր մը հանեց, որ ակա–

մայ արթնցայ: Վռամեանը անմիջապէս ցատկեր էր անկողնէն եւ կ'ուզէր որ ես ալ ելլեմ: Իսկապէս, ես անգործ լինելով ընելիք բան մը չունէի դուրսը, հետեւաբար նորէն փորձեցի պառկիլ, բայց Վռամեանը առանց այլեւայլի բռնութեամբ հանեց զիս անկողնէն... ու ստիպեց որ իրեն հետ մարմնամարզի փորձեր ընեմ՝ մէկ, երկու, մէկ, երկու, մէկ երկու: Եթէ այսքանը լինէր միայն ամբողջ փորձանքը, նորէն ոչինչ: Մարմնամարզէն վերջն ալ պէտք էր սառը տուշի տակ կանգնիլ: Ինչ ըրի՝ չկրցայ համոզել սիրելի Վռամեանը— զոր եթէ կարենայի ուրախութեամբ պատուհանէն վար կը նետէի այդ պահուն — որ վազ անցնի իմ մարմինս պողպատէ մկաններով օժտելու ազգասիրական գաղափարէն:

Այսպէս ուղիղ երկու շաբաթ, իմ արեւը խաւարեցաւ: Հազար անգամ փոշմանեցի հետը սենեակակից լինելուս, որը այնքան ուրախութեամբ ընդուներ էի:

Միայն այս մարմնամարզն ու պաղ ջուրի լոգանքը չէին սակայն իմ բարկութեանս պատճառները: Սալտաթի պէս որոշ ժամին պէտք էր անկողին մտնել, որոշ ժամին դիւահարի նման ցատկել անկողնէն, երբ այդ չարաշուք ժամացոյցը կը սկսէր իր միւզիքը: Եւ այն օրերը երբ չուտ կուգայինք սենեակ, փոխանակ ձըգելու զիս, որ անկողնին վրայ երկննամ, թուղթն ու գրիչը առջեւս կը քշէր, որ գրեմ:

Բարեբախտաբար, այս զինուորական ռեժիմը երկար չտեւեց: Ստիպուած դուրս ելանք, կամ աւելի ճիշդը փախանք այդ սենեակէն երկու շաբաթ վերջ, երբ մեր ժամանակը լրացաւ: Պատմեմ թէ ինչպէս:

Երկրորդ գիշերը, մենք քնած էինք, երբ տան մէջ սարսափելի աղմուկ ու կռիւ փրթաւ: Գիշերանոցով դուրս վազեցի հօլը: Խեղճ Վռամեանը դրան ճեղքէն նայելով բաւականացաւ, բայց անկէ ալ տեսածը բաւական էր հասկնալու համար, թէ ի՞նչ տեսակ կասկածելի համբաւով տուն մը ինկած էինք: Սուս փուս սենեակնիս քաշուեցանք: Խեղճ Վռամեանին քունը փախաւ: Հապա եթէ հասարակութիւնը լսէր, թէ ո՞ւր սենեակ վարձեր էինք: Դեռ հասարակութիւնը մէկդի, եթէ միայն ընկերները լսէին, անկասկած որ երկրորդ օրը Վռամեանի անցագիրը ձեռքը կուտային: Ի՞նչ, գործիչը, թէկուզ անգիտակցօրէն, իմ անգիտութեանս պատճառով, այդպիսի տեղ բնակի՞... Սուրբ Ստեփանոս Նախա-

վկայի քարկոծումը,— Աստուած հոգին լուսաւորէ,— թեթեւ պատիժ մը պիտի ըլլար Վռամեանի քաշելիքին համեմատած:

Ամբողջ այդ երկու շաբաթը, մենք ոչ ոքի ըսինք, թէ ուրտեղ կ'ապրինք, չէինք ալ կրնար դուրս գալ. վարձքը կորսնցնելու գաղափարը անտանելի էր Վռամին: Գողի պէս կը մտնէինք այդ տունը, վախնալով որ մէկը յանկարծ կը տեսնէ մեզ: Միայն Խորէնն էր, որ կասկածեր էր, որ մենք չէնք ուզեր տան հասցէն տալ, բայց առանց պատճառը գիտնալու:

Երկու շաբաթ վերջը, մեր յուզիչ ընկերակցութիւնը վերջ գտաւ: Ես շատ ալ դժգոհ չէի այդ բանէն, եթէ անոր հետ շարունակէի մնալ, Վռամը գիս անկասկած կամ գրող մը կը դարձնէր կամ ըմբիշ մը:

* * *

Սեպտեմբերի վերջերն էր: Լին մեծ հանդէս մը ունէր: Վռամեանի թելադրանքով քանի մը օր գնացի հոն, որպէս թէ երգչախումբ մը պատրաստելու, բայց թէ ես ինչ հանգամանքով երգչախումբ պիտի պատրաստէի, չիտակը չեմ գիտեր, ու դեռ որպէս թէ երկձայն ալ պիտի ըլլար: Երգչախումբի անունն ալ, եթէ չեմ սխալիր, «Արծիւ Երգչախումբ» էր, բարձրէն թռչելու համար:

Կիրակի օր, Վռամեանի հետ թեթեւ նախաճաշ մը ըրինք ու գնացինք Լին, ուր այդ ժամանակ զօրաւոր Դաշնակցական կոմիտէ մը կար, եւ շատ համակրելի ընկերներու խումբ մը: Ժամը 1-ին ատեններ հասանք հոն: Ի հարկէ, դեռ ժամանակ ունէինք դուրսը բան մը ուտելու: Բայց Վռամեանը, որ կարծես հարսնիքի կը վազէր, ըսաւ. «մէկ երթանք հոլը, տղաքը տեսնենք, յետոյ»: Գնացինք, ու մինչեւ գիշերուան ժամը 11-ը հոն մնացինք անօթի փորով:

Ժամը երկուք ու կէսին բազմութիւնը սկսաւ գալ՝ տղամարդ, կին, երեխայ, ծծկեր, մէկ խօսքով իսկական հայ քրիստոնեայ ժողովուրդը: Ի հարկէ երգչախումբը պէտք էր բանար հանդէսը: Յոտնկայս, «Մեր Հայրենիք»ը սկսանք (միաձայն), ժողովուրդն ալ մեզ հետեւեցաւ: Այնպէս որ այս առաջին երգով մեր հիւնարը այնքան ալ աչքի չզարկաւ: Արտասանութիւն մը եւ բանախօսութիւն մը մեզ հասցուցին երկրորդ մասին, որ սկսաւ մեր երկձայն երգով:

Երանի այն հանդիսականներուն, որոնք ականջի խլութիւն ունէին:

Այդ անտէր եղանակը, հետս միասին բերեր էի Սանասարեան վարժարանէն. հոն չէնքով շնորհքով կ'երգէինք ամբողջ դասարանով, եւ բաւական ներդաշնակ բան մը դուրս կուգար մեր երգէն կամ այնպէս կը թուէր մեզ:

Ութը երգիչներս ոտքի կ'ելնենք եւ կը սկսինք երգել: Երգի սկզբնաւորութիւնը միաձայն էր. առաջին քառեակի երրորդ տողէն պէտք էր երկձայն երգել: Առաջին մասը լաւ կ'երգենք: Կը հասնինք չարաբաստիկ երրորդ տողին: Տղաքը ձայնը չեն գտնար, ամէն մէկը ձայն մը կը վերցնէ, առաջին ձայնն ալ իր կարգին կը չուարի, ես ալ հետները ու մեր երկձայն երգը կը դառնայ ութաձայն երգ մը:

Երգը չլրացած՝ կամացուկ մը տեղս կը նստիմ: Մինչ երգիչները յամառ վճռականութեամբ կը վերջացնեն երգը: Ժողովուրդը ... խանդավառ ընդունելութիւն մը կ'ընէ մեր երգին... Կ'ուզեն որ կրկնենք: Կամացուկ մը տղոց փէշէն կը քաշեմ վար... «Չէ, պէտք չէ այնքան ալ աժան ծախել մեր երգը, թող համը ժողովուրդի բերանը մնայ, որ ուրիշ անգամ ալ գայ լսելու»...

Այսպէս, ուրեմն, թէեւ համեստութեան դէմ է, բայց պիտի ըսեմ, որ ես առաջին խմբավարը եղեր եմ Ամերիկայի մէջ, որ ութձայն երգչախումբով հրապարակ եկայ:

Ասկէ վերջը Վռամեանը բացաւ իր օրհնեալ բերանը եւ գընդացիրային ճառ մը խօսեցաւ, որ տեւեց մօտ երկու ժամ:

Ժամը 6-ին մօտ մեր հանդէսը վերջացաւ, բայց մեր տառապանքը՝ ոչ:

Հանդէսին յաջորդեց համակիրներու ժողով մը: Այս համակիրներու ժողով ըսուածը կաթոլիկներու քաւարանի նման բան մ'է, ուր մեղքերէ սրբուելէ վերջ, ընտրեալները կօշիկնին հանած, հողաթափերով արքայութիւն կը մտնեն: Չեմ գիտեր, թէ որքա՞ն նոր ընկեր ունեցանք այդ օրը, բայց գիտեմ որ պրտնեղութենէ եւ անօթութենէ կը մարէի ես: Հազիւ ժամը 11-ին դուրս եկանք այդ հօլէն, եւ հետեւեցանք ընկերոջ մը, որուն հիւր պիտի լինէինք այդ գիշեր:

Կօշիկի գործաւոր մ'էր ընկերը, բարի մարդ մը: Թէեւ ես ճամբան կ'ուզէի ճաշարան մը մտնել, բայց մեր թանկագին Վը–

ամէնը, աչքով ունքով կը հասկցնէր, թէ անյարմար բան է, պէտք է ճակատագրին հպատակիլ:

Վերջապէս, կ'երթանք ընկերոջ մօտ: Խեղճ տանտիկինը ժամերով սպասեր էր մեզ, կարծելով թէ ժամը 7-ին ընթրիքի պիտի գանք:

Ինչ որ է, կը նստինք սեղան, եւ մէջտեղ կուգայ Խարբերդի հռչակաւոր քիւֆթէն: Այստեղ թող պատմութիւնը լռէ: Շատ փափուկ կացութեան մէջ եմ. այնքան մօտիկ Խարբերդցի ընկերներ ունիմ, որ վախնամ ելնեն ու իրենց ազգային կերակուրի մասին յայտնած աննպաստ կարծիքս սրտերնուն առնելով ուրուին հետս: Ահա այսպիսի պարագաներու մասին է, որ ըսուած է թէ, «լռելը ոսկի է»: Այսքանը ըսեմ, որ փառք տուի Աստծու, որ մեր յարգելի տանտիկինը ղըյմա պատրաստելը մոռահան էր ըրած այդ օրը:

Ընթրիքէն վերջ պատրաստուեցանք քնելու: Ես դրեթէ հանուած էի: Մէկ ալ մեր պատուական տանտէրը ներս մտաւ ձեռքը հաստափոր տետրակ մը բռնած ու համեստօրէն չիկնելով՝ մօտեցաւ Վռամեանին, ու խնդրեց, որ բարի լինի իր գրած ոտանաւորները աչքէ անցնելու, որոնք պարապոյ ժամերուն գրած է եղեր...

Չեմ գիտեր թէ ինչպէս կրցայ պահել փռթկոցս, երբ Վռամեան նահատակի մը համբերութեամբ, աչքերը դէպի առաստաղը վերցուց: «Տէր անցո՛ յինէ բաժակս այս»: Շատ չար տղայ մ'էի, լեզու հանեցի Վռամեանին ու աճապարեցի անկողին մտնել ծիծաղս վերմակի տակ խեղդելու:

Ու ի՞նչ ըսէ Վռամեանը որ հաւնիք:

Տետրակը քիչ թղթատելէ վերջ, յայտնեց մեր բարեկամին, թէ Վազգէն Երգարանին մէջ ոտանաւորներ գրողը ես եմ, որ շատ լաւ կը հասկնամ բանաստեղծութենէ ու կրնամ իրեն օգտակար լինել: Մարդը եկաւ քովս, խնդուքը փորս մնաց: Ճար չկար, ելայ չոկուեցայ անկողնին մէջ, մինչ մեր աչքբաց Վռամեանը տաքատը հանեց ու քթիս խնդալով աճապարեց անկողին մտնալ եւ աչքերը գոցած՝ սուտ քուն եղաւ:

Կեանքիս մէջ շատ բաներու հանդիպեր էի, բայց նման բանաստեղծութիւններու երբեք: Այդ խեղճ մարդը նախ որ դպրոց չէր տեսած, հայերէն չէր գիտեր, իսկ տաղաչափութեան մասին հեռաւոր գաղափար իսկ չունէր: Հետաքրքրական էր, թէ ի՞նչ բաւականութիւն կը զգար ոտանաւոր գրելով, կամ ինչո՞ւ ան-

պատճառ կ՚ուզէր գրել: Ես միակ բացատրութիւն մը ունիմ. ինծի կը թուի թէ ամէն հայ նախ՝ տիրացու կը ծնի, ու եթէ այբ բեն մը սորվի, անպատճառ բանաստեղծ կը դառնայ:

Բայց Վռամեանի վարպետութիւնը ինձ չատ բարկացուց: Մտածեցի՝ «կեցիր քեզի խաղ մը խաղամ որ դուն ալ հասնիս»:

Մեր ընկերոջ ըսի, բաւական չոր կերպով, որ գրածները չատ անարժէք բաներ են, նախ որ բանաստեղծութիւն չէ, երկրորդ որ հայերէն գրել չի գիտեր, երրորդ որ...

Բայց նախադասութիւնս չկրցայ վերջացնել: Մեր որպէս թէ քնացող Վռամեանը աչքերը լայն բացաւ, նախ՝ զարմանքով, յետոյ՝ բարկութեամբ ինծի նայեցաւ եւ զգալով որ ես Դաշնակցական բանաստեղծ ընկերը վերէն վար պիտի լուամ, աճապարեց ընդմիջել զիս՝

— Տուր այդ տետրակը ինծի, դուն արդէն բանաստեղծութենէ բան չես հասկնար...

Աւելորդ է ըսել, թէ այդ թանկագին գլուխ գործոցը անոր տուի ուրախութեամբ ու վերմակը գլուխս քաշեցի ծիծաղէս արտասուելով: Բաւական ժամանակ լսեցի, թէ ինչպէս խեղճ Վռամեանը մեր յուսաբեկ ընկերոջ կը մխիթարէր՝ գտնելով ինչ որ իսկական բանաստեղծական տողեր այդ տետրակին մէջ, որոնք իմ բթամտութեամբ չէի կրցեր ըմբռնել...

Վերջէն, սահմանի վրայ թէ Երկիր, չատերու կենդանի նահատակութիւնը տեսեր եմ, բայց չեմ կարծեր թէ Վռամեանի այդ գիշերուան նահատակութիւնը ոեւէ բանով պակաս լինէր անոնցմէ:

Մինչ ես, որոտընդոստ կը խռմբացնէի, ան դեռ այդ թանկագին տետրակը կը պրպտէր, ի խնդիր բանաստեղծական նոր գոհարներու:

Երկու չաբաթ վերջը մեկնեցայ Պոստոնէն: Ամերիկայի մէջ, Վռամեանի հանդիպումս, այսպէս, չատ կարճ եղաւ:

* * *

Նախօրօք ըսեր եմ արդէն, որ Վռամեանի օրով եւ անոր արտակարգ աշխատունակութեան չնորհիւ Դաշնակցութիւնը դարձաւ Ամերիկայի ամենամեծ յեղափոխական կազմակերպութիւնը: Անչուչտ կարգ մը կարող տեղացի ընկերներ մեծապէս օժանդակեցին անոր, բայց գործի չարժիչ ուժը, ղեկավարող միտքը Վր-

ռամեանն էր։ Դաշնակցութեան մէջ, անոր ամբողջ պատմութեան ընթացքին, մենք չենք հանդիպիր եզակի դէմքի մը, որ ունենար Վռամեանի բազմակողմանի ընդունակութիւնները եւ արտակարգ աշխատունակութիւնը։ Ան տեսակ մը պահեստ էր զանազան յատկութիւններու, ու ատոնց ամէն մէկուն մէջ, աչքի զարնող մեծութիւն մը։ Բացի խօսելու յատկութենէն, որ իր գլխաւոր զէնքն էր, ան տարիներու ընթացքին «Հայրենիք»ի էջերու մէջ, հրապարակ եկեր էր որպէս տաղանդաւոր հրապարակագիր մը։ Պէտք է կարդալ «Հայրենիք»ի հին թուերը համոզուելու համար, թէ ան այնքան լաւ գրող էր, որքան խօսող։ Բայց ատոնցմէ դուրս այն եւ սքանչելի կազմակերպող էր։ Քաղաքէ քաղաք իր թափառումներու ժամանակ, ան րոպէ մը չունէր իրեն վերապահած։ Հրապարակային ժողով, համակիրներու ժողով, ընկերական ժողով, վիճաբանական ժողով, կոմիտէական ժողով այս բոլորին ալ կը հասնէր, միշտ կեդրոնական դեր մը խաղալով, այնպիսի անսպառ եռանդով մը, որ կարծես յաւիտենական կրակով վառուած լինէր։ Այս բոլորին հետ, մանաւանդ սկզբնական տարիներուն, միս մինակ կը տանէր շաբաթաթերթ «Հայրենիք»ը, ու արտասահմանի մարմիններու հետ, ընդարձակ թղթակցութիւն կը պահէր։

Այս պատասխանատու աշխատանքները կը տանէր զարմանալի կանոնաւորութեամբ ու սիսթեմով։ Ան իր գործելակերպով խական Ամերիկացի մէնէճըր մ՚էր. սիսթեմաթիք, եռանդուն, աշխատունակ։ Անշուշտ Դաշնակցութիւնը ունեցեր է աւելի տաղանդաւոր խօսողներ կամ գրողներ, թերեւս աւելի լաւ կազմակերպողներ եւ տոկուն աշխատանքի վարժ ընկերներ, բայց ոչ ոք չէ ունեցեր այդ բոլորը մէկանց, ինչպէս Վռամեանը։ Ան զարմանալի բացառութիւն մ՚էր։ Արժէ այդ բացառիկ տիպը յատուկ ուսումնասիրութեամբ մը ներկայացնել մեր նոր սերունդին։

Նախ քան իմ ճամբորդութեան անցնիլս, երկու խօսք ալ Արմէն Գարոյի մասին, որ եթէ չեմ սխալիր 1900ին եկաւ Նիւ Եորք։

Գարօն եւ ես Կարնոյ Սանասարեանի աշակերտներ էինք եղած միեւնոյն ժամանակ։ Ան աւարտական դասարանը իսկ ես նոր սկսնակ մը, բայց մեր յարաբերութիւնները շատ մտերմիկ էին։ Փոքր բանջարանոցի ածուի մը հողը անոր յանձնուած էր, ես ալ թէեւ թիզ մը բարձրութեամբ, անոր օգնականն էի։ Մեր յարաբերութիւնները, ինչպէս ըսի, թէեւ բարեկամական էին,

բայց երբեմն, երբ երկու աչադին ցնցումները տանելէ յոգնած կը նստէր հանգստանալու, կամ մոռնալով որ Գարօն ածուն ջրելու համար ինծի կը սպասէր, խելքս խաղի կուտայի, մէկ ալ ան հոգեւոր հրեշտակի նման վրայ կը հասնէր անսպասելի կերպով, եւ փափուկ տեղերուս կ'իջեցնէր իր ծանր ձեռքը, իրաւունքի սահմանէն դուրս գալով:



ԱՐՄԷՆ—ԳԱՐՕ (ԳԱՐԵԳԻՆ ՓԱՍՏՐՄԱՃԵԱՆ) — ՎԱՀԱՊ Ա. ՎՌԱՄԵԱՆ (ՕՆՆԻԿ ԴԵՐՁԱԿԵԱՆ)

Գարօն Ամերիկա եկաւ, գլխաւորաբար Ամերիկեան քաղաքացի լինելու համար, որ այդ ժամանակ շատ հեշտ էր: Ըսենք երբեմն գալու պէտք ալ չկար՝ այդ բանը յաջողցնելու համար:

Ծըրգի, պիւսքիւտի գործարանի մը մէջ, քիմիկոսի պաշտօն գտաւ անմիջապէս, բաւարար չաբաթականով: Եթէ մնար, անկասկած որ մեծ յաջողութիւն կրնար ունենալ Գարօն, բայց ան որոշած էր անցնիլ Կովկաս, հայ ժողովուրդին ծառայելու համար:

Շաբաթ իրիկունները կուգար Նիւ Եորք, կիրակին մեր մօտ անցնելու համար: Այդ օրերուն մեր տունը հաւաքատեղին կը համարուէր, Նիւ Եորքի աչքի զարնող երիտասարդութեան: Կային Հնչակեաններ, Վերակազմեալներ (միջնակ եղբայրս Արմէնը

եւ Յ. Սարգսեանը) եւ ոչ կուսակցականներ: Տեսակ մը քլըպ, ուր կուսակցական հարցերու մասին կը խօսէինք՝ առանց իրար գլուխ պատռելու սակայն:

Գարօն հազիւ տարի մը մնաց ու մեկնեցաւ Ժընէվ, ուրկէ անցեր էր Կովկաս, հաստատուելով Թիֆլիսի մէջ:

Այս յետադարձ ակնարկը, որ քիչ մը շատ երկար եղաւ, հոս կը փակենք, եւ կ'անցնինք մեր պատմութեան շարունակութեանը:

---

## ԺԸՆԵՎ

Ճամբորդութեան երկրորդ օրն իսկ, ծովային մաքուր օդի բարերար ազդեցութիւնը կը զգայի: Ախորժակս բացուեցաւ, տրամադրութիւնս շատ բարձր, ճաշասեղանը մաքուր եւ սննդարար կերակուրներով ծանրաբեռնուած, հաճելի ընկերակցութիւն,— ասոնք բոլորը մէկտեղ բաւական զօրաւոր պատճառներ էին, որ ես դեռ Հաւրը չհասած, ինքզինքս կատարելապէս առողջ զգայի նորէն:



ՄԱԼԽԱՍ—(Արտաշէս Կ. Յովսէփեան)
(Ամերիկայէն մեկնելու ատեն)

Փարիզի կայարանին մէջ, դիմաւորելու եկեր էին հօրեղբայրս եւ իր կինը, որոնց երբեք չէի հանդիպած: Ի հարկէ, ուղիղ անոնց տունը գնացինք, ուր եւ մնացի մօտ մէկ ամիս: Եթէ ըսեմ թէ Փարիզը տեսայ, սխալ պիտի ըլլի· ես քաղաքավարի բանտարկեալ մ'էի մերոնց տունը, որոնք Արմէնի նամակէն իմանալով հիւանդութեանս մասին, սանաթորիումի ռէժիմ մը հաստատած էին ինծի համար: Թէնքսկիվինկի համար պահուած հնդկահաւի մը նման, զիս պարարտացնելու ետեւէ էին ամբողջ տնեցիք, ու չեմ կրնար ըսել, թէ չյաջողեցան:

Երկու շաբաթ վերջը, հօրեղբայրս զիս յայտնի փրոֆեսորի մը տարաւ, ծերուկը զիս երկար բարակ անտղելէն վերջ յայտնեց, թէ աջ թոքիս վերի մասը քիչ մը տկար է միայն, եւ թէ քանի մը ամսուան վագանձով մը, կրնամ բոլորովին ապաքինիլ:

Փարիզ հասնելէս քանի մը օր վերջը, Ժընէվ, Սիմոնին (Զաւարեան) նամակ մը գրած էի, յայտնելով անոր հիւանդութիւնս եւ Եգիպտոս երթալու մասին: Պատասխան նամակին մէջ, Սիմոնը կը թելադրէր ինձ, Ժընէվ երթալ, ուր կային շատ լաւ բժիշկներ եւ սանաթօրիումներ:

Սիմոնի այդ նամակ-հրաւէրը եղաւ բախտորոշ անկիւնաքարը իմ կեանքիս: Քսանեւութը երկար տարիներ անցած են այդ թուականէն, լաւ ու վատ օրեր տեսայ, կեանքի ամէն տեսակ դառնութիւններ ու տառապանքներ ապրեցայ հայ ժողովուրդին հետ, եւ սակայն օր մը չեղաւ, որ ես ափսոսայի Սիմոնի հրաւէրը ընդունած ըլլալուս համար: Ամէն անգամ, որ կ'անդրադառնամ այդ դէպքին, հոգիս կը լեցուի անսահման երախտագիտութեան զգացումով դէպի Սիմոնը, որ հոգեւոր հայր մը եղաւ ինծի համար, եւ ամբողջովին անոր եմ պարտական այն ուղիի ընտրութիւնը, որով քալեցի, ծառայելու համար հայ ժողովուրդին, իմ թոյլ ուժերու ներած չափով:

Ամիս մը մնալով Փարիզ, բաւական կազդուրուած, Մարտի վերջերը մեկնեցայ: Ժընէվ երթալը այդ ժամանակ, հաւատացեալներու Մեքքէ երթալու նման բան մ'էր· իսկ ինձ համար եւս առաւել, քանի որ հոն պիտի հանդիպէի Սիմոնին, իմ թանկագին ուսուցչիս, որ հակառակ իր կարճատեւ պաշտօնավարութեան, խոր եւ անջնջելի տպաւորութիւն թողուցեր էր աշակերտութեան վրայ:

* * *

Վերջապէս շոգեկառքը կանգ կ'առնէ Ժընէվի սիրուն կայարանին առջեւ: Պայուսակս վերցուցած կ'աճապարեմ դէպի «Դրօշակ»ի խմբագրատունը, որ կը գտնուէր 69 Chemin de Roseraie:

Աւելի քան համեստ տան մը երկրորդ յարկը կը բարձրանամ ու դուռը կը զարնեմ: Դուռը բացողը սուր, մկնային դէմքով գրաշարն է, որ կարծես նոր քնէն արթնցած ըլլի: Զաւարեանը կը հարցնեմ: Չէ՛, ներսը չէ՛, բայց շուտով կուգայ, կրնամ հիւրասենեակը սպասել: Այդպէս ալ կ'ընեմ:

Կէս օրուայ ժամանակ էր, եւ ընկերներէն ոչ ոք կար խմբագրատանը: Քիչ մը յուզուած, եւ սաստիկ անհամբեր անպաճոյճ հիւրասենեակի թիկնաթոռին նստած, Սիմոնի գալուն կը սպասեմ, երբ բարձրահասակ, գունաթափ դէմքով, նիհար երիտասարդ մը, յոգնած արտայայտութեամբ ընդունարանը մտնելով, գլխու թեթեւ բարեւով մը, անցաւ քովի սենեակը, որ յատկացուած էր Պիւրոյի եւ խմբագրութեան անդամներուն: Այդ երիտասարդը Միքայէլ Վարանդեանն էր, մէկը խմբագրութեան անդամներէն որու մասին յետոյ պիտի խօսիմ:

Քիչ անցած երբ ես խորասուզուած գիրք մը կը թղթատէի, ներս մտաւ միջահասակ, նիհար կազմով, միջին տարիքի մէկը, որ գլխ հոն նստած տեսնելով, Ամերիկեան պայուսակն ալ քովս, ժպտուն, ձեռքը երկարած մօտեցաւ ինծ՝ ըսելով.

— Արտաշէ՛ս:

Ոտքի կը ցատկեմ եւ կը նետուիմ առաջ: Զաւարեանն է: Որքա՜ն փոխուած կը գտնեմ զինքը սակայն: Ո՛ւր այն նուրբ դիմագծով, անկնճիռ տպաւորիչ դէմքը, առատ մազերով եզերուած, եւ ո՛ւր այս գունաթափ, արդէն կնճռոտած դէմքը, խոր թախիծ մը աչքերուն խորը:

Կ'ողջագուրուինք: Ու Զաւարեանը առանց այլեւայլի թեւէս բռնած կը տանի գլխ փանսիոնը, ուր իր սենեակի կողքին սենեակ մը կը վարձէ ինծ համար: Խմբագրատուն վերադառնալնուս՝ կը ծանօթանամ Ակնունիի (Խ. Մալումեան) եւ Յ. Գալֆայեանի հետ, որոնց մասին իր կարգին պիտի խօսիմ:

Այդ ժամանակ եւ հետագային, Զաւարեանը իր բարոյական մեծութեամբ խոր եւ անջնջելի տպաւորութիւն մը ձգեց իմ վրայ: Հակառակ իմ անզուսպ ու քմահաճ բնաւորութեան եւ հակառակ, որ ան աւելի քան պարզ ու ընկերական բնաւորութիւն մ'ունէր, միակ մարդը եղաւ, որու հանդէպ պատկառանք կը զգայի եւ անվերապահ ջերմ զգացում, ինչ որ մարդ կ'ունենայ իր հարազատ հօրը հանդէպ:

Երբեմն Սարաճեան անուն պատանի մը ու ես Սիմոնի հետ կը բարձրանայինք Առուա գետով: Այդ պտոյտները սքանչելի դասախօսութիւններ էին մեզ համար: Ծաղիկ մը, ճիւղի մը նոր բացուած բողբոջը, կամ գետի ափին ինկած քարի կտոր մը անըսպառ նիւթ կը մատակարարէին Սիմոնին՝ պարզ խօսակցութեան ձեւով այնքան տեղեկութիւններ տալու բնագիտութեան մասին,

ինչ որ ես չէի սովրած տարիներու ընթացքին վարժարանի մէջ: Այս պտոյտներէն զատ հաճելի ժամանց մ'էր քրօքէթ խաղալը մեր փանսիոնի պարտէզին մէջ, որուն կը մասնակցէր եւ Սիմոնը պատանեկական ոգեւորութեամբ:

Ժընէվ հասնելէս շաբաթ մը վերջ, Սիմոնը զիս տարաւ հռչակաւոր փրոֆեսոր Ցանի մօտ: Այդ ծերունի բժիշկը, ինքն ալ թոքախտաւոր մը երիտասարդութեանը, երկար բարակ զիս քննելէ վերջ՝ գտաւ որ, պարզապէս թեթեւ տկարութիւն մ'ունի աջ թոքս, մէկ երկու ամիս Ժիւռայի բարձունքներուն, գիւղի մը մէջ հանգըստանալով, բոլորովին կը կազդուրուիմ: Միաժամանակ յանձնարարեց զօրացուցիչ դեղ մը եւ օտը քօլօնով մարձում, կրծքիս համար: Անժամանակ էր գիւղ երթալը, բայց դեղը Սիմոնի աչալուրջ հսկողութեան տակ, ակամայ առնելու ստիպուած էի:



ՍԻՄԷՈՆ ԶԱՒԱՐԵԱՆ

Այդ հըլլալիք օտը քօլօնի մարձումը պատճառ եղաւ, որ Սիմոնը օր մը զիս յանդիմանէ: Փանսիոնի սենեակը ցուրտ, շատ անգամ կը ծուլանայի անկողին մտնելէ առաջ կուրծքս շփել: Սիմոնը ուշ կուգար, բայց ամէն գալուն մէկ սենեակս կը հանդիպէր, եւ զիս ընդհանրապէս քնած կամ անկողին մտած գտնելով, վրաս կը ծածկէր, պատուհանս լայն մը կը բանար ու կ'անցնէր իր սենեակը:

Օր մը չեմ գիտեր, ո՞ր չար սատանան մէջը մտաւ, կ'երեւի, օտը քօլօնի հոտը չառնելով (եւ իրօք այդ իրիկուն աճապարեր էի անկողին մտնել), հարցուց թէ մարձում կատարա՞ծ էի: Դժբախտաբար, չկրցայ սուտ խօսիլ: Այդ եղաւ պատճառ, որ Սիմոնը այլեւս չհաւատայ ինձ, եւ ամէն իրիկուն անողորմաբար

ւնքը կատարէ անտէր մնալիք մարձումը, պաղ սենեակին մէջ սառեցնելով գլխ... Ու դեռ մարդիկ կան որ կ՚ըսեն թէ սուտ խօսիլը մեղք է:

Սիմոնի մասին հետագայ էջերու մէջ, երկարօրէն պիտի խօսիմ արդէն, կ՚ուզեմ փոքրիկ միջադէպ մը պատմել, ցոյց տալու անոր միամտութիւնը եւ չարունակել պատմութիւնս:

Գիշեր մը, ուշ առեն, Սիմոնը գլխ արթնցուց՝ հարցնելով թէ դրպանս փող կա՞յ:

— Կէս ֆրանսական ոսկի մը կայ տաբատիս գրպանը, — ըսի:

Սիմոնը այդ դրամը վերցուց յայտնելով որ տուն եկած ժամանակ հանդիպեր է հայ աղքատ երիտասարդի մը, որ օգնութիւն է խնդրեր իրմէ: Զգուշացուցի Սիմոնը, որ այդ երիտասարդը նոր Ժընէվ հասած խաչագող մ՚է:

Շանթահարող նայուածքով մը պատասխանեց Սիմոնը ինձ, յայտնելով որ երիտասարդը փողոցը մնացեր է, ու սոված է: Եւ ի հարկէ տարաւ ու դրամը տուաւ երիտասարդին:

Իննսունեւվեց թուականէն վերջ, Եւրոպա եւ քիչ մը ամէն տեղ խաչագողներու խմբակ մը զանազան ձեւերով հանդիստ ու անաշխատանք կեանք մը ապահովեր էր: Խաչագողներէն ամէն մէկը, սակայն, պէտք է ունենար մասնայատկութիւն մը օտարներու կամ հայերու գութը շարժելու համար: Այս երիտասարդի փրոֆէշընը՝ ուզած ժամանակ փսխել կարենալն էր, որով այն տպաւորութիւնը կը ձգէր, որ օրերով անօթի է մնացեր: Զարմանալի չէր, որ Սիմոնը ի տես երիտասարդի այդ վիճակին արգահատեր էր անոր վրայ: Յաջորդ օրը հանդիպեցայ այդ մարդուն, որ քաֆէ Լիրիքի մէջ իր քաջագործութիւնները կը պատմէր: Ներկայ եղողները այդ հերոսին զգացուցին, որ եթէ չուզեր ոստիկանութեան հետ գործ ունենալ, պէտք է քանիչորս ժամէն հեռանայ քաղաքէն: Այդպէս ալ եղաւ:

* * *

1903 թուականին Ժընէվ ունէր հայ մեծ գաղութ մը, բազմաթիւ երկսեռ ուսանողներ եւ տասնեակ մը ունեւոր ընտանիքներ, որոնք հոն հաստատուած էին: Այդ ուսանողութեան մէկ շատ փոքրր մասը կը բաղկանար արեւմտահայերէ, որոնք ընդհանրապէս քաշուած կեանք մ՚ունէին եւ չէին խառնուեր մեծ հատուածին, բացի շատ հազուադէպ բացառութիւններէ:

Աւելորդ է ըսել, որ չանցած շաբաթ մը, ես արդէն ուսանող

ուսանողուհիներու մեծամասնութեան հետ մտերիմ կապեր հաստատած էի, դեռ մէկ երկու սիրուն ուսանողուհիներու ալ քավալիէրի պատուաւոր դեր կը կատարէի: Զարմանալի կերպով Ժընէվի արեւելահայ ուսանողութիւնը պարզ, անկեղծ եւ հրապուրիչ մթնոլորտ մը ստեղծեր էր,— բան մը, որուն մենք անընդունակ ենք: Առաջին օրէն իսկ, ինքզինքս մօտ, սրտակից շրջանակի մը մէջ գտայ, կարծես հին բարեկամներ լինէին, որոնց վերստին կը հանդիպէի:

Եթէ այդ ուսանողութեան ընկերական յարաբերութիւններու մասին այնքան յափշտակուած կը գրեմ, սակայն իրենց ուսանողութեան մասին շատ բան մը չունիմ ըսելիք: Շատ քիչերը ատոնցմէ աւարտական տիպլոմով կը վերադառնային Կովկաս: Ատոնց մեծ մասը անշուշտ հասարակական գիտութիւններու եւ գրականութեան ուսանողներ էին, որով շատ առաճգական կը դառնար անոնց ուսանելու տարիներու թիւը, եւ հաղուագիւտ չէին անոնք, որ կը վերադառնային նախօրօք գիտցածնուն վրայ բան մը չաւելցուցած, նոյնիսկ առանց չէնքով շնորհքով Ֆրանսերէն մը խօսիլ կարենալու:

Ասոնք սակայն զարմանալի հեշտութեամբ կը հոլովէին սոցիալիզմը: Ըսենք, ատոր համար համալսարան երթալու բնաւ պէտք չկար. ուսանողական ժողովները, բաւական էին, որոնք կը սկսէին Էնգելսով, Կարլ Մարքսով ու կը վերջանային Կաուցկիով: Ինչ որ ինծի զարմանք կը պատճառէր, այն երեւոյթն էր, որ, Պաքուցի միլիոնատէրի տղան կարմիր սոցիալիզմ կը խաղար Ժընէվի մէջ, Թիֆլիսեցի հարուստ վաճառականի աղջիկը, որ մեծ օժիտով աչքառու տեղ մը կը գրաւէր ուսանողութեան մէջ, Սոցիալ Դեմոկրատներու ժողովներու ընթացքին թէյի բաժակները կը լուար, նոյնիսկ Երզնկեան անուն սարկաւագը, որ կը պատրաստուէր քահանայ ձեռնադրուելու, իրենց ընտանեկան չաղ ծուխերը ձեռքէ չհանելու համար, երդուեալ սոցիալիստ մ'էր իր հօրեղբօրորդի Արամայիսի նման, որ այն օրերուն մենշեվիկ էր, վերջէն եղաւ բարեխառն սոցիալիստ, մինչեւ որ ինկաւ բոլշեւիկներու գիրկը, մեղայի եկող «անառակ զաւակ»ի սրտաշարժ ձեւով:

Պատահական երեւոյթ մը չէր հանդիպիլ ուսանողներու, որոնք տասնեակ մը տարի արդէն ուսած եւ դեռ աւարտական քննութիւնները անցնելու համար նոյնքան մը տարիներու օժանդա-

կուլթեանը պէտք ունէին: Ասոնք Զուիցերիոյ զանազան քաղաքները ինկած յաւիտենական ուսանողներն էին, որոնք մէկ մէկ բարերար ճարած՝ ապահովեր էին իրենց ապրուստը, եւ ուսանողի ծիրանին: Կը յիշեմ բժշկական ուսանող մը, որ 1904-էն մինչեւ 1913 ուսանելով, չկրցաւ բժշկական քննութիւնները անցնել, մինչեւ որ, բարեբախտաբար, պատերազմը վրայ հասաւ, ու ռուս կառավարութիւնը, բժշկական քոթայի թիւը լրացնելու համար, մինչեւ որոշ քուրս մը աւարտողները մեծաքանակ չափով բժիշկ դուրս բերաւ:

Թերեւս այս պատկերը քիչ մը չափ խտացած թուի ոմանց: Իրողութիւնը այն է, որ չեմ չափազանցեր, եթէ ըսեմ, թէ հազիւ 20%-ը եկողներէն բան մը կ'աւարտէր, եթէ նոյնիսկ աւարտածը գրականութիւն լինէր: Եւ որքա՜ն աղջիկներ կային, որոնք փոխանակ կերակուր եփել սորվելու, գրականութեան պոչէն բռնած կ'երթային, եւ սակայն ո՞վ է տեսեր կամ լսեր, եւ կամ լողաց իմացեր, որ այդ աղջիկներէն մէկն ու մէկը գրիչ շարժած լինի: Եթէ Կովկաս մէկ երկու աղջիկներ կային քիչ ու շատ շնորհալի, որոնք բանաստեղծութիւններ կը գրէին տարին մէկ երկու անգամ տեղական թերթի մը մէջ, այդ անոր համար որ Եւրոպա չէին գնացեր ուսանելու:

Ժընէվ հանդիպեցայ շատերու, որոնց մէջ կարկառուն դէմք մ'էր Սարգիս Մինասեանը, որ վերջէն կարծեմ 1905-ին Ամերիկա եկաւ որպէս գործիչ: «Դրօշակ»ի մէջ պարբերաբար երեւցած «Թուրքիոյ շուրջ»ի հեղինակին՝ անունով ծանօթ էի, բայց առանձին գրաւչութիւն մ'ունէր անոր հանդիպիլ քաֆէ Լիրիքի իր մշտական անկիւնը:

Ժպտադէմ, նստած իր սեղանի առջեւ, ֆրանսերէն թերթ մը ձեռքին, ստէպ գրպանէն ծոցատետրը կը հանէր, սիրուն ոճ մը, բառ մը անցնելու անոր մէջ, հրճուանքէն ճառագայթող դէմքով: Միջահասակ, թիկնեղ, կարմիր թշերով, մեծահարուստ ռանթիէի մը տպաւորութիւն կը ձգէր: Տպաւորութիւն ըսի, որովհետեւ Սարգիսը հազիւ թէ հրաշքով մը գոյութիւնը կը քաշքշէր, առանց Ժընէվէն կարենալ բաժնուելու:

Զէ, այդ ժամանակ չէր ուսաներ, կարդացածը բաւ համարելով, գիտցածին վրայ կ'որոճար: Առանց շատ բան գիտցած լինելու ամբարտաւանութեան, ամէն նիւթի մասին համով հոտով կը խօսէր, տեսակ մը էնսիքլօբէտիստ, որ չգիտցածին պակասը կը

լրացնէր բնածին խելքովը։ Ուսանողական ժողովներու աղն էր։ Եթէ Խաչատուր Մալումեանը անխուսափելի նախագահ մըն էր, Սարգիսը իր սրամիտ բանախօսութիւններով ժողովներուն կենդանութիւն տուողն էր, ու այդ առանց վանողական տրամադրութիւն առաջացնելու, մանաւանդ Սոց. Դեմոկրատներու մէջ, որոնց ձեռք առնել շատ կը սիրէր։



ԱՐԱՄ—ԱՇՈՏ
(ՍԱՐԳԻՍ ՄԻՆԱՍԵԱՆ)

Չեմ սխալիր, եթէ ըսեմ թէ ամենէն սիրուած դէմքն էր ուսանողութեան մէջ, ըլլային անոնք Դաշնակցական թէ միւս կուսակցութիւններու պատկանող։ Մեղմ, փափկանըկատ, ազնուական մարդ մ'էր ան, զարմանալիօրէն համեստ, ոչ այն տիպերէն, որոնք տանիքներու վրայէն կը պոռան իրենց գիտցած ու մանաւանդ չգիտցած խնդիրներու մասին։ Վեհափառ ծանրութիւն մը ունէր, եւ սքանչելի դանդաղութիւն մը, ծուլութեան սահմաններուն մօտեցող, որ ուրիշ որեւէ մէկու համար աններելի պակասութիւն մը պիտի համարուէր, այն ինչ անոր մէջ գրաւչութեան յատկանիշ մ'էր։

Այս հաւասարակշռուած տաղանդաւոր երիտասարդին մենք նորէն կը հանդիպինք։

Ժագ–Լեւոնը մեր Պոլսի հին ընկերներէն էր, Պանք Օթօմանի ցոյցի ժամանակ կազմակերպութեան կողմէ, դեսպաններուն պահանջագիր ներկայացնողը։ Ժընէվ փախեր էր դէպքէն վերջը, եւ կարծեմ դեղագործութիւն կ'ընէր։ Շատ քիչ անգամ մէջտեղ կ'ելնէր, թէեւ միշտ ալ կը գտնուէր, երբ ուսանող մը, ընկեր մը նիւթական փոխառութիւն կնքելու հարկադրանքին տակ լինէր։ Զարմանալի յատկութիւն մ'ունէր տեղացիներէն բարեկամներ ճարելու։ Դժբախտաբար այս երկուքը՝ Սարգիս Մինասեանը եւ Ժագ–Լեւոնը խմբագրատուն ոտք չէին դներ. տանելով տանիլ չէին կրնար Խաչատուրն ու Վարանդեանը, որոնց մասին այնքան ալ փաղաքշող կարծիք չունէին։

Զմոռնանք Սիմոն Յակոբեանը, եւ իր խուլոտ պլուզը։ Այս Գանձակեցի երիտասարդն ալ եկեր էր ուսանելու։ Անշուշտ որ ընդունակ մէկն էր, բայց սապատի մը նման, ծուլութիւնը չալակին էր ծներ։ Առտուները հազիւ ժամը 11–ին կ'ելնէր անկողնէն, կատուի ժլատութեամբ երեսը կը թրջէր ու մօրուքը քօրելով առաջին հանդիպած ուսանողի սենեակը վեր կ'ընկներ ժամերով։ Կարծեմ, մինչեւ 1907 մնաց Ժընէվ ու Լօզան, միշտ ալ կ'ուսանէր, եւ հիւանդութիւնը դիեցնելով ժամանակը կ'անցնէր։ Ընկերները անոր մասին կ'ըսէին, թէ «լաւ տղայ» մ'է։ Այս բնորոշումը, որ մեր արեւելահայ եղբայրները քիչ մը շատ կը գործածեն, շատ առանձգական իմաստ ունի, որ նոյնիսկ կրնայ բան մը նշանակել, նայած թէ ի՞նչ ձեւով ըսուած է, եւ որո՞ւ կողմէ։ Բայց իրողութիւն մ'է, որ այդ «լաւ տղան» ինքզինքը ամէն բանի մէջ կը խծկէր, առանց անհանգիստ լինելու. սանֆասոն էր, ու իր «լաւ տղայ»ութեան վկայականը ձեռքը, ամէն դուռ բաց կը գտնէր իր առջեւ, մինչեւ Հայաստանի պատուիրակութեան խորհրդասենեակը։ Դաշնակցական այն տիպերէն էր ան, որ ամէն գործի մէջ անհրաւիրագիր մասնակցութեամբ կը փայլէր, առանց գործ մը կատարած լինելու։ Վերջերս ալ, Հայաստան գընաց, Խորհրդային «օրիենտացիա» ընդունելով, մինչեւ նոր տնօրինութիւն։ Ընթերցողս թող չսխալուի, վաղը եթէ Դաշնակցութիւնը անցնի նորէն երկիր, ան որպէս «լաւ տղայ» կարող է նորէն երեւան գալ։

Տարբեր տիպ մ'էր Թադէոս Խզմալեանը։ Այս արդէն հասուն երիտասարդը, չես գիտեր ինչո՞ւ, գիտցածը բաւ չհամարելով, նոյնպէս եկեր էր ուսանելու։ Դժբախտաբար լեզու չէր գիտեր։

Եւ որովհետեւ հասարակական գիտութիւններ չէր ուսանելիքը, որը առանց ֆրանսերէն իմանալու ալ, ռուսերէնով կարելի էր եօլա տանիլ, այլ մանկավարժութիւն, Խզմալեանը այս դժուարին կացութեան մէջէն դուրս էր եկեր, «հետեւելով» փոխանակ ուսանելու: Այս երկու բառերը թէեւ կը թուին նոյնիմաստ, բայց գործնականին մէջ բոլորովին տարբեր արժէք մ'ունին իրարմէ: Ժընեւի մէջ, հետեւողներ շատ կային, նոյնիսկ ժամանակաւոր ճամբորդներ, բանի մը կը «հետեւէին»: Եթէ այդ «հետեւիլը» քանի մը դասախօսութիւններ լսել լինէր միայն:

Ես առաջին անգամ անկէ լսեցի հայ ժողովրդական երգերը: Ճիշդ է, ձայնը նշանաւոր բան մը չէր, բայց ինծի համար ժողովըրդական երգերը այնքան նորութիւն էին, որ յափշտակուեր էի անոնցմով: Մինչեւ այդ իմ գիտցածս, «Հօյ նազանըմ»էն անդին չէր անցներ: Խզմալեանն ալ Ամերիկա եկաւ որպէս գործիչ:

Անոր առաջ բերած մեծ օգնութեան մասին երբ կը կարդայի Ամերիկահայ թերթերու մէջ, կը զգայի որ Թադէոսը իր հարազատ միջավայրը գտեր էր: Կովկաս անցնելուն՝ ան Երեւան նահանգի որոշ շրջանի մը Թեմական տեսուչ նշանակուեցաւ: Իր պաշտօնը վարեց ձեռնահասօրէն մինչեւ իր անժամանակ մահը:

Թադէոս Խզմալեանը (Ամերիկայի մէջ Տիգրանեան անունով ծանօթ) Ալեքսանդրապոլի շատ հին եւ պատասխանատու ընկերներէն էր, հայ ժողովուրդի ցաւերով եւ յոյսերով ապրող տէրվիշ մարդ մը: Ջերմօրէն կը սիրէր հայ դպրոցը, որու լաւագոյն ու նուիրուած մշակներէն էր, եւ իր վերջին տարիները, ամբողջովին նուիրեց հայ դպրոցի ծառայութեան գործին:

Սարգիս Մինասեանի միջոցով ծանօթացայ Մակեդոնացի յեղափոխական յայտնի Գ. Լիապովին: Բորիս Սարաֆովի մտերիմ ընկերն ու գործակիցը, Հայ-Մակեդոնական գործակցութեան ոգեւորուած ջատագովը եւ իրագործողներէն մէկը, Լիապովը անվերապահ բարեկամ մ'էր Դաշնակցութեան, եւ մեծապէս օգտակար էր եղած մեր կազմակերպութեան թէ՛ Պուլկարիոյ եւ թէ՛ Պոլսոյ մէջ: Պարզ եւ ընկերական, զարմանալիօրէն վստահութիւն ներշնչող առաջին վայրկեանին իսկ, Լեապովը այդ ժամանակ Ժընեւ եկած էր հանգստանալու համար: Անշուշտ ան մեր մեծ ընկերներու քիչ մը մաքրակրօն, ճգնաւորական տիպերէն չէր, կենսուրախ մարդ մըն էր, սրամիտ կատակախօս, եւ աշխարհի բարիքներէն ինքզինքը չզրկող: Քաֆէի մէջ հանդիպէիր թէ փողո-

ցը, ան անփոփոխելի ուրախ տրամադրութեամբ կը դիմաւորէր քեզ, քթի տակէն մռմռալով իր սիրական երգը՝

«Գարշըտա ֆիւրտ էվլերի,
Չէֆիլմիշ բերտելէրի»:

Պուլկարներն ու Մակեդոնացիները չեմ ճանչնար, որպէս հաւաքականութիւն, բայց այն յեղափոխականներուն, որոնց ծա–




ԱՐՇԱԿՈՒՆԻ (Գ. ԼԻԱԲՈՎ)

նօթացեր եմ այդ ժամանակ, եւ վերջէն 1906–ին, երբ վերստին եկայ Ժընեւ, իմ վրաս այն տպաւորութիւնը ձգեցին, որ անոնք ռուսներու չափ պարզ, ընկերական, եւ Վրացիներու նման կեն–

սուրախ մարդիկ են, զարմանալի հակապատկեր մը կազմելով մեր ընկերներուն:

Մակեդոնական շարժման մեծ դէմքերէն մէկն էր Գ. Լիաբովը, մեր կուսակցութեան մէջ յայտնի՝ «Արշակունի» կեղծ անունով, որը ոչ միայն անգնահատելի ծառայութիւններ է մատուցեր Դաշնակցութեան, այլ եւ Պուլկարահայ ժողովրդին եւ գաղթականութեան: Ու, ինչպէս կը լսեմ, մինչեւ այսօր ալ մեր սիրելի «Արշակունին», ծերունազարդ նահապետը անցեալ յեղափոխական սերունդին, իր սրտագին աջակցութիւնը չի զլանար Պուլկարահայ ժողովուրդին, որու անձնուէր պաշտպանն է հնուց ի վեր:

Դեռ բազմաթիւ մարդոց հանդիպեցայ Ժընեվի մէջ, որոնց ամէն մէկու մասին գրելը շատ երկար պիտի լինէր, թերեւս եւ աւելորդ, այսքանով բաւականանանք, ու անցնինք մեր պատմութեան շարունակութեանը:

* * *

Եթէ Ժընեվի ուսանողական ջերմ շրջանակը մէկ կողմէ հաճելի տրամադրութիւն մը առաջացուցեր էր մէջս, միւս կողմէ՝ սակայն չափազանց վատ ազդած էր առողջութեանս վրայ:

Անդադրում մեղուի մը նման առտուընէ մինչեւ իրիկուն կամ ուսանող եւ ուսանողուհիներու սենեակները անդաստան կ'ընէի, կամ քաֆէ Լիրիք կ'երթայի ընկերներու մօտ, եւ կամ երկար պըտոյտներու կը մասնակցէի: Օր մ'ալ եկաւ, որ սիրելի Սիմոնը առանց այլեւայլի յիշեցուց, թէ պէտք է գիւղ երթայի:

Այս անակնկալ յիշեցումը շիտակը շատ սրտովս չէր: Ժիւռայի լանջին, ուր արդէն բարձունքի անտառը կը սկսի, կորած Մարշիգի երթալը աքսորի պէս պատիժ մ'էր ինձ համար, ան ալ Մայիս ամսին, երբ ոչ մէկ Թուրիստ ամառանոց եկնելու մասին կը մտածէ:

Թէեւ այս կէտը շատ պերճախօս կերպով բացատրեցի Սիմոնին, բայց իմ խնդիրքս հանդիպելով անոր խուլ ականջին, ըստիպուած՝ պայուսակս շալկեցի, Նիօն կայարանէն փոստի մը կառք առնելով բարձրացայ Մարշիգի, զոր տեսնելու կարօտով չէի տոչորուեր: Հակասութեան մէջ չգտնուելու համար Ահարոնեանի հետ, որ այնքան շքեղ էջերով ներկայացուցեր է Զուիցերիական գիւղը, ես պիտի բաւականանամ ըսելով, թէ ամէն անհատ տեսնելու ինքնուրոյն կարողութիւն մ'ունի, եւ տեսածը նկարագրելու մէջ ամենամեծ դերը կը խաղայ ոչ թէ ենթական,

այլ գրողի անձնական տրամադրութիւնը:

Պատանեկութիւնս Տրապիզոնի սքանչելի ամառանոցները անցուցած՝ ինձի համար շատ ալ արտակարգ նորութիւն մը չէր չուրջս փռուած բնութեան գեղեցկութիւնը: Այնպէս որ շատ բան չունիմ ըսելիք Զուիցերիական գիւղի եւ այդ մէկ ամսուան անցուցած կեանքիս մասին: Ահագին փանսիոնի միակ հիւրն էի անժամանակ, եւ սարսափելի ձանձրացուցիչ էր միս մինակ նըստիլ ընդարձակ ճաշասրահին մէջ, դէմս ունենալով Թօրչոմած տանտիրուհին, որ կարծեմ երկրորդ մանկութեան շրջանը կը թեւակոխէր, ութսուն տարեկանէն վերջ, նոր ատամ հանելով...

Հազիւ ամիսը լրացած՝ կծիկը դրի այդ գիւղէն, կազդուրուելս բաւ համարելով, ու նորէն եկայ Ժընէվ, ուր հանդիպեցայ շատ մը նոր դէմքերու՝ Առանձար, Վարդօ, Սեւ–Աչոտ, Մարգպետ եւ Վահան Փափազեան: Արժէ անոնց մասին եւս ամփոփ տեղեկութիւններ տալ:

Բնիկ Թալասցի էր Առանձարը, իսկական անունով Միսաք Գույումճեան, որ Սանասարեան վարժարանը չաւարտած՝ անցեր էր Գերմանիա ուսանելու համար: Ընդունակ եւ պատրաստուած, ան գրասենեակի մարդ աւելի, ուսումնասիրութեան կամ գրական աշխատանքի նուիրուած, տեսականօրէն Դաշնակցական, գործնական յեղափոխական աշխատանքի համար աւելի քան անյարմար էր իր բնաւորութեամբ, եւ կենցաղական սովորութիւններով: Ճիշդ է, որ Երկիր կ՚ուզէր անցնիլ, Աղասերի հետ, (զարգացած եւ համակրելի երիտասարդ մը), բայց կէս ճամբայէն ետ վերադարձած էր, եղած պատրաստութիւնները անբաւարար համարելով:

Կարծեմ 1902–ին, նոյնիսկ Ամերիկա եկաւ որպէս Դաշնակցական գործիչ, բայց առանց Պոստոն իսկ հանդիպելու, Նիւ Եորքէն ետ վերադարձաւ՝ զգալով, որ ինքն այդ գործի մարդը չէ: Ի հարկէ, այդ միտքը կրնար ունենալ Ամերիկա չեկած, բայց այդ դէպքը ինքնին կը ցուցնէ որ Առանձարի միտքը եւ գործը իրար հետ հաշտ չէին երթար:

Առանձարը անպայման տաղանդաւոր երիտասարդ մ՚էր: Մեր աղքատ գրականութեան մէջ, ան որպէս նուրբ հիւմորիստ շատ պատուաւոր տեղ մը գրաւած է: Իր «Վշտի Ծիծաղ» գրքոյկը, արժէքաւոր պատմուածքներ կը բովանդակէ, որոնցմէ յայտնի են, «Հոսհոսն ու Ինտելիգենտը», «Բուրդի Վաճառականը» եւ ու–

ըիչներ։

Առանձար վերջէն Եգիպտոսի մէջ հրատարակեց «Փրկիչներ» անունով թատերախաղ–բանֆլէտ մը, ուղղուած Արեւմտեան Բիւրոյի կարգ մը անդամներու դէմ եւ, ըսենք անմիջապէս, որ շատ ձախող կերպով։ Այդ թատերախաղը, (մաղձոտ դրուժիւն մը), ինչպէս կը սպասուէր մնաց աննկատ եւ ոչ միայն բան մը չաւելցուց իր գրական համբաւին, այլ եւ բան մը պակսեցուց եղածէն։

Սահմանադրութենէն վերջ, Առանձար անցաւ Թուրքիա եւ տեեն մը վարեց Ատանայի ազգային վարժարաններու տեսչութիւնը, մեծ ձեռնահասութեամբ։ Նիւթական տեսակէտով, որպէս ապահովուած մէկը, Թուրքիա գալով մանաւանդ դպրոցական գործին նուիրուիլը ինքնին ապացոյց մ՚էր անոր պատրաստակամութեան անձնուիրաբար ծառայելու իր սիրելի ժողովուրդին։

Եթէ թիւրիմացութիւն մը պէտք է համարել անոր յեղափոխական մը ըլլալը, ան ապահովաբար մեր լաւագոյն մշակութային գործիչներէն մէկը կրնար ըլլալ, եթէ անժամանակ մահը չտանէր այդ պատրաստուած եւ տաղանդաւոր երիտասարդը։

* * *

Վարդոյի մասին շատ բան չունիմ ըսելիք։ Հազիւ ամիս մը մնաց Ժընէվ ու հեռացաւ։ Արտաքին տպաւորութեամբ, համակրելի ընկերական մարդ մ՚էր ինչպէս արեւելահայերու մեծամասնութիւնը, առանց սակայն մեծ պատրաստութեան եւ, ըսեմ նաեւ, առանց իր դիրքը ունեցողի մը լրջութեան։ Մերոնցմէ Սիմոնին հետ միայն լաւ էր, իսկ մնացածները չէր սիրեր, եւ այդ զգացումը թաքցնելու ալ մասնաւոր ճիգ մը չէր ըներ երբեք։

Սեւ–Աչոտի մասին ալ գրեթէ բան մը չեմ կրնար ըսել անձնապէս, թէեւ անոր մասին շատ եմ լսեր։ Ճիշդ է որ շատ անգամներ պատահեր եմ անոր, բայց երբեք գործի մէջ։ Դժուար թէ արտաքին տպաւորութիւններով մարդ կարողանայ մօտաւոր գիմագծում մը տալ անոր։

Գիտեմ, որ հին, անցեալ ունեցող ընկերներ չէին սիրեր զինքը, որպէս անվստահելի մէկը։ Եղած էր շատ հին ու պատասխանատու գործեր վարող Դաշնակցական մը. գտնուեր էր շարք մը ձեռնարկներու նախապատրաստական աշխատանքներու մէջ, բայց ինք ոչ մէկին չէր մասնակցած անձնապէս։ Չես գիտեր ին–

չո՞ւ, նոյնիսկ կարդալով իր ինքնակենսագրութիւնը, գիրքը կը գոցես, ծանր տրամադրութեամբ: Կը զգաս ինչ որ մութ ստուերի մը գոյութիւնը, առանց մատնանշել կարենալու զայն:



ԶԱՐԵՀ — ՍԵՒ ԱՇՈՏ — ԼԵՒՈՆ

Սահմանադրութեան շրջանին Թրքական գաղտնի ոստիկան եղաւ, թերեւս այս միակ փաստը պարզէ անոր հանելուկային դէմքը: Յեղափոխական եւ վերջէն գաղտնի ոստիկան,—ասոնք բաներ են, որ իրար շատ ալ չեն պատշաճիր:

Բայց արդար լինելու համար ըսենք, միաժամանակ, որ այդ պաշտօնին մէջ գտնուած ժամանակ, 1915–ին, երբ ոչ ոք կրնար Պոլսէն դուրս գալու մասին երազել իսկ, Աշոտը պատրաստակամութիւն յայտներ էր ընկերներուն զիրենք ապահով կերպով դուրս բերելու դէպի Պուլկարիա: Չեմ գիտեր թէ անոր այդ տրամադրութենէն օգտուեցա՞ն թէ չէ, բայց գիտեմ որ Սիամանթօն մինչեւ քարափ գնացեր էր, Աշոտի առաջարկութեամբ ու եթէ նաւը չէր բարձրացեր, մեղաւորը ինքն էր պարզապէս:

1916–ին էր, երբ վերջին անգամ հանդիպեցայ Աշոտին... Ռոստովի մէջ: Թէ ինչո՞ւ ու ինչպէ՞ս եկեր էր, չեմ գիտեր: Հոն պզտիկ խանութ մը բացած՝ կ'ապրէր: Այժմ ալ, Խորհրդային Ռուսաստանէն դուրս գալով, եկեր է Ֆրանսա:

Դպրոցական արձակուրդէն օգտուելով, Մարգպետը Յունիսի վերջերը Գերմանիայէն եկաւ Ժընեւ:

Մարզպետը բնիկ Կեսարիոյ Թոմարզա գիւղէն էր, բարձրահասակ, թիկնեղ, խոշոր կազմով, եւ զարմանալի կերպով պարզ ու միամիտ երիտասարդ մը: Մանկավարժութիւն կ՚ուսանէր եւ կ՚ուզէր հայ դպրոցին նուիրուիլ ամբողջովին: Մեր «անկուտիներու ընկերութեան» նախարարն էր: «Հաճի Մուսթաֆա» դրած էինք իր անունը, քիչ երազելով որ ան ազգային իրականապէս պիտի կատարէր յարգուած Թուրք հաճի էֆէնտիի մը դերը՝ փրկելով հարիւրաւոր տեղահանուած հայերու կեանքը:

Խոյէն անգամ մը Թիֆլիս գալուս, Մարզպետը գտայ այդ քաղաքին մէջ: Կը պատրաստուէր Պարսկաստան երթալու: Վերջէն, երբ ստիպուած հեռացայ Խոյէն՝ ան իմ տեղս եկաւ որպէս ներկայացուցիչ ու շատ օգտակար եղաւ այդ ընդարձակ շրջանին մէջ: Մասնակցեր է Պարսկական յեղափոխութեան եւ վերջէն ընկերներով, երբ Ռուսները Ատրպատականը կը գրաւեն, կ՚անցնի Վան: Կարծեմ Սեպուհի հետ կ՚երթայ Թիֆլիս, անկէ ալ կուգայ Պոլիս: Ու սիրած երազին անձնատուր կը լինի, աղքատ Թաղի մը վարժարանին ուսուցչութիւնը ընդունելով:



ՄԱՐԶՊԵՏ
(ՂԱԶԱՐՈՍ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ)

Տեղահանութեան ժամանակ, սակայն, կ՚ընկերակցի մտաւորականներու մեծ կարաւանին, ու տեղ չհասած՝ կ՚անյայտանայ: Մնացածը առասպելական իրողութիւն մ՚է:

Քաջ Թրքախօս, ինքզինքը որպէս Թուրք հաճի մը կը ներկայացնէ: Թուրք կառավարութեան հետ (խոշոր գործառնութիւն կ՚ունենայ՝ բանակի համար «ղաւուրմա» պատրաստելով հարիւրաւոր հայերու օժանդակելով ուրիշ հարիւրաւորներու ալ Թրքական սահմանէն դուրս փախչելու: Ու այս ամէնը ձեռաց տակէ, առանց իր հայ լինելը յայտնելու, բացի քանի մը ընկերներէ, որոնք իր գործակիցներն էին արդէն:

Զինադադարէն քանի մը օր առաջ միայն, երբ Թուրք կառավարութիւնը տարիներով խաբուելէ վերջ, վերջապէս գլխի իյնալով կ'ուզէր ձերբակալել այդ կասկածելի «Հաճի էֆէնտին», Մարգպետը ձիով ճամբորդած ժամանակ պատահաբար կ'իյնայ եւ ծանրապէս վիրաւորուելով կը մեռնի:

Մեր ընկերներու հանդէպ, որոնք ինկան յեղափոխութեան ճանապարհին, մենք՝ վերապրողներս ծանր բարոյական պարտականութեան մը տակ կը գտնուինք: Մեզմէ ամէն մէկը, պէտք է աշխատի իր կարողութեան չափով վերակենդանացնել անոնց յիշատակը, որպէս մեծ դաստիարակիչ արժէք մը նոր սերունդի համար: Արժէ, որ այս բիւրեղի նման մաքուր գաղափարապաշտ երիտասարդի վերջին տարիներու արկածալից կեանքը, որը առասպել մը կը թուի շատերու, մանրամասնօրէն ներկայացուի հանրութեան: Այդ կրնան ընել իր գործակից ընկերները եւ մասնաւորաբար Խօսրով Պապաեանը, որը ապրելով նոյն շրջանին մէջ, լաւագոյն կերպով կրնայ ներկայացնել մեզ Մարգպետի վերջին տարիները:

* * *

Վահան Փափազեանի մասին պատմութեանս ընթացքին արդէն պիտի խօսիմ:

Օր մը Սիմոնի հետ քանի մը ընկերներով գնացինք Քրիստափորի կնոջ այցելութեան, որ կ'ապրէր քաղաքի ծայրը, շատ համեստ, եթէ չըսենք՝ աղքատ կերպով: Մէկ երկու ռուս հիւրեր ունէր տիկինը: Խօսակցութիւնը ռուսերէն լինելով, որմէ ոչինչ կը հասկնայի, ինծի համար համր դրութիւն մը ստեղծուելուն, աւելի քան կը ձանձրանայի: Ինչպէս միշտ կը պատահի ռուս ընկերութեան մէջ, վէճ մը փրթաւ, որ զարգանալով կանոնաւոր խօսքի ճակատամարտի մը ձեւը առաւ: Միւսները հետզհետէ մէկդի քաշուելով՝ հրապարակը մնաց տիկ. Միքայէլեանին եւ Սիմոնին, որոնք կը վիճէին այնպէս, ինչպէս միայն ռուսները կրնան վիճիլ:

Անշուշտ ոչինչ կը հասկնայի, բայց ուշադրութեամբ կը հետեւէի անոնց դէմքերուն: Այնչափը յայտնի էր ինձ, որ հարցը կը վերաբերուէր հայ ժողովուրդին, կամ հայկական յեղափոխութեան: Տիկինը քիչ մը զայրացած, չոր եւ քամահրական ինչ որ բաներ ըսաւ Սիմոնին, որու գոյնը թռաւ, կտաւի նման ճեփ–ճեր-

մակ, դէմքը կարծես աներեւոյթ հարուածի մը ցաւէն պրկուելով, այնպիսի կատաղութեամբ եւ կրքով սկսաւ յանդիմանական արտայայտութեամբ մը խօսիլ, որ, ինչպէս կ'երեւէր, բոլորովին անսպասելի էր տիկնոջ համար: Կը զգայի, որ ներկաները, Սիմոնի խօսքերէն վերջ, տեսակ մը փուշի վրայ նստած կը զգային իրենք զիրենք: Դրութիւնը փրկեց սամավարի մուտքը:

Ես ի հարկէ մէկ երկու անգամ միայն առիթ ունեցայ տեսնել տիկինը, բայց չեմ գիտեր ինչո՞ւ, բնազդաբար այնպէս կը զգայի, որ ան ոչ հայկական յեղափոխութեամբ եւ ոչ ալ հայ ժողովուրդով կը հետաքրքրուէր:

Վերջէն երբ վերադարձանք տուն, Սիմոնին հարցուցի վիճաբանութեան մասին, սակայն ան մռայլուեցաւ ու չպատասխանեց:

* * *

Փարիզէն եկաւ Սիամանթօն, «Դիւցազնօրէն»ի հեղինակը, որ նոր կը սկսէր յայտնի դառնալ հայ գրականութեան մէջ:

Ահարոնեանը իր «Քրիստափոր Միքայէլեան» գրքին մէջ, Սիամանթօի «Դրօշակ»ի մէջ գրել սկսիլը կը վերագրէ անոր ունեցած սիրուն դէպի Քրիստափորը,— բան մը, որ սխալ է: Դեռ Քրիստափորը Ժընեւ չեկած, օր մը, երբ Առանձարն ու ես նստած էինք խմբագրատունը, Սիմոնը, որ եկած նամակները բանալով աչքէ կ'անցընէր, յանկարծ մեզ դառնալով քիչ մը շլմորած դէմքով բանաստեղծութիւն մը երկնցուց մեզ՝ ըսելով·

— Տղերք, մէկ նայեցէ՛ք, էս ի՞նչ բան է:

Մենք երկուքս ալ այդ ժամանակ սաստիկ յափշտակուած էինք Սիամանթոյով: Մեծ ոգեւորութեամբ կարդացինք ոտանաւորը, յայտնելով որ շատ տաղանդաւոր սկսնակ գրող մ'է: Չեմ կարծեր, թէ Սիմոնը մեր տեսակէտը բաժնեց, բայց վերջէն խմբագրութիւնը այդ ոտանաւորը տպագրեց «Դրօշակ»ի մէջ Քրիստափորի գալէն առաջ, միաժամանակ բացառաբար, կէս ֆրանսական ոսկի տալով անոր,— բան մը, որ ընդունուած սովորութիւն մը չէր:

Բարձրահասակ, նիհարակազմ Սիամանթօն զարմանալի տըպաւորութիւն մը ձգեց իմ վրաս: Ան կարծես խառնուրդ մը լինէր Անգլիացի ճենթլմէնի եւ Փարիզեան կամէնի:

Ընդհանրապէս յարաբերութիւններուն մէջ բարեկիրթ, բայց վերին աստիճանի դիւրաբորբոք եւ դիւրազգաց, անմեղ կատակ մը, կամ իր բանաստեղծութիւններու մասին բարեացակամ նկա-

տողութիւն մը զինք կրնար հասցնել մինչեւ փողոց։ Ինչպէս մեր շատ մը գրողները, սաստիկ կը տառապէր մեծամտութեան հիւանդութեամբ։ Չկար գրական արժէք մը մեր իրականութեան մէջ, որ իրեն հաւասարէր, ու այդ միտքը առանց քաշուելու կ՚արտայայտէր, որպէս ճշմարտութիւն մը, որ ոչ մէկ առարկութիւն կրնար վերցնել։



ՍԻԱՄԱՆԹՕ
(ԱՏՈՄ ԵԱՐՃԱՆԵԱՆ)

Հազիւ քանի մը մտերիմ ընկերներ ունէր, անոնց մէջ Սարգիս Մինասեանը, որոնք կրնային առանց կռուելու եօլա երթալ իր հետ։ Նոր մարդոց մէջ ան ուղղակի անտանելի էր, էքսանթրիկ, արհամարհոտ եւ փոփոխական։

Գալէն քանի մը օր վերջը, խմբագրատան մէջ միջադէպ մը ունեցանք։ Երկուքով նստած կը խօսէինք «Դիւցազնօրէն»ի մասին։ Ես յափշտակուած կը պատմէի իրեն, թէ որքա՜ն խանդավառութեամբ Ամերիկայի մէջ կը կարդային իր գիրքը։ Սիամանթօն ինքնաբաւականութեամբ կը լսէր զիս։ Չեմ գիտեր, ինչպէ՞ս եղաւ՝ խօսքի ընթացքին անմեղ նկատողութիւն մը ըրի, որ կրնար ճիշդ չլինել, բայց ինքը կասկած չունէր, որ իր գրականութեան հիացողներէն էի։ Խօսքս կիսատ մնաց բերանս, սպրդնած, ինքնիրմէ դուրս, ոտքի ցատկեց վրաս պոռալով.

— Խմպըլ գաւառացի, քեզի պէս յիմարները զիս հասկնալու կարողութիւն չունին։

Ու դուռը շխկացնելով՝ դուրս վազեց, կարծես մէկը դանակը ձեռքը զնիքը կը հալածէր։

Ճիշդն ըսած, ինքս ալ սառնարիւն լինելու համբաւը չեմ վայելեր։ Բայց անոր մէջ կատարուած փոփոխութիւնը այնքան յանկարծական էր, անսպասելի, որ ես ապշած՝ բառ մ՚իսկ չկըրցայ արտասանել։ Հետզհետէ սկսայ զայրանալ սակայն։ Այլեւս ինքզինքս պահելու անկարող, չիտակ գնացի Քաֆէ Լիրիք՝ անոր հանդիպելու։ Սարգիսի հետ սեղանի մը քով նստած էին։ Մօտե-

ցայ ու քանի մը շատ ծանր ու թերեւս անվայել բաներ ըսի: Սեդան աթոռ իրար անցան:

Երբ Սարգիսը գլս դուրս հանեց քաֆէէն, յիշելով Սիամանթոյի այլայլած դէմքը, սաստիկ ամչցայ ըրածէս: Քանի մը օր վերջը Սարգիսը մեզ հաշտեցուց: Ատկէ վերջ լաւ բարեկամներ եղանք, չեմ ըսեր ընկերներ, որովհետեւ մենք նկարագրի որոշ գծեր ունէինք, որ մեր մէջ ընկերութիւնը անկարելի կը դարձնէր:



Ղ Ա Ր Ի Պ
(ԱՒԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆ)

Երկու շաբաթ վերջ միասին, Ա. Հանըմեանի հետ գնացինք Սալեվի վրայ գիւղ մը, շաբաթ մը մնալու, ուր շատ հաճելի ժամանակ անցուցինք: Ի հարկէ, ան մոռցեր էր իմ «խմպըլ դաւառացի» ըլլալս, ես ալ իր բանաստեղծութիւններու մասին բառ մը չէի արտասաներ՝ ոչ լաւ, ոչ վատ: Միջին ճամբան գտեր էինք:

Վերջէն Սիամանթօն որպէս Դաշնակցական գործիչ եկաւ Ամերիկա: Կը թուի, թէ այդ պարզ թիւրիմացութիւն մըն էր: Սիամանթօն ոչ կրնար եւ ոչ ալ պատրաստութիւնը ունէր նման գործի մը: Անոր զարգացումը զարմանալիօրէն միակողմանի էր: Եւ հասկնալի է, որ օգտակար չեղաւ հոս, բացի անունի հմայքէն, որ կուսակցական պրոպականտայի համար պէտք կրնար գալ:

Այդ տաղանդաւոր երիտասարդը, որ իր «Դիւցազնօրէն»ով այնքա՜ն հզօրապէս ազդեց արեւմտահայ բանաստեղծական ստեղծագործութեան վրայ, յեղափոխական, եթէ կ՚ուզէք ըսեմ Դաշ-

նակցական բանաստեղծ մ'էր, իր գրչով, անձնապէս առանց յեղափոխական լինելու, այդ բառի իսկական առումովը:

* * *

Յունիսի մէջ էր, երբ Լօզանէն եկաւ Ա. Ահարոնեան, «Դրօշակ»ի Ղարիպը, որու գալուն այնքա՛ն անհամբերութեամբ կը սպասէի: Համաչափ կազմով, միջահասակ, սեւ սաթի նման առատ մազերով ու մօրուքով եզերած քիչ մը ցորենագոյն դէմքով, գրաւիչ եւ նոյնիսկ գեղեցկատեսիլ երիտասարդ մ'էր Ահարոնեանը, որու համբաւը, «Խայ»էն վերջ, թեւ առած կը բարձրանար Ամերիկահայ գաղութի մէջ:

Աւելորդ է ըսել, որ այդ շրջանի նորահաս սերունդի նման, ես ալ յափշտակուած էի անոր պատկերներով, որոնք Րաֆֆիէն վերջ, եթէ նորութիւն չէին, սակայն անօրինակ չքեղութեամբ դուրս կուգային վարպետի մը գրչէն, որը հետզհետէ զարդանալով հնարաւոր դարձուց «Դրօշակ»ի Ղարիպին տալու «Ղեղոյի Արտ»ի նման գլուխ գործոց մը:

Եթէ Քամառ-Քաթիպան իր երգերով ազգային զարթօնքի շեփորը հնչեցուց, եթէ Րաֆֆին իր վէպերով ուրուագծեց գալոց յեղափոխութեան շաւիղը, Ահարոնեանն էր, որ կրցաւ արդէն յեղափոխական ապրուած կեանքէ մը դուրս բերել պատկերներ, կենդանի, ապրած մարդոց, ու ատով իսկ հզօրապէս ազդեց այն հսկայ հոգեբանական մակընթացութեան վրայ, որ ապրեցաւ հայութիւնը 1896 թուականէն վերջը:

Ոգեւորութիւնս, կարծեմ գիս քիչ մը հեռացուց նիւթէս: Դառնանք անոր կրկին:

Ահարոնեանը շատ աւելի հաղորդական, քան միւսները, շատ լաւ տպաւորութիւն ձգեց վրաս: Շիտակը, Խաչատուրի (Մալումեան) վերապահ վերաբերմունքը, Միքայէլի (Վարանդեան) «մեկուսացման» քաղաքականութիւնը, որ իր բնաւորութեան արդիւնք էր աւելի, քան արհեստական կեցուածք, վատ էր անդրադարձեր վրաս, ինչպէս եւ ուրիշ արեւմտահայերու, որոնք խմբագրատուն չէին գար բնաւ այդ պատճառով: Եթէ չլինէր Սիմոնը, ես անկասկած հեռացած կը լինէի Ժընէվէն, հետեւաբար կեանքս ուրիշ ընթացք կը ստանար:

Ահարոնեանը Լօզանէն կուգար, ուր ենթարկուեր էր թեթեւ օփերասիոնի մը: Օր մը, կէս օրէ ետք, Սիմոնը թէ տղերք երթանք քիչ մը ման գալու: Ահարոնեանը դեռ ամբողջովին կազդուրուած

չէր ու պանտաժով կը քալէր, բայց կ'երեւի մտածելով որ թեթեւ պտոյտ մը լաւ պիտի ազդէ վրան, համաձայնեցաւ: Զորսով միասին, հանդարտ քալուածքով դէպի Սալեվը սկսանք քալել:

Սքանչելի պայծառ օր էր: Սիմոնը, հակառակ խմբագրատան մէջ ունեցած սովորական մռայլութեան, զարմանալիօրէն կենդանացած, արձակուրդ ստացած դպրոցականի մը խնդութեամբ, առաջ ինկած կը վազէր պիտի ըսէի, բայց չիտակը վազելու չափ արագ չէր: Մենք ալ կ'աշխատէինք հասնիլ անոր: Հասանք Սալեվի ստորոտը, որտեղէն որպէս թէ ետ պիտի դառնայինք: Բայց մեր Սիմոնը կապը կտրած այծի նման սկսաւ մագլցիլ լեռն ի վեր: Միքայէլը պոռաց ետեւէն, թէ բաւական է, ետ դառնանք: Բայց Սիմոնը «հը էստեղ էլ բարձրանանք, հը էնտեղ էլ» ըսելով լեռան կատարը հասցուց մեզ:

Ահարոնեանը ուղղակի նահատակուեր էր, Միքայէլն ալ, որ թոյլ կուրծք ունէր, յոգնած սաստիկ կը հեւար: Լեռան բարձրութեան ալ պաղ քամի մը: Սիմոնը նոր գլխի ինկաւ, որ բաւական անխոհեմութիւն էր Աւետիսը այդ վիճակով, որպէս թէ «քիչ ման գալու» բերելը:

Աճապարեցինք լեռան միւս կողմը, ֆրանսական գիւղ մը երթալ, ուր քաֆէ մը մտնելով, Սիմոնը իւրայատուկ միտքը ունեցաւ՝ սաստիկ քրտնած Աւետիսի կուրծքն ու կռնակը, անձեռոցներով թիմել խնամոտ մօր մը հոգատարութեամբ, որ պաղ չառնէ:

Եթէ չեմ սխալիր, քանի մը օրէն Լօզան մեկնեցաւ Ահարոնեանը:

* * *

Խմբագրատանը կը խօսուէր, որ շուտով Ժընեւ պիտի գայ Կովկասէն Քրիստափորը: Օր մ'ալ ըսին որ եկեր է, բայց Քրիստափորը վճռականապէս մերժեր էր խմբագրատուն ոտք կոխել, քանի Վարդօն հոն էր:

Շիտակը ես աւելի հետաքրքրուած էի Ահարոնեանը տեսնելու, քան Քրիստափորը, որ այն ժամանակ անծանօթ մ'էր Ամերիկայի Դաշնակցականներուն համար, որոնցմէ հազիւ մէկ երկուքը անունը լսած լինէին: Այդպէս էին մեր կուսակցութեան հիմնադիրները: Մինչդեռ անոնք իրենց հոգիով ու մտքով կը կերտէին Դաշնակցութիւնը, ամբողջովին ապրելով անոր համար, որ ըսել է հայ ժողովուրդի համար, մինչդեռ իրենք կը վարէին

Դաշնակցութեան պատասխանատու կառքը, սակայն հազիւ անոնց անմիջական շրջապատը գաղափար ունէր անոնց գոյութեան եւ արժէքի մասին: Պիտի մեռնէին երեքն ալ, որ Դաշնակցական ժըլատ պատմութիւնը, Հանրութեան սեփականութիւն դարձնէր երրորդութեան մեծ դէմքերը, անոնց կատարած սքանչելի աշխատանքը, եւ անօրինակ մարտիրոսուած կեանքը:



ՔՐԻՍՏԱՓՈՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

Օր մը Սիմոնին հետ գնացինք Քրիստափորի մօտ:

Ինչպէս վերը խոստովանեցայ, ոչ զայն գիտէի եւ ոչ ալ անոր արժէքը Դաշնակցութեան մէջ: Ներս մտանք սենեակը, ուր Քրիստափորը, յատակին նստած, երեխային հետ կը խաղար: Քրիստափորը յայտնապէս կաղալով մօտեցաւ մեզ, զարմանալի նուրբ ժպիտով մը: Սիմոնը ներկայացուց զիս, իր Տրապիզոնի աշակերտներէն, Ամերիկայէն եկած:

Խօսակցութիւնը սկսաւ ռուսերէնով, տիկնոջ պատճառով, որ ներկայ էր: Ես շատ ալ հոգ չըրի այդ պարագան: Անոնց խօսակցութեան ընթացքին հետզհետէ ուշադրութիւնս կեդրոնացաւ Քրիստափորի դէմքին: Ետ սանտրուած նօսր մազեր, ցանցառ մօրուք մը, դալուկ, նուրբ դէմք, եւ զարմանալիօրէն թաւշային նայուածք մը, որ միաժամանակ կարծես մինչեւ հոգուդ խորքը կ՚իջնէր: Բայց ամենէն աւելի ուշադրութիւնս գրաւեց անոր նուրբ եւ շատ զգայուն դէմքը:

Ես ի հարկէ ոչ մէկ խօսք կը հասկնայի ռուսերէն, բայց ինծի կը թուէր, թէ հետեւելով Քրիստափորի դէմքին, ես ալ հա-

ղորդակից եմ իրենց խօսակցութեան նիւթին, այնքան որ անոր դէմքը արտայայտիչ էր:

Խօսակցութեան ընթացքին, մէկ երկու անգամ Քրիստափորը, կ'երեւի իմ անյարմար դրութիւնս զգալով, հայերէն հարցումներ ուղղեց ինծի, այնպէս մտերմական, հարազատի մը քնքշութեամբ, որ հետզհետէ մէջս առաջացող ջերմութիւն մը զգացի այդ անծանօթ մարդու հանդէպ, որուն քանի մը վայրկեան առաջ տեսեր էի միայն:

Մեկնելու ատեն Քրիստափորը ռուսերէն ինչ որ բան հարցուց Սիմոնին: Ռուսերէն գիտնալու պէտք չունէի՝ զգալու համար, թէ խօսքը իմ մասիս էր: Սիմոնի պատասխանէն վերջ Քրիստափորը «լաւ, շատ լաւ» ըսելով գլուխս շոյեց փաղաքշանքով: Երբ մեկնելու համար ոտքի ելանք, ես անբացատրելի զգացումով մը ինքզինքս կապուած կը զգայի Քրիստափորին, առանց սակայն անով յափշտակուած լինելու. այնպէս մեղմ, ջերմութիւն մը, որ չես գիտեր թէ ինչու կը յառաջանայ մէջդ:

Քանի մը օրէն Վարդօն մեկնեցաւ Ժընեւէն: Քրիստափորը սկսաւ խմբագրատուն գալ: Անոր գալով մէկէն ի մէկ փոխուեցաւ խմբագրութեան քիչ մը սառը մթնոլորտը: Կարծես ձին ձմռան, գարնան տաքցնող շող մը լինէր ան, ու մենք ջահիլներս աւելի ազատ շունչ քաշեցինք:

Անոր գալէն վերջը այլեւս չէինք հեռանար խմբագրատունէն, ժամերով կը նստէինք, մանաւանդ երբ Քրիստափորը մեզ հետ նստէր խօսելու: Սիմոնը պտոյտներու ժամանակ ընկերական էր եւ հարազատ, մեծ հաճոյք մ'էր անոր հետ ման գալու ելնելը, բայց այդ շէնքին մէջ, կ'երեւի, շրջապատէն ազդուած, մեծապէս կը փոխուէր, քիչ հաղորդական, քիչ մ'ալ չոր դառնալով: Խաչատուրը, որուն ջահիլներս չէինք սիրեր, ազնուապետական հովերով, հազիւ զսպուած գոռոզութեամբ, շրջապատը հեռու կը վանէր. իսկ Միքայէլը ինքնամփոփ, առանց ուրիշ մարդ տեսնելու, խմբագրատուն կ'ելնէր ու կը մտնէր, կարծես սառցարան մը շալակած: Առանձարը անոր համար կ'ըսէր թէ «Միքայէլը եօթներորդ երկինքէն կը քալէ»:

Քրիստափորի գալով մթնոլորտը բոլորովին փոխուեցաւ, եւ խմբագրատունը պաշտօնատեղի մը ըլլալէն աւելի տուն մը եղաւ: Այդ ժամանակ ես եւ Մարզպետը խմբագրատան մէջ կ'ապրէինք շատ անգամ Քրիստափորի հետ, երեքով մինակ կը մնա-

յինք: Անգամ մը Քրիստափորը Կովկասէն եկած նամակ մը կարդաց մեզի: Հազիւ լմնցուցած՝ մեր Մարգրետը, որ շատ միամիտ տղայ մ'էր, ինքնավստահ եւ հեղինակաւոր թոնով մը կարծես իր մեծարժէք կարծիքը կ'ուզէին, ըսաւ.

— Իմ կարծիքովս, այդ խոշոր սխալ կը լինի: Ես կը թելադրէի...

Ձգեցի որ վերջացնէ, այնպէս բարձրաձայն սկսայ խնդալ, որ խեղճ Մարգրետը ճառը չվերջացուցած, լռեց, մինչ Քրիստափորը մեղմօրէն յանդիմանեց զիս:

Քրիստափորը զարմանալի ներողամտութեամբ կը տանէր իմ չարութիւնները, որոնք անշուշտ Սիմոնի ներկայութեան չէի ըներ:

Անգամ մը, Քրիստափորի քրոջ որդի Յովսէփ Թադէոսեանի կինը, մանկամարդ եւ համակրելի ռուս մը, մեզի համար կաղամբէ տոլմա պատրաստեր էր: Կէս օրին տղաքը պիտի գային համալսարանէն, որ միասին ճաշէինք: Տիկինը տոլման պատրաստած՝ դուրս էր ելած հաց բերելու: Քրիստափորը առանձին նըստած էր Բիւրոյի երկար սեղանի առջեւ ու շատ խորասուզուած՝ նամակ կը գրէր:

Սատանան մէջս մտաւ, գնացի տոլմայի պղինձը բերի եւ աննկատելի կերպով սեղանին տակ պահեցի, ինքս ալ անմեղ հրեշտակի մը նման նստայ Քրիստափորի դէմը, որպէս թէ ուշադրութեամբ թերթ մը կարդալով զբաղած: Բայց ականջս դուրսն էր: Մէկ ալ տիկինն ու տղաքը ղալմաղալով ներս մտան դրսի դռնէն: Քիչ անցած՝ դուրսը վըլվըլուկը փրթաւ: Սենեակները կը խուզարկէին, բայց այնքան աղմուկով որ վերջապէս Քրիստափորը նամակը ընդհատելով հարցուց, թէ ի՞նչ ղալմաղալ է խմբագրատան մէջ: Ըսի՝ չեմ գիտեր: Ես խոհեմութեամբ սենեակէն դուրս չելայ: Անօթի տղաքներ էին, ո՞վ գիտէ՝ ի՞նչ կը պատահէր:

Երբ աղմուկը չդադրեցաւ, Քրիստափորը ելաւ եւ դուռը բացաւ: Անօթի գայլերու պէս տղաքը Քրիստափորը շրջապատեցին, թէ «մէկը մեր տոլման գողցեր է»: Քրիստափորը իր աննման ժպիտով դարձաւ ինձի՝ «չար սատանայ, էս քու գործն է»: Իսկ տղաքը արդէն դռան բացուածքէն, երբ զիս տեսան, սկսան սպառնալից բռունցքներ ցոյց տալ: Զարմանալի կերպով Քրիստափորը հիւմորի զգացում ունէր, փոխանակ յօնքերը կիտելու, ինչ որ

միւսները պիտի ընէին, ծիծաղելով մասնակցեցաւ տղոց փնտըռտուքին։ Երբ յուսահատ վերադարձան, սեղանի տակէն հանեցի պղինձը, Քրիստափորը երեխայի նման ծիծաղելէն արտասուելով ինկաւ աթոռին վրայ։ Հակառակ որ մեծահոգաբար տղոց տոլմա տուեր էի, նեղ քորիտորէն խոհանոց երթալու ժամանակ, տղաքը անիրաւաբար մէկ երկու հասցուցին կռնակիս, եւ կարծեմ տոլմայի բաժինս ալ քիչ հանեցին։ Է՜հ, արդէն ո՞վ է ըսեր, թէ աշխարհի մէջ արդարութիւն կայ։

Ամենօրեայ շփումը Քրիստափորի հետ, անզգալի կերպով, մէջս առաջացուց այնպիսի խոր ու տեւական ջերմ զգացում մը, որ ես չէի ունեցեր մէկ ուրիշի մը հանդէպ։ Անկասկած որ ջերմօրէն կը սիրէի Սիմոնը, բայց անոր հանդէպ մինչեւ վերջն ալ աշակերտական պատկառանք մը ունէի, որ աւելի գերիշխող էր զգացումներուս մէջ։ Եւ անմիջապէս ըսեմ, որ Քրիստափորի մէջ ոչ թէ Դաշնակցութեան հիմնադիրն էր որ կախարդած էր զիս (ըսենք այդ հանգամանքը այդ ժամանակ չէի ալ գիտեր), այլ ինքը՝ մարդը, իր այնքա՜ն առինքնող հմայքով, հայրական գորովով, որու ազդեցութեան կ'ենթարկուէիր անգիտակցաբար։

Ան անճիգ կարողութիւն մ'ունէր, կարճ ժամանակի ընթացքին, խորապէս ազդելու ե՛ւ մտքիդ ե՛ւ հոգուդ վրայ, իսկ թէ այդ կարողութիւնը ի՞նչ բանի արդիւնք էր, չեմ կարծեր թէ մէկը ճշդօրէն կրնայ սահմանագծել։

Դժբախտաբար, Քրիստափորը հազիւ քանի օրուան եկած էր, երբ ես մեկնեցայ։ Այդպիսով շատ կարճ ժամանակ մը կրցայ այդ սքանչելի մարդու ներկայութիւնը եւ ընկերակցութիւնը վայելել։ Վերջէն, երբ ես Ուրմիա էի, եւ վերադարձած Շէյխ Մեհմէտ Սաըղի մօտէն, տեղեկագիր մը ղրկեցի Ժընեւ ճամբորդութեանս եւ բանակցութեան մասին։ Քրիստափորը պատասխաներ էր։ Կը խօսէր այդ նամակով՝ կատարածս այցելութեան մասին, թելադրութիւններ կ'ընէր ու նամակը կը վերջացնէր հետեւեալ խօսքերով. «Ջերմօրէն կը համբուրեմ լայն ճակատդ»։

Բնազդօրէն ցատկեցի հայելիի առջեւ տեսնելու, թէ իրա՞ւ որ ճակատս լայն էր։ Ձէ՛, Քրիստափորը զիս չէր մոռցեր։ Ուրախութենէս մոռցայ ճամբու քաշած տառապանքներս, սառած ոտներս ու ձեռքերս։

Յեղափոխական գործի մէջ, շատ քիչ մխիթարութիւն ունէինք, բայց պարտականութիւն մը կատարելու գիտակցութենէն։

Եւ, սակայն, ո՞վ ըսաւ, թէ Քրիստափորէն նման նամակ մը ստանալը աւելի մեծ վարձատրութիւն մը չէր քան իմ կատարած աշխատանքս:

* * *

Կարծեմ, Յունիսի վերջերն էր, երբ օր մը Սիմոնը շատ ճնշուած եւ այլայլած, խմբագրատան գտնուող խումբ մը ճահիլներուս նամակ մը տուաւ կարդալու:

Նամակը Վանէն էր, գրողը՝ Վարդան-Շահբազը: Մեր վեթերան ընկերը իրեն յատուկ կարճ նախադասութիւններով, կը պատմէր Վարդգէսի ձերբակալութիւնը: Թէ ինչպէս մատնութեան մը շնորհիւ գիշերով ոստիկանութիւնը կը շրջապատէ Վարդգէսի կեցած տունը. Թէ ինչպէս տղաքը պատահաբար գլխի իյնալով կ'ուզեն տանիքներով փախիլ, եւ թէ ոմանք կը յաջողին, բայց Վարդգէսը երկու տանիքներու արանքէն ցատկած ժամանակ վար կ'իյնայ՝ ոտքը վիրաւորելով. Թէ ինչպէս ան մինչեւ միւս օր կը մնայ այգիի դատարկ չէնքի մը մէջ, ու վերջէն արեան հետքերը բռնած, ոստիկանութիւնը կը յաջողի զայն ձերբակալել, եւ սարսափելի կերպով ծեծելով՝ կիսակենդան կը նետէ կուսակալի տան բակը:


ԳԻՍԱԿ-ԶԱՅՐՄԱՐ (Վարդգ. Սէրէնկիւլեան) ՊՈՒԼԿԱՐԱՑԻ ՊԵՏՕ (Պ. Սէրէմճեան)

Այս տեղեկութիւնները տալով, Վարդան-Շահբազը կը տեղեկացնէր Վասպուրականի շրջանի լործերու անկերպարան վիճակը, Վարդգէսի ձերբակալման հետեւանքով, եւ կը խնդրէր շուտափոյթ առաքումը նոր ընկերոջ մը, որ կարողանար սկսուած աշխա-

տանքները չարունակել :

Վարդգէսը, ընկ Կարնեցի, գործիչներու այն խումբին կը պատկանէր, որոնք 1903–1907–ին, Եուսուֆեանի շուրջը բոլորուած, Պոլսոյ յեղափոխական գործը ղեկավարեցին : Վերջէն, ան անցաւ Պուլկարիա, անկէ Պարսկաստան ու Վան : 1896 Թուականի ռէակցիայէն վերջը, երբ ան Վան մտաւ, անհնարին նեղ պայմաններու մէջ, կրցաւ նորէն հաւատք ներշնչել յուսալքուած խումբերուն, գաւառի հետ յարաբերութեան մտնել, կամաց կամաց կազմակերպութիւնը ոտքի կանգնեցնել : Լինելով Վասպուրականի Դաշնակցական կազմակերպութեան կեդրոնական դէմքը, անոր ձերբակալուելով նորէն գործը անկերպարան վիճակ մը ստացեր էր : Վարդան–Շահբազի ու տեղական ընկերներու յարաբերութիւններն ալ լարուած լինելով, դրսէն ընկերոջ մը երթալը դարձեր էր աւելի քան հրամայական :

Այս պարզ, գրեթէ անդրադէտ գրուած նամակը շատ խոր տպաւորութիւն ըրաւ վրաս : Եթէ երկրէն մարդ կ'ուզէին, ու աշխատանք կար, հապա ո՞ւր էին գաղափարական հայ երիտասարդները :

Ես կատարելապէս կազդուրուած էի : Օր մը, փանսիոնի պարտէզին մէջ, տաղաւարի շուքին տակ, նստած էի Սիմոնի հետ : Աջէն ձախէն կը խօսէինք, երբ ես յայտնեցի, թէ կատարելապէս առողջացած եմ եւ պէտք է երթալու մասին մտածեմ արդէն : Չեմ գիտեր այս իմ միտքս Սիմոնը ինչպէ՞ս վերցուց, բայց քիչ մը մտածելէն վերջը, ըսաւ, թէ թէեւ ես բոլորովին առողջացած եմ, բայց դեռ երկիր մտնելու չափ տոկուն չեմ, լաւ կը լինի որ ես երթամ Պարսկաստան, հոն ժամանակ մը մնամ, ու ապա անցնիմ Երկիր :

Այս պատմութիւնը կրնայի այսպէս ալ անորոշ ձգել : Բայց այս պիտի նմանէր ագռաւի մը սիրամարգի փետուրներով զարդարուելուն : Իրողութիւնը այն է, որ ես Ամերիկա վերադառնալու մասին կը մտածէի այդ ժամանակ, բայց Սիմոնի խօսքերէն վերջ, այլեւս այդ մտածումս չյայտնեցի անոր :

Ճշմարիտ է, որ Սիմոնի այդ խօսքերէն վերջ, ինքս ալ հաւատացի, որ ես արդէն Պարսկաստան երթալու մասին կը մտածէի, այնքան որ Սիմոնի բարոյական ազդեցութեան տակ կը գտնուէի :

* * *

Յուլիսի սկիզբները մեկնեցայ Ժընեւէն: Խմբագրատան մէջ, Խ. Մալումեանին եւ Մ. Վարանդեանին մնաք բարով ըսի, իսկ Քրիստափորը, Սիմոնը, Սիամանթօն, Սարգիսը, Մարգպետը, չորս մը ուրիշ ընկերներ եւ ընկերուհիներ եկան զիս ճամբու դնելու:

Սիմոնը ինծի համար պզտիկ բարձ մը, ու անգլիական շալ մը առած էր, որ ինքը կը տանէր: Մեծ պայուսակս վերցուցեր էր Հայկազուն Խանիտանեանը, ես թեթեւ պայուսակ մը ունէի ձեռքըս: Մէկ ալ երթալու ժամանակ, Քրիստափորը մօտեցաւ ինծի, եւ ձեռքէս առաւ պայուսակս: Շիտակ է, որ շատ թեթեւ բան մ'էր, բայց որ Քրիստափորը առնէ պայուսակս, երբ երկու ձեռքերս ազատ էին, վիրաւորական էր ինծ համար: Սակայն, Քրիստափորը հայրական քնքուշ ժպիտով, մերժեց տալ այդ պայուսակը: Ճամբան Քարուժէն անցած ժամանակնիս, մէկ ալ Քրիստափորը Սարգսի հետ բաժնուեցան մեզմէ, խանութ մը մտնելով:

Մենք կայարան հասանք: Քանի մը վայրկեանէն կառաշարը պիտի մեկնէր: Մէկ ալ Քրիստափորը եւ Սարգիսը հասան: Շրջանակի համբուրուեցայ բոլորին հետ: Սիմոնը բառ մը չարտասանեց, մէկ երկու անգամ համբուրեց զիս եւ ուժով ձեռքս սեղմեց: Վերջին պահուն, երբ գնացքը կը բարձրանայի, Քրիստափորը արծաթէ բաժակ մը նուիրեց ինծի, որ Սալմաստ անով գինի խմեմ:

Քիչ մը մանրամասն գրեցի, մանր մունր բաներ, որոնք կրնային զանց ընել: Բայց գրեցի ցոյց տալու համար, թէ մեր մեծ ընկերները, թէկուզ ինծի նման սկսնակ անյայտի մը հանդէպ, ի՛նչ աննման ջերմ զգացում կը ցուցաբերէին, եւ թէ ինչո՞ւ համար էր, որ անոնց շունչով ոգեւորուած նոր գործի գնացողները, անոնցմէ բաժնուած, տաժանելի պայմաններու մէջ իսկ, անոնցմով կ'ապրէին ամբողջովին:

Գաղափարական այդ առաքեալները, մեծ վարդապետ Նազովրեցի Յիսուսի պատուէրը կը կատարէին տառացի կերպով, թէ ով որ կ'ուզէ մեծ ըլլալ, պէտք է ամենափոքրին ծառայէ: Դաշնակցութեան յաջողութիւնը եւ տեւականութիւնը, ամէն բանէ աւելի կը պարտինք հիմնադիրներու եւ անոնց գաղափարակից ընկերներու բարոյական բարձր առաքինութեան, անոնց ընկերական ջերմ վերաբերմունքին, անոնց անօրինակ խոնարհութեան:

Ինչպէս նախօրօք պայմանաւորուած էի, երեք օր մնացի

Միւնիխ, Միսաքի (Առանձար) մօտ, որու հետ Սանասարեանի աշակերտներ եղած էինք միաժամանակ:

Վիեննա հասայ իրիկուան մթնով: Ամբողջ քաղաքը դրօշակազարդուած էր: Փողոցները լեփ-լեցուն էին տօնական տրամադրութեամբ գինով բազմութիւններով: Անշուշտ Վիեննան այս հանդիսաւոր ընդունելութիւնը ինծի համար չէր պատրաստած: Քանի մը ժամ առաջ Անգլիոյ թագաժառանգը մտեր էր Աւստրիոյ հինաւուրց մայրաքաղաքը, Հապսպուրկներու կաղնիին իր մօր՝ ծովերու թագուհու բարեւները բերելու: Բայց այդ անշուշտ պատճառ մը չէր, որ ես ալ իմ բաժինս չվերցնէի հանդիսական ընդունելութենէն:

Երեք օր մնացի հոն, եւ շատ լաւ ժամանակ անցուցի:

Սահմանը անցնելով, երբ ռուսական Վօլոչիսկ գիւղաքաղաքը հասայ ու կ՚ուզէի գնացքով Թիֆլիս անցնիլ, նոր նկատեցի որ իմ Վիեննայի խելօքութիւնս պիւտճէիս մէջ խոշոր ծակ մը բացեր է:

Աւելորդ է ըսել, թէ ես անձնական դրամովս կը ճամբորդէի: Այնպէս որ երրորդ կարգի գնացքով հազիւ ինքզինքս Օտեսա ձգեցի, անկէ ալ կերպով մը Թիֆլիս:

## ԿՈՎԿԱՍ

1903 թուի Յուլիսի վերջերն էր, երբ հասայ Թիֆլիս:

Ժընէվէն Սիմոնը (Զաւարեան) ինձ յանձնարարած էր երթալ Վիկտորիա հիւրանոցը, ուր՝ ինչպէս հաւաստած էր, հեշտութեամբ կրնայի հանդիպիլ մերոնց: Հիւրանոցի դվորնիկը (դռնապան), կէս պաշտօնական լրտես մը ոստիկանութեան, խօսքով, ձեռքերով ու միմիքայով վերջապէս կարողացաւ հասկցնել ինձ, որ ազատ սենեակ չկար հիւրանոցին մէջ,— բան մը, որ իմ գործիս բոլորովին չէր գար, քանի որ ոչ ռուսերէն կամ վրացերէն գիտէի եւ ոչ ալ քաղաքին ծանօթ էի: Բարեբախտաբար, հիւրանոցի տէրը, Աքուլիսցի հայ մը, վրայ եկաւ:

— Թէեւ ազատ սենեակ չունենք, բայց կարող ենք ձեզ տեղաւորել մի պարոնի մօտ, եթէ կը համաձայնիք:

Ի հարկէ, ուրախութեամբ համաձայնեցի:

Բարձրացանք երրորդ յարկը։ Ներքին բակի վրայ բացուած փոքրիկ սենեակ մը մտցուց զիս, ուր՝ տեղաւորուած երկու նեղ մահճակալներէն մէկուն վրայ, երկար մօրուքով մէկը երկնցած կը կարդար, թէեւ ժամը 10 անց էր արդէն։ Որքա՜ն մեծ եղաւ զարմանքս, երբ ճանաչեցի 95–96 Թուականի Էրզրումի գործիչներէն պր. Բարսեղ Գրիգորեանը, ուրիշ անունով ծանօթ Կարա–Մելիքը։

Յեղափոխական եռ ու զեռի այդ օրերուն եւ վերջէն, երբ հընարաւորութիւն ունեցայ անձնական լայն ծանօթութիւն ձեռք բերել գրեթէ մեր բոլոր գործիչներուն հետ, իմ վրաս երկու տիրապետող դէմքեր ձգեր են շատ խորհրդաւոր եւ ուժեղ տպաւորութիւն. մէկը՝ Արտաշէս Դեւեանն էր, միւսը՝ Կարա–Մելիքը կամ Պիծան, որուն այնքան անակնկալ կերպով կը հանդիպէի ես։

1895–ին, ընկերներով անցեր էր Էրզրում, ուր իր ինքնութիւնը վարագուրելու նպատակով խանութ մը բացած, իբր թէ սամավար եւ ռուսական եաբունջաներ կը ծախէր։ Էրզրումի կոտորածին այնտեղ էր։ Բերնէ բերան զարմանալի պատմութիւններ կը պատմէին անոր մասին. թէ ինչպէս հազարաւոր ջարդարար ամբոխի մէջէն ան իր արտակարգ պաղարիւնութեան շնորհիւ կարողացեր էր ինքզինքը ազատել. թէ ինչպէս, երբ խումբ մը զինուորներ կը յառաջանան եղեր դէպի իր կողմը, ան հանդարտօրէն փողոցին մէջ տեղ կանգնելով՝ տիրական թոնով կը հրամայէ զօրքին որոշ ուղղութեամբ յառաջանալ, իբր թէ ինք հրամանատար մը լինէր։

Հին տիպարի գործիչներէն էր, ազգային զարթօնքի սակաւաթիւ ծաղիկներէն, որոնք օղակող կապը հանդիսացան ազգասիրութեան եւ գործնական յեղափոխական շարժման միջեւ։

Թափառաշրջիկ, նախակարապետ առաքեալներէն մէկն էր, որոնք հզօրապէս նպաստեցին ապագային, յեղափոխական կուսակցութիւններու ստեղծմանը։ Ինքնաբերաբար գործի սկսած այն ատեն, երբ տակաւին ոչ մէկ յեղ. կուսակցութիւն գոյութիւն ունէր հայ իրականութեան մէջ, Բիծան Դաշնակցութեան առաջին շրջանին մասնակցութիւն ունենալէ վերջը, հետզհետէ քաշուեցաւ հրապարակէն տարիքի եւ թիւրիմացութեան մը պատճառով, որ մեծապէս վնասեց իր վարկին։ Պիծան, այդ խորհրդաւոր մարդը, որ մէկ կ՚անյայտանար, մէկ ալ կը վերադառնար Երկրէն, որպէս կենդանի երգիչ հայ ժողովուրդի ցաւերուն, ընկերներէ անտեսուած, մեռաւ եթէ չեմ սխալիր 1910 Թուականին։



ԿԱՐՆՈՅ ՀԱՄԱՅՆԱՊԱՏԿԵՐԸ

Ժամը 1–ը կար, երբ վերջապէս Բիծան որոշեց, որ ժամանակ է անկողնէն ելնելու եւ ... թէյ խմելու:

Խնդրեցի իրմէ, որ Ռոստոմի բնակարանը ցոյց տայ ինծի: Կամաց մը խնդաց, բայց խոստացաւ ինծի մէկու մը մօտ տանիլ, որ գիտէր Ռոստոմի տեղը:

Սկսնակի անհամբերութիւն ունէի այդ օրերուն. յուսահատութեամբ կը հետեւէի Բիծայի ծանր ու մեծ շարժումներուն, երբ լուացուելէ վերջ դանդաղօրէն սկսաւ զգեստները հագնիլ: Անհամբերութեանս բաժակը լեցուեցաւ սակայն, երբ ծառան ֆըշֆըշացող սամավարը ներս բերաւ: Տէր Աստուած, իրիկուն կը լինէր շուտով, ու այս մարդը դեռ նոր պիտի նախաճաշէր:

.. Համեցէ՛ք խնդրեմ, սա վրացական հաց է, էս էլ պանիր, շատ համեղ են:

Մտքիս անցածը չէի կրնար ըսել, հետեւաբար, համեստօրէն պատասխանեցի, որ իսկապէս շատ համեղ են, անիծելով վրացական հացն ու պանիրը, նամանաւանդ երբ աճապարանքիս մէջ թէյը տաք տաք խմելով, բերանս խաշեցի: Մեր Բիծան սակայն, ըստ իր սովորութեան, ծանր ու մեծ նախաճաշը ըրաւ, առանց ազդուելու իմ աճապարանքէս, երկար մօրուքն ալ խնամքով սանտրեց հայելիին առջեւ կանգնած:

Քիչ մնաց երեսս խաչ հանէի, երբ Բիծան վերջապէս ապահարզան տուաւ թէյի սեղանին եւ ուղղուեցաւ դէպի դուռը, ես ալ ետեւէն:

Քաղաքին Դումայի կողքի փողոցի մէջ Բիծան խանութ մը մտցուց զիս ու դառնալով մեքենայի վրայ աշխատող մէկու մը՝ ըսաւ.

— Տօ տնաքանդ, նոր մարդ եմ բերել քու աշխարհիցդ, ծանօթացիր է՛...

Խանութպանը հազիւ էր գլուխը վեր առած, երբ երկու բացականչութիւններ միաժամանակ իրար փաչաձեւեցին.

— Հա՛յկ...

— Արտաշէ՛ս...

Ու պինդ փաթթուած իրարու համբուրուեցանք:

Հայկ Սանոսեանն էր, Կիւմիւշխանեցի. հազուագիւտ լաւ ընկեր մը: Արշակը, մեծ եղբայրը, Պոլսոյ ընկերներէն, Պապը Ալիի ձախաւեր դէպքէն վերջ, անցած էր Պուլկարիա, ուր եղերական վախճան մը ունեցաւ: Հայկը, համեստ ու տոկուն աշխատող մը,

ուր գացեր էր, գիտցեր էր գործին նուիրուիլ ամբողջովին, ընկերական տաք շրջան մը ստեղծելով իր շուրջը։ Խօսքի մարդը չէր. կը սիրէր գործել եւ զոհել։ Ամերիկա, Պոլիս, Եգիպտոս թէ Կովկաս միշտ նոյն անվհատ, անձնուէր ընկերն էր եղած, իր ամ-



ՌՈՍՏՈՄ ԶՕՐԵԱՆ

բողջ կարողութիւնը ի սպաս դնելով կուսակցութեան եւ ընկերներու։

Թիֆլիս գալով, կը կարծէի, թէ բոլորովին օտար շրջանի մը մէջ պիտի գտնամ ինքզինքս։ Եւ ահա առաջին օրն իսկ ընկերոջ մը կը հանդիպիմ։

Պատմեցի իրեն, որ եկեր եմ երկիր երթալու համար: Քչիկ մը քիթը բերանը ծամռկեց. չէ՞ որ Աղասէրն ու Առանձարն ալ միեւնոյն որոշումով էին ճամբայ ելած եւ կէս ճամբէն ետ դարձած: Այդ երկուքի վերադարձը, Եւրոպայի Դաշնակցութեան ուսանողութեան լաւագոյն ներկայացուցիչներուն, ընդհանրապէս շատ վատ տպաւորութիւն ձգած էր բոլորի վրայ: Հայկը կը վախնար որ, միեւնոյն պատմութիւնը կրնայ կրկնուիլ:

Հանգստացուցի Հայկը, որ Առանձարի պատմութիւնը չի կրկնուիր եւ որ, ինչ ալ ըլլին պայմանները, երկիր եմ անցնելու:

Այդ երեկոյ իսկ Հայկի առաջնորդութեամբ գացի Ռոստոմը տեսնելու:

Դժուար թէ կարողանամ ճշգրտօրէն պատկերել իմ առաջին տպաւորութիւնս այդ սքանչելի մարդու մասին: Տարիներու երկար շարք մը եկաւ անցաւ եւ սակայն ամբողջ քառասուն տարուայ ընթացքին չեղաւ եղակի դէպք մը, որ դէթ ժամանակաւոր կերպով զիս ստիպէր վերագնահատումի ենթարկելու իմ առաջին անգամին իսկ կազմածս անսահման հիացման տպաւորութիւնս: Ընդհակառակը, տարիներու ընթացքին աւելի հնարաւորութիւն ունեցայ խորապէս գնահատելու եւ սիրելի այդ եզակի մարդը, որու անսահման բարութիւնը, պարզունակ հոգին, երիտասարդները քաջալերելու անճիգ կերպը մեր կուսակցութեան մէջ բացառիկ դիրք մը ստեղծեր էին իրեն:

Չես գիտեր, թէ ինչի՞ մէջ էր իր ուժը: Եւ սակայն չէիր կրնար չխոնարհիլ այդ ուժին առջեւ: Լիտըր մ՚էր, առանց գիտնալու կամ զգացնելու, բարոյական խոշոր արժէք մը, որու գոհունակ ժպիտը միայն, բաւական էր ծայրայեղ զոհողութեան ընդունակ դարձնելու որեւէ երիտասարդ:

Չեմ գիտեր ի՞նչու, ես միշտ Ռոստոմը խոտերու մէջ թաղուած գարնան մանուշակի եմ նմանցուցեր. հազիւ թէ կ՚երեւի եւ սակայն բուրմունքը կը զգաս, անով կը գինովնաս:

Ինծի կը թուէր թէ, Ռոստոմին հանդիպելով, ես Քրիստափորի չարունակութեանը կը հանդիպիմ, այնքան անոնք նման էին իրար որոշ գծերով:

Սիմոնի նամակը յանձնեցի իրեն, որով կը յայտնէր թէ իր աշակերտներէն եմ եղած Տրապիզոն, Ամերիկայի ընկերներէն, որ երկիր եմ անցնելու:

Վերէն վար գլխ չափչփելով Թեթեւ, բարի ժպիտ մը ուրուագծուեցաւ դէմքին : Յանձնարարեց Հայկին որ ինձ ուշադրութիւն դարձնէ, քանի որ Թէ՛ տեղական լեզուին եւ Թէ՛ քաղաքին բոլորովին անծանօթ մ'էի :

Բաժնուեցանք իրարմէ՝ յաջորդ օրը տեսնուելու խոստումով :

* * *

Քանի մը օրեր անցան : Ես սկսնակի իմ անհամբերութեամբ կ'ուզէի, որ օր առաջ դրութիւնս որոշուէր, ու... երկիր անցնէի : Ինծի կը Թուէր Թէ երկիր անցնելու միտքը բաւական է. դեռ չէի գիտեր, Թէ ահագին դժուարութիւններ կային առջեւս : Խամ էի : Մինչեւ որ ես ալ իմ կարգիս հինցայ, շատ փորձանքներ անցան գլխովս :

Զորրորդ կամ հինգերորդ օրն էր, եւ ահա նոր պատմութիւն մը : Ռոստոմը իր հանդարտ կերպովը առաջարկեց, որ «Փոքրիկ»ի մէջ մնեմ, որպէս հարաւաներուն ներկայացող գործակալը կուսակցութեան : Եւ երկարօրէն բացատրեց ինծի Փոքրիկի էութիւնն ու կատարած եւ կատարելիք աշխատանքը :

Խելքիս պառկելու բանը չէր, բայց դէհ ինչ օրուան յեղափոխական էի, որ մերժէի... միայն ըսի, որ ոչ լեզուն գիտեմ, ոչ ալ քաղաքը կը ճանաչեմ, իսկ այդ երկու յատկութիւնները անհրաժեշտ են գործի յաջողութեան համար :

Պզտիկ քաղաքականութիւն մըն էր ըրածս ու Ռոստոմը հասկընալով վարպետութիւնս, սկսաւ ծիծաղիլ : Զգաց, որ խելքս միտքս երկիր երԹալու վրայ էր, մնամ ալ, խեր մը չպիտի բերեմ :

Բարեբախտութիւն էր, որ այդ ժամանակ Սալմաստի ներկայացուցիչ Սամսոնը, երկար տարիներ այդ շրջանը մնալէն բեզարած, դիմած էր Բիւրոյին, յայտնելով, Թէ կ'ուզէ գէթ ժամանակաւոր կերպով հեռանալ. կը խնդրէր, որ իր տեղը ուրիշ մէկը ղրկուի :

Ռոստոմը ըսաւ ինձ, որ երԹամ ուղիղ Թաւրիզ ու անկէ Սալմաստ, ուր Թէ գործերուն կը ծանօԹանամ, ու Թէ լաւ պատեհութիւն մը լինելու պարագային կ'անցնիմ երկիր : Քանի մը անգամ կրկնեց, Թէ 6–7 ամիս սահմանի վրայ աշխատիլը վերջէն երկրին մէջ գործելու համար շատ օգտակար կը լինի :

Այն ժամանակ դեռ լաւ չէի հասկնար Ռոստոմի հեգնական նուրբ ժպիտը։ Շատ ուկար Թոքերով, նիհար, աղքկայ քնքշութեամբ, ելեր էի երկիր երթալու, կարծես այդ հարսնիք երթալ ըլլար։

Օր մը Արմէն Գարօն ճաշի հրաւիրեց զիս։

Գարօն կ'ապրէր Մատինեաններու հետ միեւնոյն տանը։ Անոր միջոցով ծանօթացայ այդ ընտանիքի անդամներուն հետ, որոնք այնքան մեծ դեր խաղացած էին Դաշնակցութեան կազմութեան ժամանակ։ Այդ տունը, որ Դաշնակցութեան Պայոնց տունը պէտք համարել, դեռ ուխտաւնական Թուականներէն սկսեալ, իսկական օճախն էր դարձած կովկասահայ մտաւորականութեան, ուր եւ դարբնուեցաւ Հայ Յեղափոխականներու Դաշնակցութիւնը։



ՆԱԹԱԼԻԱ ՄԱՏԻՆԵԱՆ

Այդ ընտանիքին երեք անդամները Նաթալիան, Նիկոլը, եւ Սաթենիկը, Դաշնակցութեան ամենաեռանդուն գործիչներէն էին, մասնաւորաբար Նաթալիան, որ անձնապէս մօտ ընկերական կապերով կապուած մեր մեծ ընկերներուն, գրեթէ միակն էր որպէս իգական սեռի ներկայացուցիչ։

Վերջէն Սաթենիկը իր յեղափոխական գործունէութեամբ յայտնի դարձաւ, բայց սկզբնական տարիներուն Նաթալիան էր Դաշնակցութեան հիմնադիրներուն հետ, որ տարաւ ամէն կարգի նեղութիւն եւ զրկանք, յանուն գաղափարի։ Տարիներ շարու-

նակ, անոր անկողինը մէկ Մէտէխի բանտը, մէկ իրենց տունը կը փոխէր։ Ամբողջովին անձնուիրութիւն, այդ բացառիկ օրիորդը, Դաշնակցութեան լաւագոյն աւանդութիւններու իսկական ներկայացուցիչը մնաց մինչեւ իր մահը, որ տեղի ունեցաւ քանի մը տարի առաջ։ Դաշնակցութեան պատմութեան մէջ այդ շատ բացառիկ պայծառ դէմքը, իր արժէքաւոր տեղը ունի։ Ան, ինչպէս շատերը մեր մեծերէն, ռուսական գաղափարապաշտ ոգիով կրթուած, հայ գործիչներ էին։ Քրոջը, Սաթենիկի մասին պիտի խօսիմ իր կարգին։

Դժբախտաբար այդ ժամանակ, Իշխանը աքսորուած էր Արխանդելի սառուցեալ շրջանը, իր կնոջ՝ Սաթենիկի հետ եւ ես հնարաւորութիւն չունեցայ իմ սիրելի ուսուցիչս տեսնելու։

* * *

1890 թուականին էր, Դաշնակցութեան հիմնուած տարին, երբ ըստ սովորութեան գիւղագնացութենէ վերադարձած, կարծեմ քիչ մը դժկամակութեամբ դպրոց գացեր էինք։

Այդ տարի դպրոցը դեռ տեսուչ չունէր։ Կ'ըսէին, թէ ուսուցչական խումբ մը պիտի գար Ռուսաստանէն եւ թէ համալսարանական տեսուչ մը պիտի ունենայինք։

Հիմակ հաստատ չեմ գիտեր, թէ ի՞նչ կը հասկնայինք այն ժամանակ համալսարանական տեսուչ ըսելով, բայց ապահովաբար արտակարգ բան մը կը սպասէինք, սանկ այնպիսի մէկը, որու դէմքը նայելով կարելի էր հասկնալ, թէ համալսարանը աւարտեր է։ Ու անհամբեր կը սպասէինք այդ նշանաւոր օրուան։

Վերջապէս, գեղեցիկ օր մը, դեռ կէս օրուայ հանգստի ժամանակը չլրացած, մեզ հաւաքեցին դպրոցին մեծ սրահը։ Աշակերտներէն ոմանք տեսած էին ուսումնական խորհուրդի ատենապետի հետ 2–3 օտարականներու մուտքը դպրոց։ Մէկու մասին մասնաւորապէս տաք տաք կը խօսէին աշակերտները։ Բարձրահասակ, լայն թիկունքով, շատ գեղեցկադէմ երիտասարդ մը, որը բոլորի կարծիքով անպատճառ տեսուչը լինելու էր։

Ամբողջ դասարաններու աշակերտութիւնը հաւաքեցին դըպրոցին վերի մեծ սրահը։

Վերջապէս տեսչարանի դուռը բացուեցաւ եւ Գասպար Խանետանեանի առաջնորդութեամբ նորեկներ ներս մտան սրահը։

Տիրեց խոր լռութիւն ։

— Շատ ուրախ եմ, որ այսօր բախտ ունիմ ձեզ ներկայացընելու ձեր նոր տեսուչը, — ըսաւ պարոն Խանետանեանը բարձրանալով ամպիոնի վրայ, — կը յուսամ, որ աշակերտներդ լաւ պիտի



Ս. ԶԱՒԱՐԵԱՆ
(ՏԵՍՉՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԻՆ)

աշխատիք օգտուելու համար այս պատեհութենէն ։ Հիմակ կը հրաւիրեմ ձեր նոր տեսուչը ձեզի քանի մը խօսք ըսելու ։ Հրամ-

մեցէ՛ք պ. Զաւարեան։

Զէ՛, մեր սպասածը չէր. միջահասակ, սեւ երկար մազերով, գրաւիչ դէմքով, քիչ մը կանացի շարժուձեւով, գրեթէ պատանի երիտասարդ մը բարձրացաւ ամպիոն։ Հարիւրաւոր աչքեր վրան գամուեցան։

Ու Սիմոնը սկսաւ իր առաջին ճառը, որ աւա՜ղ վերջ չունեցաւ։ Հազիւ քանի մը խօսք կմկմաց, սաստիկ շփոթեցաւ, կասկարմիր դարձած ալ չկրցաւ շարունակել։

Բարեբախտաբար պ. Խանետանեանը հերոսաբար օգնութեան հասաւ անոր, վերջացնելով անոր կիսատ ձգած նախադասութիւնը։

Այդպիսի անփառունակ վերջ ունեցաւ Սիմոնի առաջին ճառը, որ եթէ ուրիշ ուսուցչի մը պատահած լինէր, լաւ էր որ օր առաջ ձգէր հեռանար դպրոցէն, ապագայ անախորժութիւններէ ազատուելու համար։

Սիմոնի ձախաւեր ճառը սակայն պատճառ մը չէր, որ ամբողջ աշակերտութիւնը, առջի օրէն իսկ չկապուէր իր նոր տեսչին հետ։

Անկասկած Տրապիզոնը ունեցեր էր կարող տեսուչներ՝ Պօպաճեան, Տօքթ. Թիրեաքեան, իբրպէս գիտնականի համբաւ վայելող Էթմէքճեան, վերջէն նաեւ յայտնի մանկավարժներ Քալանթար եւ Միրաքեան։ Բայց ասոնցմէ ոչ մէկը այդքան կարճ ժամանակի մէջ չէին կրցած աշակերտութիւնը սերտօրէն կապել իրենց։

Կը յիշեմ թէ ի՜նչ անհամբերութեամբ կը սպասէինք Սիմոնի դասերուն։

Ներս կը մտնէր, ուշ մնացած աշակերտի մը նման, կարմրելով եւ ընկերաբար կը սկսէր դասը։ Ո՛վ զարմանք. բոլորս հանդարտ կը մնայինք նստած տեղերնիս, ուշադիր հետեւելով իր երկրաբանութեան դասերուն։

Դպրոցէն ներս, այլեւս ոչ ապտակ, ոչ ծունկի չոքիլ, ոչ ճըպոտ։ Կարծես մեր դպրոցական կեանքի մեղրալուսինը լինէր, երբ աշակերտութիւնն ու ուսուցչութիւնը այնքան համերաշխութեամբ կ՚աշխատէին։

Կարծեմ Սիմոնի Գողգոթան կը սկսէր աղջկանց վարժարանը, ուր ինքը, աղջիկէ մը աւելի ամչկոտ, չէր գիտեր՝ ինչպէս աչքե-

րը վեր վերցնէր։

Սիմոնը այն ժամանակ հազիւ 22 տարեկան էր։ Մենք աշակերտներս խոր յարգանք մը ունէինք մեր ճաշիլ տեսչին հանդէպ, բայց շատ կը սիրէինք Յովսէփը, որ կէսօրուայ խաղաժամին, կատարեալ ընկեր մը եղած էր մեզ՝ ղեկավարելով մեր խաղերը, քաջալերելով մեզ իր բարձր, սրտագին ծիծաղովը։

Հետզհետէ եկան Եուսուֆեանը, Ռուբէն Խանազատը, Աչըքկէօզեանը։ Տեղացիներէն կային Էթմէքճեանը, Մարիմեանը, Խուչպուլեանը։ Ունեցանք այնպիսի ուժեղ ուսուցչական կազմ մը, որու նմանը հազիւ թէ Տաճկաստանի որ եւ է դպրոց ունենար։ Զտեսնուած փանդալանութեան շրջան մըն էր։ Մեր զոյգ դպրոցները դարձեր էին հասարակութեան գուրգուրանքի առարկան. հաստատուն եկամուտներով հազիւ կիսովին ապահովուած, պիտաճէն ամբողջովին կը լրացուէր աշակերտներու թոշակներով։

* * *

Արժէ երկու խօսք ըսել Տրապիզոնի դպրոցներու մասին, որոնք դեռ եօթանասունական թուականներուն իսկ, համեմատաբար բարձր մակարդակի մը վրայ կը գտնուէին։ Տոքթ. Թիրեաքեանի կարծիքով, այդ դպրոցները կը հաւասարէին Պոլսոյ լաւագոյն դպրոցներուն։

Զարմանալի բացառութեամբ, Տրապիզոնի բուռ մը հայութիւնը, որ հազիւ 8–900 ընտանիքէ կը բաղկանար (երբ ներքին գաւառներու մէջ դեռ Տէր Թոթիկեան ծաղկոցներ միայն գոյութիւն ունէին) կանգ չառնելով մեծամեծ զոհաբերութիւններու առաջ, երկու փառաւոր ազգապատկան վարժարաններ կը կառուցանէր՝ աղջկանց եւ տղայոց համար։ Սկզբնական շրջանին ղեկավար տեսուչները գրեթէ բացառաբար Պոլսէն կուգային, 90 թուականէն վերջ եւ Կովկասէն։ Պօղաճեանի եւ Տոքթ. Թիրեաքեանի կարճատեւ պաշտօնավարութենէն վերջ, Սահակ Էթմէքճեանի երկարատեւ եւ արդիւնաւոր տեսչութեան շրջանին, զոյգ դպրոցները փայլուն կեանք մը ունեցան։ Այդ քիչ մը չոր, խիստ մարդը, որու հանդէպ հասարակութիւնը եւ աշակերտութիւնը խոր յարգանք կը զգար, Պոլսոյ Նուպար–Շահնազարեան վարժարանէն ընթացաւարտ էր։ Դասընկեր եւ մտերիմ Եղիա Տէմիրճիպաշեանի եւ Մինաս–Չերազի, եթէ չունէր առաջինի գրական

տաղանդը եւ ոչ ալ երկրորդի հասարակական եւ ազգային ջիղը, բայց օրինակելի գիտնական ուսուցիչ մըն էր, ամբողջովին դըպրոցական գործին նուիրուած։

1885 Թուականէն, իրար յաջորդող դպրոցական սերունդները շատ բան են պարտական Սահակ Էթմէքճեանին որ աւելի քան 15 տարիներ, հմտօրէն վարեց զոյգ վարժարանները՝ երբեմնակի ընդմիջումներով։

Դժբախտաբար Դ. Քալանթարեանի տեսչութիւնը, շատ կարճատեւ եղաւ։ Եռ ու զեռի օրեր էին, նոր հովերու մարդիկ էին հարկաւոր, Քալանթարեանը կրնար լաւ մանկավարժ մը լինել, բայց տիրող տրամադրութեան անհամապատասխան, ան չկրցաւ ոչ հասարակութեան եւ ոչ ալ աշակերտութեան համակրանքը գրաւել։ Երկու տարի հազիւ մնաց ու հեռացաւ։ Սահմանադրութենէն վերջ, Պոլիս, «Ազատամարտ»ի խմբագրատան մէջ հանդիպեցայ իրեն։ Պատկառելի եւ չափազանց սիրելի անձնաւորութիւն մը, որուն սակայն այնքան չէինք սիրեր, աշակերտութեան շրջանին։


ՍԱՀԱԿ ԷԹՄԷՔՃԵԱՆ

Տրապիզոն եկաւ եւ յայտնի մանկավարժ Յ. Տէր Միրաքեանը, որ սակայն մէկ երկու ամիսէն ստիպուած հեռացաւ Թուրք կառավարութեան պահանջով։

Զաւարեան, Եուսուֆեան, Խանազատ եւ Արղութեան չորրորդութեան մասին պէտք ըսել որ, անոնք թէեւ ուսուցիչներ, բայց որոշ միսիայով մը եկան, տեւեն մը, երբ ամբողջ ժողովուրդը հայրենասիրական զարթօնքի մը փոթորկալի ապրումներով կ՚ոգեւորուէր։ Բնականօրէն անոնք հանդիպեցան հասարակութեան գրկաբաց ընդունելութեան։

Արզրումեանի եւ Զաւարեանի ձերբակալութենէն վերջ, Եուսուֆեանն ու Խանազատը մնացին, ուսուցչի դիմակի տակ՝ յեղափոխական առաքեալներ։



ԽԱՆ–ՆՇԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ
(ՌՈՒԲԷՆ ԽԱՆԱԶԱՏԵԱՆ)

Խանազատը իր կենդանի բնաւորութեամբ օրուայ մարդն էր։ Քիչ ցուցական, հասարակութեան ամէն խաւերուն հետ շփուող, լեզուանի, եւ ոչ շատ ալ զգուշաւոր, ամբողջ Տրապիզոնցիներու սիրելին էր, մինչ Եուսուֆեանը, ինքն իր մէջ ամփոփուած, ստորերկրեայ աշխատող մը, աչքի չէր զարներ։ Սակայն երկուքն ալ սիրուած էին աշակերտութենէն, որ աւելորդ է ըսել, կ'արցէր այդ օրերուն, ազգային խօսքներով։

Պարզ պատահականութիւն մը չէր այն հանգամանքը, որ դեռ 90 թուականին այդքան կարեւոր անձնաւորութիւններ եկեր էին այդ քաղաքը։

Տրապիզոնը իր աշխարհագրական դիրքով Հայաստանի նախադուռն էր։ Անկէ կ'անցնէին յեղափոխական գործիչներ դէպի երկիր կամ Պոլիս։ Եւ այդ է պատճառը որ թէ՛ Հնչակեան եւ թէ Դաշնակցական կեդրոնական մարմինները ամենէն առաջ հոն հաստատուեցան։

Մինչդեռ Սիմոնը, Իշխանը եւ Խանազատը իրենց արտաքինով ու յարաբերութեամբ կը մնային կառավարութեան աչքին կասկածելի օտարականներ, Եուսուֆեանը, եկած օրէն իսկ, խոշորկէկ ֆէս մը անցուց գլխուն եւ գիտցաւ յարմարուիլ տեղացիներու նիստ ու կացին ու հնարաւոր չափով աննկատելի մնալ։ Գրեթէ ոչ ոք չէր կասկածեր, թէ այդ «զաւալլի» վարժապետը




ՏՐԱՊԻԶՈՆԻ ՀԱՄԱՅՆԱՊԱՏԿԵՐԸ

յեղափոխական առաքեալ մը, ամբարուած անսպառ եռանդի աղբիւր մը, ստորերկրեայ անդուլ աշխատող մըն էր: Յեղափոխական սերմերը յաջողապէս ցանելով Տրապիզոնի մէջ, քանի մը տարի վերջը անցաւ Պոլիս եւ հոն կուսակցական այնպիսի գործունէութիւն մը առաջ բերաւ, որու նման կուռ կազմակերպութիւն մենք հազիւ ունեցած ենք այդ շրջանին:

Թէկուզ այն հանգամանքը միայն, որ Եուսուֆեանը Պոլսոյ մէջ կարողացաւ իրար մօտ բերել եւ միեւնոյն գործին լծել Դեւեանը, Բարկէն–Սինին, Վռամեանը, Գնունին, Գիսակը (Վարդգէս), Միսաքեանները, նախապատրաստել Պանք Օթօմանի եւ Պապը–Ալիի ցոյցերը, անհերքելի ապացոյց են այն բեղմնաւոր աշխատանքին, որ ան կատարեց Պոլիս եւ անկէ առաջ Տրապիզոն:

Եուսուֆեանը կարողացաւ Պոլսոյ երիտասարդութեան հայրենասիրական բարձր տրամադրութիւնը դէպի յեղափոխական պայքարի ճամբան չեղել: Շրջապատուած, մեծամասնաբար գաւառացի մտաւորականներով, ան իրեն յատուկ եռանդով նետուեցաւ ազգային խնդիրներու մէջ, որոնք մինչ այդ որոշ դասի մը մօնօբօլը կը համարուէին: Հետզհետէ զարգացող ներքին պայքարը սակայն, տարբեր անուններ կրող, բայց նոյն նպատակին դիմող կուսակցութիւններու մէջ, պատճառ դարձաւ դէպքերու, որոնք կը թուի թէ այդ խառն օրերուն, անխուսափելի էին:

Այդ ծանր խնդիրներէն մէկը եղաւ, Պոլսոյ «Հայրենիք»ի հետ Եուսուֆեանի ունեցած կատաղի պայքարը, որը հասաւ մինչեւ Արփիար Արփիարեանի տեռորին: Մէկ երկու խօսք այդ տեռորի մասին, որ այնքան մեծ աղմուկ հանեց ժամանակին:

Պայծառ իմացականութեամբ օժտուած, տաղանդաւոր գրագէտ եւ հրապարակագիր Ա. Արփիարեանը, զարմանալի թեթեւամտութեամբ մը սակայն, յեղափոխական դրօշակակիրի մը հանգամանքով հրապարակ իջած էր, ղեկավարելու ազգային շարժումը: Ան տաղանդաւոր եւ լիպերալ լրագրող մ'էր, սուր քննադատ մը, բայց միեւնոյն ժամանակ, անկայուն նկարագիր մը, իր էութեամբ անհաւատ մը, եւ ոչ մէկ տուեալով արժանի յեղափոխական ղեկավար մը լինելու: Անձնական նախասիրութիւններով առաջնորդուող, որոնք տարուայ չորս եղանակներու նման յարափոփոխ էին: Արփիարեանը նման շարժում մը ղեկավարելու ո՛չ լրջութիւնը ունէր, ո՛չ պատրաստութիւնը եւ նկարագիրը: Մանկական անփութութեամբ նետուէր էր շարժման

մէջ, ու ղազեթաճիական գրչակռիւի մը նման, կ'ուզէր ղեկավարել ժողովրդական շարժումը:

Բնականաբար Պոլսոյ յեղափոխական սահմանափակ ասպարէզին վրայ, այդ երկու հակոտնեայ ուժերը պիտի ընդհարէին իրարու, առանց միջին ճամբայ մը գտնելու:

Ու օր մը, Դաշնակցական տեռորիստի դաշոյնի հարուածներու տակ վիրաւոր ինկաւ արեւմտահայերու տաղանդաւոր հրապարակագիրը: Ի՞նչ էր սակայն մեղադրականը, արդարացնելու համար նման տեռոր մը: Մէջտեղ կար մեղայագիր մը, Արփիարեանէն ստորագրուած բանտէն ելնելէն վերջ: Այդ աքթը կարելի էր ներելի, եւ դեռ որոշ չափով հասկնալի համարել գրագէտ Արփիարեանին, բայց անկասկած որ յանցանք մըն էր յեղափոխական չէֆի մը համար, որ որպէս թէ Հնչակեան կուսակցութեան Պոլսոյ ղեկավարը կը համարուէր: Դատ եւ հարցաքննութեան մը պատճէնը, որու մէջ Արփիարեան իրեն յատուկ թուլամորթութեամբ, կաշին փրկելու համար կանգ չէր առներ այնպիսի ցուցմունքներ ընելու, որոնք հաւասար էին մատնութեան: Այս տոքումանի վաւերականութեան մասին, կասկածներ մինչեւ այսօր ալ գոյութիւն ունին, բայց հանգամանք մը անկասկածելի է, որ նոյնիսկ Արփիարեանի մօտիկ ընկերները, նման խոստովանութիւն մը անկարելի չէն համարեր, Արփիարեանի փոփոխամիտ, անվստահելի նկարագիրը նկատի ունենալով:



ԱՐՓԻԱՐ ԱՐՓԻԱՐԵԱՆ

Ըսենք հոս, որ անգամ մը Վենետիկի մէջ փորձելէ յետոյ, Եգիպտոսի մէջ, իր ընկերներուն ձեռքով, որոնց կուռքն էր տարիներ շարունակ Արփիարեանը, ինկաւ այդ տաղանդաւոր հրապարակագիրը, զոհ մը իր անձնական թեթեւամիտ եւ անլուրջ նկարագրին:

Եթէ այսօր, տարբեր պայմաններու մէջ կրնանք նոյնիսկ ներողամտաբար վերաբերուիլ Արփիարեանի սայթաքումներուն, այն օրերուն սակայն, նման վերաբերմունք մը անթոյլատրելի էր: Չպէտի մոռնանք որ Պոլիսը աքթիւ գործունէութեան վայր մ'էր, տեսակ մը ղեկավարող մտաւոր կեդրոնը ներքին գաւառներուն, իսկ Արփիարեանը իր լիտեր մը լինելու հանգամանքով ծանր բարոյական պատասխանատուութեան տակ, որմէ չէր կրնար խուսափիլ: Անշուշտ մեծ դեր կատարած է եւ կուսակցական հակամարտութիւններով թունաւորած մթնոլորտը:

Տարիներ վերջը երբ կ'անդրադառնանք այդ տեսորին, ու շարք մը ուրիշներու, խորապէս կ'ըմբռնենք այն անել վիճակը, ուր մէջ կը գտնուէին յեղափոխական գործիչները, որոնքստիպուած էին անլեկալ միջոցներով պայքարիլ չարիքը արմատախիլ ընելու, եւ հետեւաբար պարտաւորուած էին ծայրայեղ միջոցներ ձեռք առնելու:

Նման դժբախտ անհրաժեշտութիւն մ'էր եւ Արփիարեանի Պոլսոյ տեռորը:

* * *

Դաշնակցութեան սկզբնական օրերէն մինչեւ 1897 թուականը Եուսուֆեանը կը մնայ տիրապետող դէմք մը մեր կուսակցութեան մէջ: Անոր գործունէութեան շրջանը կ'ընդգրկէ շատ ընդարձակ տարածութիւն մը, Տրապիզոն, Պոլիս եւ Ամերիկա:

Եւ սակայն կը թուի, թէ նոյնիսկ մեր կուսակցութիւնը՝ այդ կորովի, աննկուն յեղափոխականին — որու գործունէութիւնը Ամերիկայի դժբախտ գործիչութեամբ ալ վերջացաւ — արժանաւոր տեղը չէ տուած մեր կուսակցութեան պատմութեան մէջ:

Եուսուֆեանի բացառիկ գործունէութիւնը 90–97 թուականներուն, պէտք է վեր հանուի նոյն շրջանի ապրողներու կողմէն, որոնք աւա՜ղ մէկիկ մէկիկ մեզ կը լքեն, տանելով իրենց հետ թանկարժէք յիշողութիւններ, որոնցմով է որ պիտի լրանայ մօտիկ անցեալի, քաղաքական անակնկալներով հարուստ մեր պատմութիւնը: Նոյնիսկ Ամերիկայի մէջ, ուր Եուսուֆեանը սկիզբը դրաւ Դաշնակցութեան անհնարին մարտիրոսութեան գնով, ան պէտք եղած չափով չէ ծանօթացուած ներկայ սերունդին, ու շատ հազուագիւտ Դաշնակցականներ են, որ բաներ մը լսած լինին անոր մասին:

Հազիւ 2–3 ամիս անցեր էր դպրոցներու վերաբացումէն, երբ

* * *

աշակերտութիւնը, ինչպէս եւ հայ հասարակութիւնը, յանկարծակի ցնցուեցաւ՝ լսելով, որ մեր սիրելի տեսուչը եւ մեր խաղընկեր Յովսէփը, Թուրք կառավարութեան կողմէ ձերբակալուած են։

Ոստիկանութիւնը՝ նախօրօք հոտը առնելով՝ գաղտնապէս կը հետեւի անոնց եւ կը յաջողի նամակ մը ձեռք անցնել։ Այսպիսով դուրս կուգայ Սիմոնի եւ Յովսէփի իսկական գոյնը։

— Ծօ՛, լսեցի՞ր։

— Ի՞նչ կայ որ։

— Էն պարոն Յովսէփը, որուն հետ Ստամպօլ-թալխասի կը խաղայինք...

— Է՛, վերջը՞...

— Ծօ՛, ի՞նչ վերջը, հայ իշխան է եղեր, իշխան Յովսէփ Արղութեան։

Ու բերնէ բերան հազար ու մէկ պատմութիւններ սկսան ծայր առնել։ Չեմ սխալուիր, երբ ըսեմ, թէ չկար տուն մը ամբողջ Տրապիզոնի մէջ, որ այդ երկու երիտասարդներու ձերբակալման օրը սուգ մտած չըլլար։

Անոնց ձերբակալման յաջորդեց Խուշպուլեանի փախուստը, ինչպէս եւ Մարիմեանի ձերբակալութիւնը։

Չմոռնանք եւ ա՛յս երկու հայրենասէր երիտասարդ ուսուցիչները, որոնք իրենց ժամանակին Տրապիզոնի երիտասարդութեան մէջ դրական մեծ դեր մը խաղացին, պատրաստելով այն գետինը, որու վրայ ուռճացաւ յեղափոխական սերմը։ Երկուքն ալ Հնչակեաններ էին եւ այդպէս ալ մնացին մինչեւ վերջը։

Խուշպուլեանը, ճեմարանական մը, վերադարձեր էր Տրապիզոն, իր հայրենիքը, ուր ուսուցչական ծանր ասպարէզը ընտրած էր։ Հանդարտ մարդ մըն էր, քիչ մը չոր, եւ ինքնամփոփ եւ կարծես անժամանակ ծերացած։ Շատ կը մտածէր եւ քիչ կը խօսէր։ Հայերէնի ուսուցիչ էր, ինչպէս եւ ազգային պատմութեան։ Մեր սերունդին ներշնչեց ազգային ոգին, խանդավառ վերաբերմունք մը դէպի հայ լեզուն ու պատմութիւնը։

Ամէն տարիներու նման, 1980 Թուականին ալ Վարդանանց տօնի օրը, հասարակութիւնը, ինչպէս և երկսեռ վարժարաններու աշակերտութիւնը, հաւաքուած էր դպրոցի մեծ սրահը՝ ըստ սո-

վորութեան տօնելու ազգային այդ մեծ տօնը:

Անսպասելի կերպով բեմ կը բարձրանայ Խուշպուլեանը: Իր սովորական սառը անտարբերութիւնը մէկդի ձգած, որ կարծես դիմակ մը եղած ըլլար մինչեւ այդ վարագուրելու իսկական մարդը, ան կը սկսի ճառ մը, որ արդէն պատմական կը դառնայ...



ԵՐՈՒԱՆԴ ՏԱՇՕ
(ԻՇԽԱՆ ՅՈՎՍԷՓ ԱՐՂՈՒԹԵԱՆ)

«Կ'երթանք Տէղէրմէն Տէրէսին. հեռուէն փոշիի ամպ մը կ'երեւի. հետզհետէ կը մօտենայ այդ փոշիի սիւնը: Ի՞նչ է այդ: Խումբ մը ճամփորդներ, որոնք՝ թողելով իրենց հողն ու գութանը, տունն ու ազիզ ընտանիքը, ղուրպէթի ճամբան ձեռք առած են եւ կ'երթան Ստամպոլ դրամ վաստկելու: Ո՞վքեր են այդ սովալլուկ բեզարած ճամբորդները: Հայաստանցի հայեր են: Ի՞նչու ձգած են իրենց հայրենի հողին վրայ զուլումն է ոտք դրեր, եւ ճրժ ու պժերը ձգած բախտի հոգատարութեան՝ կ'երթան օրապահիկ ճարելու»...

Ու երկար, հրաշունչ ճառով մը ան բացատրեց Հայաստանի վիճակը, մեր պարտքը հանդէպ անոր եւ այն յեղափոխական ճամբան զոր պէտք էր ազգովին որդեգրէինք:

Ընդամէնը երկու օր վերջը Թուչպուլեանը ծպտուած կը փախչէր Տրապիզոնէն, մինչդեռ Մարիմեանը անակնկալի եկած կը ձերբակալուէր, Մամբրէ վարդապետի մատնութիւններուն հետեւանքով։ Վերջէն այդ վարդապետը, իր արժանի պատիժը գտաւ, Դաշնակցական տեռորիստէ մը։

Տարիներ վերջը Թուչպուլեանը տեսայ Տրապիզոն եւ սակայն երանի չտեսնէի. նախկին մարդու ստուերն էր մնացեր միայն։ Այն չարքաշ, զրկանքներով լեցուն կեանքը, զոր անցուցեր էր արտասահմանի մէջ, խորապէս ազդեր էր իր հոգւոյ ու մտքի վրայ։ Նախկին յեղափոխականը տեղի էր տուեր հոգեկան հիւանդի մը, որու հաւատամքն էր՝ «հայ եկեղեցին կրնայ փրկել ազգը. պէտք է եկեղեցին պինդ պահել»։

Պետրոս Մարիմեանը հայ-կաթոլիկ ծանօթ ընտանիքի մը զաւակն էր։ Պէտք է իմանալ այն շրջանին երկու համայնքներու միջեւ տիրող թշնամական ոգին՝ գնահատելու համար Մարիմեաններու կատարած դերը։ Երբ դպրոցական աշակերտներս կը հանդիպէինք իրարու, կաթոլիկները մեր ետեւէն կը պոռային «հայ-ի քայ». մենք ալ վար չէինք մնար, կը կանչէինք զիրենք՝ կաթոլիկ, պոչը կտրած։ Արդար լինելու համար պէտք է խոստովանիլ, որ ընդհանրապէս նախայարձակները մենք կը լինէինք։

Մարիմեանը մեր գծագրութեան ուսուցիչն էր, միեւնոյն ժամանակ եւ աւստրիական քոնսուլաթի թարգմանը։ Կարծեմ՝ աւարտած էր Վենետիկի Մուրատ-Ռաֆայէլեան վարժարանը։

* * *

Երկու համայնքներու սկզբնական աններող ոգին հետզհետէ թուլանալով, տեղի տուաւ սերտ համագործակցութեան մը, շնորհիւ մասնաւորաբար հայ-կաթոլիկ երիտասարդութեան, որոնց մէջ այնպիսի հայրենասէր եւ լայնամիտ դէմքեր կային, ինչպիսիներն էին՝ Պետրոս Մարիմեան, Տիգրան Կիւրեղեան, Կոմիտաս Հէքիմեան, Մկրտիչ Երեմեան, Յակոբ Աստուրեան, Ստեփան Եղիազարեան եւ շարք մը ուրիշներ։

Ասոնք բոլորն ալ Վենետիկի Մուրատ-Ռափայէլեան աշակերտներ էին, մեծցած եւ սնած Ալիշանեան վարդապետներու հայրենասէր շունչով, որոնք վերադառնալով Տրապիզոն, վերցուցին այն մէջնորմը, որ ստեղծուեր էր դժբախտաբար նոյն ազ-

գի կրօնական երկու հաստատութիւններուն միջեւ։

Ազգային վարժարանի քոնցերտներն ու թատերական ներկայացումները, հաւաքական ուժերով կը տարուէին։ Կրօնական նեղմտութիւնը այնքան էր նուազած, որ ազգային երկսեռ վարժարաններու տեսչութեան կոչուեցաւ Յակոբ Աստուրեանը, մէկը մեր լաւագոյն ուսուցիչներէն։

Մարիմեանը յանկարծակի ձերբակալուելով, ինչպէս ըսինք Մամբրէ Վարդապետի մատնութեան պատճառով, Պոլսոյ մէջ դատուելով դատապարտուեցաւ ցկեանս բերդարգելութեան, Աքիայի մէջ։ Մօտ վեց տարի այդ դժոխքին մէջ ապրելով, ընդհանուր ներումէն օգտուելով՝ անցաւ Կովկաս։ Սահմանադրութեան շրջանին նորէն անցաւ իր ծննդավայրը Տրապիզոն, ու տեղահանութեան ժամանակ, միւսներուն հետ այդ հայրենասէր երիտասարդն ալ զոհուեցաւ։

Երկու խօսք ալ Բիւզանդ Թխիկեանի կամ, ինչպէս Ամերիկայի մէջ ծանօթ է, Բագրատունիի մասին։

Երկար տարիներ Կովկաս եւ Պարսկաստան չափչփելէն վերջը, օրին մէկը նորէն վերադարձաւ իր ծննդավայրը՝ Տրապիզոն, որպէս ուսուցիչ։ Մեծ եղած է եւ անոր ազդեցութիւնը մեր մանուկ սերունդին վրայ։

Միջադէպ մը իր ուսուցչական շրջանէն։

Օր մը Բագրատունին, որ մեր հայոց պատմութեան ուսուցիչն էր, վերջին ժամուն մեզ հետ պատմութեան դաս կ՚անցնէր։ Վարդանանց պատերազմի պատմութիւնն էր։ Մենք ականջ կտրած՝ կախուած էինք անոր շրթունքներէն։ Ու այդ տերվիշը իր սովորական ջերմ ոգեւորութեամբ կը յափշտակէր մեր երեւակայութիւնները եւ հինգերորդ դարը կ՚ապրեցնէր մեզի Ղեւոնդ Երէցով, ուխտապահ նախարարներով չքեղ։ Դասէն վերջը, երբ տուն կ՚երթայինք, երկու պարսիկ տղաքներու հանդիպեցանք։ Եւ ինչ խօսք, որ ինքզինքնիս եթէ ոչ քաջն Վարդանը, գէթ անոր զինուորներէն համարելով, քաջաբար յարձակեցանք թշնամիին վրայ ... ու լաւ ծեծեցինք պարսիկ տղաները, հակառակ որ պարսիկներու յարաբերութիւնները հայոց հետ միշտ ալ լաւ էին եղած Տրապիզոնի մէջ։

Մեր անփառունակ յաղթութիւնը քիչ մնաց ծանր հետեւանքներ ունենար...

Մանկական այս յիշողութիւններու շարանը փակելէ առաջ,

երկու խօսք ալ կ՚ուզէի ըսել Տրապիզոնցի այն կարգ մը յեղափոխականներու մասին, որոնք կամ դպրոցական ընկերներս են եղած, կամ որոնց մօտէն ճանչցեր եմ։ Ատոնց մէջ, ամենաչքի



ԵԳԻՊՏԱՑԻ (ԱՐՏԱՇԷՍ ԴԵՒԵԱՆ)

զարնողը Արտաշէս Դեւեանն էր, Եգիպտացին, որ իմ յեղափոխական կնքահայրս կը համարուի։

Դէվ-Եավրուսիին Արտաշը — այդպէս էր ծանօթ իր ծննդավայր Տրապիզոնի մէջ — մէկն էր այն եզակի անձնաւորութիւններէն, որոնք յեղափոխութեան սկզբնական օրերուն խանդավառօրէն լծուեցան գործի, ու այնքա՜ն վճռական դեր կատարեցին։ Համեստ արհեստաւոր ընտանիքի մը զաւակն էր. ազգային վարժա-

րանէն վերցուցած էր այն, ինչ որ գիտէր. կանուխէն օրապահիկը ճարելու համար, ծառայութեան մտած էր ոսկերիչ վարպետի մը քով: Շուտով սակայն Եուսուֆեանի ազդեցութեան տակ իյնալով, այդ քիչ մը հովարտայ երիտասարդը կերպարանափոխուեցաւ: Անցնելով Պոլիս հոն դարձաւ կազմակերպութեան ոգին, ղեկավարող մոգական գաւազանը: Իր յեղափոխական աշակերտներուն մէջ կան այնպիսի փայլուն դէմքեր, ինչպէս Բարկէն Սիւնին, Միսաքեանը եւ ուրիշներ: Չէ կատարուած յեղափոխական աքտ մը, ձեռնարկ մը, տեռոր մը, որ իր անմիջական հսկողութեան ենթակայ չլինէր: Եւ եթէ գործի մը պատասխանատուութիւնը վերցնէր վրան այդ հրաշալի դաւադիրը, կարելի էր վստահ ըլլալ գործի կատարեալ յաջողութեան:

Զարմանալի շնորհք մ'ունէր վստահութիւն ներշնչելու. սկըսած նորսկսնակ տեռորիստէն մինչեւ Թուրքական խաֆիէն իրենցը կը համարէին զինքը: Տեղը գար՝ յոյն էր, Թուրք էր, տաճկախօս հայ-կաթոլիկ էր: Ստեղծուած պայմաններուն յարմարուելու իր ընդունակութիւնը գերազանցապէս կ'օգնէր իրեն, յաջողութեամբ գործադրելու իր մտադրութիւնը. վճռական էր, եւ արագ մտածող:

95-ի վերջերն էր: Եկած էր Սամսոն, ուր՝ ոսկերչի խանութ մը բացած՝ յեղափոխական գործով կը զբաղէր:

Վերջին անգամ հոն էր, որ հանդիպեցայ իրեն: Եւ 96-ի Յունուար 24-ին, իր թելադրանքով մտայ Դաշնակցութեան շարքերուն մէջ:

Լայն ու պայծառ ճակատ մը, խոր թափանցող աչքեր, չէկ երկար բեխերը առնական խրոխտ արտայայտութիւն մը կուտային անոր գեղեցիկ դէմքին: Որսկան չան նման սուր հոտառութիւն մ'ունէր: Պանքայի ցոյցի մասին առանց իմանալու, բայց կռահելով որ Պոլիս բաներ մը կը դառնայ, հասած էր Պոլիս՝ ճիշդ ցոյցի օրը, առանց սակայն պանքան մտնալ կարենալու, ռումբերով բեռնաւորուած ընկերոջ մը ընկերանալով՝ ուշանալու պատճառով: Այդ ուշացումը իր սրտի ամենամեծ ցաւը եղաւ:

Սակայն, Եգիպտացին իր երկարատեւ գործունէութեան շըրջանին սպառեր էր իր երկաթեայ առողջութիւնը. թոքախտը տիրացեր էր թոքերուն: Այդ փոթորկալից կեանքը վերջ գտաւ հեռու՝ Նեղոսի ափերուն:

Տրապիզոնցի էր եւ Հայկ Թիրաքեանը, Պանք Օթոմանի Հրա-

չը։ Այդ զարմանալիօրէն բիւրեղեայ մաքրութեան տէր իտէա-լիստը, Տրապիզոնի Մխիթարեան վարժարանը աւարտելէ վերջ կ'անցնի Ֆրանսա, Նանսի քաղաքը, գիւղատնտեսութիւն ուսանելու, ուր եւ դասընկեր կը լինի Արմէն-Գարոյի։

Վրայ կը հասնի սակայն 95–96 Թուականի կոտորածները։ Վերին աստիճանի զգայուն հոգի մը, ինչպիսին էր Հրաչը, սարսափելի կերպով կ'ազդուի հետզհետէ հայկական նահանգներէ հասնող անօրինակ աղէտներու լուրերէն։ Առանց ափսոսանքի «մնաս բարեւ» կ'ըսէ դպրոցին ու ապագային, եւ կը նետուի յեղափոխութեան մարդակուլ ասպարէզը, դաւաճանութիւն համարելով այլեւս Եւրոպա նստիլ ինչ որ գիւղատնտեսութիւն ուսանելու համար, երբ հազարաւոր հայկական գիւղեր բոցավառ կը քանդուէին, ու հայ ժողովուրդը ամբողջութեամբ կը խաչուէր։



Հ Ր Ա Չ

(ՀԱՅԿ ԹԻՐԱՔԵԱՆ)

Բաբկէն-Սիւնիի եւ Արմէն-Գարոյի հետ, Հրաչը պանքան մտնողներու ղեկավարներէն մէկն էր։ Այդ ցոյցէն վերջ, Ժընեւէն կ'անցնի Կովկաս, ուր ատեն մը գործելէ վերջ կ'անցնի Պալքաններ, մինչեւ որ Իզմիրի ձեռնարկին որպէս ղեկավար, փախստական կը մնայ Իզմիր։ Հոն է որ կը ձերբակալուի Պալեօզեանի սպանութեան պատճառով, պատահական կերպով մը։ Տարիներ Իզմիրի բանտը ու Պոտրումի զընտաններուն մէջ մնալով, 1908ին սահմանադրութեան հռչակումով միայն այդ կենդանի թաղուածը լոյս աշխարհ կուգայ, միեւնոյն ճամբայէն քալելու համար, նոյն մաքուր հաւատքով, նոյն խանդավառ ոգեւորութեամբ։ Երկարատեւ տարիներու բանտարկութիւնը, ոչնչով չէր խաթարեր անոր պողպատէ հոգին։

Վերին աստիճանի ողջամիտ, եռանդուն աշխատող, ամբողջովին նուիրուած գործին, մանկունակ լինելու աստիճան պարզամիտ, ինչ գործի ալ որ ձեռնարկէր, ան անսահման եռանդով

կ՚աշխատէր, տեսակ մը անսանձ կատաղութեամբ: Վերջին տարիները, ան Պոլսոյ «Ազատամարտ»ի կառավարիչն էր, երբ վրայ հասաւ մեծ պատերազմը եւ մտաւորականներու աքսորը: Բախտի տարօրինակ մէկ խաղով, մէկ ուրիշ Հայկ Թիրաքեան մը կը ձերբակալուի եւ կը քշուի կարգ մը մտաւորականներու հետ Չանղրի: Թերեւս ուրիշ շատերու համար այս սխալանքը յարմար առիթ մը լինէր փոթորիկէն խուսափելու համար, բայց ոչ մեր աննման Հրաչի համար: Լսելով որ մէկ ուրիշը իր տեղ աքսորուեր է, Հրաչը առանց տատանուելու կը հեռագրէ պատկանեալ իշխանութեան, որ իր տեղ անմեղ մարդ մըն է ձերբակալուած, որ փնտռուած Հայկ Թիրաքեանը ինքն է: Հրաչի միակ այս աքթը, պայծառ կերպով կը պարզէ անոր սքանչելի բարոյական դիմագիծը: Գնաց ան ալ խառնուելու մտաւորականներու շքեղ կարաւանին: Ծայրայեղօրէն համեստ, աշխատունակ տայնամիք եռանդով, Հրաչը ինձ կը յիշեցնէ արդարութեան արձանը, կշիռը ձեռքը, աչքերը փակած: Անոր մէջ սէրը դէպի հայ ժողովուրդը, եւ արդարութեան գաղափարը՝ ֆանաթիկ եւ բացարձակ պաշտամունք մ՚էր:

Յակոբ Գարակէօզեանը (Զաւէն) Տրապիզոնի ունեւոր ընտանիքի մը զաւակն էր: Բնաւորութեամբ լռակեաց եւ միշտ խոհուն, ան հազիւ թէ ուշադրութիւն կը գրաւէր: Օր մը սակայն, կը դառնայ ամբողջ հասարակութեան ուշադրութեան առարկայ: Դեռ դպրոցական աշակերտ, իր մէկ ընկերոջ հետ, գաղտնի ճամբայ կ՚ելնէ Հայաստան երթալու, հոն հայ ժողովուրդի մէջ ապրելու ու անոր ծառայելու մտադրութեամբ: Ոչ ոք չէր կրնար կռահել թէ այդ մենակեաց, միշտ լուռ պատանիի հոգու խորքը, հայրենասիրական բուռն հրդեհ մը կը վառէր:

Զաւէնի ընտանիքը կառավարութեան միջոցով ետ բերել տըւաւ երկու պատանիները օրուայ մը ճամբայէ, որոնք ոտքով ու առանց միջոցներու կ՚երթային Հայաստանը ազատելու:

Վերջէն Կովկասի վրայով անցաւ Պոլիս, յեղափոխական աշխատանքի մէջ իր մասնակցութեան բաժինը ունենալու համար: Պապը-Ալին օդը հանելու նախապատրաստական աշխատանքներու ժամանակ, մատնուելով իր տունը կը շրջապատուի ոստիկաններով եւ զինուորներով: Զաւէնը չ՚ուզելով անձնատուր լինիլ, կը սկսի կրակել, վերջին փամփուշտը իրեն վերապահելով: Այդպէս, դեռ հազիւ նորաբոյս պեխերով այդ քնքուշ ծաղիկը, կը նա-

խընտրէ իր ձեռքով իսկ մատաղ կեանքին վերջ տալ, քան իյնալ ոստիկանութեան ձեռքը:

Զաւէնի դասընկեր եւ մտերիմ ընկերն էր Արամ Յակոբեանը (Կարէն), մէկը Դաշնակցութեան հին եւ պատասխանատու ընկերներէն: Դժուար պիտի ըլլայ այս շատ ամփոփ գրուածքովս տալ անոր կատարած աշխատանքի պարզ ուրուագիծը անգամ, այնքան որ հարուստ կեանք մը ունեցեր է ան:



ԶԱՒԷՆ
(ՅԱԿՈԲ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ)

Տրապիզոնի վարժարանը աւարտելով, ան տեղական մարմնին անդամ կը դառնայ, միաժամանակ վարելով Առաջնորդարանի քարտուղարի պաշտօնը: Կոտորածէն վերջ կ'անցնի Կովկաս, ուր որպէս Նահանգային Կ. Կոմիտէի անդամ, ան աչքառու դերք մը կը գրաւէ: Կը մասնակցի առաջին եւ երկրորդ ընդհանուր ժողովներուն: Անկէ վերջ, մինչեւ Սեւ Ծովի ափերուն, ան կը դառնայ մօտ վաթսուն հազար տաճկահայ գաղթականութեան իսկական առաջնորդը, թէ՛ յեղափոխական եւ թէ՛ կուլտուրական ու տնտեսական մարզին մէջ:

Պաթումէն մինչեւ Օտեսա, բոլոր Դաշնակցական ձեռնարկներուն մէջ, ան իր մասնակցութեան բաժինը ունեցեր է, մինչեւ մնալով աննկատելի, համեստ ծաղիկի մը նման: Իսկ պատերազմի ընթացքին, մասնաւորաբար յեղափոխութենէն վերջ, ան բախտորոշ դեր կատարեց գաղթական հայերու նկատմամբ, ա-

առաջնորդելով եւ ղեկավարելով զանոնք սարսափելի պայմաններու մէջ: Չեմ կարծեր թէ գտնուի այդ ահագին շրջանին մէջ տուն էրթիք մը, որ անոր անունը պատկառանքով արտասանած չլինի: Գրել անոր կեանքի մասին, համարժէք պիտի լինէր գրելու գաղթականութեան պատմութիւնը, այնքան որ անոնք սերտօրէն կապուած են իրարու: «Հայրենիք» ամսագրի ընթերցողները պատեհութիւն ունին զինքը կարդալու, ուր կ'երեւի ան Կարէն ստորագրութեամբ, պատմելով յեղափոխական եւ բոլշեւիկեան շրջանի անցուդարձերը:



ԿԱՐԷՆ (Արամ Յակոբեան)

Ծայրայեղօրէն համեստ եւ ինքնամփոփ, յարատեւ աշխատող եւ հասարակութեան շահերուն նուիրուած, Կարէնը մեր մեծ ընկերներու նման, լուիկ մնջիկ գործող մըն է, առանց անձնական փառասիրութեան, երեւնալու ցանկութեան: Հազիւ թէ Կովկասի առաջաւոր ընկերները գիտեն անոր իսկական արժէքը եւ կատարած մեծարժէք գործը, Դաշնակցական լայն զանգուածին համար ան անծանօթ մըն է, թերեւս եւ քիչ խորթ իր զգուշաւոր եւ չափուած քայլերով, գործելու զարմանալի ծանր եւ հանդարտ մեթոտովը: Շինարար աշխատաւոր մըն է, չիտակ, մաքուր եւ համեստ:

Այս թռուցիկ վերյիշումները գրած ժամանակ, անկարելի է չգրել Թոփալ Տէրտէրի մասին, որ առաջին Հայ կաթոլիկներէն մէկը եղաւ Հատիկի հետ, որ Դաշնակցութեան աքթիւ անդամ մը եղաւ, տարիներ անձնուիրաբար աշխատելէ վերջ անցաւ Կովկաս: Հոն ունեցած գործունէութեան մանրամասնութիւններուն դժբախտաբար ես անծանօթ եմ, կարծեմ Թաւրիզի մէջ թոքախտէ մեռաւ տէրտէրը (Աստուրեան), որուն առջի անունը մոռցեր եմ:

Ըսի որ Հատիկն ալ այն կաթոլիկ երիտասարդներէն էր, որոնք 90 թուականէն սկսեալ յեղափոխական աշխատանքի լծուեցան: Հատիկը ատեն մը Կովկաս ու Պարսկաստան աշխատելէ վերջ, անցաւ Կիլիկիոյ շրջանը կազմակերպութեան հրահանգով, եւ քանի մը տարի այդ շրջանի մէջ աչքառու դեր մը կատարելէն վերջ՝ նորէն անցաւ Կովկաս: Կամաւորական շարժման ժամանակ, արդէն ծերացած, եկաւ եւ իր իսկ ըսելով «ձեռքէն եկածը ընելու տղաքներուն համար»: Երիտասարդ կամաւորներէն գրեթէ ոչ ոք գաղափար ունէր, թէ ալեխառն մօրուքով լռակեաց խոհարարը Հատիկն էր, ժամանակին թափառական առաքեալ մը, որ ամբողջ երիտասարդութիւն մը սպառեր էր երկրէ երկիր, յեղափոխութեան սերմերը ցանելով արդաւանդ հողի մէջ: Չեմ գիտեր ինչ եղաւ մեր սիրելի Հատիկը, որու իսկական անունը դժբախտաբար չեմ գիտեր:

Ստեփան Եղիազարեանը, Մուրատ—Ռափայէլեան վարժարանի շրջանաւարտներէն էր, բարեկիրթ, զարգացած երիտասարդ մը, որ Դաշնակցութեան մէջ մտնելով, վերջէն երբ Պաթում անցաւ, որպէս Նաւահանգստի Կ. Կոմիտէի անդամ շատ օգտակար եղաւ: Ժամանակ մը վերջը սակայն Պաքու երթալով, կորսուեցաւ գործէն, բայց մինչեւ վերջն ալ ջերմօրէն հետաքրքրուեցաւ յեղափոխութեամբ:

Խաչիկ Ասլանեանը (Անտոն) եւ Միսաք Գասպարեանը, որոնք աւելի ծանօթ են Դաշնակցութեան մէջ Կորիւններ անունով, իմ դասընկերներս են եղած, թէեւ հաւանական է մէկ երկու տարով ինձմէ աւելի տարեց: Երկուքն ալ աշխոյժ պատանիներ էին եւ եթէ դասերու մէջ շատ յառաջադէմ չէին, դժուար թէ զիրենք գերազանցողներ գտնուէին խաղերու ժամանակ, մանաւանդ «սիւրմէլին»:

Խաչիկը սափրիչի մը տղան էր, Միսաքը ծանօթ ընտանիքի զաւակը, երկուքն ալ էսնաֆ ընտանիքներէ: Այս երկու պատանիները, դպրոցական շրջանին իսկ, զարմանալի սիրով կապուած էին իրարու, գրեթէ միշտ անբաժան իրարմէ: Շատ կանուխէն, երբ հազիւ 14–15 տարեկան լինէին, անոնք արդէն Դաշնակցութեան տեղական խմբերու անդամագրուած էին, եւ երբ բարենորոգումներու քոմիսար Շաքիր փաշան տեռորի ենթարկելու հարցը մէջտեղ կը բերուի, այս երկուքը թախանձագին կը խնդրեն որ այդ դժուարին գործը իրենց յանձնուի: Դժբախտաբար սխալ



ԿՈՐԻԻՆՆԵՐԸ
ԽԱԶԻԿ ԱՍԼԱՆԵԱՆՆ ՄԻՍԱՔ ԳԱՍՊԱՐԵԱՆ

հաշուի մը հետեւանքով, այդ հրէշը, որ բարենորոգումներու անունով Հայաստան կ՚երթար իրականօրէն երկիրը աւերելու մըտադրութեամբ, կը ճողոպրի, հակառակ որ երկու Կորիւնները մինչեւ Տէզէրմէն Տէրէսի կը հետապնդեն զինք, անյաջող կերպով:

Ասկէ վերջ, Վանէն Պոլիս կը վերադառնայ Պահրի փաշան, մէկը Սուլթան Համիտի արիւնարբու գազաններէն: Դաշնակցութիւնը կ՚որոշէ արժանի վարձատրութիւնը տալ անոր:

Երկու Կորիւններուն կը վիճակուի այդ ծանր եւ պատասխանատու գործը կատարելը: Տրապիզոնի ամենաբանուկ պողոտայի վրայ, երկու Կորիւնները նեղ փողոցէ մը դուրս գալով, ատըրճանակի գնդակներով կը դիմաւորեն Պահրի փաշան եւ անոր ընկերացող Տրապիզոնցի Ֆերիք փաշան, որը ծանրապէս կը վիրաւորուի ազդրէն, իսկ Պահրին բախտի չար կատակով մը կ՚ազատի: Բաւական ժամանակ փախստական ապրելով քաղաքի մէջ, որու ընթացքին, գիշերային փոխադրութեան մը ժամանակ, խումբ մը Թուրքերէ հետապնդուելու պահուն, Խաչիկ կը սպաննէ Սապրի պէյ անուն յայտնի սրիկայ մը, ու երկու Կորիւնները կը յաջողին հայկական գիւղերը բարձրանալ: Ժամանակ մըն ալ հոդ մնալով, վերջապէս ապահով կ՚անցնին Կովկաս, Սեւ ծովու շրջանը:

Մինչ Միսաքը կը հաստատուի հոն, Խաչիկը կը սկսի իր թափառումներուն, Ռումանիա, Պուլկարիա, Կովկաս եւ նորէն Պուլկարիա, ուր կը միանայ Պետրոս Սէրէմճեանի խումբին, Մակեդոնացի յեղափոխականներու հետ միասին որոշ ծրագիր մը իրագործելու համար կ՚անցնին Եւրոպական Թուրքիա: Փոքրաթիւ խումբը Էտիրնէի քով կը շրջապատուի հարիւրաւոր թրքական զօրքերու կողմէ: Կատաղի կռուի ժամանակ, հերոսաբար կ՚իյնայ Խաչիկը, այդ պայծառ խիզախ տղան, որ մանկութենէն խաչը շալակը ծներ էր:

Միսաք Թոռլաքեանը անձնապէս չեմ ճանչնար, բայց հայ ժողովուրդը առակ մը ունի խորիմաստ, «Ծառն արմատով է ծառ»: Կիւշանայի շրջանի Թոռլաքեանները մէկէ աւելի հերոսներ են տուած Դաշնակցութեան փառքի տաճարին: Միսաքը անոնց հարազատ, կորիճ յաջորդներէն է: Ջիվանշիրի տեռորով, Միսաքը եկաւ անգամ մըն ալ ապացուցանելու, որ ան ո՛չ միայն իսկական Դաշնակցական տեռորիստ մըն է, այլ եւ արժանաւորա-



ՄԻՍԱՔ ԹՈՒԼԱՔԵԱՆ

բար կը կրէ Թուլաքեան պանծալի անունը։ Անոր ձերբակալումը իսկ, պատիւ մըն է անոր անվեհերութեան եւ պարտաճանաչութեան։ Կասկածելով որ Ջիվանշիրը կրնայ մեռած չլլնիլ, երբ արդէն հեռացեր էր դէպքի վայրէն, անգամ մըն ալ ետ կը դառնայ խիզախ պատանին, մնացած գնդակներն ալ զետեղելու Թրքուաստական Ջիվանշիրի մարմնին մէջ։

Անշուշտ առով չսպառեցի Տրապիզոնցի աչքառու յեղափոխականներու ցանկը, բայց արդէն չուզելով աւելի ծանրաբեռնել իմ «Ապրումներ»ս, կ՚անցնիմ պատմութեանս շարունակութեան։

* * *

Սպասածէս աւելի երկար մնացի Թիֆլիս, մինչեւ որ դեղեցիկ օր մը Ռոստոմը իր դրաւիչ ժպիտով յայտնեց, թէ ալ կըրնամ քանի մը օրէն անցնիլ Պարսկաստան։ Նամակ մը տուաւ Երեւան Թորոսի հասցէին, նամակ մըն ալ Թաւրիզի ընկերներուն ուղղուած։ Հոդ առաջին անգամ լլնելով՝ ես կազմակերպութենէն ստացայ 200 ռուբլի (մինչ այդ ես անձնական դրամովս ապրած եւ ճամբորդած էի) բացի Ամերիկայի Կ. Կոմիտէէն ստացածս քըսան ոսկին, որ ուղարկուած էր որպէս «Հայրենիք»ին աշխատակցելուս վարձատրութիւն»։

Կարծեմ աւելորդ պիտի լլնի ըսել, թէ առանց քանի մը օր սպասելու, այդ իրիկունն իսկ ես ճամբայ ելայ դէպի Երեւան։ Անհնարին յուզումով լեցուած էր սիրտս, որը արդէն կ՚երթայի այն ճամբայով, որը ինձ կը մօտեցնէր իմ երազած Հայաստանին։

Սակայն, այս գլուխը փակելէ առաջ, մտքիս առջեւ կը փայլի գեղեցիկ, պայծառ դէմք մը, որ իմ նոր կեանքի սկզբնական օրերուն եւ հետագային, երբ ես ալ կ'առնէի Թիֆլիս կուսակցական գործերով, կեդրոնական դէմքերէն մէկն էր: Տարիներու ընթացքին, նեղ թէ լայն օրերուն, անոր մէջ կը գտնէինք ճշմարիտ, հարազատ ընկերը, իսկական զոհաբերող յեղափոխական մաքուր իտէալիստ մարդը:



ՄՀԵՐԵԱՆ–ԱՐԵՒԵԼԵԱՆ
(ՀԱՄԱԶԱՍՊ ՕՀԱՆՋԱՆԵԱՆ)

Դժուար թէ գտնուի մեր շըրջանի ընկերներէն մէկը, որ, երբ փորձուի գրել հին յիշողութիւնները, երկարօրէն չանդրադառնայ այն իտէալական մարդու վրայ, որ շատ անգամներ, մէն մինակ իր ուսերուն վրայ կը տանէր գործի ամբողջ ծանրութիւնը: Այդ, բառի ամենալայն իմաստով, կատարեալ ընկերը եւ ղեկավարը բըժիշկ Համօ Օհանջանեանն էր:

Շատերը հերոսացան մեր կուսակցութեան պատմութեան մէջ զոհաբերելով կեանքերնին, սակայն շատերն ալ, թէեւ հեռու երկրէն, վաստկեցան անվերապահ հիացում մը՝ իրենց ինքնամոռաց, բացարձակ զոհաբերութեամբ: Անոնց մէջ, ամենաաչքառու տեղը վերապահուած է Համոյին, որը, իմ կարծիքով, Հ. Յ. Դաշնակցութեան մեծ երրորդութեան բնական ժառանգորդն է:

# ԵՐԵՒԱՆ

Երկրորդ կարգի վակոնի մը մէջ, դէմքս պատուհանին, խուզարկու հայեացքս դուրս, գիշերուայ խաւարին մէջէն, սրտիս մօտիկ բայց անծանօթ երկիրը կ՚աշխատէի տեսնել: Եւ ի հարկէ, ոչինչ չէի տեսներ: Ու երկաթուղին Լօռուայ ձորերու նեղ ոլորտներէն կամ անտառներու մէջէն կ՚անցնէր, ուր խաւարը աւելի թանձր է: Եւ սակայն, որքա՜ն կ՚ուզէի տեսնել հայրենի երկրի այդ նախադուռը, որ առաջ, այն օրերուն, Հայաստան չէինք համարեր:

Տարիներ շարունակ լսած էինք Ռուսահայաստանի մասին, որ սակայն մեր սրտին ոչինչ չէր խօսեր, պարզ անուն մըն էր կարծես, առանց իմաստի: Իսկ Հայաստանը, կամ «երկիրը», հոն, սահմանի միւս կողմն էր անպատճառ: Այդպէս էր կաղապարուած մեր ուղեղը: Եւ այս տխուր ըմբռնողութիւնը Հայաստանի անկախութեան շրջանին տուաւ իր դառն պտուղները:

Բնական է, որ սրտաճաթ անհամբերութեամբ լուսնալուն կը սպասէի: Ուխտի կ՚երթայի, երկրպագելու Արաքսին, Անիի աւերակներուն եւ Մասիս սարին,— երրորդութեան մը, որ մանուկ հասակէս պաշտամունքի առարկայ էր դարձած ինծի համար:

Եւ սակայն շատ քիչ բան գիտէի հայ ժողովրդի մասին: Գրեթէ անծանօթ մըն էր ան ինծի: Ի հարկէ կամաւոր կ՚երթայի անոր ծառայելու իմ ամբողջ կարողութեամբս, բայց թէ հայ ժողովուրդ ըսուածը ի՞նչ բան էր, լաւ չէի գիտեր: Ինծի հայութեան հետ կապողը անցեալն էր, մեր պատմութիւնը, գրականութիւնը, երկիրը, բայց մանաւանդ պատմութիւնը:

Պիտի խոստովանիմ, որ եթէ հայոց թագաւոր մըն ալ լինէր այդ օրերուն, գահի վրայ բազմած, պիտի խոնարհէի անոր առջեւ.

— Ողջո՜յն հայոց արքային...

Ու կարծեմ այդ ժամանակներէն մինչեւ հիմա, շատ ալ մեծ տեղատուութիւն մը չէ կատարուած մտածողութեանս մէջ: Ինչ արած սակայն, երբեմն մարդիկ անուղղելի կը ստեղծուին:

Այս հոգեբանութեամբ, եթէ կ՚ուզէք սանթիմանթալ զգացումներէ տարուած կ՚երթայի Հայաստան:

Կը սպասես, ու չի լուսնար: Կէս քուն կէս արթուն՝ կը մրափես: Վայրկեանը անգամ մը քիթդ դէմ կուտաս պատուհանին. ոչինչ, խաւար, խաւար միայն ու երբեմն խուսափող կարմիր կամ ճերմակ լապտերներ խաւարին մէջ:

Վերջապէս այդ հոգէառ գիշերը վերջ գտաւ: Թարսի պէս ես ալ սպասելէ յոգնած քնացեր էի: Զարթնեցի, երբ շոգեկառքը կանգ առաւ Ղարաքիլիսէ:

Դուրս ցատկեցի վակոնէն անհամբեր:

«Հայաստա՛ն, երկիր դրախտավայր»...

Ամէն ինչ տարօրինակ կը թուէր ինծի: Չեմ գիտեր ինչո՛ւ, բայց մինչեւ այսօր ալ մտքիս մէջ տպաւորուած է այն անախորժ զգացումը, զոր ունեցայ, երբ տեսայ հայ շինականները իրենց բրդոտ փափախներով եւ արխալուխով, Թոկով մէջքերը սեղմած: Տրապիզոն շատ էի տեսած տարպէճանցի ուղտապաններ. միեւնոյն հագուստի ձեւն էր կարծես: Կ՚երեւի կը սպասէի կարմիր ծիրանի ուսերնուն ձգած, փետրաւոր սաղաւարտներով գիւղացիներ տեսնել, որը քիչ մը շատ պատմական պիտի ըլլար: Եւ խօսքը մէջերնիս, ոչ իսկ հայ շինականներու լեզուն կը հասկնայի կարգին, ոչ ալ իրենք իմինս կարծեմ:

Հետզհետէ զանազան կայարաններ անցանք: Ահա եւ սարի գագաթին, քէնոփոնեան խրճիթներու կոյտ մը, հայ աղքատ գիւղ մը, ուր աղտոտ, պատռտուած շորերով երեխաներ, կաթ, մածուն, հաւկիթ եւ զանազան ուտեստեղէններ կը ծախէին:

Ի՛նչ խօսք, որ մէկ կողմէն ուրախ էի, որ պատմական Հայաստանն էի մտեր, հայ ժողովուրդի մէջն էի արդէն, միւս կողմէն, սակայն, ինչ որ կը տեսնէի, շատ էր յուսալքող եւ ծանր ու անհամապատասխան իմ սպասումիս:

Այդ ճնշող տպաւորութիւնը աւելի եւս ծանրացաւ, երբ հասանք Ալեքսանդրապոլ: Հեռուէն կարծես աւերակի կոյտ մըն էր: Այդ տպաւորութիւնը ստացեր էի, քանի որ առաջին անգամ կայարանէն միայն ես տեսայ այդ քաղաքը, Թէեւ ներսէն քաղաքը տեսնելէս վերջն ալ, տպաւորութիւնը մեծապէս փոխուելու պատճառ մը չգտայ:

Վերջապէս գնացքը ճամբայ ելաւ, բաւական երկար սպասե-

լէ վերջը։ Գիտէի, որ շուտով Անի կայարանէն էինք անցնելու, ու հեռուէն հեռու պիտի տեսնէի Անին։

Դժուար թէ կարողանամ նկարագրել իմ յուզմունքս, երբ ճամբորդներէն մէկը հեռուէն ցուցուց պարիսպներու նման բան մը՝ հազիւ նկատելի։

Պատուհանէն դուրս կախուած, ազատ ասպարէզ էի տուեր արցունքներուս, կը հեկեկայի երեխայի նման, անկարող ինքզինքս զսպելու։



ԱԼԷՔՍԱՆԴՐԱՊՕԼԻ ՀԱՄԱՅՆԱՊԱՏԿԵՐԸ

Միեւնոյն վակոնի մէջ, դրկիցներս, բոլորն ալ Ալեքսանտրապոլցիներ, ճոխ սեղան մը շիտկած էին ու քէֆ կ՚ընէին։ Երեւի, մէկը, նկատելով իմ լալս, բարեսրտաբար մօտեցաւ ինծի․

— Հը, ի՞նչ է պատահել, ախպեր, փո՞րդ կը ցաւի․ արի, տնաշէն, գինի էլ ունինք, արաղ էլ․ գինի եմ ասել ա՛...

Կատաղութենէս սպռթնեցայ։ Տէր Աստուած, հոն Անիի աւերակներն էին, ու այս հայերը նստած քէֆ կ՚ընէին... Երեւի կը սպասէի որ բոլոր հայերն ալ թաշկինակները աչքերնուն կարգով շարուէին պատուհաններուն առջեւ, եւ Անին երեւնալուն՝ մխա–

ձայն սկսէին հեկեկալ՝ Երուսաղէմի, Ողբի Պատի առջեւ շարուած հրէաներուն պէս...

Շոգեկառքը դանդաղ, պտոյտներ կատարելով կ'առաջանայ: Ձէ՛, պատուհանէն չեմ հեռացեր, կէս մէջքով դուրս ինկած կը սպասեմ անհամբեր:

Եւ ահա հեռուէն կ'երեւի՝

«Եւ տեսնել Մասիսի գլխին մի դրօշակ»...

Հայկական պարն է, զիկզակող գագաթներու շարանը ձեռք ձեռքի տուած, որը կ'երկարի արեւելքէն արեւմուտք, հսկայ պատի նման եզերափակելով Արարատեան դաշտը հարաւէն ու ատոնց մէջ յանկարծ սպիտակափառ վերասլաց կը բարձրանայ երկինքն ի վեր, Մասիսը իր անբաժանելի ընկերոջ փոքր Մասիսի հետ: Կապոյտ ֆոնի վրայ, գերեթէ համաչափ կողերով, գագաթը յաւերժական ձիւնի շերտով ծածկուած Մասիսը ոչ միայն որպէս բնութեան վսեմ գեղեցկութիւն մը, այլ եւ որպէս մեր հայրենիքը խորհրդանշող մեծութիւն, ամէն հայու սրտին մէջ կ'արթնցնէ զգացումներ, որոնք չեն ենթարկուիր պատճառաբանութեան, վերլուծման, որոնք կը բխին հոգեկան ապրումներէ եւ որոնք միայն զգալ կրնաս:

Ըսե՞մ թէ, արցունքներս անզուսպ, խլլոտ տղու մը նման, երեսս կը լուային: Այդ օրերուն իրապէս որ ես շատ էի զգայուն ու լալկան: Ի՞նչ խօսք որ գոց գիտէի «Մեր Հայրենիք»ը, բայց ամէն անգամ, որ պատեհութիւն լինէր կարդալու, չէի կրնար զսպել ապստամբ արցունքներս:

Իտալիոյ մէջ տեսած էի Վեզուֆը. խումբ մը ուսանողներու հետ, չափչփեր էի գեղեցիկ լեռնոտ Զուիցերիան ու հասեր մինչեւ Մոն Պլանը, ուր բարձրացեր էինք Շամօնիի Մէր տը Կլասը, պինդ մօտիկ գագաթին. յետոյ Պարսկաստանի մէջ տեսայ Թէհրանէն, նշանաւոր Տէմավէնտ սարը. բայց այս բոլորին մէջ ամենատպաւորողը, ամենագեղեցիկը, եթէ կ'ուզէք ամենախորհրդաւորն ու վսեմը անկասկած Մասիսն էր: Եւ սակայն աւա՛ղ. բացարձակ բան չկայ բնութեան մէջ. տարիներ վերջ երբ կ'անցնէի Ճաբոնով տեսայ աստուածային գեղեցկութեամբ զարդարուած Ֆուճիեաման, յաւերժահարս աղջիկ մը, ճերմակ պարեգօտով, երկինքն ի վար կախուած ճաբոնական սիրուն երկրի սրտի վրայ: Շատ երկիրներ եմ ճամբորդած շատ սարեր տեսած — եւ սիրահար եմ սարերու եւ ծառերու — բայց տեսածներուս մէջ



ՄԵԾ ԵՒ ՓՈՔՐ ՄԱՍԻՍՆԵՐԸ

Ֆուճիեաման բացառիկ տեղ մը ունի, որպէս կատարեալ համաչափութիւն, բացառիկ գեղեցկութիւն։ Բայց եւ այնպէս Մասիսը ունի այն մեծ, անառարկելի առաւելութիւնը, որ մերն է եւ ասով, անշուշտ ամենագեղեցիկը։

Կառաչարը կը սուրայ Արարատեան ընդարձակ դաշտի մէջէն. հեռուէն հեռու կ'երեւին ծառաստաններու մէջ կորած գիւղերը, աջ ու ձախ մշակուած արտեր, այգիներ, երկաթուղագծի մօտիկը երկարած բոստանները՝ իրենց անխուսափելի խրտուիլակներովը զարդարուն։ Կ'անցնինք Սեւ գետը, որ Արագածի փէշերէն բխող հազարաւոր ակերէ սկիզբ կ'առնէ, ծանր ու դաժան հոսելով դէպի Արաքսը իր ճամբու երկայնքին ոռոգելով շրջակայ գիւղերը, որոնք իր շնորհիւը միայն ովասիսներու էին վերածուեր էջմիածնայ չոր խանձուած տափաստանին մէջ։

Դէմ դիմաց երկու յաւիտենական հսկաներու նման, Արարատեան դաշտին պահակ են կանգնած Մասիսն ու Արագածը։ Եթէ Մասիսը չոր ու ցամաք, բայց մեծ ու վեհ, Վահագն է մեր հայրենի աստուածներէն, Արագածը դիցուհին Աստղիկն է, մայր բարութեանց, ոգին բեղմնաւորութեան, որմէ կը բխի կաթն ու մեղրը, սարերու ծաղիկն ու կանանչը եւ կենսունակութիւնը շրջապատող երկրին։ Շատ լայն խարիսխով մը խրուած հայրենի երկրի կրծքին՝ ան իր անսպառ ստինքներէն կը հոսեցնէ սառնորակ ջրերը զուլալ։ Անոր լանջերը ծածկուած են հազարաւոր ծաղիկներով, իրենց գինովցնող բուրմունքով, եւ արծիւի բոյներու նման հոս ու հոն թառած աղքատիկ գիւղերով։ Սարի գագաթին չորս գլուխներու մէջն ու շուրջը դրախտային եայլան է ընդարձակ անվերջ հորիզոններով.

«Համբ՛արձում եայլա· եայլա ջան եայլա»

Արագածը Հայաստանի բեղմնաւորութեան ակն իսկ է. անսպառ շտեմարանն է կարիքի եւ աստուածային հոգատարը գիւղացու։

* * *

Երեւան կ'իջնեմ Եւրոպա հիւրանոցը, որ ամենալաւը կը համարուի քաղաքին մէջ։ Հիւրանոցի տիրոջը, որ հայ մըն է, վերջէն կ'իմանամ, որ եւ մօտիկ մարդ մերոնց, կը խնդրեմ տոմսակ մը հասցնել Գալուստ Ալօեանին (Թորոս). երկտող մըն էր գրածս, որով կ'իմացնէի գալս եւ ցանկութիւնս ընկերները տեսնելու։

Այդ իրիկուն իսկ գացի Կ. Կոմիտէի ժողովին, որ տեղի կ'ու-

նենար Աղօյենց տունը։ Չեմ մոռնար այն սրտագին վերաբերմունքը, որ ես գտայ անոնց մէջ։ Հի՜ն, բարի ժամանակներ, երբ այնքա՜ն ջերմ ու հարազատ ընկերներ կային գրեթէ ամէն քաղաքի մէջ. հոգ չէ թէ դուն նորեկ մը եղած լինէիր անոնց մէջ եւ նորսկսնակ մը, անծանօթ մը գրեթէ, բաւական էր, որ միեւնոյն գործին մարդն էիր, միեւնոյն ճամբայով գնացող, այդքանը բաւական էր ջերմագին ընդունելութեան արժանանալու համար։

Փոթորկոտ օրեր էին, եկեղեցական կալուածներու գրաւման ամենատաք շրջանը, երբ ամբողջ Կովկասահայութիւնը ոտքի էր ելած չինականէն սկսած մինչեւ քաղաքի կէս խորթացած բուրժուա հայը, որու ամբողջ հայութիւնը կիրակիէ կիրակի Երեւանի տոլմա ուտելու մէջ կը կայանար մինչ այդ։ Ոտքի էր ելած հայ ժողովուրդը, իր ոտնակոխուած արդար իրաւունքներու պաշտպանութեան համար հսկայ ուժի մը դէմ, որու առջեւ, ինքը աննշան, գրեթէ ոչնչութիւն մըն էր պարզապէս։

1903 Յունիս 12–ի կայսերական հրամանագիրը, եկեղեցապատկան կալուածներու գրաւման համար, առաջին պահուն, հազիւ թէ հասարակութեան կողմէ իր ամբողջ վտանգաւորութեամբ ըմբռնուեցաւ։ Մեր անպէտք եւ տգէտ կղերականութիւնը, աւելի չահագրգռուած էր անձնական հանգստով քան հայ եկեղեցու եւ ժողովրդի ապագայով, բոլորովին անտարբեր վերաբերմունք մը ցուցադրեց, այդ հրամանագրի հանդէպ։ Նոյնիսկ հայոց Հայրիկը, թէեւ խորապէս ըմբռնած այդ որպէս թէ անմեղ հրամանագրի թագուն իմաստը, ամենահզպատակ խնդրագրեր տալէ անդին, յստակ ճամբայ մը չէր տեսներ հետեւելու։ Մինչեւ որ հրապարակ իջաւ հայ մտաւորականութիւնը, յանձինս Հ. Յ. Դաշնակցութեան, հայ ժողովրդի հոծ զանգուածովը զօրեղացուած, եւ իրար յաջորդող ցոյցերով Պաքու, Գանձակ, Թիֆլիս, Ալեքսանտրապոլ, Երեւան յստակօրէն գծեց այն ճամբան, որով պէտք է քալէին գիւղական տէրտէրէն սկսած մինչեւ կաթողիկոսը, չինականէն մինչեւ քաղաքի հաստափոր երէցփոխը։

Այս հաւաքական պոռթկումը աննախընթաց էր մեր ամբողջ անցեալ պատմութեան մէջ։ Զարթնումի խթանող հարուած մըն էր, կորստեան անդունդին կանգնած Կովկասահայութեան համար. խթան մըն էր, որու ուժգնութիւնը եկաւ աւելի եւս չեշտելու հայ–թաթարական ընդհարումները, երկուքն ալ ծրագրուած եւ ղարբնուած իշխան Գալիցինի քաբինէին մէջ, վերացնելու եւ

ճզմելու համար ատելի հայ ժողովուրդը, որու համար սակայն, մենք դեռ պարտական պիտի լինինք այդ հայատեաց կիսախելագարին։



ԵՐԿՈՒ ԴԱՐԵՒՈՐ ԿԱՂՆԻՆԵՐ ԿՌՆԱԿ ԿՌՆԱԿԻ

Բնականաբար այդ շարժման ամբողջ ծանրութիւնը, որպէս կազմակերպութիւն ինկած էր Դաշնակցութեան ուսերուն, որ ինքզինքը ակամայ լծուած գտաւ այդ գործերը տանելու։ Սխալ

է ըսել, թէ մեր կուսակցութիւնն էր ղեկավարողը. աւելի ճիշդ պիտի լինի, եթէ ըսենք, թէ ժողովուրդն էր, որ կը ղեկավարէր կուսակցութիւնը այդ օրերուն, պարտադրելով զայն, ստանձնելու պատասխանատու ղեկավարի դերը, երբ ոչ մէկ մարմին, կրնար այնքան հեղինակօրէն կատարել այդ:



Ս. ՀՌԻՓՍԻՄԷԻ ՎԱՆՔԸ

Ու կազմակերպուած Դաշնակցութիւնը ժողովրդի լայն գործակցութեամբ, պատուով տարաւ ընդդիմադրութեան կռիւը, որ համազգային բնութագիծ ունէր: Շիտակը ըսած, կուսակցու-

թիւնն ու ժողովուրդը որոշ սահմանաւորում մը չունէին այդ օրերուն. ամէն հայ քրիստոնեայ, քիչէն շատէն, ինքզինքը Դաշնակցական կը համարէր։

Զանազան տեղեր կառավարութեան կողմէ տեղի էր ունեցած բռնի ցուցակագրումը կալուածներու։ Շատեր մերժեր էին, շատեր աքսորուեցան Ռուսաստանի խորքերը. գտնուեցան նոյնպէս թուլամորթներ, որոնք՝ պարզապէս ահաբեկուած՝ տեղի տուին կառավարութեան պահանջին առջեւ։ Ու զարմանալի անգթութեամբ ժողովուրդը պատժեց այդ խեղճերը, որոնց մեծագոյն յանցանքը թուլամորթութիւնն էր պարզապէս։

Բուռն ընդդիմադրութեան սքանչելի օրինակը տուաւ Հայոց Հայրիկը, երբ Երեւանի նահանգապետը, ոստիկանապետի ու ղազախներու ընկերակցութեամբ, եկաւ Էջմիածին, գրաւելու մայր տաճարի գանձը։

Պատմական պիտի մնայ ծերունազարդ հոյակապ Հայրիկի «ոչ կարեմք»ը, նետուած Զարի ներկայացուցիչի երեսին, երբ վերջինս կ՚աշխատէր համոզել Վեհափառը, որ այդ օրէնքը, հայ եկեղեցու շահը իսկ կը պահանջէ, որ դիմադրութիւնը բոլորովին ի զուր է, իրենք կանգ չպիտի առնեն նոյնիսկ գանձարկղները բռնութեամբ բանալու առջեւ։

Գանձարկղներու բանալիները գրպանը, Հայոց Հայրիկը, դուրս կուգայ վեհարանէն, երբ ոստիկանապետի հսկողութեամբ, կը սկսին երկաթեայ սնտուկները մուրճի հարուածներով ջարդել, ու կռնակը տուած դարեւոր կաղնիին, կը թաղուի խոր մտքերու մէջ։

Ինչ խօսք, որ կիրակի օր մը կ՚աճապարեմ Էջմիածին՝ տեսնելու պատմական մայր տաճարը, համբուրելու Հայոց Հայրիկի ձեռքը, որ այդ օրերուն կը մարմնաւորէր հայութեան սպասումներն ու իղձերը։

Ճանապարհին կանգ կ՚առնեմ Ս. Հռիփսիմէի գեղատեսիլ վանքը տեսնելու։ Կը լինիմ եւ Էջմիածնայ արուեստական մեծագործ լճի ափին, ապա կ՚ուղղուիմ դէպի Մայր տաճարը։

Սրտատրոփ ներս կը մտնեմ Էջմիածնայ տաճարի դռնէն։ Հոն տիրող խորհրդաւոր լռութիւնն ու կէս խաւարին մէջ պլպլացող մոմերու դողացող լոյսերը միստիք տպաւորութիւն մը կ՚ընեն վրաս։ Անհնարին յուզումով կը յառաջանամ դէպի Իջման տեղը ու երկիւղածութեամբ երեք մոմ կը վառեմ տաճարի առջեւ, եւ, որ

եկեղեցասիրութեամբ կարծեմ չատ չեմ փայլեր:

Դաւին Թաւ գործերու վրայ ծնկաչոք մտքերու մէջ կը կորսուիմ. Գրիգոր Լուսաւորիչը, Տրդատ Թագաւորը ու Խոսրովիդուխտ արքայադուստրը իրենց արքայական պալատականներով ու նաժիշտներով կ՚անցնին երեւակայութեանս առջեւէն. կենդանի պատկերներ, փառքի ու մեծութեան անցած օրերուն, լաւ օրերուն:



ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԳԱՀԸ

Ու հիմա՞կ. Տէր Աստուած, քանի քանի սերունդներ այս սալայատակներուն վրայ ծընկաչոք Աստուածն են փնտռեր, անոր գթութիւնն են հայցեր իրենց տառապանքի ու արիւնի օրերուն: Կը թուէր, թէ հարիւրաւոր տարիներու ընթացքին օրհներգուած մեղեդիները կը լսէի, սրտաբուխ աղօթքներու ու աղերսանքներու մըրմունջին մէջէն ու ատոնց հետ երբեմն յստակ ու որոշ, կռապաշտական չեփորներու մետաղական սուր հնչիւնը ելեւէջաւոր, ժողովուրդը հրաւիրող դէպի սրբազան բագինը, երկրպագութեան՝ մեր աստուածներուն:

* * *

Նման ապրում մըն ալ ունեցեր եմ տարիներ վերջը Պրմաստան, երբ Ռանկուն քաղաքի հռչակաւոր բակոտան (տաճար) այցելեցի:

Հաւատաւորի մը խոր յուզմունքով կը մօտենամ Վիքթորիա պարտէզի մօտ սրբազան բլուրին, որու կատարին կը բարձրանայ բակոտան, ոսկէ գմբէթով, բլուրի բարձրէն վեր, դէպի երկինք ամբարձած:



ԷՋՄԻԱԾՆԻ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԸ

Կը խնդրեն, որ կօշիկներս ու գուլպաներս հանեմ, սուրբ տեղերը պտտելու համար. ուրախութեամբ կը համաձայնիմ:

Շատ լայն սանդուխներէ կը բարձրանամ քանի մը պատուական հայրենակիցներու հետ դէպի բլուրի գագաթը: Անհատնում մանր կրպակներ լայն սանդխամատերու վրայ կառուցուած երկու կողմէն կ'եզերեն ճամբան: Այդ կրպակներու մէջ, տեղացիները եկող ուխտաւորներուն կը ծախեն մոմ, կնդրուկ եւ խունկ, մասնաւոր ցպիկներ անուշահոտութիւն առաջացնող, զոր հաւատացեալները կը նետեն կռատան քարէ ընդարձակ կրակարանին մէջ, սկեզօծ թղթիկներ, եւ հասարակ կաւէ եւ քարէ կերտուած զանազան աստուածներ, որոնք հազիւ քանի մը սէնթ արժեն:

Ահա ընդարձակ հրապարակը ոսկեծածկ գմբէթով. չուրջը տասնեակներով տաճարներ՝ զանազան աստուածներու նուիրուած: Ահա եւ սրբազան ծառը, հինաւուրց սրբութիւն մը, որ մեզ կը հովանաւորէ:

Ներս կը մտնեմ գլխաւոր տաճարը. խորքը կիսաբոլորակային շարուած զանազան աստուածներ ու անոնց մէջտեղը խոհուն, սրբազան միտքերով անէացած Պուտտան, բազմած ծալապատիկ, հարիւրաւոր վառուած մոմեր, մեծկակ կրակարան մը ծըխացող խունկով, ոսկի թերթիկներով, որ հաւատացեալները կը նետեն կրակարանին մէջ:

Յուզումով կը մօտենամ Պուտտայի առջեւ շարուած մոմակալներուն. երեք մոմ ալ հոն կը վառեմ ձեռքովս, ձեռքիս ոսկէ թերթիկները կը նետեմ կրակարանին մէջ ու թիկն տուած սիւնի մը, խոհերով ծանրաբեռնուած, կ'ապրիմ հայ հին կեանքը. հի՜ն, շա՜տ հին, որ աւա՜ղ կորած է իր ամբողջ գեղեցկութեամբը:

Մենք ալ ունեցեր ենք մեր սրբազան ծառերը, մեր Սօսեաց անտառը, ուր վաղորդայնին սպիտակազգեստ քուրմերը տերեւներու խուլ խշխշոցով ապագայի աստուածային պատգամը կը կարդային: Մենք ալ ունեցեր ենք մեր սրբազան կենդանիները, Երիզայի Անահիտի տաճարին նուիրուած ճերմակ ցուլերը, որոնց ձեռք տալը մեծ սրբապղծութիւն կը համարուէր, ինչպէս Հնդկաստանի սրբազան եզներուն, որոնք Կալկաթայի պէս մեծ քաղաքի մը մէջ իսկ բոլորովին ազատ ձգուած են իրենց կամքին: Եւ վերջապէս մենք ալ ունէինք մեր մեծազօր աստուածները, ծուխի եւ բոցի մէջէն վազած կամ լճակներու ալիքներէն ծնունդ առած: Մեծազօր Վահագն ունէինք մենք եւ Աստղիկն փրփրածին,

Ոսկէ Անահիտն ու դիւական Գրողը։ Ու այդ բակոտայի մէջ ինծի կը թուէր, թէ մեր հին կեանքն էր, որ կը վերակենդանանար աչքիս առջեւ իր ամբողջ տպաւորիչ գունաւորութեամբը եւ բանաստեղծութեամբը։ Շատ անգամ թուած է ինձ, որ մեր մէջ կ'ապրի կռապաշտը հին օրերուն, եւ որ քրիստոնէական մեղմ վարդապետութիւնը խորթ մեր ժողովրդի հոգուն՝ թափանցիկ քօղ մըն է եղած միայն հինը ծածկելու, ան ալ անկատար կերպով։



ԷՋՄԻԱԾՆԻ ԼԻՃԸ ԵՒ ՄԱՍԻՍՆԵՐԸ

* * *

Էջմիածնայ տաճարէն վերջ կը դիմեմ վեհարան, որը վեհարան կոչուելու ոչինչ ունէր, անփառունակ, հողէ պատերով, ինքն իր վրայ փլած շէնք մը, որ աւերակի տպաւորութիւն կը թողու։ Կը տեսնեմ վարդապետը, կը յայտնեմ, որ «Հայրենիք»ի թղթակիցն եմ, Ամերիկայէն եկած, եւ կ'ուզեմ Հայոց Հայրիկը տեսնել։

Քիչ վերջը կը յայտնէ, որ մէկ ժամէն Վեհափառ Հայրապետը ինձ պիտի ընդունի։ Դուրս կուգամ քիչ մը գիւղամէջը պտտելու։ Ճիշդ է, որ մեր Հանրապետութեան օրով եւ հիմակ ալ Էջմիածինը դասուեր է սուրբերու դասը, ըսել կ'ուզեմ, քաղաքներու դասը, բայց մարդիկ ինչ անունով կ'ուզեն թո՛ղ կոչեն, այն կը մնայ նեղլիկ, աղտոտ, խեղճուկ գիւղ մը, ուր անձրեւի ժա-

մանակ, մարդ մակոյկի պէտք ունի Ջրալի ցեխի մէջէն ճամբայ բանալու համար:

Հազիւ վանքի հրապարակէն կողմնակի փողոց մը մտած էի, երբ ահագին իրարանցում մը փրթաւ: Տեռորիստները հրապարակին վրայ իսկ սպաններ էին Բիթօեանը, որը կալուածներու ցուցակը յանձնողներէն մէկն էր եղած: Ոստիկաններն ու պաշտօնէութիւնը մէջտեղ կ'ելլեն. իսկ ես, բոլորովին անծանօթ տեղին, լեզուին, խոհեմութիւն կը համարեմ կծիկը դնել դէպի Երեւան առանց Հայրիկը տեսնելու:

Երկու օր վերջը վերադարձայ, ներկայացայ Հայրապետին, որ ճաշի պահեց զիս:

Մօտաւորապէս 10 օր մնացի Երեւան ու ծանօթացայ գործերու ընթացքին հետ:

Մրգաստանի (Երեւանի) շրջանը, Ատրպատականի Կ. Կոմիտէութեան հետ միասին, երկրի գործունէութեան ամենաուժեղ նեցուկներն էին: Այդ երկու Կ. Կոմիտէները իրաւամբ կը համարուէին գրեթէ երկրի մարմիններ, որովհետեւ անոնց գործունէութեան 80 տոկոսը նուիրուած էր երկրին:

Այդ երկու շրջաններն ալ, լինելով սահմանամերձ Տաճկաստանին, պարտականութիւն ունէին նոր գծեր բանալու դէպի երկիր, ու հեռաւոր կոմիտէներէ եկած ռազմամթերքը աստիճանանաբար փոխադրելու երկրի մօտ գտնուող կայանները, որտեղէն արդէն երկրի կազմակերպութիւնը հետզհետէ կը կեդրոնացնէր այդ ռազմամթերքը հարկաւոր վայրերու մէջ:

Այդ շրջանին մէջ Մրգաստանի ամենաբանուկ գծերն էին Պաղ-Աղբիւրը եւ Մենաւորը, (Թադէոս Առաքելու վանքը):

Մրգաստանը գործիչներ շատ է ունեցեր, նուիրուած, անձնուէր գործիչներ: Բայց ատոնց մէջէն մէկը մեր յեղափոխական պատմութեան մէջ ձգած է անջնջելի պատկեր մը, որ չ'եղծանիր, կը մնայ կենդանի, իր անձնուէր կեանքով, մաքուր անվերապահ նուիրումովը յեղափոխական գործին:

Խօսքս «Կարկուտ տեղաց»ի հեղինակ Թորոսի (Գալուստ Ալոյեանի) մասին է, որ տարիներ շարունակ կազմակերպութեան ոգին էր այդ շրջանին ու ղեկավարը երկրի հետ կապ ունեցող գործերուն: Չկայ երկիր անցնող ընկեր մը, որ վայելած չլինի անոր ընկերական ջերմ գուրգուրանքը, անոր նահապետական հար-

կը սրտբաց հիւրասիրութիւնը։ Անհատը չէր միայն կուսակցութեան տրամադրութեան տակ, ամբողջ ընտանիքը, տուն ու տեղով, որ նուիրուած էր հեռուներէն եկող ղարիպ ընկերներուն, հարազատի ջերմ զգացումներով։ «Մեր տունըն» էր այդ նահապետական, հնաւանդ տունը, ու «մերոնք» էին այդ ընտանիքի անդամները։



ԹՈՐՈՍ
(ԳԱԼՈՒՍՏ ԱԼՕԵԱՆ)

Երեւանի յայտնի ընտանիքի զաւակ, Թորոսը իր նախնական կրթութիւնը ստանալէ վերջ, կը մտնայ արհեստագիտական վարժարանի երկաթագործական բաժանմունքը։ Եւ կարծեմ կէս կիսատ թողնելով, ամբողջովին կը նուիրուի յեղափոխական գործին, մինչեւ իր եղերական վախճանը։

Լինելով մէկը Ատրպատականի Կեդր. Կոմիտէի պատասխանատու ընկերներէն եւ Դաշնակցութեան զինագործարանի վարպետը, անգնահատելի աշխատանքի բաժինը կ'ունենայ Խանասորի արշաւանքի պատրաստութեան մէջ, որուն ինքն ալ անձամբ կը մասնակցի։ Ատկէ յետոյ նորէն կ'անցնի Երեւան, կը բանտարկուի եւ ազատուելէ վերջ կը վարէ կուսակցութեան գործնական աշխատանքները՝ աննման ճարպիկութեամբ։

1908–ի Լէժինեան հալածանքէն մազապուրծ ազատած՝ կ'ապաստանի Վասպուրական, իր փայփայած «երկիր»ը, որու համար տասնեակ տարիներ աշխատած էր։ Մեծ պատերազմի սկզբի օրերուն, երբ կը փորձէր Բայազիտէն Կովկաս անցնիլ, քիւրտի մը

գնդակը վերջ կուտայ այդ գեղեցիկ մարդու գեղեցիկ կեանքին, զրկելով կուսակցութիւնը փորձուած գործիչէ մը եւ հայ ժողովուրդը՝ հարազատ, զգայուն զաւակէ մը, որու երկարատեւ կեանքը միակ նշանաբան մը ունեցաւ՝ «ամէն ինչ նուիրել ազգին»:

Այդ Թուականին Կ. Կոմիտէի անդամ էր եւ Գեդէոնը, ժողովուրդի ծոցէն ելած պարզ հայրենասէր մարդ մը, որ տարիներ աշխատեցաւ, հակառակ որ ծանրաբեռնուած էր բազմանդամ ընտանիքով: Վերջերը, սակայն, Գեդէոնը կարծես հեռացած էր կուսակցութենէն. նորերու համար շատ էր հին, իսկ իրեն համար ալ նոր հասունացածները շատ էին նոր. իրար լաւ չէին կրնար հասկնալ:

Ադօն եւս մէկն էր նոյնպէս Կ. Կոմիտէի անդամներէն, խըլուրդի համբերատարութեամբ աշխատող, հաւասարակշռուած միտք մը: Որ թէեւ գործնական մեծ արժէք մը չէր ներկայացըներ, բայց այդ օրերուն ղեկավարող միտքերէն մէկն էր Մրգաստանի Կ. Կոմիտէութեան: Պարզ հակումներով, Թափանցող միտքով, անվերջ պրպտող եւ անդուլ աշխատող, ահա Ադօն: Ան միացաւ անջատական շարժման, բայց մնաց մինչեւ վերջին ալ fօրրbfթ դէպի մայր կուսակցութիւնը: Սահմանադրութենէն վերջ անցաւ երկիր, Թափառեցաւ Վասպուրական ու Մուշի շըրջանները, եւ բարեխիղճ ուսումնասիրութիւն մը հրատարակեց, աւա՜ղ այնքա՜ն հազուագիւտ մեր գրականութեան մէջ:

* * *

Վերջին գիշերը հաւաքուեցանք Թորոսի տունը ընթրիքի: Երբեք յիշողութենէս դուրս չի գար այդ ընթրիքը, որ սկսաւ այնքա՜ն քէֆով ու վերջացաւ ... արցունքներով:

Շատ մը ընկերներ ներկայ էին, հին, փորձուած ընկերներ, բայց զիս ամենաշատ ուրախացնողը Գայլ-Վահանի (Մինաս Դօլպաշեան) ներկայութիւնն էր, որ յաջողապէս իր միսիան դէպի Պաղ-Աղբիւր կատարելով՝ երրորդ Թէ չորրորդ անգամը, վերադարձեր էր Երեւան կարեւոր գործերով:

Գայլ-Վահանը Ամերիկայի ընկերներէն էր, որը 1902-ին գնացեր էր Կովկաս, երկիր անցնելու մտադրութեամբ: Ժամանակ մը Կովկաս մնալէ վերջ զինքը կը ղրկեն Սալմաստ, յարմար



ԳԱՅԼ–ՎԱՀԱՆ ԵՒ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ

Ձախ կողմի նստողը — Բրիճդար (ԱՐՏԱՇԷՍ ՄԵԼՔՈՆԵԱՆ)

պատեհութեամբ մը երկիր անցնելու համար: Հոն սակայն երկար չի մնար, Խանի հետ միասին կ'անցնի նորէն Կովկաս, Ղարսի շրջանը երթալու համար: Մրգաստանի ընկերները, զէնքը վար կը դնեն իրենց շրջանի մէջ գործելու համար:

Մրգաստանի ընկերները շուտով կը համոզուին որ սխալ ընտրութիւն չէին կատարած: Աւելի գործնական աշխատանքներու սիրահար, Գայլ–Վահանը շուտով կը դառնայ այդ շրջանի ամենաաչքի զարնող գործիչներէն, բացառապէս աշխատելով փոխադրական աշխատանքներով: Բնաւորութեամբ համեստ, անձնուէր եւ յանդուգն, ան մեծ զարկ կուտայ փոխադրական գործին, որ 1903 թուականին սկսած էր հետզհետէ զարգանալ:

Հակառակ Մրգաստանի ընկերներու թախանձանքին, Գայլ–Վահանը կը վճռէ մասնակցիլ Մոսուն Ջօրի արշաւանքին: Այս անպատճառ երկիր անցնելու կամ զինուորական խումբերուն մասնակցելու ցանկութիւնը այնքան վարակիչ հանգամանք մը ստացեր էր այդ ժամանակ, որ շատ արժէքաւոր ուժեր, որոնք ուրիշ մարզերու մէջ աւելի օգտակար կրնային լինիլ, անժամանակ կը նահատակուէին, առանց որ իրենց կեանքը, գործնական տեսակէտով, լիապէս արժէքաւորելու: Գայլ–Վահանը փոխադրական գործի համար խոշոր արժէք մըն էր անտարակոյս, իսկ որպէս զինուորական արժէք, նման ուժեր շատ կային: Մեր յեղափոխական պատմութեան ընթացքին, գրեթէ չունեցանք ղեկավարող սիսթեմ մը, արժէքները խնայելու: Զարմանալիօրէն շռայլ եղանք մենք:

Անշուշտ ընկերները ճարահատ կը համաձայնին, եւ Գայլ–Վահանը Միհրանի հետ կ'ընտրուի զինուորական ղեկավար: Մոսուն–Ջօրի արշաւանքի պատմութիւնը յայտնի է: Գայլ–Վահանը իր ընկերոջ հետ, ծունկ չոքած, կը կռուի հերոսի մը անվախութեամբ, մինչեւ վերջին փամփուշտը, ու իր պաշտած երկրի սրբազան հողին վրայ առ միշտ կը փակէ աչքերը:

Գայլ–Վահանին Ամերիկայէն արդէն ծանօթ էի: Աւելորդ է ըսել, թէ երկուքս ալ շատ ուրախացանք, երբ նորէն իրարու հանդիպեցանք յեղափոխութեան գործնական ճամբուն վրայ:

Ընթրիքի ընթացքին, երբ տրամադրութիւնները հասան որոշ աստիճանի մը, ծայր տուին անխուսափելի բաժակաճառերը, որ դժբախտաբար մեր մէջ չեն համապատասխաներ սեղանի քէֆի



ՄՈՍՈՒՆ ՋՕՐՈՒ ԱՐՇԱՒԱԽՄԲԻ ՄԷԿ ՄԱՍԸ

տրամադրութեան։

Օրուայ հերոսները Գայլ–Վահանն ու ես էինք. Գայլ–Վահանը որպէս արդէն փորձուած գործիչ, ու ես, որ նոր էի եկեր, իմ աշխատանքի բաժին ունենալու ընդհանուր գործի մէջ։

Բարեմաղթութիւններու երկար շարանը որ մեր կռնակներուն դրին, այնքա՜ն ծանր էր որ մենք ապահովաբար կը կքէինք անոնց ծանրութեան տակ, եթէ Արտաշատի կարմիր գինին մեզ նեցուկ չկանգնէր։ Լաւ քէֆ մ'էր, սազանդարով, Երեւանի պըտուղներով ծանրաբեռնուած ճոխ սեղանով մը, որ միայն կենսուրախ Երեւանցին կրնայ շտկել։

Աւելցնե՞մ, որ ես այստեղ ալ շնորհքս ցոյց տուի։ Թամատան ու միւս խօսողները բոլորն ալ, զանազան յանգերգներով միեւնոյն միտքը կը հոլովէին. «... Հեռաւոր Ամերիկայից եկած մեր ընկերը, որ կ'երթայ բազմաչարչար հայրենիքի համար զոհուելու»... եղբայր դեռ ոչ զոհ կար մէջտեղ եւ ոչ ալ զոհի բագին, շիտակը չեմ ալ գիտեր թէ զոհուելու որքա՞ն տրամադրութիւն կար մէջս, բայց այդ «հայրենիքի» համար զոհուելու հեռանկարի մասին այնպէս մը կ'արտայայտուէին որ, կարծես թէ խնդիրը Սուրբ–Խաչի համար չաղացուցուած մատաղացու ոչխարի մասին լինէր։

Անկասկած գիտէի, որ չէի երթար երկիր՝ Ռստանի ընկոյզ քաղելու, կամ Թափառաշրջիկի մը թեթեւամտութեամբ հաճելի ճամբորդութիւն մը կատարելու։ Բայց, տէր Աստուած դեռ գործի չէի մտած ու դեռ սահմանը իսկ չէի անցած, ուստի ընթերցողն ալ պիտի համաձայնի հետս, որ քիչ մը անախորժ էր այդ լուսապսակ նահատակութեան հեռապատկերը ինձ համար։

Ես ընդհանրապէս խմելու սէր ունեցող մը չեմ եղած, թէեւ ոչ ալ սկզբունքով հակալքոլական մը։ Ի հարկէ մէկ երկու բաժակ գինի խմեցի սեղանին վրայ, բայց այդքանը արդէն բաւական էր, որ ես գտնուէի այն տրամադրութեան մէջ, երբ մարդու դէմքը կ'երկարի, քթի ծայրը կը կարմրի, քառասուն տարի առաջ մեռած պապը միտքը կուգայ, աշխարհի ամբողջ տարտն ու ցաւը յօժարութեամբ կը շալկէ, պատրաստ է հանդիպած հայը համբուրելու՝ ազգասիրութենէ մղուած ու կ'ուզէ մէկու մը ուսին գլուխը յենած, հոնքուր հոնքուր լալ եւ անցեալի եւ ներկայի եւ ապագայի համար որ հարիւր տարի վերջը պիտի գայ։

Կարծես եղածը բաւական չէր. պակասը եկաւ լրացնելու Տի-կին Մելիքեանը իր գգայուն եւ քնքուշ երգով՝

«Կռունկ, ուստի կուգաս, ծառայ եմ ձայնիդ
Կռունկ մեր աշխարհէն խապրիկ մը չունի՞ս»:

Այդ հրաժեշտի ընթրիքը, որ այնքա՜ն ուրախ սկսաւ, վեր-ջացաւ արցունքով, երբ ես ակամայ երկար ժամանակ հերոսա-բար արցունքներս զսպելէ վերջը, աղդանշանը տուի կոծի...

Մենք հայերս ընդհանրապէս անընդունակ ենք կատարեալ քէֆ մը ընելու: Կարծես երբ մեր մէկ աչքը կը խնդայ, միւսը անպատճառ պէտք է որ լայ: Մենք անխառն ուրախութեան զգա-ցում չենք ունեցեր:

Շատ անգամ է պատահած, որ ուրախութեան ամենատաք շրջանին, յանկարծ, չես գիտեր՝ ուրտեղէ՞ն ուրտեղ, մեր լալկան երգերէն մէկը անպատճառ քիթը ցոյց կուտայ ուրախութեամբ ալեկոծ սեղանին վրայ եւ տակն ու վրայ կ՚ընէ սեղանի զեղուն տրամադրութիւնը: Հազուագիւտ երեւոյթ չէ, որ նոյնիսկ գի-նարբուքի ժամանակ, հայ քէֆ ընողը սկսի «Տէր ողորմեան» եր-գել, որպէսզի չըսուի թէ մենք կրնանք նոյնիսկ հարբեցող ըլլալ առանց տխրացու ըլլալու:

Յատկանշական է շատ, որ մեր անկախութեան երկու եւ կէս տարուայ կարճատեւ շրջանին, Հրապարակէն քշուեցան թխածոյ ազգասիրական անհամ երգերը, որոնք ատեն մը ողողած էին հը-րապարակը, կամ անտանելի «կռունկներն» ու «ծիծեռնակները», իրենց ճնշող ծանրութեամբ, տեղի տալով ժողովրդական կենսու-րախ «Երեւան բաղ եմ առել» կամ՝ «Աստէ ճան, վայթօն զանիթ կ՚անեմ»ին: Իսկական հայ ժողովուրդն էր, որ, որոշ ատեւճանի մը հասած իր ազգային երազանքի կատարումին, խոր շունչ մը քաշելով մէկդի կը նետէր սգաւորի պատմուճանը, որով կը ծնին կարծես հայ մանուկները, եւ լայն կը բանար հոգու դռնե-րը իր անհատական կեանքը երգելու:

Արցունքի ու տառապանքի երգերը բթացուցեր ու ըլկեր էին մեր հոգին. քաղաքական ազատութիւնը իր հետ, նոր կեանք ու նոր երգ էր բերած: Ժողովուրդի կեանքը, վերջապէս մտնելով բնականոն հունին մէջ, կը դառնար ընդհանուրէն դէպի անհատա-կանը: Դեռ որոշ ատեւճանի նեղութեան մէջ իսկ, ժողովուրդը կռնակը կը դարձնէր լալկան անցեալին:

Այդ շրջանը մեր պատմութեան մէջ նոր հորիզոններ կը բանար: Այդ դժուար օրերն իսկ կը դարբնէին նոր հոգեբանութիւնը ժողովուրդին, որ հետզհետէ պիտի զարգանար, անկախ այն բանէն թէ ի՞նչ րէժիմ էր տիրողը: Գալիցինեան փրկարար հալածանքներէն վերջը, մեր մօտաւոր պատմութիւնը ոսկի տառերով պիտի արձանագրէ մեր անկախութեան կարճատեւ շրջանը:

Ողորմելի, կարճատես մարդուկներն են միայն, որ կուրացած կուսակցական ատելութեամբ չեն կրնար տեսնել այդ երկու ու կէս տարիներու կատարած բարոյական յեղաշրջումը հայ կեանքին մէջ, որ դժբախտաբար քաղաքական դէպքերու բերումով, ընդմիջուեցաւ, առանց որ հետեւողական կերպով զարգանալու:

* * *

Թո՛ղ ներէ ընթերցողը որ ես բաւական շեղեցայ իմ պատմութենէս. վերադառնանք անոր:

Այդ ժամանակ կովկասեան երկաթուղագիծը չէր երկարեր մինչեւ Թաւրիզ: Երեւանէն անդին Ֆուրգոնով, քաղաքի կառքով կամ, եթէ կ՚աճապարէիր, փոստային սուրհանդակով պիտի ճանապարհորդէիր, ամէն 15–20 վերստը կառքի ձիերը կայաններու մէջ փոխփոխելով: Շատ հաճելի ճամբորդական ձեւ մըն էր այդ: Ու ինձ համար նորութիւն մը:

Բաժնուեցայ Երեւանի ընկերներէն այնպէս, ինչպէս մարդ կը բաժնուի երկար տարիներու մօտիկ հարազատ բարեկամներէ:

Պիտի ըսեմ որ կովկասահայութեան մէջ ընկերական յարաբերութիւնները շատ աւելի սերտ, անվերապահ եւ սրտագին են: Մարդ կ՚ապշի անոնց պարզութենէն, որ շատեր անկրթութեան հետ կը շփոթեն: Այդ միջավայրին մէջ — որ ինքն ալ իր կարգին վճռապէս ազդուած է Ռուսականէն,— կը գտնես զգացումներու աւելի անկեղծութիւն, վերաբերումի պարզութիւն, եւ չիտակութիւն:

Այս բնորոշ յատկանշական գիծն է գլխաւոր պատճառներէն մէկը, որ Հ. Յ. Դաշնակցութիւնը չորս տասնեակ տարիներու երկարատեւ կեանքին մէջ կարողացաւ դիմագրաւել արտաքին ու ներքին ալեկոծութիւններու: Երբ կ՚անդրադառնանք միւս կուսակցութիւններու կեանքին, պարզօրէն աչքի կը զարնէ այն ահա-

գին ներքին ալեկոծութիւնները, որոնք հարուածեր են այդ կուսակցութիւնները անվերջ։ Բաժանումներ, միացումներ, նորէն բաժանումներ ու միացումներ, ու այս անվերջ հոլովուեր է անոնց կեանքին մէջ, շնորհիւ այն հանգամանքին, որ այդ կազմակերպութիւններու մէջ մեծապէս բացակայեր է «ընկերական վերաբերմունքը»։ Ու այդ հանգամանքը ես կը բացատրեմ անով, որ այդ կուսակցութիւններու ղեկավարող տարրերը դրեթէ բացառապէս եղած են տաճկահայերը, որոնց մէջ, թրքական բէժիմի ազդեցութեան շնորհիւ, արմատացած է անվստահութիւն, ոչ-սրտաբացութիւն եւ խորամանկութիւն։

Հոս խօսքս մեղադրելու միտումով չէ, որ կ՚ըսեմ, այլ կ՚արձանագրեմ միայն փաստը այնպէս, ինչպէս որ կայ, կամ ինչպէս որ ես եմ տեսեր ու հասկցեր։

Գլխաւոր ազդակները երկու հատուածներու ներքին հոգեբանութիւններու մէջ, առաջ են եկած գլխաւորաբար տիրող բէժիմէն, ու այն մտաւոր ու բարոյական մթնոլորտէն, որուն մէջ անոնք ստիպուած էին ապրիլ։ Ի հարկէ կովկասահայերն ալ ունին շատ մը բացասական կողմեր, եւ ո՞վ չունի. բայց դրական կողմերը կովկասահայութեան շատ աւելի շօշափելի են ու արժէքաւոր։

* * *

Առանց սիրտս կոտրելու եւեւս ձգեցի Նախիջեւանը, որը ըստ աւանդութեան Նոյ նահապետն է հիմներ՝ տապանէն ելնելէն վերջը։

Բայց մեծ խօսիլ չըլնի, մեր նահապետը աւելի տանելի վայր մը չկրցա՞ւ գտնալ ամբողջ Արարատեան դաշտին մէջ, եւ եկաւ ու այդ անհրապոյր անապատը ընտրեց։

Նախիջեւանը տխլեկ ասիական քաղաք մըն էր, որու նմանը միայն Պարսկաստանի մէջ գտայ, այն ալ հռչակաւոր Խոյ քաղաքն էր, ուր վերջէն ես կուսակցական ներկայացուցիչ նշանակուեցայ։

Նախիջեւանը այն բացառիկ քաղաքներէն մէկն է Կովկասի մէջ, որ յամառեր է անշարժ մնալ ռուսական տիրապետութեան օրով իսկ։ Ճիշդը խօսելով, Երեւանն ալ շատ նշանաւոր բան մը չէր, բայց հոն յամենայն դէպս կը զգայիր, թէ պարսկական տի-

բալետութիւնը վաղուց անցեր է, Նոր կուլտուրական պետութեան մը առջեւ տեղի տալով: Իսկ Նախիջեւանը, տէր Աստուած, հին էր, ու հին, ու միայն ռուսական համազգեստով թաթար ոստիկաններն ու ռուս ժանտարմները կը համարուէին ներկայացուցիչներ ռուս պետութեան, երկու բռնակալութեան սիմպոլներ, որոնք յայտնի էին իրենց բացասական յատկութիւններով միայն:

Ինքզինքս կը մխիթարէի անով որ, Նախիջեւանի թողած անախորժ տպաւորութիւնը, շուտով պիտի փարատէր Արաքսի տեսքով, ու ես բախտ պիտի ունենայի ազգային բանաստեղծին հետ երգելու.

«Մայր Արաքսի ափերով
Քայլամոլոր գնում եմ,
Հին հին դարուց յիշատակ
Ալեաց մէջը փնտռում եմ»:

Անին, Մասիսը, Արաքսը,— ահա այն երրորդութիւնը, որ ես աստուածացուցեր էի հոգուս մէջ:

Երեւանէն սկսեալ ամբողջ ճանապարհին, Մասիսը դիտարանի մը նման ցցուած էր դաշտի մէջ եւ կը հովանաւորէր մեր ճամբան. չէի կշտանար նայելէ անոր, որ իր վիթխարի մեծութեան հետ աննման գեղեցկութիւն մը ունի:

— Որքա՜ն գեղեցիկ է Մասիսը ու ի՜նչ փառահեղ,— ըսի կառապանիս, առտու մը երբ արեւի առաջին ցոլքերը ինկած էին գագաթի պայծառ սպիտակութեան վրայ, անուշ կարմրութեամբ մը ներկելով զայն:

Կառապանս, կզակը քերելով, անտարբեր նայուածք մը նետեց դէպի Մասիսը, կարծեմ պարզապէս ինծի հաճելի լինելու համար, որպէսզի իր պաշխիշը չնուազի: Ու անմիջապէս եօթ յարկանի յիշոցով մը մտրակեց ձիերը, եւ կառքը սլացաւ:

Աւա՜ղ, վերջէն միայն հանդիպեցայ շատ մը մարդոց, որ ամբողջ կեանք մը ապրելով Երեւան, չէին տեսած Մասիսը, որ դէմ ու դէմ է ցցուած քաղաքին, զոր չտեսնել անկարելի է: Ու սակայն այդ մարդիկ կոյրեր չէին... Որքա՜ն Մասիսներ կան, զոր առանց տեսնելու կեանքեր կ'անցնենք մեր կուրութեան մէջ:

Փոշիի թանձր ամպ մը կ'ընկերակցի մեր կառքին՝ խեղդելով մեզ Արաքսի հովտին մէջ: Տաք անախորժ քամի մը կը դիմաւորէ



ԱՐԱՔՍԻ ՀՈՎԻՏԸ ԵՒ ՇԱՀ-ԱԲԲԱՍԻ ՔԱՆԴՈՒԱԾ ԿԱՄՈՒՐՋԸ

*բարակ ու դեղնաւուն փոշիով մը, որ անխուսափելիօրէն կը մտնայ բերանդ, աչքերդ, զգեստներէդ ներս, ամէն կողմդ եւ որմէ չես կրնար ազատուիլ։*

*Կը հասնինք քարաշէն միայարկ տներու երկար շարքի մը, որոնք շատ անհրապոյր տեսք ունին։ Արդէն Ջուլֆա ենք, Արաքսի ափը։ Վար կը ցատկեմ կառքէն, կը վազեմ դէպի գետը, որ դեռ չի տեսնուիր, եւ Թումբի մը գլխուն կ'արձանանամ շուարած։*

*Տէր Աստուած, բայց այս չի կրնար լինիլ մեր երգած Մայր Արաքսը, որու ափին քայլամոլոր գնացող բանաստեղծին Հայաստանի սրտէն բխող նուիրական գետը, լեզու կ'առնէ իր անցեալ փառքը եւ ներկայ դժբախտութիւնը լալու.*

«Կար ժամանակ, որ ես էլ
Շքեղազարդ հարսի պէս,
Դարիւ դարիւ խփելով՝
Փախչում էի ափերէս...»։

*Վերջէն, երբ շատ տեղերէ ես բախտը ունեցայ Արաքսը տեսնելու, ի հարկէ փոխուեցաւ առաջին տեսնելուս կազմած աննպաստ տպաւորութիւնը։*

## ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

*Ջուլֆա՝ Արաքսի ամենաչոր, անշուք անցքերէն մէկն է։ Շատ էի յուսախաբ եղած, ուղղակի սիրտս կուլար այդ պղտոր գետը տեսնելով, որ ոչինչ ունէր «շքեղազարդ հարսի պէս»։ Եղածը բաւական չէր կարծես, աւելի եւս տգեղցնելու համար, Մայր Արաքսի վրան* պարօմ *մ'էին հաստատած, երկու երկիրներու յարաբերութիւնը դիւրացնելու նպատակով։*

*Պողպատէ հիւսուած պարան մը երկու ափերը կը միացնէր իրարու. իսկ այդ պարանէն ճախարակով մը ամրացուած էր մեծ տաշտի պէս բան մը, եթէ կ'ուզէք՝ ըսէք տափակ նաւակ մը՝ ճամբորդներ եւ ապրանք տեղափոխելու համար։ Կարծեմ այդ ձեւը կամուրջի գաղափարին նախակարապետն էր, թէեւ շատ վերջէն մեծազոյն բախտն ալ ունեցայ ընկերներով, ան ալ կատաղած Ա-*

բաքսի վրայէն, պարզապէս Թուլուխով անցնելու: Ամէն բանին վատը կայ աշխարհի մէջ, ինչպէս եւ լաւը, ու մարդ դժգոհելու չէ անցաւոր բաներէ, որոնք աշըղ Ջիվանի ըսածին նման, «կուգան ու կ'երթան»: Այդ պարօմը, որով անցայ Արաքսը, Թուլուխի մօտ պարզապէս հսկայական առաջդիմութիւն մըն էր: Թէեւ այդ ժամանակ, շատ երեխայ ըլլալով՝ աշխարհային բարիքները գնահատելու անկարող էի...

Եւ որովհետեւ պարսկական ափը շատ էր ծանծաղ ի մեծ ուրախութիւն պարսիկ մշակներուն, այդ տաշտ–նաւակը 15–20 ոտքի չափ հեռու կը կենար պարսկական ափէն:

Հազիւ միւս ափը հասած էինք, երբ պարսիկ համշարիները ուժեղ յարձակումով Թափուեցան մեր իրեղէններուն վրայ, ու ձեռքը բան մը անցնողը հեռացաւ դէպի ափը:

«Տօ՛, տնաքանդներ, Թալան է ինչ է օրը ցերեկով»... բայց յուզումս աւելորդ էր: Այդ մարդիկ Տաճկաստանի մեր համալներն էին, միեւնոյն խառնուածքով ու սովորութիւններով: Քաւ լիցի, թէ բամբասելու ցանկութիւն ունենամ Ղալաթիոյ այդ աշխատաւոր մասսան, որ վերջերս զարթնումի այնքա՜ն ակներեւ նշաններ ցոյց կուտայ, Քեմալի մէկ հրամանագրով փոխանակ քիւլլահի ու բաթթոցի, եւրոպական գլխարկ կ'անցնէ գլխուն որ քամին իսկ չի դիմանար եւ ռամազան օրով Չարշի Ճամիի առջեւ եաղլը փեննիրլի կ'ուտէ:

Բնաւ երբեք, Տաճկաստանը եւրոպականացնող գլխարկի ու «փեշէի» ռեֆորմները քննադատել չէ միտքս, ըսելիքս այն է միայն, որ ծովեզերքը, ըլլի այդ՝ Չինաստան թէ Ֆրանսա, բեռնակիրներու իր բնորոշ դասակարգը ունի, որոնք քաջավարժ են նոր եկող օտար ճամբորդները՝ ըստ հնարաւորութեան՝ կճպելու... Այդ նախադասութիւնը կարծեմ շատ բուրժուական փախաւ, որովհետեւ պէտք է ըսէի, որ իրենց աշխատանքի արդար բաժինը կը ստանան, առանց յաւելեալ արժէքը աղտոտ կապիտալիստներուն ձգելու: Թող այսպէս ըլլայ եղբայր պատուական, կ'արժէ՞ որ մէկ երկու խօսքի համար ընթերցողի փափուկ սիրտը կոտրեմ:

Պարսկաստանի ալ ծովեզերքը Ջուլֆան էր իր բեռնակիր մըշակներով, որոնք այնքա՜ն պատրաստակամ ծառայեցին մեզի մեր իրեղէնները... տանելով: Ի լրումն ամենայնի, ինչպէս միւս ճամբորդները, ես ալ իմ կարգիս բարձրացայ մշակի մը շալակը,

արքայավայել լրջութեամբ մը, ու սիրտս ահ ու դողի մէջ՝ հասայ պարսկական ափը:

Փառք ի բարձունս Իրանի Թագաւորութեան, որ անցեալի մեծագործութեան օրերէն յոգնած, հարիւրաւոր տարիներ մուշ մուշ կը քնանայ, նոյն իսկ քթին վրայ թառած ճանճին փիշտ չըսելով: Անգիտակ լեզուներ կ՚ըսեն, թէ այդ երեխան ալ վերջերս, դրկից Հնդիկներու եւ Չինացիներու լացի ձայնէն արթնցած, ինք ալ իր կարգին ծիծ կ՚ուզէ: Չէի ուզեր հաւատալ այդ յերիւրածոյ լուրին, որ թշնամիներու կողմէ անպատճառ հրապարակ նետուած է: Ափսոս է Պարսկաստանին. հոն սքանչելի արեւ աստուծոյ հովանիին տակ քնացող երկիրը անցեալի, հեռուէն հեռու կը նայի քաղաքակրթութեան նոր քաջագործութիւններուն, որոնք կուգան գեղեցիկը խանգարելու, մեռցնելու մարդկային հոգու ամենագեղեցիկ յատկութիւնները, անոնց տեղը դնելով անկուշտ չահասիրութիւնը եւ կեղծիքը:

Կ՚ուզեմ ինքզինքս համոզել, որ, երբ 50 տարի վերջը կրկին երթամ Օմար Խայամի սիրուն հայրենիքը, ամէն ինչ իր տեղը պիտի գտնամ: Համեստ էշերու կարաւանները երկար շարքերով, փոշիի ամպի մէջ կորած, համբերատար ուղտերու տողանցքը իրենց ներդաշնակ զանգակներու երագուն միւզիքովը, խորտ ու բորտ սիրուն ճամբաները, որոնք աչնան հեղեղներէն կը բացուին ինքնաբերաբար, այնքա՜ն հարթ ու աւազուտ, որ տգէտ եւրոպացիները երբեմն շօսէ անունով կը մկրտեն զանոնք... Չէ՛, ասոնք բոլորը պէտք է որ մնան: Թող վերջապէս երկիր մը մնայ աշխարհքի մէջ, ուր, երբ ամենակարող աստուածը նորէն այցի գայ խեղճ մահկանացուներուս, իր ստեղծագործութենէն գէթ նմոյշ մը տեսնէ ու աչքը քաղցրանայ անառակ աշխարհի վրայ, որ մեղքերով ծանրաբեռնուած Սոդոմ Գոմոր մըն է, եւ արժանի երկրորդ ջրհեղեղի, առանց Նոյ նահապետի փրկանաւոր միջամտութեան:

* * *

Ահա բացուած դռնէ մը ներս կը սպրդի հայեացքս: Բակին մէջ պարսիկ կին մը, երեսը ծածկած ու բաց ձգած այն մասերը, զոր ընդհանրապէս եւրոպացի կիները կը ծածկեն, սիրուն երախայ մը գրկած, հետը կը խաղայ: Այս անճշդութեանս համար թող ներողամիտ լինի սիրելի ընթերցողը, այս մասին գրած էի

երեք չորս տարի առաջ, երբ մօտան տարբեր պահանջ ունէր: Հիմա, եւրոպացի կիներն ալ մարմնական ցուցահանդէս մը պարզած են իրենց կարճ զգեստներով, որը ո՞վ գիտէ, այսպէս կարճնալով մինչեւ ո՛ւր պիտի հասնի: Ի՛նչ գեղեցիկ մանկիկ մըն է, հազիւ երկու երեք տարեկան, սուրմայով յօնքերը քաշած, եւ փոշիով արտեւանունքները սեւացուցած:

Անեւլութի՞ւն, չէ՛, չունիմ պարսիկին հանդէպ. «Վարդան մեր քաջ զօրավար»ը արխիւին ինկած երգերէն էր արդէն եւ տեղի տուած «Թո՛ղ կործանի Տաճկաստան» յանկերգին: Զէ՞ որ մեր հոգեբանութիւնն ալ էր փոխուած, ու մասնաւորաբար մեզ, յեղափոխականներուս համար, Պարսկաստանը ազատ երկիր մըն էր դարձած, որ մեր քէֆին չէր դպչեր. բաւական էր, որ մենք ալ իր քունը չխանգարէինք:

Սակայն, այս խելօք առաքինութիւնը անկարող եղանք պահել մինչեւ վերջը: Եւ օրին մէկն ալ, որպէս Արեւելքի անխուսափելի ջահակիրները լուսաւորութեան, (այս աստուածատուր տիտղոս մըն է ազգային, որ ետ կ'երթայ մինչեւ դրախտի օրերը, երբ Աստուած Ադամին, հայերէն հարցուց, «Ո՞ւր ես Ադամ»), եւ մեր աւագոյն ուժերով, պարսկական յեղափոխութեան առաջամարտիկները դարձանք:

* * *

Պարսիկ ճամբորդի մը հետ կ'աճապարեմ կառք մը վարձել Թաւրիզ երթալու համար, չորս ձիանի կառք մը, որ բաւական արագ ճամբայ կը կտրէ:

Իրական հաճոյք մըն է Պարսկաստան ճամբորդելը: Քարվանսարաները, որոնք հօթէլներն են, եթէ մաքրութեամբ չեն փայլիր, բայց շատ հանգստաւէտ են եւ յարմար՝ արեւելքցու կարիքներուն: Մանաւանդ ձմեռ ատեն, երբ կէս սառած ներս կ'իյնաս սենեակը, սրբսրբալով կը նստիս քիւրսիի տակ, ուր հաճելի տաքութեամբ մարմինդ կը թմրի, մանաւանդ երբ եռացող սամավարը ներս կուգայ, ու քօրսէթաւոր բաժակներէ կը խմես պարսկական չիրին չայը, որը միայն Պարսկաստանի մէջ է որ այդքան համով է, ինչպէս բաստրման՝ Ղայսէրիի ու գարեջուրը՝ Միւնխէնի մէջ:

Երկրորդ օրը կէս օրին արդէն Սոֆիան ենք, 3–4 ժամ հեռու Թաւրիզէն: Հապճեպով բան մը կ'ուտենք եւ նորէն կառքը կը

նստինք, լծուած ձիերու զանգակներու ձայներէն տարուբեր:

Չէ, գեղեցիկ է Պարսկաստանը. շատ է գեղեցիկ, եւ այդ ամբողջը պարտական է բացառապէս այն հսկայ աշխատանքին, զոր դարեր շարունակ եկող գնացող սերունդները անդուլ անդադար թափեր են՝ այդ անապատ երկիրը դրախտի վերածելու համար: Դուրս ձգած Ատրպատականի հիւսիս-արեւմտեան եւ Կասպից ծովու շրջանը, Պարսկաստանը գրեթէ համատարած անապատ մըն է, աւազուտ ու չոր: Քարտէսի վրայ պարզ ակնարկ մը իսկ բաւական է տեսնելու համար, թէ որքա՜ն աղքատ է ջրով այդ արեւ երկիրը: Հակառակ այն բանին, որ երկար լեռնաշղթայ մը հարաւ-արեւելքէն դէպի հիւսիս-արեւմուտք կ'երկարի բարձրաբերձ սարերով, բխող գետակներն ու գետերը կարծես, քիչ հեռանալով ակէն, փոշմանած լոյս աշխարհ գալերնուն, կը սուզին երկրի խորը, անպտուղ:

Կարիքը մարդը հանճարեղ կ'ընէ: Եւ ահա երկրի այդ դրութիւնն է, որ հոն ծնունդ է տուած քեահրիզներու հնաւանդ բայց արդիւնաւոր ձեւին: Եթէ սարերու ջրերը կը յամառին մարդոցմէ փախչելու, մարդիկ է որ կ'երթան երկրի խորերը ջուրը գտնալու եւ ներքնափոր ջրանցքներով լոյս աշխարհ բերելու: Այնտեղ, ուր քեահրիզի ջուրն է հասած, հոն գիւղ մըն է շինուեր, ովասիս մը, ընդհանրապէս չոր անապատի մէջ: Այնպէս որ ճանապարհորդ մը խաբկանքը կ'ունենայ մերթ սիրուն բարեբեր երկրի մը մէջ լինելու, մերթ ալ՝ Սահարայի անապատին մէջ, ու այդ մէկ օրուան մէջ քանի մը անգամներ:

Սակայն, կարծեմ, շատ երկարեցի: Կառապանս ալ յոգնեցաւ սպասելէ: Լաւ է աճապարենք Թաւրիզ մտնել, որ ահա հեռուէն կ'երեւի, լայնատարած, հսկայ զանգուած մը:

Պիտի իջնայի լուսանկարիչ Ստեփանի խանութը: Այդ էր ունեցածս հասցէն:

Կառքը կ'անցնի նեղլիկ քուչաներէ, կամարակապ բազարներէ, ուր հազիւ մարդոց անցնելու տեղ կայ: Ու կը զարմանաս, թէ կառքը ի՞նչ հրաշքով կ'անցնի այդ նեղ ու բազմամարդ փողոցներու մէջէն... սրընթաց, առանց տասնեակ մը մարդ կոխոտելու:

Վերջապէս, հասանք: Վար կ'իջնամ կառքէն: Երկփեղկանի լայն դուռ մը կը բացուի, ու դրան մէջ կ'երեւի լուսանկարիչ Ստեփանը՝ Թաւրիզի Բալա-Ջանը, Սիբերիոյ աքսորական Թիապարտը:

Ընթերցո՛ղ, գլխարկնիս վերցնենք։ Այդ ծաղկախտէն չէչոտած դէմքով, կլոր փորը դուրս տնկած, ժպտուն մարդը առաջին հայ յեղափոխականներէն մէկն է, ժողովրդի հարազատ զաւակ մը։

1880—1890 Թուականներուն էր, այն ժամանակ, երբ Բեռլինի Վեհաժողովի կատակախաղէն սթափած հայ էֆէնտիներու հոյլը, կռնակ կը դարձնէր աժան երազներու, որ, պահ մը տաք երեւակայութիւննին հրաւիրելէ վերջ, չքացեր էր, տեղի տալով սթափման մը, որ զիրենք մինչեւ հակայեղափոխութեան կը հասցնէր։ Իրենք էին հին, այդ օրերու Հայաստանճիները, որոնք Ազգային Երեսփոխանական Ժողովին մէջ զիրար կ՚աշխատէին գերազանցել հայրենասիրական տաք ճառերով, քանի հաւանականութիւն կար մեծ պետութիւններու շնորհիւ պայմանադրական ազատութիւն մը ձեռք բերելու, ու իրենց համար ալ տիտղոսաւոր դիրքեր։ Իրենք էին, Պատրիարքէն սկսած մինչեւ պետական բարձր պաշտօնեաները, որոնք հայութեան սիրտը թունդ հանեցին սպասուող նոր արշալոյսով, որ պիտի ծագէր Բեռլինէն, աղերսագիրներու շնորհիւ։ Ու երբ բոլոր ակնկալութիւնները օդը ցնդեցան, «Թղթէ շերեփ»ներով չկրցան հերիսան ուտել, կանգ առին եւ ուզեցին, որ շարժումը կենայ, որ ալ առաջ չերթայ, քանի որ իրենք կանգ էին առած, իրե՛նք, մեծերը։

Ձիւնի փոքրիկ գնդակ մըն էր, որ մեծերն էին գլորած սարի գագաթէն եւ որ հետզհետէ ձիւնահիւսի փոխուած, անդիմադրելի, առաջ էր գլորած, սրբել տանելով ամէն արգելք իր ճամբուն վրայ։ Այդպէս է մանուկ ժողովուրդի մը զարթնումը երկարատեւ քունէ, որ, մէկ մը բռնկած, առաջ կ՚երթայ, ինչ ալ որ լինելու լինի հետեւանքը։

Հակառակ մեծերու կամքին, որոնք իրենց աշխատանքը կատարած պրծած էին, Վեհաժողովին դիմելով, երիտասարդութիւն մը երեւան էր եկած, ճիշդ է, շատ աղօտ եւ անորոշ գաղափարներով, բայց որուն համար Հայաստանն, ու հայրենիքը պարզապէս գեղեցիկ բառեր չէին։ Ու սկսաւ խմորումը։

Արմենական կուսակցութիւնը, ճիշդ է, սահմանափակուած Վասպուրականով միայն, բայց ազգի զարթնումի նշանը տուաւ։ Անոր յաջորդեց Հնչակեան կուսակցութիւնը, որ յեղափոխական մտքի տարածման տեսակէտով կարեւոր տեղ մը կը գրաւէ մեր

պատմութեան մէջ: Ճիշդ է, որ այդ կուսակցութեան գործունէութիւնը սահմանափակուեցաւ ցուցական բնաւորութիւն կրող աքթերով, բայց այդ իսկ, յեղափոխական շարժման սկզբնական օրերուն, պրոպագանդի լաւագոյն ձեւն էր ու անհրաժեշտութիւն մը անխուսափելի: Այդ ժամանակներ գրեթէ ամէն մարդ Հնչակեան էր, այսինքն՝ հայրենասէր, այնքա՜ն այդ բառերը հոմանիշ էին իրարու:

90 Թուականներուն էր, երբ մէկ քանի հայրենասիրական խմորում ունեցող ընկերութիւններ Կովկասի մէջ կը բոլորուէին քանի մը ղեկավարներու շուրջը կազմելու Հայ Յեղափոխականներու Դաշնակցութիւնը:

Ճիշդ այդ ժամանակն էր, որ Պետերբուրգէն երիտասարդ ուսանող մը՝ Սարգիս Կուկունեան, իր մէկ ընկերոջ հետ կ՚անցնէր Կովկաս, Տաճկահայաստան արշաւելու մտադրութեամբ:

Ս. ԿՈՒԿՈՒՆԵԱՆ

Չխօսինք այծ շարժման գործնական արժէքի մասին: Դժուար է այժմ արդար լինել, իսկ շատ դիւրին դժբախտաբար քննադատի աժան դերը վերցնել: Մէկ բան ճշմարիտ է, որ այդ շարժումը խոր արձագանգ գտաւ ամբողջ հայութեան մէջ, չտեսնուած ոգեւորութիւն մը առաջ բերելով: Ու զարմանալի չէ, որ այդ շարժման եկան մասնակցելու ամէն անկիւններէ մարդիկ, պոլսեցուն քով ղարաբաղցին, տրապիզոնցուն մօտ երեւանցին, չիրակեցին, պարսկաստանցին:

Եւ ահա այդ սրբազան զօրակոչին պատասխանողներու առաջին շարքին մէջ մենք կը տեսնենք մեր ազիզ Բալաջանը:

Յայտնի է Կուկունեան խմբի ողբերգական վերջաւորութիւնը: Վերջաւորութիւն մը, որ անակնկալ մը չէր ոչ ոքի համար,

երբ ի նկատի ունենանք, որ սկզբնաւորութիւն մըն էր, անխուսափելի անփորձութեամբ ու պակասութիւններով: Ըսենք, ռոմանթիք ձեռնարկ մըն էր, գրեթէ երեխայական, որը սակայն ազգային զարթօնքի խոշոր խթաններէն մէկը եղաւ:

Գամառ-Քաթիպայի եւ Րաֆֆիի երգերուն ու գաղափարներուն գործնականացումն էր այդ արշաւանքը, եթէ կ՚ուզէք ըսենք, ձախաւեր կերպով. երեխայի մը առաջին քայլերուն նման, սայթաքումներով եւ անկումներով, բայց որոնցմով միայն երեխան շիտակ քալել կը սորվի:

Ինչպէս բոլոր ժողովրդական շարժումները, Կուկունեան խմբի ահագին աղմուկով կատարած պատրաստութիւնները չէին վրիպելու ռուս կառավարութեան ուշադրութենէն: Եւ ահա խումբը, հազիւ սահմանին վրայ, կը շրջապատուի ռուսական զօրքէն, մէկ երկուքը կը սպաննուին, մէկ քանին կը յաջողին փախչիլ, իսկ մեծամասնութիւնը զինաթափ, անձնատուր կը լինի: Ձերբակալուածները կը նետուին Կարսի բերդը՝ որպէս պարզ քրէական յանցագործներ:

Դատավարութիւնը, որ անօրինակ էր այդ օրերուն Կովկասի մէջ, ահագին ժողովրդական հետաքրքրութիւն առաջացուց, կը վերջանայ ամենախիստ պատիժներով, որ կառավարութիւնը կրնար տալ, նման պայմաններու մէջ: Սիբիր, տաժանակիր աշխատանք:

Այդ դատապարտուածներուն մէջն էր եւ մեր լուսանկարիչ Ստեփանը, կամ ինչպէս սովորաբար կը կոչուէր, մեր Բալաջանը, Երեւանի գիւղերէն, իսկական անունով, Ծերունի Յարութիւնեան:

Թո՛ղ ներէ ինծի բարեսիրտ ընթերցողը, եթէ մտքով վերացած, հետեւիմ այդ խմբին մինչեւ հեռաւոր Սիբերիա, մինչեւ անհրապոյր Սախալին կղզին, որը հազարաւոր մտքի ու սրտի տէր մարդոց անփառունակ գերեզմաննոցն էր դարձած ցարական ռեժիմի շրջանին: Հոն ռուս իտէալիստ յեղափոխականի կողքին լեհ հայրենասէրն էր շղթայուած, չէչէն աւազակի կողքին հայ մտաւորական յեղափոխականը:

Սարսափելի խառնուրդ մըն էր այդ՝ բնածին ոճրագործներու, այլասեռուած մարդկային տականքներու, ակամայ ոճրագործներու եւ իտէալական բարձր թռիչքներու, անձնուէր զոհա-



Ս. ԿՈՒԿՈՒՆԵԱՆ ԵՒ ՍՒՊՒՐ ԱՔՍՈՐՈՒԱԾ ԸՆԿԵՐՆԵՐԸ

բերութիւններու, ինքնուրաց մարտիրոսութիւններու ընդունակ հերոսներու։ Ռուս կայսրութեան ամենաշքեղ պատմութիւնը, որ չի կրնար մոռացուիլ եւ որ փարոս մըն է Ասիայի խաւարին մէջ, հոն, Սիբիրի սառնամանիքներուն մէջ փայլեցաւ իր անհասելի գեղեցկութեամբ։ Շատ շատեր գացին հոն իրենց կեանքովն իսկ քաւելու յանցանքը, որ փառքի պսակ մըն էր իրենց ճակատներուն, եւ հազարաւոր յաջորդներու ճամբան հարթեցին դէպի ազատութեան պայքարը իրենց տաժանելի մահովը։

Եւ ուխտաւորներու քարաւանը անվերջ, երկար շարաններով, ձեռք էր առած այդ փշոտ ճամբան, չընկրկելով ոեւէ արգելքի առջեւ, զոր ցարական կառավարութիւնը, դիւային քրքիջով, կը հրամցնէր երիտասարդ, մոլեռանդ հոգիներուն, որոնք շքեղ անձնուրացումով, յանուն ժողովուրդի ազատագրման, յաւիտենական սառնամանիքներու մէջ, կ՚երթային կոփել գալոց արշալոյսը։

Այդ անվերջանալի քարաւանին միացան Կուկունեան արշաւախումբի երիտասարդ ռազմիկները, որոնք գեղեցիկ օր մը, իրենց կեանքերու գնով ճամբայ ելած էին, սահմանի միւս կողմը՝ արիւնակից եղբայրներուն օգնութեան հասնելու։ Երկար տառապալից ճամբորդութիւն մըն էր այդ, անլուր զրկանքներով համեմուած. բանտէ բանտ, ծանր շղթաներով, ամէն տեղ վայելելով դաժանութիւնը ռուսական բանտերու։ Խումբը, հետզհետէ աճելով ճամբու երկայնքը նոր դատապարտեալներով, ձեռք առաւ սիբիրական անհատնում ճամբան, միօրինակ եւ անհրապոյր, աչալուրջ սուիններէ շրջապատուած, հազարաւոր վերստեր քալելով, հիւծուելով, մահանալով, բայց անվերջ քալելով դէպի որոշուած վայրը։

Սափրուած գլուխներով, երկար շղթայ մը ջուխտ ոտքերնուն, կաշիով մը մէջքերնէն կախուած, անոնք այլեւս մարդիկ չէին օրէնքի առաջ, անոնք կենդանի մեռածներ էին, պարզ թուանշաններ միայն։

Ռուս լայնասիրտ ժողովուրդի ծոցէն դուրս ինկած խելագար խռէալխատներու կողքին, նոյն ժողովրդէն ելած ռուս զինուորը, անհոգի, դաժան, կրաւորական մեքենայ մը, որ անտարբեր՝ դատապարտեալներու սարսափելի դրութեան, մտրակներով կը վարէր այդ շքեղ հօտը՝ դէպի խորերը Սիբիրի։

*Բանտարկութիւնն ու ճամբան մօտ երկու տարի կը տեւէ, երկու դժոխային տարիներ, որոնց դիմագրաւելու համար մարդ պէտք է երկաթէ ջիղեր ունենար։ Վերջապէս ահա սոսկական մայր ցամաքը կը վերջանայ, ու ճարոնական ծովը կը բացուի, ծածկելով Սախալին կղզին 60–70 վերստ հեռաւորութեան վրայ։*

*Աքսորականներու խումբը ճամբու երկայնքին նօսրացած է արդէն․ շատերը տեղաւորուած են զանազան աքսորավայրերու մէջ․ իսկ մեր երիտասարդները ահա այդ կղզին կը բերուին, ամենահեռաւորը աքսորավայրերու մէջ, տեսակ մը Անուշ բերդ, ուր մոռացումը եւ մահացումը ձեռք ձեռքի տուած կը կոտորակեն աքսորեալները։*



ԿԱՍՐԸ–ՇԻՐԻՆ (ԱՆՈՒՇ ԲԵՐԴԻ ԱՒԵՐԱԿՆԵՐԸ)

*Պարսկաստան՝ Կասրը–Շիրին (Անուշ բերդ) հանդիպեցայ ճամբորդութեանս ժամանակ, ուր բանտարկուած էր մեր Արշակ Թագաւորը։ Հաստաբերձ պատեր, անլոյս կամարակապ նկուղներ սարսափելիօրէն չոր եւ անհրապոյր շրջապատ, գրեթէ անապատ մը։ Եւ այդ պատերու ետին սոսկական կլասիկ բռնակալութիւնը հարիւրաւոր տարիներ առաջ, կը խամրեցնէր ըմբոստ մտքեր, անխորտակելի կամքեր, լոյսէն եւ արեւէն զրկելով, քաւելու հա–*

մար իրենց մեղքերը։ Հարիւրաւոր տարիներ վերջը, ցարական ռեժիմը, սառնամանիքներու մէջ կը քշէր հազարաւոր կեանքեր, նոյնպէս դատապարտելով դանդաղ մահացումի։ Եթէ այս դեռ չափով մը հասկնալի կրնար լինել հարիւրաւոր տարիներ, կամ ցարական ռեժիմի օրով, բայց վրդովեցուցիչ է երբ մեր օրերուն իսկ, Խորհրդային անունը կրող իշխանութիւնը նոյնպէս հազարաւորներ կը բանտարկէ, կ'աքսորէ եւ մահացումի կ'ենթարկէ Սառուցեալ ովկիանոսի կղզիներուն մէջ։

Ի՞նչու այս բոլորը։ Մի՞թէ աշխարհը բաւական լայն չէ բոլորին համար։ Մի՞թէ մարդ գազանը երբեք պիտի չյագենայ ընկերոջ արիւնը խմելէ։ Չեմ գիտեր։ Մենք, որ կը պարծինք, թէ լուսաւոր քաղաքակրթութեան շրջանի մէջ կ'ապրինք, ճշմարիտ չեմ գիտեր թէ որքան հեռացեր ենք Պենկալի ջամբուտներու մէջ թափառող կատաղի վագրէն, որ շանթարձակ կը նետուի որսին վրայ, յօշոտելով զայն։ Զէ՛, կարծեմ մենք դեռ երկա՜ր արիւնակից պիտի մնանք գազանին։

* * *

Ի՞նչ է Սախալինը։ Գրեթէ անմարդաբնակ կղզի մը՝ կուսական անտառներով ծածկուած։ Հիւսիսային մասերուն մէջ շատ նօսր կ'ապրի կիսավայրենի ցեղ մը, որը որսորդութեամբ քաշ կուտայ իր ողորմելի գոյութիւնը։ Այդ կղզիին վրայ ցարական կառավարութիւնը հիմնած էր աքսորավայր կայան մը, որը հազիւ գիւղաքաղաք մըն էր եւ կղզիի վարչական կեդրոնը միաժամանակ։

Բանտարկեալները, որոշ շրջանէ մը վերջ, կը ձգուէին իրենց բախտին, ի հարկէ ազատութեան մասնակի կրճատումներով։

Ստեփանը լուսանկարիչ էր բարեբախտաբար, շնորհիւ աչքի կ'իյնայ որպէս արհեստաւոր եւ մեծ պաշտօնեաներու շուքին տակ որոշ ազատութիւններ եւ տանելի կեանք մը կը վայելէ։ Կ'ունենայ իր փոքրիկ տնակը, հաստ գերաններէ շինուած, տաք եւ հանգիստ։ Եւ այսպէս տաժանակիր աշխատանքը, որուն դատապարտուած էր ինքը, իրերու բերումով, կը դառնայ տանելի աքսոր մը։ Քանի մը անգամ նոյնիսկ, բարձր պաշտօնեաներու ընկերակցութեամբ, դուրս կուգայ մայր ցամաքը, երկարատեւ ճամբորդութիւններ կը կատարէ Սիբերիոյ մէջ, ի հարկէ լուսա-

նկարիչի հանդամանքով, նկարելով վայրեր, գիւղեր, դիրքեր եւայլն:

Աքսորականի տանելի կեանք մը սկսեր էր Ստեփանի համար, մինչդեռ իր ընկերները առտուն կանուխ հսկողութեան տակ անտառը կը տարուէին՝ ահագին ծառեր կտրելու եւ քաշ տալու դէպի գիւղը: Ու այս ամբողջը սեւ հացի մը փոխարէն:

Սակայն, մեր Ստեփանի ուշն ու միտքը փախչելու հետ էր: Հայրենիք վերադարձը դարձեր էր այնքան հրամայական, որ վերջ ի վերջոյ մի քանի աքսորականներու հետ գլուխ գլխի տալով կը ծրագրեն փախուստ մը առասպելական:

Իր ընկերները, որոնք անտառի փայտ կտրողներն էին, նոյնպէս քաղաքական աքսորականներ, իրենց աշխատանքի ժամանակ երբ արդէն հսկողութիւն չկար վրանին, ծովի մօտերը, հետզհետէ գերաններէ լաստ մը կը պատրաստեն՝ ճկուն ճիւղերով ամուր մը իրար կապելով:

Ամէն օր անտառ հասնելնուն, երբ խումբ խումբ կը մեկնէին զանազան ուղղութեամբ օրական աշխատանքի, հաւաքատեղին կը մնային զինուորներն ու պահապանները, որոնք աներկբայ էին, թէ մութը կոխելուն, բանտարկեալները կամայ ակամայ պիտի վերադառնան, եթէ չեն ուզեր գազաններու կեր լինիլ: Եւ, որ աւելի վատն է, անոնք կարող էին հանդիպիլ բնիկ կիսավայրենիներուն, որոնք շան նման հոտառութիւն ունէին փախստականներ հետապնդելու ու սպաննելու, եթէ չէին կրնար ձերբակալել: Ու այդ կ'ընէին, որովհետեւ կառավարութիւնը 3 ռուբլի նուէր կուտար, փախստական աքսորեալ մը կենդանի կամ մեռած բերողին:

Շատ շատեր աքսորականներէն սպաննուած են կացիններով այդ բնիկներու կողմէ:

Ամէն օր, Բալա-Ջանի ընկերները, իրենց բաժին հացէն ժայռի մը խոռոչին մէջ մաս մը կը պահեն, փախուստի համար:

Վերջապէս լաստը պատրաստ է եւ հացի պաշարը՝ բաւարար: Եւ օր մը, երբ ծովը ազատ կը լինի արդէն սառոյցներէ, լաստը կը ձգեն ծովը, իրենք ալ վրան կը պըպըզին, կը բանան ողորմելի առագաստ մը, որ մեծամասնաբար իրենց վարտիքներէն ու շապիկներէն էր կազմուած, ու ճամբայ կ'իյնան՝ իրենք զիրենք յանձնելով բախտին, որ ընդհանրապէս չի ժպտար խեղճե-

րուն, եւս առաւել աքսորեալներուն:

Օրերով լաստը ովկիանոսի ալիքներուն խաղալիք կը դառնայ: Ո՞ւր կ'ուզէին երթալ, ո՞ւր կրնային երթալ, շիտակը իրենք ալ չէին գիտեր: Բայց բան մը հաստատ որոշած էին, թէկուզ մահ, բայց հեռու Սախալինէն: Այսքանը բաւական էր արդէն, որ այդ յանդուգն փախստականները արհամարհէին ովկիանոսը եւ կռիւ յայտարարէին անոր դէմ իրենց ողորմելի լաստով:

Թէ ի՞նչ կերպով անոնք բաւական մը հեռացան կղզիէն, դէպի հարաւ, դժուար թէ կարելի լինի բացատրել: Լաւ է ըսենք՝ հրաշք, եթէ նոյնիսկ չենք հաւատար հրաշքներու:

Ամէն բան լաւ: Սակայն, 4–5 օրէն հացի պաշարը կը վերջանայ անօթի փորով լաստին վրայ երկնցած, անոնք կը մատնուէին յուսահատական կացութեան մը, ուր ամէն արիութիւն կը սկսի ընկրկիլ, տեղի տալով համր մահուան սարսափին: Պարապ խօսք չէ, սոված էին երկու օրէ ի վեր, անբան ստամոքսը անդիմադրելի պահանջ ունէր, աղիքները կը գալարուէին: Ու վերջը՞․ պէտք էր բանով մը լեցնել անկուշտ փորը: Իսկ ի՞նչով... Լաստի փայտը չէր ուտուեր․ շատ էր կարծր... բայց օհօ՜... իրենց վրացի փախստական ընկերը ի՜նչ չաղ էր եւ ի՜նչ միսոտ: Ու մռայլ յուսահատ աչքերը նաւորդներուն կը սկսին խոժոռ խոժոռ նայիլ դէպի իրենց երէկի սիրելի ընկերը, որու միակ յանցանքը միսոտ լինելն էր ... ի մեծ դժբախտութիւն իրեն: Չորս կողմէն արդէն անախորժ ակնարկներ եւ ատամներու կրճտումներ կը լսէ սարսափած վրացին:

Մեր Բալա-Ջանը սակայն համեստօրէն այս հարցը շատ խորը չէր պրպտեր, կ'երեւի չուզելով իր խաղցած դերը երեւան հանել...

Երբ ես հանդիպեցայ մեր Բալա-Ջանին, ան արդէն տարիքը առած պատկառելի փորով, շէնքով շնորհքով մարդ մըն էր, բայց աքսորավայրի մէջ, ինչպէս կը հաւատացնէր ան, ոսկոր ու կաշի էր միայն, հետեւաբար ոչ ցանկալի մսացու, ուրեմն ազատ որեւէ ... պատահական վտանգէ:

Բարեբախտաբար, գարնան եղանակին, երբ ճապոնական առագաստանաւեր կը տարածուէին ամբողջ Սախալինի եւ մայր ցամաքի երկայնքը՝ ձկնորսութեան, շատ ալ հազուագիւտ բան չէ հանդիպիլ ձկնորսական նաւու մը:

Վրացի փախստականի ջերմագին աղօթքներուն վրայ, ըստ Երեւոյթին, ռուս սուրբերէն մէկը, անունը դժբախտաբար մոռցեր եմ, այդ կողմերը կը ղրկէ ճաբոնական ձկնորսական առագաստանաւ մը, որ հետզհետէ կը մօտենայ լաստին, երբ կը տեսնէ անոր վրայ նստածներու խելագար նշանները՝ օգնութիւն աղերսող:

Ինծի կը թուի, թէ վրացին, որուն մսերը ի հարկէ կիսով հալած պիտի լինէին իր սիրելի ընկերներու գայլային հայեացքներէն, երկար ու ազատ շունչ մը քաշած պիտի լինէր վերջապէս ի տես մօտեցող նաւուն, որ եթէ ռուսական իսկ լինէր, իր հետեւանքներով նախընտրելի էր, քան այն անցանկալի վիճակը, որու մէջ կը գտնուէր:

Սովալլուկ փախստականները կը կերակրուին բարի ձկնորսներէն, որոնք կարող էին առաջին հանդիպած ռուսական քաղաքի պաշտօնէութեան յանձնել զանոնք: Դժուար չէ երեւակայել մեր փախստականներու հոգեկան վիճակը: Ծնկաչոք անոնք կը պաղատին իրենց ազատարարներէն չյանձնել զիրենք. կը բացատրեն, որ իրենք քրէական յանցագործներ չեն, այլ քաղաքական, որ իրենց ետ երթալը՝ համազօր է մահուան:

Մարդկային հոգու մէջ երբեմն կան թագնուած, գթութեան տկար կայծեր: Ձկնորսները կը խղճան խեղճերուն, կը պահեն իրենց նաւի վրայ, ի հարկէ աշխատցնելով. ու երբ ձկնորսական շրջանը կը վերջանայ, իրենց հետ կը տանին Ճաբոն:

Բալա-Ջանը, որ հետը վերցուցած էր իր նկարած տեսարաններու ճոխ հաւաքածոյ մը, հեշտութեամբ կը ծախէ զանոնք. քիչ մըն ալ դրամ էր կարողացեր տնտեսել: Նախ կը փորձէ Ամերիկա գալ, դժբախտաբար այդ կը պատահի Սպանո-Ամերիկեան պատերազմի ժամանակ: Սան Ֆրանսիսկօ դուրս գալուն, փողոցի մէջ կ'ենթարկուի տեղացիներու հալածանքներուն, որոնք զինք Սպանիական լրտես մը կը կարծեն, դէմքով սպանացու նմանելուն համար: Ճարահատ նորէն կը վերադառնայ Ճաբոն, անկէ ալ կ'անցնի Հնդկաստան:

Հնդկաստան հայեր կը գտնէ հեշտութեամբ. կը պատմէ իր պատմութիւնը. շատեր կ'օգնեն իրեն, վրան գլուխը կը նորեն: Եւ օր մըն ալ ինքզինքը կը ձգէ փոխադրանաւի մը վրայ եւ Կարմիր ծովով կը բարձրանայ Եգիպտոս, Ալէքսանդրիա: Հոն առա-

ջին անգամ կը տեսնէ Հ. Յ. Դաշնակցութեան օրգանը, «Դրօ-շակ»ը, որ բարեսիրտ հայ մը իրեն կուտայ, ճամբան կարդալու համար։ Բայց որովհետեւ մեր Բալա-Ջանը ծովէն հիւանդանալու անպէտք սովորութիւնը ունէր, թերթը կը մոռնայ վերարկուի գրպանը։ Երբ, շոգենաւը, որ Բաթում կ'երթար, կանգ կ'առնէ Պոլսոյ առջեւ, մեր Բալա-Ջանը նշանաւոր գաղափարը կ'ունենայ իր այցելութեամբ բախտաւորել սուլթաններու անշուք մայրաքաղաքը։ Հազիւ ցամաք կ'ելլէ, երբ ոստիկանները անցագիրը



ԲԱՑՕԹԵԱՑ ՊԱԶԱՐ ՄԸ ԹԱՒՐԻԶԻ ՄԷՋ

կ'ուզեն։ Հնդկաստանէն պարսկական անցագիր մը ճարած էր։ Ու, երբ կը սկսին վրան գլուխը խուզարկել, յանկարծ մէջտեղ կուգայ «Դրօշակ»ը, որ բարեսիրտ հայը տուեր էր կարդալու։

Կը ձերբակալուի մեր Բալա-Ջանը ու բանտ կ'առաջնորդուի։ Ինչ խօսք, որ եթէ Բալա-Ջանը գիտնար, թէ ինչ անքաղաքավարի վերաբերմունք կրնայ ունենալ թրքական կառավարութիւնը, ի հարկէ, պիտի մերժէր այցելել Պոլիսը, հրաժարելով անոր շաուէն ու չէրէն։

Բարեբախտաբար, «Դրօշակ»ի թերթերը չէին իսկ կորուած. Ստեփանը ատոր ալ ժամանակ չէր ունեցած: Պարսիկ քօնսուլը ազդու բողոքները, կ'ազատեն զայն Թուրքերու սիրալիր ասպընջականութենէն: Ու ինքզինքը նորէն գտնելով շոգենաւին վըրայ, ան այլեւս դուրս ելնելու փորձութեան չենթարկուիր, մինչեւ որ կը հասնի Բաթում:

Քանի մը օր միայն մնալով իր ծննդավայր Երեւանի մէջ, ան կ'անցնի Ասիայի ազատ Զուիցերիան, ըսել կ'ուզեմ, Պարսկաստան, ուր ամէն ոք ազատ է, եւ ուր ոչ ոք քեզի չի նեղեր քու



ԹԱՒՐԻԶԻ ՀԱՄԱՅՆԱՊԱՏԿԵՐԸ

համոզումներուդ համար, եթէ միայն «սուգի օրերուն» թաց զգեստով չդպչիս հաւատացեալի մը փէշին, կամ շուկայէն պանիր գնած ժամանակ ձեռք չզարնես պանիրի տիկին... Իսկ թէ ի՞նչ քաղաքական դաւանանք ունիս, այդ ոչ ոքի չի հետաքրքրեր:

Պարսկաստանի մէջ Բալա–Ջանը իր սիբիրական ծանօթներէն մէկուն կը հանդիպի, պարսիկի մը, որ ոճրագործութեան համար աքսորուեր էր տաժանակիր աշխատանքի, փախեր էր Սիբիրէն եւ Թաւրիզի մէջ դարձեր էր ազդեցիկ Խան մը:

Բալա–Ջան եւս Թաւրիզ կը հաստատուի: Լուսանկարչի օֆիս մը կը բանայ եւ մեծապէս կը յաջողուի, շնորհիւ իր նկարներու արտակարգ գեղեցկութեանը, որոնք եթէ նկարուողներուն շատ ալ չէին նմաներ, բայց գէթ շատ փայլուն թղթի վրայ տպուելու առաւելութիւնը ունէին:

Կարծեմ աւելորդ պիտի լինի ըսելը, թէ Բալա–Ջան անմիջապէս կը լծուի կուսակցական աշխատանքի, եւ մինչեւ վերջն ալ կը մնայ Ատրպատականի Դաշնակցութեան Կ. Կոմիտէի գլխաւոր դէմքերէն մէկը: Շատ չանցած կ'ամուսնանայ տեղացի օրիորդի մը հետ, հետզհետէ իր ժառանգներով լեցնելով իր տան խաղաղ մթնոլորտը:

Այս՝ գրական ձեւ մըն էր, որ գործածեցի՝ ի սէր գեղեցիկ ոճի. իրականին մէջ, սակայն, Ստեփանի տունը Մէքքէ մըն էր, ուր ամէնքը իրար կը հանդիպէին, ի մասնաւորի կուսակցականները: Այդ տունը կեդրոնավայր մըն էր բոլորի համար. սեղանը, եթէ ոչ ճոխ, բայց բաց էր բոլորին, Աղթամարի դրսի տան նըման, ուրկէ անցնող բոլոր ճամբորդները վստահ են փորերնին կշտացնելու մասին:

Այս զարմանալի մարդը, որ սեփականութեան մասին քիչ մը բացառիկ գաղափար ունէր, փորձուեցաւ սեփական տուն մըն ալ շինել, ու հաւատացէ՛ք, որ շինեց:

Երբ առաջին անգամ երկրէն վերադարձայ, աւելորդ է ըսել, աննախանձելի վիճակի մէջ, Բալա–Ջանը՝ ձեռքէս բռնած, դպրոցական աշակերտի մը նման՝ տարաւ դերձակին, լաւագոյն կտորէ զգեստ մը ապսպրեց եւ կօշկակարին տարաւ զոյգ մը երկարավիզ կօշիկ շինել տալու: Ես երկուքն ալ ստացայ, բայց թէ Ստեփանը դրամով վճարեց թէ ... քամիով, շիտակը չեմ գիտեր, ի՞նչու սուտիս մեղք ընեմ:

Երկար չտեւեց, սակայն, մեր Բալա–Ջանի երջանիկ կեանքը: Պարսկական յեղափոխութենէն վերջ, ուր ինք, որպէս Դաշնակցութեան Կ. Կոմիտէի անդամ, ունեցաւ իր որոշ դերը, ռուսական զօրքը Ջուլֆայէն խուժեց դէպի Թաւրիզ, Մէհմէտ Ալի Շահին օգնելու: Եւ որովհետեւ ռուսները քանի մը մարդիկ կախել կ'ուզէին Արքէն, որպէս խրատ ուրիշներու, ու որովհետեւ Բալա–Ջանն ալ թեկնածուներէն մէկը կը համարուէր այդ պատուին, հրաժարելով այդ շնորհքէն պաստ մտաւ Թրքական հիւպատոսա–

րանը։ Զմոռնանք ըսելու, որ Թուրքիա արդէն սահմանադրական երկիր մըն էր, ու մենք՝ եղ ու մեղր Թուրքերուն հետ...

Անշուշտ որքան ալ որ Թրքական հիւպատոսարանը ապահով վայր մըն էր մեր Ստեփանի համար, սակայն, երբ Թաւրիզի Արքէն մէկ քանիներ կոխուեցան, Ստեփանը խոհեմութիւն համարեց



ԹԱՒՐԻԶԻ ԱՐՔԸ

որքան կարելի է երկար տարածութիւն մը ձգել իր եւ Թաւրիզի միջեւ։

Օր մըն ալ, ուրպէս Ջորեպան ծպտուած, կարաւանի մը միացաւ, որ դէպի Մուսուլ կ'ուղեւորուէր։ Ժամանակ մը Մուսուլ մնալէն վերջ, կ'որոշէ անցնիլ Վան։ Քովը մնացած դրամով էշ մը կը գնէ։ Եւ գիւղէ գիւղ հարցնելով փնտռելով, միաժամանակ տեսարաններ նկարելով, Պիթլիսէն կ'անցնի Դատվան, իսկ անկէ ալ Վանի ճամբան ձեռք կ'առնէ, համեստ աւանակի ծանրաշարժ քալուածքին յարմարցնելով ճամբորդութիւնը։

Վահապը (Վռամեան) կը պատմէր թէ ինչպէս պատահաբար

կը հանդիպի անոր, Կարճկանէն Կաւաշ անցած ժամանակ։ Հոս խօսքը տանք Վռամեանին։

«Հեռուէն ճամբորդ մը կ'երթայ։ Մենք ձիաւոր՝ չուտով հասանք անոր։ Հնացած եւրոպական լայնեզր գլխարկ մը, մազն ու մօրուքը իրար խառնուած, զգեստները անհարկի պատուհաններով պճնուած, հաստկեկ գաւազան մը ձեռքը բռնած, որով չարաչար կը ծեծէր անմեղ աւանկար, որ երբեմն կ'ուզէր կանգ առնել... բնութեան գեղեցկութիւնը վայելելու։ Մէկ ալ ի՞նչ տեսնեմ, անծանօթ ճամբորդը ձեռքի գաւազանը մէկդի նետեց ու վրաս յարձակեցաւ, «վա՛յ, Վահագ ջան», ըսելով, միաժամանակ հարցումներու տարափ մը տեղացուց»։



ՊԱԼԱ-ՋԱՆԸ ՈՐՊԷՍ ՁՈՐԵՊԱՆ

Քիչ մը տեղ միասին երթալէ վերջ, Վռամեանը բաց յանձնարարական մը կուտայ անոր։ Մեր Բալա-Ջանը առկէ վերջ, հանգիստ եւ ապահով կը հասնի Վան։

Նախ քան մեծ պատերազմը, Կարին էր անցեր Բալա-Ջանը։ Պատերազմի յայտարարուելուն՝ կը մնայ հոն, եւ հոն ալ վերջ կը գտնայ այդ Թափառական հայու կեանքը։

Իթթիհատականներու հետ բանակցութեան շրջանին՝ պատերազմի առթիւ, ինքը բուռն հակառակորդ մը դուրս կուգայ օժանդակելու անոնց։ Դժբախտաբար, Բալա-Ջանը երկու անզսպելի բաներ ունէր,— մէկը հակառակ է կենցաղագիտութեան, որ հոս ըսենք. միւսը՝ իր լեզուն էր, որ ոչ սահման ունէր եւ ոչ ալ չափ։ Մէկ քանի անգամներ, Իթթիհատականները կը յայտնեն մերոնց, որ զգուշացնեն զայն, բայց ի զուր։ Մինչեւ որ դրութիւնը կը լարուի արդէն, եւ ինչպէս լսեցինք Կովկաս, Բալա-Ջանը կը լինի ա—

ռաջին կախուողներէն մէկը Էրզրումի մէջ։

Ահա՛, այսպիսի փոթորկալից կեանք մ'ունեցաւ Ստեփանը, Դաշնակցութեան Բալա–Ջանը։ Բոլոր իր պակասութիւններով եւ առաւելութիւններով, Բալա–Ջանը իսկական Հայ մըն էր, սրտբաց, ուրախ, գործին նուիրուած ընկեր մը, զոհաբերող ու սրտցաւ։ Անոր համար ամէն հայ «բալա–ջան» էր, ու ինքն ալ բոլորի Բալա–Ջանը։



ՏԻԳՐԱՆ ԵՒ ՊԱԼԱ–ՋԱՆ
(Կարնոյ Ընդհ. Ժողովի ժամանակ)

Հողը թեթեւ գայ վրադ, ազիզ Բալա–Ջան։

* * *

Հազիւ քիչ մը հանդըստացած էի Բալա–Ջանի մօտ, երբ երեկոյեան դէմ, Արհեստանոցէն եկաւ Պետրոսը, Դաշնակցութեան Թաւրիզի զինագործարանի վարպետը, միեւնոյն ժամանակ անդամ Կեդր. Կոմիտէի։ Անոր առաջնորդութեամբ գնացի Դաշնակցութեան տունը, որը ամբողջ Թաւրիզի մէջ ծանօթ էր, որպէս Պապոնց տունը։

Շէնքով չնորհքով տուն մըն էր, ինչպէս կ'ըսեն, հայ–քրիստոնեայի մը տունը, այն տարբերութեամբ միայն, որ հոն Դաշնակցութեան հայդուկները կ'ապրէին։

Արհեստանոցի աշխատաւորները, Պետրոսը եւ դրսէն եկած ընկերները միասին կ'ապրէին այդ տանը տեսակ մը համայնական կեանք, որու մէջ ամէնքը իրենց աշխատանքի բաժինն ունէին, թէեւ, աւա՜ղ, հոն ալ նկատեցի, որ աշխատանքը աւելի

շատ բաժին կ՚իյնար տկարին, իսկ վայելքը զօրաւորին կամ ճարպիկին :

Իմ նկատումս այն էր, որ երբ մեծ պնակով կերակուրը մէջտեղ կուգար — եւ ինչ անտանելի կերակուր — համեղ եւ խոշոր պատառները վայրկենաբար կ՚աներեւութանային ճարպիկներու կողմէ, եւ տակի մնացորդը բաժին կը մնար համբերատար եւ անճարակ սպասողներուն :

Հազիւ երկու օր կրցայ մնալ այդ տունը, որու կարգն ու սարքը, ինչ մեղքս պահեմ, շատ ալ սրտիս մօտ չէր, թէեւ վերջէն ես ապրեցայ Դաշնակցական տուներու մէջ, որոնք պարզապէս ախոռներ էին այդ պալատի համեմատութեամբ :

Մկրտիչ Երեմեանի մայրը, Համաս մօրքուրը, լսած լինելով Թաւրիզ լինելս, ուղարկեց ծառան, որ գիս իրենցը տանի : Պէտք էր տեսնել այդ բարի կնոջ վրդովմունքը, որ ես ալ ինկեր էի այդ «խեւերու» շարքը : Տրապիզոնէն մեր երկու ընտանիքները շատ մօտիկ էին իրարու. ինծմէ քիչ մեծ էր Պետրոսը, (Հայր Սիմէոն Երեմեան), որ դեռ երախայութեան իսկ կը սիրէր քահանայութիւն խաղալ :

Կը յիշեմ, թէ ինչպէս ինծ ալ կը ստիպէր տիրացութիւն ընել, երբ ինքը զանազան կտորներէ շուրջառ մը ուսերուն առած, մեծ սենեակի անկիւնը «մագառներէ» շտկուած խորանին առջեւ պատարագիչ քահանայի դերը կը կատարէր : Ես ալ թէեւ լուսաւորչական, բայց Պետրոս աղբարին խաթերը համար, ժամանակաւոր կերպով կ՚ուրանայի իմ եկեղեցիս, եւ գիլ ձայնս ձգած տիրացուի դերը կը կատարէի : Պետրոսը սակայն երբեմն քահանայի եւ տիրացուի դերը ստիպուած ինքը կը կատարէր միաժամանակ. անշուշտ ասոր համար գիս մեղադրելու չէ, քանի որ պատարագը լատինական լեզուով էր : Ճիշդը ըսելով ես իմ ձեռքէն եկածը կ՚ընէի, անոր օգնելու համար. լեզուս վեր վար կը դարձնէի՝ արտասանելով չլսուած բառեր, որոնք հայերէնի նմանութիւն չունէին եւ հաւանաբար լատիներէնի հետ հեռաւոր խընամութիւն մը ունենային :

— Արտա՛շ, չլինի՛, չլինի՛, որ այդ հայտուտներուն հետ Տաճկաստան երթաս. մայրդ լսէ նը՝ ի՞նչ պիտի ըսէ, — այդպէս կը խրատէր իմ պատուական Համաս մօրքուրս, որ անշուշտ կ՚ուզէր, որ ազատի Հայաստանը, հակառակ ալ չէր լինէր որ ես անոր

իշխանը դառնայի, բայց այս բոլորը լինէր առանց որ եւ իցէ վըտանգի, ինձ համար:

* * *

Հինգ վեց օր Համաս մօրքուրիս մայրական հիւրասիրութիւնը վայելելէ վերջ, մեկնեցայ Թաւրիզէն դէպի Սալմաստ:

Եթէ մեր անցեալ պատմութիւնը իմ հոգւոյս մէջ ստեղծեր էր պաշտամունքը Անիին, Մասիսին ու Արաքսին, Րաֆֆիի վէպերը իմ մանկունակ երեւակայութիւնը բոցավառեր էին Մինարէթով ու Զօլա գետով: Եւ ինծի կը թուէր, թէ պիտի հանդիպէի երիկուայ մթնշաղին՝ Որսորդ Աւօի, Կարօի ու Ասլանի ստուերներուն, Սալմաստի դաշտին մէջ:

Կարգ մը Սալմաստցի վաճառականներու հետ նստանք Պարսկաստանի յատուկ կառքը, որը կարծեմ ստեղծուած է մարդկային համբերատարութեան չափը որոշելու եւ ֆիզիքական դիմացկունութիւնը յայտնաբերելու:

Երրորդ օրն էր, երբ հասանք Սալմաստի ընդարձակածաւալ դաշտի պռունկը: Հեռուէն երեւցան գիւղերու բարձրաբերձ բարտիի անտառները: Անսահման ոգեւորուեցայ: Քիչ ատենէն լինելու էի մերոնց քովը, եւ այդ գաղափարն իսկ երեւակայութեանս թեւ կուտար, թէեւ այդ օրերուն ճիշդը խօսելով, երեւակայութիւնս Րէսերու պէտք չունէր թռչելու համար: Ուրախ էի, որ շուտով ինքզինքս պիտի գտնէի արդէն այն խորհրդաւոր կեանքին մէջ, ուրկէ շատերը անցեր էին, բայց որոնցմէ շատ քիչերն էին վերադարձեր:

Յանկարծ իմ քաղցր երազներս կը ցնդին, երբ քովս նստած պարոն մը, արմուկովը կողքիս զարնելով, կամաց կ՚ըսէ.

— Ծո՛ւռ վար իջիր:

— Ի՞նչ կայ որ, եղբայր:

— Սուս... Ղանլը Տէրէն հասանք:

Անձայն վար կ՚իջնեմ կառքէն: Ճամբորդները բոլորն ալ իջեր են արդէն ու դողդղալով կը յառաջանան: Ի հարկէ կը հետեւիմ անոնց: Բայց, Տէր Աստուած, ո՛չ Ղանլը Տէրէ կայ մէջտեղը եւ ո՛չ ալ աւազակ. հարթ հաւասար դաշտ մըն է եւ ուրիշ ոչի՛նչ: Սակայն, քիչ առաջանալէ վերջ կը կանգնինք ուղիղ Ղանլը Տէրէի գլխուն:

Ի զուր տեղը թող ընթերցողի փափուկ սիրտը թունդ չելնէ

այն հաւանական վտանգէն, որուն ինքզինքս ենթարկած էի, յանուն յեղափոխութեան: Ղանլը-Տէրէ ըսուածը հեղեղատի մը անցաւոր հետքն է, որուն չուրջը պարսիկ երեւակայութիւնը եւ քանի մը մանր մունր դէպքեր ստեղծեր են զարզանդ ազդող համ-



ՍԱԼՄԱՍՏԻ ՂԱԼԱՍԱՐ ԳԻՒՂԸ
(Դաշնակցութեան Մինարեթի շրջանի կեդրոնավայրը)

բաւ մը:

Կ'անցնինք վտանգաւոր Ղանլը-Տէրէէն անվտանգ ու կը մըտնենք Սալմաստի սիրուն դաշտը:

Երեկոյեան դէմ էր, երբ հասայ Ղալասար՝ Դաշնակցութեան տունը:

Գրկաբաց ընդունեցին զիս, Տոքթ. Բաշայեան Խանը, տիկինը եւ Դաշնակցութեան ներկայացուցիչ Սամսոնը:

Տաք ընկերական մթնոլորտի մը մէջ կը զգամ արդէն ինքզինքս. կը բանամ պաշարիս տոպրակը, տեղեկութիւններ տալով անոնց՝ Ամերիկայէն, Եւրոպայէն եւ մանաւանդ Կովկասէն, որ եկեղեցական կալուածներու գրաւման առթիւ վեր ու վայր էր եղեր այդ օրերուն:

Բայց անտէր մնալիք կառքը երեք օր հոգիս հաներ էր, եւ յոգնած էի սաստիկ ու քնատ։ Մտայ պատրաստուած անկողին մը, որու մաքրութիւնը ի հարկէ ոչ ոք կրնար երաշխաւորել, եւ շուտով ինկայ Մօրփէոսի գիրկը։

---

# ՍԱԼՄԱՍՏ

Գեղեցիկ է Սալմաստի դաշտը՝ երեք կողմէն եզերուած լեռնաշղթայով, իսկ չորրորդ կողմէն, ծիծղուն Կապուտանի լիճով։

Ամբողջ տարածութեան վրայ չկայ ափ մը հող անմշակ։ Ու մարդու հոգին կը խայտայ հեռուէն հեռու սփռուած գիւղերու տեսքովը, որոնք շրջապատուած են անխուսափելի բարտիներու անտառակներով։


Մ. ԱՒԵՏԻՍԵԱՆ
(Արմենական կուսակցութեան փայլուն ղեկավարը)

Սալմաստը Երկրի նախադուռն է, դեռ աւելի, չաղկապող օղակն է Երկրի եւ արտասահմանի։

Վասպուրականի մեր յեղափոխական ամբողջ պատմութիւնը բնականօրէն սկսուած է Սալմաստով։ Եւ այդ է պատճառը, որ Երկրի գրեթէ բոլոր յեղափոխական գործիչները ունեցեր են՝ սահմանի այս կողմն ալ՝ իրենց գործունէութիւնը։ Ու այս՝ ոչ միայն Դաշնակցականները, այլ եւ Հնչակեաններն ու Արմենականները։

Դեռ մինչեւ իմ ժամանակս Սալմաստի ազգաբնակչութիւնը, խոր պատկառանքով կը խօսէր Մ. Աւետիսեանի՝ այդ բացառիկ յեղափոխական–հասարակական գործիչի մասին (Արմենական յայտնի ղեկավարը) որ անկասկած շատ խորունկ հետքեր էր ձգած Սալմաստի մէջ, մեծ զարկ տալով կրթական գործին։

90–903 Թուականներուն Սալմաստը եղաւ գրեթէ ամենագլխաւոր կապ պահպանողը Երկրի հետ։ Զինատար խմբերն ու սուրհանդակները մեծամասնաբար այդ տեղէն կ'անցնէին Երկիր։

Թէեւ պէտք է ըսել, թէ այդ շրջանին ալ Թադէոս Առաքեալի վանքը ունէր որոշ բաժին մը գործին մէջ։ 1903–էն վերջ փոխուեցաւ գործունէութեան ձեւը եւ միջոցները, եւ ծանրութեան կեդրոնը Սալմաստէն փոխանցուեցաւ Մէնաւոր (Թադէոս Առաքեալի վանքը), որը մինչեւ օսմանեան Սահմանադրութեան հռչակումը, 1908 թուականին, առանձինն այնքա՛ն խոշոր եւ արժէքաւոր գործունէութիւն մը ունեցաւ, որ անօրինակ է մեր յեղափոխական պատմութեան մէջ։

Տաղանդաւոր Րաֆֆին յստակօրէն գնահատած էր իր երեւակայական «Կայծեր»ուն մէջ այն խոշոր դերն ու դիրքը, որ պիտի բաժին իյնար Սալմաստի, մեր յեղափոխական շարժման ընթացքին։ Իր մտացածին Կարօներուն, Ասլաններուն ու Ֆարհատներուն շարան շարան յաջորդած էին կենդանի գործիչները, որոնք աշխարհի չորս անկիւններէն կուգային իրենց պարտքը կատարելու հայրենիքի հանդէպ։ Գործիչներու այդ շքեղ շարքը, հայ ժողովրդի անվերապահ հիացմունքին եւ պաշտամունքին արժանի, մեր անհրապոյր ու սմսեղուկ միջավայրին մէջ, հետզհետէ դունաթափ, կ՚անհետանայ, մինչդեռ տարբեր միջավայրի ու առողջ հոգեբանութիւն ունեցող ժողովրդի մը համար անոնք, այդ նըւիրուածները, ազգային Պանթէօնի զարդերը պիտի լինէին։

Շարանը այդ գործիչներուն երկար է, գեղեցիկ ու ոգեւորող, — Գօլօշեան, Ագրիպասեան, Աւետիսեան, Պետօ, Գարեգին Մանուկեան, Փանոս, Անդրանիկ, Վազգէն, Սէրէմճեան, Խան, Կրետացի, Կարօ, Մարտիկ, եւ բազմաթիւ ուրիշներ։ Բոլորն ալ երիտասարդ, եռանդավառ հոգիներ, ուխտուածներ, որոնք ծիծաղով կը դիմագրաւէին մահը, իրենց մահովը յարութիւն տալու համար Հայ ազգին։

* * *

Սալմաստի վերջին քառասուն տարիներու յեղափոխական պատմութիւնը ինքնին առանձին հատոր մը կարող է կազմել։ Ես կը բաւականանամ թռուցիկ ակնարկ մը նետելով միայն, աւելի չծանրաբեռնելու համար իմ այս աշխատութիւնս, որ դժբախտաբար արդէն շատ կ՚ընդարձակուի։

Յեղափոխական շարժման սկզբնաւորութենէն, Սալմաստը իր աշխարհագրական դիրքով եւ կիսովին հայաբնակ լինելու հանգամանքով, իրար յաջորդող յեղափոխական կուսակցութիւններու

ուշադրութիւնը գրաւեց։ Սակայն, հազիւ թէ մինչեւ 1893 թըւականը, սկզբնական քիչ մը հարեւանցի հետաքրքրութիւնը, յեղափոխական գործունէութեան զարգացման հետ զուգընթաց, հաստատուն քաղաքականութեան մը վճռականութիւնը ստացաւ կուսակցութիւններու կողմէ, որոնք իրենց փնտռտուքին մէջ, Թուրք-պարսկական սահմանագծի երկայնքը, կանգ առին այդ նըպաստաւոր շրջանի վրայ, ուր իրենց գործունէութիւնը հետզհետէ զարգացնելու մեծ հաւանականութիւն կար։

Ոչ Մակուի եւ ոչ Խոյի սահմանամերձ շրջանները կրնային բաղդատուիլ Սալմաստի հետ, անոր ներկայացուցած առաւելութիւններուն շնորհիւ։ Մակուի բուռ մը հայութիւնը, ինչպէս եւ շրջանի մէկ երկու գիւղերը, շրջապատուած պարսկական գիւղերով եւ բազմաթիւ քրտական աշիրաթներով, չէին ներկայացներ այն յենակէտը, ուր հնարաւոր կարող էր լինել նախապատրաստական աշխատանքներ առաջ տանիլ այնպիսի գործի մը համար, որը կը պահանջէր աչքի զարնող երթեւեկ մը, ու գործնական աշխատանքներ, զորս բոլորովին անկարելի էր թագցնել։

Թադէոս Առաքեալի վանքը բացառութիւն մըն էր այդ շրջանին մէջ։ Կղզիացած հարեւան վանքի զուտ հայաբնակ գիւղով, շրջանի պարսիկ գիւղերէն, ան թէեւ արժէքաւոր մեկնակէտ մըն էր, եւ որպէս այդպիսին անգնահատելի օգտակարութիւն մ'ունեցաւ, բայց իր դիրքի բերումով, առանց հայաբնակ շրջաններու, անոր դերը սահմանափակուեցաւ որպէս անցողական կայան մը լինելու մէջ։ Վերջէն է որ Թադէոս Առաքեալի վանքը, Դաշնակցական վերամկրտութեամբ Մենաւորը, երկրի կազմակերպութեան զարգացման շնորհիւ ստացաւ այն մեծ նշանակութիւնը, որուն պիտի անդրադառնանք մեր պատմութեան ընթացքին։

Խոյի շրջանէն, դեռ անցեալ ռուս-պարսկական պատերազմի ընթացքին, 1828 թ. բազմահազար գաղթականութիւն մը հեռացած էր դէպի նոր գրաւուած ռուսական շրջանները, Արարատեան դաշտ եւ Նախիջեւան, որով Խոյի (Դաշնակցութեան մէջ յայտնի Աւարայր անունով) եւ շրջականներու մէջ հազիւ բուռ մը ժողովուրդ մնաց, խեղդուած Թուրք բնակչութեան ծովին մէջ։ Բայց եւ այնպէս, սահմանամերձ երկու գիւղերով, ինչպիսին է Վառը, ան որոշ գործնական նշանակութիւն ունեցաւ եւ կրցաւ անմիջական կապ մը հանդիսանալ արտասահմանի եւ երկրի միջեւ։ Բայց

Աւարայրի գլխաւոր արժէքը կը կայանար անոր մէջ, որ այդ շրջանը կը հանդիսանար օղակող հանգրուանը մէկ կողմէ՝ Ռուսաստանի (Ջուլֆա, Ս. Ստեփանոս նախավկայի վանք, Շայթախտ) եւ միւս կողմէ՝ Սալմաստի ու Մենաւորի միջեւ:

Սալմաստը սակայն, լեռնաշղթայով մը զատուած Աղբակի հիւսիսային մասէն, հայաբնակ շրջաններով կ'երկարէր Աղբակ Վերին Հայոց ձորով՝ մինչեւ Շատախ, Կաւաշ, Մոկս եւ Վան քաղաքը:

Ճիշդ է, որ Աղբակի գաւառը ռուս-թրքական պատերազմի ընթացքին մեծապէս տուժած էր Շէյխ Ջելալէդդինի եւ Շէյխ Իպատուլլահի արշաւանքներուն պատճառով, բայց ազգաբնակչութեան մեծամասնութիւնը գէշ աղէկ մնացած էր տեղին վրայ, մինչեւ 1896-ի ընդհանուր կոտորածները, երբ արդէն հիմնովին քար ու քանդ եղաւ այդ հայաշատ շրջանը:

Բացի այն, որ Սալմաստը իր շօշափելի հայ ազգաբնակչութեան շնորհիւ նպաստաւոր խարիսխ մըն էր գործունէութեան, ունէր եւ այն մեծ առաւելութիւնը, որ համեմատաբար, լեռնային կտրուկ ճամբայ մ'ունէր դէպի երկիր, պատսպարուելու եւ թագնըւած մնալու յարմարութիւններով:

Այս հանգամանքները եղան պատճառ, որ իրար յաջորդող կուսակցութիւնները՝ Արմենական, Հնչակեան եւ Դաշնակցական, հազիւ կազմաւորուած, Սալմաստը դարձուցին իրենց գործունէութեան խարիսխը:

1890 թուականէն վերջը, ինչպէս եւ քանի մը տարի առաջ, Արմենականները շօշափելի դեր եւ ազդեցութիւն ունէին ամբողջ այդ շրջանի հայ ժողովուրդի վրայ, շնորհիւ իրենց կարգ մը մըտաւորականներու, որոնց մէջ բացառիկ տեղ կը գրաւէր Մ. Աւետիսեանը: Թէեւ անոնք դեռ մինչեւ 1903–4 թուականներն ալ միշտ մէկը ունէին Սալմաստ եւ մէկ երկու գիւղերու մէջ ալ փոքրաթիւ հետեւորդներ, բայց իրողութիւն մըն է, որ այդ կուսակցութիւնը զարմանալիօրէն տեղական բնոյթագծին փարած, հետըզհետէ անգործութեան դատապարտուեցաւ, սահմանափակուելով Վան քաղաքով եւ անոր անմիջական շրջապատով: Այնպէս որ 1895–էն վերջը ,Սալմաստի մէջ, անոնք մնացին աւելի որպէս անուն, քան իրական ուժ մը:

Հնչակեաններու մասին գրեթէ միեւնոյնը պիտի ըսենք, այն



«ԿԱՅԾԵՐ»ՈՒ ՈՐՍՈՐԴ ԱԽՈՅԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՏՆԱԿԸ

(Ուր Աւօ եւ իր աշակերտները կազմեցին իրենց յեղ· աշխատանքներու ծրագիրը)

տարբերութեամբ, որ անոնք երբեք իրական ուժ մը չներկայացուցին այդ շրջանի մէջ, բացի սկզբնական մէկ երկու տարիներէն: Ճիշդ է, մէկ երկու գիւղերու մէջ (գլխաւորապէս Փայաջուկ) անոնք նոյնիսկ 1904–ին խումբ ունէին, բայց առանց Երկրի մէջ կազմակերպութիւն մը ունենալու, այդ ասուպի պէս մէկ փայլող եւ մէկ մարող խմբերը սահմանային գոյութիւն մը ունեցան՝ շատ հարցական դարձնելով իրենց օգտակարութիւնը:

Առանց կուսակցական մոլեռանդութեան պիտի ըսեմ, որ Արմենականները յաջորդեցին Դաշնակցականները, որոնք որոշ քաղաքականութիւն մը աշխատեցան առաջ տանիլ այդ շրջանին մէջ, ստեղծելով ուժեղ կռուան մը Երկրի գործունէութեան համար: Եւ բնականաբար, սկիզբի տարիներուն, Դաշնակցականներու ուշադրութիւնը պիտի կեդրոնանար ամենէն առաջ Դէրիկի վանքին վրայ, Արաուլի բարձրունքին, լայնաբերան ձորի մօտ, ուր մինչեւ վերջերս ալ գոյութիւն ունէր Րաֆֆիի «Կայծեր»ու ներշնչարան, պատմական որսորդ Աւոյի տնակը: Այս քիչ մը ռոմանթիք գործունէութիւնը, Թավաքալեան վարդապետի եւ իր րաֆֆիական ընկերներուն, անխուսափելի դէպքերու բերումով, Թուրք կառավարութեան ուշադրութիւնը գրաւեց: Թավաքալեանի հեռանալէն վերջ, Վեհունի վարդապետը նշանակուեցաւ վանահայր: Վերջինս Արմենական մը կը համարուէր: Չգտնելով պէտք եղած աջակցութիւնը Դաշնակցականներէն (եւ ոչ ալ Արմենականները կրցան իրական օժանդակութիւն մը ցոյց տալ) ան հեռացաւ այդ շրջանէն, ու վանքը հիմնովին կործանեցաւ:

Դէրիկի փճանալով, Վարդան եւ ուրիշ երկու գիւղեր ալ, որոնք լեռնաշղթայի լանջին թառած էին, ստիպուած տեղահան եղան ու իջան Սալմաստի դաշտը: Ատկէ վերջ Դաշնակցութիւնը, Ղալասարը կեդրոն ընտրելով, հետզհետէ տարածուեցաւ, ամբողջ շրջանը առնելով իր կազմակերպական ցանցին մէջ:

1896 Թուականին հայկական կոտորածներու ժամանակ, երբ Աղբակի շրջանը քար ու քանդ եղաւ, Սալմաստը իր յեղափոխական արժէքէն բնականաբար շատ բան կորսնցուց: Ատոր զուգընթաց, Երկրի յեղափոխական կազմակերպութիւնն ալ տարիներու փորձառութենէն վերջ, հիմնովին փոխելով իր գործելակերպը, մեծապէս նպաստեց անոր, որ Պարսկաստանի գործունէութեան կեդրոնը տեղափոխուի Սալմաստէն Խոյ եւ մանաւանդ Թաւրէզ



ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԻ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ




ԽԱՆԱՍՈՐԻ ԴԱՇՏԸ.— 1. Շարաֆ բէկի վրանի տեղը. 2. Խանասորի գիւղը. 3. Պատմական քարվանսարան, ուր տղաք սխալմամբ եկան. 4. Աղբիւրը, ուրտեղէն կռիւը սկսաւ անժամանակ. 5. Քրտական վրաններու կիսալուսինը. 6. Դանաուրակի սարը. 7. Արաուլի սարը. – – – – – Կը ցուցնէ զինուորական խորհուրդի ծրագրած ռազմական յառաջագիծը. ——— Կը ցուցնէ արշաւախումբի անցած ճամբան եւ կռուի սկսած տեղը:

Առաքեալի վանքը։

1893 թուականէն մինչեւ 1908ը— Սալմաստ, Խոյ, Մենաւոր եւ Ուրմիա (Կապուտան) շրջաններուն մէջ, Հ. Յ. Դաշնակցութիւնը լծուեցաւ ոչ միայն յեղափոխական գործնական աշխատանքի, այլ եւ կուլտուրական մարզի մէջ տիրական գործօն եղաւ, անգընահատելի ծառայութիւններ մատուցանելով տեղական ազգաբընակչութեան։

* * *

Հոս կ՚ուզէի քանի մը խօսք ըսել ձեռնարկի մը մասին, որը Դաշնակցութեան պատմութեան մէջ շատ կարեւոր տեղ մը կը բռնէ եւ սերտօրէն կապուած է Սալմաստի հետ։ Այդ՝ Խանասորի արշաւանքն է։

Ինծի կը թուի թէ, մինչեւ այժմ այդ արշաւանքը, որ մինչ այդ եղակի ձեռնարկ մըն էր, ըստ արժանւոյն չէ գնահատուած։ Յեղափոխական ուրիշ կուսակցութիւններ, կրքէ եւ նախանձէ կուրացած, չեն ուզած արժէք մը տեսնալ անոր մէջ։ Ժողովրդական լայն խաւերու համար, սպաննուած քրտերու քանակն էր հետաքրքիր, ուրիշներու համար անյաջող ձեռնարկ մըն էր Խանասորը, քանի որ Շարաֆ բէկ մը չէր սպաննուած, եւ գրեթէ ամէն մարդ կը գնահատէ այդ արշաւանքը անոր անմիջական հետեւանքովը՝ բոլորովին անտեսելով անոր բարոյական խոշոր արժէքը։

Կուկունեանի արշաւանքի փորձէն վերջ, Խանասորի արշաւանքը անով կ՚արժէքաւորուի, որ տեղի կ՚ունենար ատեն մը, 1895–6 թուականներու հայկական կոտորածներէն վերջ, երբ ամէն ժամանակէ աւելի հայ ժողովուրդը կ՚ապրէր անհնարին յուսալքում եւ հոգեկան բեկում։ Եթէ 1890 թուականին, ազգային զարթօնքը զարմանալի թափով անցաւ Պոլսէն մինչեւ ամենահեռաւոր գաւառները, ամէն տեղ ալ հայ ժողովուրդի մէջ անսահման ոգեւորութիւն առաջացնելով, կոտորածներու շրջանէն վերջ սակայն, այդ քիչ մը շատ ռոմանթիք ոգեւորութիւնը տեղի տըւաւ անծայր յուսահատութեան։ Վարդագոյն յոյսերը տեղի տըւին մռայլ յուսահատութեան. ազգային մեծ խոյալը, որ իրականացման այնքան մօտ կ՚երեւէր, կորսուեցաւ հեռաւոր մշուշի մէջ։

Մինչեւ կոտորածները, հազիւ թէ գտնուէր հայ մը, որ ոգեւորուած չլինէր մօտաւոր ապագայի յոյսերով, բայց այդ դէպ-



ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱԽՈՒՄԲԻ — Ա· ԽՄԲԱԿ

քերը պարզօրէն ցուցուցին ժողովրդին, թէ ազգային իտէալին հասնելու համար հարկաւոր է գործել եւ զոհել: Բան մը, որ ընդգրկելու նախապատրաստուած չէր սակայն ժողովուրդը, բացի շատ չնչին տոկոսէ մը: Ու բնականաբար ժողովուրդի հոգեբանութեան մէջ առաջացաւ ուժեղ տեղատուութիւն մը, որ մեծապէս անդրադարձաւ նաեւ յեղափոխական շարքերու վրայ: Շատ շատեր լքեցին իրենց փայփայած երազները, շատեր կռնակ դարձուցին յեղափոխութեան, շատերու համար ալ հայ ժողովուրդի գոյավիճակի շարունակութիւնը նախընտրելի էր ծանր զոհաբերութիւններու հետ կապուած ազատամարտէ մը: Ահա հոգեբանական այս ծանր վայրկեանին էր, որ Դաշնակցութիւնը ծրագրեց Խանասորի արշաւանքը: Իրագործումը այդ ծրագրին Հերքիւլեան աշխատանք մըն էր:

Մինչեւ աշխարհի Դաւիթ բէկեան շարժումներէն վերջ, ոչ մէկ անգամ, հայ ժողովուրդը հնարաւորութիւն ունեցեր էր երեք հարիւր աւելի մարդիկ կեդրոնացնել վայրի մը մէջ, զինել զայն արդիական զէնքերով եւ զինուորական կարգապահութեամբ առաջնորդել այդ գունդը նպատակ մը հետապնդելու: Մարդ պէտք է լաւ գիտնայ 1897 թուականի պայմանները՝ ըմբռնելու համար այն ահագին դժուարութիւնները, որոնք կապուած էին արշաւանքը կազմակերպելու հետ: Եւ Դաշնակցութիւնը ծանր զոհաբերութեան գնով գլուխ բերաւ այդ ձեռնարկը, որ անկիւնաքարը դարձաւ հայ ժողովրդի հոգեբանական մակընթացութեան:

Մէկ երկու խօսք սակայն Խանասորի արշաւանքէն առաջ, Վասպուրականի մէջ տեղի ունեցած դէպքերու մասին:

«1895* թուի աշնանը՝ Թուրք կառավարութեան անմիջական դրդումով և հրահանգով, քրտական խուժանը անծայր աւերածութեան ենթարկեց Վասպուրականի հայկական գաւառներու մեծագոյն մասը. այն՝ ինչ որ կրցան՝ թալանեցին, մնացածը ոչնչացուցին որ հայերը չօգտուին: Կարճ ժամանակի մէջ հայի քրտնաջան տնտեսութիւնը հիմնայատակ կործանուեցաւ: Սակայն բարեբախտաբար աւելի մեծ ուշադրութիւն դարձնելով թալանի, քան սպանութեան, մարդկային զոհեր քիչ եղան:

---

* Այս հատուածը ամբողջութեամբ կը վերցնեմ իմ «Ներկայ սովը եւ իր պատճառները» անուն գրքոյկէն:



ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱԽՈՒՄԲԻ — Բ. ԽՄԲԱԿ

*Ստորեւ կը դնեմ քանի մը գիւղերու Թալանի եւ սպանութիւններու Թուերը ։*

| | Ոչխար | Գոմէշ | Եզ·կով | Սպաննուածներ |
|---|---|---|---|---|
| *Բիս* | 700 | 24 | 45 | 2 |
| *Սօրան* | 500 | — | — | 1 |
| *Բերդակ* | 400 | 12 | 29 | 1 |
| *Առակ* | 500 | 30 | 50 | 2 |
| *Հիրխան* | 800 | 34 | 90 | – |
| *Ջուխ* | 500 | 21 | 70 | – |
| *Սօրատէր* | 1200 | 70 | 150 | 1 |
| *Լաչկօտ* | 120 | 8 | 18 | 1 |
| *Խառատան* | 500 | 20 | 50 | – |

*«Մեծ բարեբախտութիւն էր հայ գիւղացիութեան համար այն, որ աշնանացանը նախ քան քրտական արշաւանքը վերջացեր էր ։ Ժողովուրդը աննկարագրելի նեղութիւններով կարողացաւ իր գոյութիւնը պահպանել ։ Միամիտ հայը, փոթորիկը անցած համարելով, սկսաւ իր քանդուած տնտեսութիւնը վերականգնել ։*



ՄԱՐՏԻԿ
(Վանի Հնչակեան
ղեկավարը)

*«Անցաւ Վասպուրականի խստագոյն ձմեռը ։ Գարնան երկրագործական աշխատանքները սկսեցին ամենաուժեղ Թափով ։ Այդ աշխատանքի եռուզեռի օրերուն, անակնկալ ուժգնութեամբ պայթեցաւ 1896 Յունիս 3–ը, Վասպուրականի ճակատագրական սեւ օրը ։*

*«Վանի վեցօրեայ դիմադրութեան պատմութիւնը ծանօթ է, ընթերցողին ։ Գլխաւորապէս ռազմամթերքի պակասութեան պատճառով, կռուողները, հարիւրաւոր հետեւորդներով կը քաշուին Վարագայ սարը, ու անկէ կը փորձեն անցնիլ Պարսկաստան ։*

*Մինչ քաղաքը բուռ մը կռուողներով հերոսական ինքնապաշտպանութեան կը դիմէր, գաւառները սակայն հիմնականօ–*



ԱՂԲԱԿԻ ԲԱՐԴՈՒՂԻՄԷՈՍ ԱՌԱՔԵԱԼԻ ՎԱՆՔԸ

(Որու շրջակայքին նահատակուեցան Մ․ Աւետիսեան եւ մօտ 1200 երիտասարդներ)

րէն կը կործանուէին։ Գաղափար մը տալու համար՝ հոս տամ գիւղի մը ունեցած վնասներուն ու սպաննուածներուն ճշգրիտ թուերը։



Մ. ԱՒԵՏԻՍԵԱՆԻ ԵՒ ԸՆԿԵՐՆԵՐՈՒ ԳԵՐԵԶՄԱՆԸ
(Բարդուղիմէոս Առաքեալի վանքի մօտ, անշուք քարի մը տակ կը հանգչին 96 թուականի վանի ծաղիկ երիտասարդութիւնը)

«Բերդակ — կոտորածէն առաջ ունէր.— 226 մարդ, 178 կին, 142 մանչ, 165 աղջիկ, 72 գոմէշ, 13 էգ գոմէշ, 526 եզ, 250 կով, 113 հորթ, 145 էշ, 2000 ոչխար, 1300 գառ, 24 գութան, 253 արօր։

Սպաննուեցան 57 տղամարդ, 3 երեխայ, իսկ մնացեալ հարստութիւնը ամբողջովին թալանուեցաւ, քրտերը նոյնիսկ տա-

րին տան դուները, հասա դերանները:

«Կոտորածի եւ Թալանի հետեւանքով, սովածութենէ, վախէ եւ զանազան հիւանդութիւններէ մեռան.— 42 տղամարդ, 48 կին, 18 մանչ եւ 21 աղջիկ:

«Վասպուրականի կրած ամենամեծ հարուածը, սակայն, իր ծաղիկ երիտասարդութեան կոտորումն էր Բարթողիմէոս Առաքեալի վանքին մօտերը, եւ Գարահիսար սարի լանջին:



ՇԱՐԱՖ ԲԷԿ
(Մազրիկ Աշիրաթի ցեղապետ Շարաֆ Բէկը, որ Բարդուղիմէոս Առաքեալի վանքի մօտ կոտորեց Մ. Աւետիսեանի խումբը:

«Մ. Աւետիսեանի ղեկավարութեամբ, մօտ երկու հարիւր զինեալներու միացած 800–1000 անզէն երիտասարդներ, Նորգիւղէն սկսած, անվերջ կռուելով, հասան մինչեւ Աղբակու հուչակաւոր Բարթողիմէոս Առաքեալի վանքի մօտ, երբ արդէն չորս կողմէն շրջապատուած Շարաֆ Բէկի մազրիկցի քրտերու կողմէ, յոգնած եւ անօթի, մինչեւ վերջին փամփուշտը կրակելով բոլորն ալ ինկան: Հազիւ երեսուն հոգի մը կրցան ազատիլ այդ կոտորածէն:

«Աւելի բախտաւոր վիճակ մը չունեցաւ Պետոյի եւ Մարտիկի միացած խումբը, Թուով 83 զինուած երիտասարդներ: Անոնք ալ հասնելով մինչեւ Սալախանէ գիւղի մօտ, Գարահիսար լեռան լանջին, կը շրջապատուին Թակուսցի քրտերու եւ սահմանապահ զօրքերու կողմէ: Այդ անհաւասար կռուի մէջ, խումբը ծայր աստիճանի յոգնած եւ սովահար, կռուելով կ'իյնայ, բացի մէկէն, որ կ'ազատի»:

Ահա այս կոտորածներու առիթով, Դաշնակցութեան Արեւելեան Բիւրօն կը ծրագրէ Խանասորի արշաւանքը:

1897 Յուլիսի 25—26-27-ին տեղի կ'ունենայ պատմական Խանասորի արշաւանքը: Ինչպէս նախօրօք ըսի, անոր արժէքը աւելի



ՀԻՒՍԷՅԻՆ ԲԷԿ

(Թակուացիներու աղան, որ իր քրտերով կռուեցաւ Պետոյի եւ Մարտիկի միացեալ խմբի դէմ, Գարահիսար լեռան վրայ)։

խոր էր եւ հոգեբանական, քան քրտական ցեղ մը պատժելու նըպատակը։ Գրեթէ ամէն հայ ծանօթ է Խանասորի կռուի մանրամասնութիւններուն, որոնց վրայ կանգ չեմ առնելու։ Կ'ուզեմ աւելի նախապատրաստական աշխատանքներուն վրայ ծանրանալ, որոնց մասին, հազիւ թէ գաղափար ունենայ ընթերցողը։



ՊԵՏՕ
(Վասպուրականի Դաշնակցութեան ղեկավարը)

Անշուշտ շատ դիւրին է կարդալ գրքի մէջ, թէ Դաշնակցութիւնը մօտ 320 հոգի առաջնորդեց դէպի Խանասորի դաշտը, բայց բոլորովին տարբեր բան մըն է երբ կ'ուզես գործի յաջողութեան համար կատարուած աշխատանքի դժուարութիւնները ըմբռնել։ Դաշնակցութիւնը կազմակերպըւած պետութիւն մը չէր։ Մէկդի ձգած նիւթական միջոցները, որոնք 96–97 թուի ըէակցիայի ժամանակ, գրեթէ ցամքեր էին, միմիայն զինումի խնդիրը, կապուած էր ահագին դժուարութիւններու հետ։ Երեք հարիւրէ աւելի հրացաններ եւ ատոնց համար առնուազն 112,000 փամփուշտ կեդրոնացնել Սալմաստի նման սահմանափակ շրջանի մը մէջ, գործ մըն էր, որու համար տասնեակներով գործիչներ, Ռուսաստանի խորքերը, Կովկաս, սահմանամերձ վայրերը, Թաւրիզ եւ Սալմաստ, շարժման մէջ էին դրուած։

Հրացանները ընդհանրապէս Ռուսաստանի խորքերէն, գլխաւորաբար Թուլուչի պետական զինագործարաններէն կը գնուէին կողմնակի ճամբաներով, գլխաւորաբար կաշառքի միջոցով։ Անկէ հարկաւոր էր գաղտնօրէն հասցնել նախ Կովկաս, ուրտեղէն երկու



ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱԽՈՒՄԲԻ — Գ. ԽՄԲԱԿ

ճամբաներով, Ջուլֆայով կամ Ղարապաղով պէտք էր անցնել Ռուս–Պարսկական սահմանով Թաւրիզ: Երբ ի նկատի առնենք որ հրացաններու հետ եւ հարկաւոր էր աւելի քան 112,000 փամփուշտ փոխադրել, մէկ սահմանէ միւսը, այնպիսի խեղճուկ միջոցներով ինչպիսին է գիշերային մաքսանենգութիւնը, ողորմելի Թուլուխներու օժանդակութեամբ, այն ժամանակ միայն հասկընալի կը դառնայ այն ահագին աշխատանքը, որ Դաշնակցութիւնը պարտաւոր էր թափել, միայն զէնքերը Պարսկաստան, Թաւրիզ հասցնելու համար: Սակայն զէնքերը, որոնք քանդուած վիճակի մէջ, եւ շատ անգամ ալ վնասուած կը հասնէին տեղ, հարկաւոր էր, Թաւրիզի Դաշնակցութեան արհեստանոցի վարպետներու ձեռքէն անցնել, որոնք թուով 5–6 հոգի, գիշերը ցերեկին խառնած էին, դժուարին պայմաններու մէջ, որոշեալ թուականին, զէնքերը պատրաստ վիճակի մը հասցնելու համար: Պէտք էր Թաւրիզէն, այդ ահագին ծանրութիւնը ապահով կերպով փոխադրել Սալմաստ, որ կարծուածին չափ ալ հեշտ գործ մը չէր: Բացի այն որ հարկաւոր էր խուսափիլ Պարսիկ կառավարութեան հսկողութենէն, փոխադրութիւնը ինքնին ծանր գործ մըն էր: Ու Դաշնակցութիւնը բացի անհատ ճամբորդներու հետ ուղարկածներէն, որոնք չնչին քանակ մը կը ներկայացնէին, ստիպուած էր կանոնաւոր քարաւան մը ստեղծել, Ջարվատար Յակոբի ղեկավարութեամբ, որը կանոնաւորաբար Սալմաստի եւ Թաւրիզի միջեւ կ'երթեւեկէր, որպէս թէ վաճառականներու ապրանք տեղափոխելով:

Աշխարհի չորս ծայրերէն եկող կամաւորներն ալ սահմանէն անցնելը, որոնցմէ շատեր փախստական էին, զանազան շրջաններու մէջ տեղաւորելը, եւ ապա աստիճանաբար Սալմաստի մէջ կեդրոնացնելը նոյնպէս ծանր խնդիր մըն էր, կապուած բազմաթիւ անպատեհութիւններու հետ: Զգեստ էր հարկաւոր, կօշիկ, ներքին շոր, գուլպայ, փամփուշտակալ եւ չանթայ ամէն զինուորի, իսկ ատոր համար անհրաժեշտ էր կազմակերպել Թաւրիզի եւ Սալմաստի Դաշնակցական կիներու խմբերը, այդ կարիքներուն բաւարարելու համար:

Ամենամեծ խնդիրներէն մէկն ալ, հաւաքուած զինուորները որոշ զինուորական տիսիպլինայի ենթարկելու հարցն էր, որ ունէր շատ մը ցաւոտ կողմեր: Ինչպէս ըսի վերը, աշխարհի չորս



ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱԽՈՒՄԲԻ — Դ. ԽՄԲԱԿ

ծայրերէն մարդիկ եկած էին այդ արշաւանքին մասնակցելու համար: Ամէն աստիճանի եւ հասկացողութեան տէր մարդիկ, տարբեր դաստիարակութեամբ, սովորութիւններով եւ բարքերով, բոլորովին անծանօթ իրարու, միայն մէկ ներքին կապով մը կապուած, այդ միեւնոյն կուսակցութեան պատկանելիութիւնը, եւ մէկ չեշտուած միտքով գաղափարակից, ընդհանուր թշնամիի դէմ կռուելու պատրաստակամութեամբ: Վանեցի, մշեցի, ղարաբաղցի, երեւանցի, պուլկարացի, պարսկաստանցի, զոկ, կեսարացի, ուրիշ խօսքով իսկական Բաբելոնեան խառնակութիւն մը լեզուներու, տիպերու, ըմբռնողութիւններու, որոնցմէ սակայն հարկաւոր էր մէկ կուռ խումբ մը ստեղծել, միակամ, միասիրտ եւ միարժէք: Ատոր համար, ամիսներու իսկական զինուորական կեանք էր հարկաւոր պետութեան մը համար, բան մը որ Դաշնակցութիւնը չէր կարող ընել, ատոր համար ոչ ժամանակը կը ներէր, եւ ոչ ալ պայմանները, երբ եկողներու մեծամասնութիւնը ստիպուած էր թագնուած ապրիլ, այդքան բազմաթիւ օտարականներու ներկայութիւնը Սալմաստի մէջ աննկատ պահելու համար: Անշուշտ իտէալ կազմակերպուած զինուորական արժէք մը լինելէ շատ հեռու էր եղածը, բայց տուեալ պայմաններու մէջ, քիչ եղածն ալ իրականացնելը այնպիսի մեծ եւ փառաւոր գործ մըն էր, որով կրնար որեւէ յեղափոխական կազմակերպութիւն պարծենալ: Խանասորի արշաւանքը, երբ անաչառ գնահատութեան կ՚ենթարկենք, կը տեսնենք որ անխուսափելի պակասութիւններովը միասին, այդ կը մնայ Դաշնակցութեան ամենամեծ ձեռնարկներէն մէկը եթէ ոչ ամենամեծը, հաշուի առնելով ժամանակը եւ պայմանները:

Անկասկած որ այդ նախապատրաստական աշխատանքներուն լծուած էին Դաշնակցութեան մտաւորական եւ զինուորական աչքի զարնող ուժերը: Սալմաստ էին Իշխանը, Վարդանը, Սաթենիկը, Սեւ Քարեցի Սաքօն, Ալօեանը, բժ. Օհանեանը, Սաղաթել Խանը, Կարօն, Կրետացին, Սուրիկեանը, Դալարագեաղի Տէր Գրիգորը, Աղբակցի Տէր Վարդանը, եւ բազմաթիւ ուրիշներ, եւ բոլոր այդ ուժերէն վեր, Դաշնակցութեան ամենատաղանդաւոր զինուորականը եւ կազմակերպիչը, Նիկոլ-Դումանը: «Խանասորի արշաւանք»ը իր ամբողջ ծանրութեամբ կը նստի Նիկոլի նիհար ուսերուն: Զարմանալի անհետեւողականութեամբ, այն մարդը

որ գլուխ բերաւ այդ մեծ գործը, որ ամբողջ գլխով բարձր էր մնացած բոլոր խմբապետներէն, Հաւաքական ընտրութեամբ Հագխ-յխնապետ մը լինելու արժանացաւ խմբին կողմէ, թէեւ կռուի ժամանակ եւ մանաւանդ նահանջի շրջանին իսկական ղեկավարն ու առաջնորդն էր։ Նախանձը, թայֆայականութիւնը մեծ դեր կատարեցին հրամանատարի ընտրութեան մէջ, բայց եւ անուրանալի է որ Նիկոլի կրքոտ, աննահանջ եւ դաժան կամակորութիւնն ալ որոշ դեր մը խաղաց ատոր մէջ։



Վ Ա Ր Դ Ա Ն
(Խանասորի արշաւանքի հրամանատարը)

Դաշնակցութիւնը Նիկոլ-Դուման մը, դժբախտաբար անգամ մը ունեցաւ միայն, իր պատմութեան ընթացքին։

Այսպէս ուրեմն, Խանասորի արշաւանքը, հսկայ աշխատանքով կազմակերպուած, իր պատմական դերը կատարեց։

Նշանաւոր կռի՞ւ մըն էր այն, մեծ յաղթանա՞կ մը, գլխու—

բական տաղանդաւոր ձեռնա՞րկ մը․․․։ Ի հարկէ ոչ։ Ցեղափոխական կազմակերպութեան մը մէկ ձեռնարկը, կիսատ պռատ միջոցներով կազմակերպուած, անձնուէր երիտասարդներու մասնակցութեամբ, որոնք զինուորական կրթութենէ զուրկ, եկեր էին ամէն կողմէ մասնակցելու այդ արշաւանքին։ Եւ սակայն այդ արշաւանքը, քսանեւհինգ տարիներ անցնելէն վերջն ալ, ոգեւորութեան աղբիւր մըն է մինչեւ այսօր։ Մեր անկախութեան շրջանին ունեցանք պետական բանակ մը բազմահազար։ Իր ժամանակին այդ բանակը որոշ ոգեւորութիւն առաջացուց գաղութահայութեան մէջ, այս օր մոռցուած է ան։ Եւ սակայն Խանասորի արշաւանքը յարաճուն ոգեւորութեամբ կը տօնուի ամէն տարի։ Այս երեւոյթը կարելի չէ բացատրել քանի մը տասնեակ թշնամի քըրտերու փճացումովը, աւելի խոր, հոգեբանական պատճառ մը կայ հոդ։



ԻՇԽԱՆ ՅՈՎՍԷՓ ԱՐՂՈՒԹԵԱՆ
(խանասորի օգնական հրամանատար)

Համատարած բէակցխայի շրջանին, անհնարին յուսալքումի ժամանակ իսկ, ահա երեւան կուգայ կազմակերպուած գունդ մը, մօտ երեք հարիւր անձերէ բաղկացած։ Ո՞վ կրնար հաւատալ նման հրաշքի մը, երբ յիսուն հայ իրար քով բերելու հնարաւորութեան մասին կը կասկածէին։ Այդ գունդը սահմանը կ՚անցնի, եւ կը յարձակի անհամեմատ ուժեղ հակառակորդի վրայ։ Այս եւս մինչ այդ, անհաւատալի քայլ մըն էր։ Ունեցեր էինք ինքնապաշտպանութեան եւ զինակիր խմբերու հերոսական կռիւներ,

տալէ առաջ, բայց անոնք հարկադրական կռիւներ էին, անխուսափելի եւ թուական արժէքով շատ փոքր։ Մի՞թէ հայը կրնար եւ հարձակման անցնիլ, կռուի դաշտի վրայ թշնամու հետ չափուելու ելնել։ Եւ սակայն Խանասորի արշաւանքը կատարուած փաստ մըն էր։

Հաւատքով, նոր կարելիութիւններու հեռանկարով, հայու մռայլած հոգին կը թարմանայ, երեւակայութիւնը ազատ թռիչք կը ստանայ, երերուն կամքը կ՚ամրանայ, յուսալքումը կը փարատի տեղի տալով գալոց արշալոյսի ցոլքերուն առջեւ, «մենք ալ կրնանք»ի գաղափարը այլեւս անհասանելի բարձրութիւն մը չէ հայու համար, եւ հայու ընկճուած հոգին Խանասորի արշաւանքով կը բարձրանայ։

Փա՛ռք Խանասորի արշաւանքին։

* * *

Վերջապէս հասեր եմ աքթիւ գործունէութեան վայրը։ Կը զգամ, թէ նոր կեանք մը սկսելու է ինձ համար։ Ու ինչե՛ր, ինչե՛ր կ՚երեւակայեմ։ Չէ՞ որ այդ ճամբով անցան բոլոր մեծերը։ Ես ալ նոր սկսնակ մը, եթէ ոչ անոնց արժանիքովը, բայց հաւասար անոնց զոհաբերելու պատրաստակամութեամբ, պիտի անցնիմ անոնց արիւնոտ ճամբայով դէպի հայրենիք, դէպի Հայաստան, ուր թէեւ չեմ տեսած, բայց այնքան երազած եմ մանկութենէս ի վեր։

Ու հասկնալի է, որ հասնելով Սալմաստ պատանեկան երազներս նոր թեւեր ստանալով շատ բարձրէն կը թռչին։ Սակայն, կեանքը փեշէս կամաց մը կը քաշէ։ Սալմաստ հասնելէս քանի մը օր վերջը, Սամսոնի հետ ձիով կ՚երթանք Դիլման, հազիւ մէկ ժամուան ճանապարհ. ու վերադարձիս հազիւ ուրիշներու օգնութեամբ կրնամ ձիէն վար իջնել։ Կատարեալ խայտառակութիւն է, կամաց մը քթիս տակէն ինքզինքիս վրայ կը խնդամ։ Եւ վառ երեւակայութիւնս, որ այնքա՛ն բարձրերը տարեր էր զիս, թրջուած կատուի մը նման կը սմքի։

Կ՚երեւի, թէ ամէն տեղ ալ ինծի որոշ յուսախաբութիւն մը պիտի պատահի անպատճառ։ Մայր—Արաքսի պղտոր ու անհրապոյր տեսքէն վերջը, որ այնքան խոր խոցեց սիրտս, նորեր ալ ունեցայ։ Ի՞նչու չէ։ Չէ՞ որ ամբողջ կեանքը ինքնին յոյսի ու յուսախաբութեան շղթայ մըն է...



«ԿԱՅԾԵՐ»ՈՒ ՄԷՋ ՅԻՇԱՏԱԿՈՒԱԾ ՋՕԼԱ ԳԵՏԸ

Երթանք քիչ մը եա, ընթերցող, դէպի Րաֆֆիի հոյակապ վէպը, Կայծերը: Ինծ նման դուք ալ անշուշտ, սրտատրոփ ապրումներ էք ունեցեր, երբ հեւ ի հեւ կարդացեր էք, թէ ինչպէս Ֆարհատը, Տէր Թոդիկի դպրոցէն փախչելով, կատաղած Զօլա-



«ԿԱՅԾԵՐ»ու մէջ յիշատակուած մինարեթը

յի ափին դեգերելով, կը մտածէր գետամոյն լինել, երբ յանկարծ մութին մէջէն ձեռք մը, Կարոյի ձեռքը, զինքը բռնեց, խելքի բերաւ եւ հետը միասին Մինարէթ տարաւ, խորհրդաւոր հէքիաթական թաքստոցը հայ յեղափոխականներուն:

Փա՛ռք Աստուծոյ, ի՛նչ յաւ, որ Կարօն ճիշդ ժամանակին երեւան եկաւ, ազատելով խեղճ Ֆարհատը ծիծաղելի լինելու վիճակէն եւ միեւնոյն ժամանակ փրկելով Րաֆֆին ալ այն հերոսական աշխատանքէն, որ պիտի ստիպուած լինէր թափել, եթէ ուզէր անպատճառ Ֆարհատը խեղդել այդ գետակին մէջ, որուն ջրերը աւա՛ղ, շատ հեռու լինելով կատաղած գետի մը յորձանուտ հոսանքէն, հազիւ հազ կրնային թրջել ձիուս սմբակները:

Հապա՛ «Կայծեր»ու հռչակաւոր Մինարէթը, այնքա՛ն խորհրդաւոր և առասպելական:

Օր մը Քէօհնէ Շեհէրի մօտէն անցած ժամանակ՝ հեռուէն արտի մը մէջ, ընկղմած շոգենաւի կայմի նման դուրս ցցուած, խեղճուկ սիւն մը տեսայ:

Սիրտս ճմլուեցաւ, երբ Սամսոնը յայտնեց որ Րաֆֆիի պատմական Մինարէթն է այդ բաց դաշտին մէջ երեւցող կոթողի պէս բանը: Եւ ինչե՞ր չէի երեւակայած կարդալով Մինարէթի

մասին, որու խորհրդաւոր սենեակներուն մէջ, Կարօներն ու Ասլանները Հայաստանի ազատագրութեան ճամբան կը դարբնէին:

Մինարէթի ողբալի տպաւորութենէն վերջ, ալ քիչ մը սկսայ վախնալ: Ապա, եթէ մեր «Հայաստան երկիր դրախտավայր»ն ալ ելնէր ու սովորական տեղ մը լինէր, տեսած շատ մը երկիրներուս պէս... վա՜յ իմ գլխուն: Բայց այդ գրեթէ անկարելիութիւն մըն էր, չէ՞ որ չորս գետերու արանքը ինկած էր դրախտը:

* * *

Քանի մը օրէն կը ճամբենք Տոքթ. Փաշաեանը կնոջը հետ, կ՚երթայ Եգիպտոս՝ հոն հաստատուելու:

Ահա ուրիշ Թափառական մըն ալ, մէկը այն շատ հիներէն, որոնք հայ յեղափոխութեան նախակարապետները եղան: Դեռ 90 թուականներուն, Պոլսոյ բժշկական համալսարանը հազիւ աւարտած, բժիշկ Փաշաեանը փոխանակ Պոլսոյ «գեղածիծաղ» ափերուն բազմելու եւ «Ա՜խ, Հայաստան, ես քեզ համար բանտ ալ մտնեմ, պալատ է այն ինձ համար» երգելու, թեւերը կը սոթթէ ու ճամբորդական ցուպը ձեռք առնելով, կ՚անցնի գաւառ, հայ ժողովրդի մէջ, հայ ժողովրդին ծառայելու:

Արմտանի ու Քեսապի շրջաններուն, Գալուստ Արխանեանի հետ, ան առաջ կը բերէ յեղափոխական առաջին կազմակերպութիւնը, որ չտեսնուած ծաւալում մը կ՚ունենայ: Քիչ վերջը սակայն կը ձերբակալուի, եւ կը դատապարտուի մահուան: Շնորհիւ իր նշանածի ջանքերուն ու անգլիական դեսպանի կնոջ միջամտութեան, տոքթ. Փաշաեան կ՚ազատի բանտէն ու կ՚անցնի Պարսկաստան, Թաւրիզ: Հոն ուսուցիչ է, բժիշկ է, հասարակական գործիչ է, յեղափոխական է, լսարանի բանախօս է, հակալքոլական ընկերութեան նախագահն է: Եւ դեռ ինչե՜ր չէ այդ մարդը, որ սակայն բարակ նիհարկեկ անձնաւորութիւն մըն է, կարծես թէ հիւանդկախ:

Տոքթ. Փաշաեանին՝ վերջէն, սահմանադրութեան շրջանին, Պոլիս հանդիպեցայ նորէն, «Ազատամարտ»ի խմբագրութեան մէջ, ուր Հայկ Թիրաքեանէն յետոյ, վարչական գործերու ղեկավար էր նշանակուած: Ուղղամտօրէն կուսակցական, աշխատող ու նուիրուած մարդ մըն էր, ու այդպէս ալ մնաց մինչեւ վերջը: Ան ալ միացաւ մտաւորականներու կարաւանին, որոնք Գողգոթան բարձրացան, անհնարին հերոսութեամբ մը: Եւ ո՞վ գիտէ, որ-

տե՞ղ կը հանգչին անթաղ ոսկորները այդ համեստ, շիտակ մարդուն, որ կարծեմ կրնայ համարձակ կանգնիլ գերեզմանի չէմքին, ու մեզ ապրողներուս ըսել. «Ես լաւագոյնս ըրի»:

Օր մը Սամսոնը յայտնեց, որ երթալու ենք Սանամէրիկ, ուր երկրէն սուրհանդակ ու Հ. Յ. Դաշնակցութեան Ընդհ. Ժողովին գնացող պատգամաւորներն են եկած: Առտուն կանուխ ճամբայ ելանք ու երկու ժամէն հասանք Սանամէրիկ, որ Սալմաստէն դէպի Խոյ կամ Վանք անցնող սուրհանդակներու եւ խումբերու հանգստակայանն էր:



ՅՈՎՀԱՆՆԷՍ ՖԼԷԵԱՆ ԵՒ
ՏԻԳՐԱՆ ԽԱՐԲՈՒԹԼԵԱՆ

Ախոռի մը մէջ, սաքուի վրայ, քանի մը մարդիկ երկընցած՝ կը հանգստանային: Մէկը Մաւօն էր, քիւրտ կորիճ սուրհանդակը, որ մինչեւ իր սպաննուիլը, ամենայն հաւատարմութեամբ ծառայեց մեր կուսակցութեան եւ սպաննուեցաւ Փախիկի խումբին հետ: Ահա երկրորդ մը, կէս եւրոպական չորերով, միջահասակ, անարտայայտիչ դէմքով: Ֆըլեհենց ջոջ-աղան էր, վանեցի: Ցարգանքի պէս բան մը կը զգամ: Քիչ բան չէ, ջոջ-աղա, այսինքն՝ մեծ-աղա լինելը: Յետոյ, երբ Վան գնացի, նոր հասկցայ, թէ տնաքանդները բոլորն ալ ջոջ-աղաներ են. պզտիկ աղա հէչ չկար մէջները:

Տէր Աստուած այս դէմքը պիտի ճանչնամ, բայց ուրտե՞ղ եմ տեսած: Մազն ու չէկ մօրուքը իրար խառնուած, ու աչքերը հետաքրքիր վրաս սեւեռած՝ խորամանկ ժպիտով զիս կը դիտէ:

Վա՛յ քու տունը չքանդուի, Երկաթն է, Ամերիկայի մեր ընկերներէն: Պինդ պլլուած, կը համբուրուինք:



Ե Ր Կ Ա Թ
(Արմենակ Լեւոնեան)

— Հը, Արտաշէս, դո՞ւն ալ Հայաստանին ղուրպան եկար,— ու բարձր անաւակ ձայնով քահ քահ մը փրկուց Երկաթը, միաժամանակ քորուելով ու անիծելով մանըր միջատները, որ ալ տեղ չէին գտեր երթալու ու եկեր էին բոյն դնելու իր շորերուն մէջ:

Զորրորդը Վարդան Շահբազն էր, մէկը Դաշնակցութեան վաստակաւոր գործիչներէն, որու մասին սակայն վերջէն պիտի խօսիմ:

Այս չորսը բոլորն ալ ձիաւոր, հագիւ հազ ճողոպրած էին զիրենք հետապնդող քրտերէն, որոնք սահմանի մօտ յանկարծ երեւան էին եկած, բայց չնորհիւ ձեան փոթորկին՝ հետքերը կորսնցուցեր ու ապահով հասեր էին Սալմաստ:

Այդ տարին, Սամսոնն ալ ընտրուած էր պատգամաւոր Ատրպատականի կողմէն, Հ. Յ. Դաշնակցութեան Ընդհ. Ժողովին երթալու համար:

Վերը յիշեցի Մստօի անունը, արժէ որ անոր եւ Քէլպէլա Աբբասի մասին երկու խօսք ըսեմ։

Մուստաֆա Ռահիմ Օղլի (Մստօ) Սալմաստի Սուլու գիւղացի էր։ Ան դեռ յեղափոխականներուն ծանօթանալէ առաջ, վալատութիւն կ'ընէր վանեցի փախստական Հայերու, որոնք կ'ուզէին վերադառնալ երկիր։ 1903–ին, Ամերիկայէն եկած ընկեր Գասպարին յաջողութեամբ տեղ հասցուց, ինչպէս նաեւ երկու զինակիր խմբեր, որոնք առանց պատահարի հասան Վան։ 1904ին Ընդհանուր Ժողովէն վերադարձող, Վանի պատգամաւոր Ցլէեան Յովհաննէսը եւ զինակիր խումբ մը առաջնորդեց։ Դժբախտաբար, Սեւան գիւղի մօտ, քանի մը ժամ մնացած Վան հասնելու, յանկարծակի կռուի կը բռնուին բազմաթիւ քրտերու հետ։ Հոդ կը նահատակուի Յովհաննէսը։ Ձէնքերը յաջողութեամբ Վան մտցնելէ վերջ, ընկերներով կը վերադառնայ նորէն Սալմաստ։ Նոյն տարին, Յունիսի 8–ին կ'առաջնորդէ Դումանի խումբը, որ կռուի բռնըւելով Կոդուրի մօտ, ետ կը նահանջէ օր մը կռուելէ վերջ։



ՄՍՏՕ

(Դաշն. Մինարեթի կտրիճ վալատը)

Հոկտեմբերի 13ին կ'առաջնորդէ Փախիկի խումբը։ Սակայն այս՝ վերջի վալատութիւնը կը լինի մեր Մստոյին, որ տղոց հետ մինչեւ վերջը կը կռուի, եւ զարհուրելի տանջանքներու ենթարկըւելով կը մեռնի։

Բարձրահասակ, արեւէն պղնձագոյն եւ պայծառ դէմքով հուժկու, քաջ տղամարդ մըն էր Մստօն, որ ամենայն հաւատարմութեամբ ծառայեց Դաշնակցութեան: Անոր կորուստը մեծապէս զգալի եղաւ Սալմաստի համար:

Քէլպէլա Աբբասը նոյնպէս Սալմաստեցի, մօտաւորապէս 9



ՔԵՐՊԵԼԱ ԱԲԲԱՍ (Դաշնակցութեան սուրհանդակը)

երկար տարիներ, ամենայն հաւատարմութեամբ սուրհանդակի պաշտօն կատարեց Մինարէթի եւ Շամի (Վան) միջեւ: Ձիու թամբի փայտեայ մասին մէջ տեղ մը շինած էր, ուր կը թաքցընէր նամակները, ու տեղական ապրանք բեռցնելով ձիուն, խաղաղ կերպով մեծ ճանապարհը բռնած կ'երթար Վան, առանց որեւէ մէկու կասկածը հրաւիրելու իր վրայ:

Դեռ բժիշկ Փաշաեանը չգնացած՝ ժողով մը ունեցանք: Եւ այդտեղ որոշուեցաւ, որ ես անցնիմ Ուրմիա, որպէս ներկայացուցիչ:

Այդ որոշումը յայտնուեցաւ Թաւրիզի Կ. Կոմիտէին՝ հարկաւոր թղթերը ուղարկելու համար:

Սամսոնը, որպէս հին, փորձուած ու այդ շրջաններու ծանօթ ընկեր մը, սահմանագծեց այն հնարաւոր աշխատանքները, զոր ես ունենալու էի: Ամենէն առաջ կար ասորիներու Մար-Շիմօնի եւ Շէյխ Մէհմէտ Սաւըղի հետ բանակցութիւններու խնդիրը, նոր գիծեր բանալու դէպի Երկիր, ու տեղական կազմակերպչական աշխատանքներ:

Ինծի պէս բոլորովին անփորձի մը համար աւելի քան պատասխանատու գործեր էին ասոնք: Եւ շիտակը ըսելով, սրտի թեթեւութեամբ չէ, որ համաձայնեցայ երթալ: Ճիշդ է, Սամսոնը սիրտ կուտար, ըսելով, թէ կեանքն ինքն իսկ ցոյց կուտայ այն միջոցները, որով առաջադրուած նպատակները պիտի իրականացուէին: Բայց իմ խելքս շատ բան չէր կտրեր. ծովը ինկածի պէս կը զգայի ինքզինքս: Բայց եւ միաժամանակ ինքնասիրութիւնս թոյլ չէր տար որ մերժէի երթալ:

1894 թուականին, Ալէք Ջելալեան ու Տաշօն Ուրմիա էին անցեր Մար Շիմոնի հետ բանակցելու համար, բայց անոնց կատարած աշխատանքի մասին ոչինչ գիտեմ: 96 թուականին, երբ չորս կողմէն Թաւրիզ էին հաւաքուած պատասխանատու ընկերներ, Խանասորի արշաւանքի նախապատրաստութիւններուն համար, միաժամանակ ձեռնարկած էին լայն համագործակցութիւն մը առաջ բերելու մեր դրկից ժողովուրդներու հետ:

Դաշնակցութեան սկզբնական օրէն իսկ, այս հիմնական միտքն էր առաջնորդած մեր կուսակցական գործունէութիւնը, իսկ եթէ պէտք եղած յաջողութիւնը չէինք ունեցած, այդտեղ պատասխանատուութիւնը մեզմէ դուրս պէտք է փնտռել:

Թաւրիզի Կ. Կոմիտէն կ'որոշէ Արամայիսն ու Ուրմիացի Ալէքը ղրկել այդ պատասխանատու գործով, Մար-Շիմոնին ու Շէյխին մօտ:

Արամայիսի յիշատակարանին մէջ, մանրամասնօրէն խօսուած է այդ մասին: Կ'երթան երկուքը, բայց հազիւ Ուրմիա հասած, կը պժտուին իրար հետ եւ անկարող կ'ըլլան իրար հետ

համաձայնիլ։ Ալէքի ձգձգումներու հետեւանքով, գործը կը վիժի, ու Արամայիսը կը վերադառնայ Սալմաստ առանց բան մը կատարած լինելու։

Սալմաստէն մեկնելէս առաջ, Սամսոնի հետ·միասին ուխտի գնացողի մը ջերմեռանդութեամբ կ'երթամ Րաֆֆիի մայրը տեսնելու Փայաջուկ։ Տան բակին մէջ կը հանդիպինք Րաֆֆիի մօրը, ութսունը անցուցած պառաւ մը, որ հազիւ տեղէն կրնայ շարժիլ, որու լսողութիւնն ալ արդէն ծանրացեր է։ Խոնարհութեամբ ձեռքը կը համբուրեմ։



Ր Ա Ֆ Ֆ Ի

Ահա եւ Րաֆֆիի սենեակը, ուր մեծանուն եւ տաղանդաւոր վիպասանը աշխատեր է։ Բարեբախտաբար, աշխատեր են սենեակը եւ միջի իրեղէնները անփոփոխ պահել։ Ահա Րաֆֆիի փոքր գրասեղանը, պատի մը տակ, իր աթոռը, իր գրադարանը, քանի մը գրքերէ բաղկացած։ Այս տունը ուխտատեղի մ'էր գրեթէ, Սալմաստ եկող բոլոր յեղափոխականները անպատճառ պիտի այցելէին, տեսնելու Րաֆֆիի ծնած տունը, ու մայրը, որու օրհնուած արգանդին մէջ կազմաւորուեցաւ մեր մեծագոյն վիպասանը։

Դեռ Ուրմիա չգնացած, օր մը լուր բերին որ Սանամերիկ է եկեր Ռուսաստանէն Սարպազ Խեչօն։ Այս լուրը սաստիկ վրդովմունք պատճառեց Սամսոնին։ Անշուշտ ես նորեկ մը լինելով, եւ անծանօթ անցեալ պատմութիւններուն, կը դժուարանայի հասկընալ Սամսոնը, որ խիստ բարկացած, կ'ուզէր որ Խեչօն անմի-




ՐԱՖՖԻԻ ՓԱՅԱՋՈՒԿԻ ՏՈՒՆԸ, ՄԱՅՐԸ ԵՒ ՔՈՅՐԵՐԸ

ջապէս հեռանայ Սալմաստի շրջանէն: Ինչպէս պիտի տեսնենք իր կարգին, Սամսոնը հազիւ կրցեր էր այդ շրջանը խաղաղեցնել, բաշի–պօզուքները քշելով ու մէկ երկուքն ալ տեռորի ենթարկել տալով: Վախը այն էր որ, Սարպաղ կամ Պիծայի Խեչօն, որ յայտնի զինուոր մ'էր, նոր փորձանք մը կրնար դառնալ: Բայց հակառակ սպասուածին, Խեչօն ինքզինք շատ լաւ պահեց: Շատ անգամներ հանդիպեցայ անոր, ատեն մ'ալ Խոյ քովս մնաց: Նիհար, բարձրահասակ, շնորհալի երիտասարդ մըն էր, քաջ ձիավարժ: Խանասորի արշաւանքի ամենակրտսերն էր, հազիւ 17 տարու պատանի մը, որ իր քեռիի, Դալարակեացի Տէր Գրիգորի հետ եկեր էր կռուին մասնակցելու: Դաշնակցութեան յայտնի Խեչօներէն մէկն էր, Դաշնակցական Խեչօ, մածուն Խեչօ, Սարպազ Խեչօ, երրորդութիւն մը, ամէն մէկը յայտնի զինուոր:



ՍԱՐՊԱԶ ԽԵՉՕ

1924–ին Սարպաղ Խեչօն մասնակցեցաւ Նիկօլ–Դումանի խումբին, անկէ վերջ, ժամանակ մը Սալմաստ մնալէն վերջը անցաւ Կովկաս: Լենինեան հալածանքներու ժամանակ, դժբախտաբար օձիքը ձեռք տուաւ, եւ երկարատեւ բանտարկութենէ մը վերջ, Նովիչերքասկի սպանդանոց բանտին մէջ, Թիֆոյէ վարակուելով,



ԱՍՈՐԻՆԵՐՈՒ ՄԱՐ–ՇԻՄՕՆԸ — ՄԱՅՐԸ ԵՒ ՔՈՅՐԸ

ճրագի մը նման հանգաւ, հեռու հայրենիքէն ու սիրելիներէ։

Իր կարգին պիտի խօսիմ եւ մեր Ղալասարցի Սարգսի մասին։

# ՈՒՐՄԻԱ

Ձիաւոր, կամաց կամաց կը բարձրանամ Սալմաստը Ուրմիայէն բաժանող սարն ի վեր։ Կէտուկի ծայրն ենք։ Մէկ կողմէ Սալմաստի ընդարձակ դաշտն է կապոյտի զարնող գոյներով, միւս կողմէն՝ Ուրմիան է, կամ աւելի ճիշդ կը լինի ըսել, Ուրմիոյ ընդարձակ պարտէզը։ Հոդ, մտատանջութիւնս կը ցնդի բնութեան այս հրաշալի գեղեցկութեան առջեւ։

Տնակի մը առջեւ կը նստիմ՝ թէյ խմելու։ Տնակի ցերեկուայ բնակիչները անցքին (կէտուկ) հսկող պահակներ են, պարսիկ սարբազներ, որոնք որպէս թէ անցորդներու ապահովութեանը պիտի հսկեն, բայց որոնք քրտերը երեւնալուն պէս, ամենէն առաջ փախչողներն են։ Սակայն, այդ պատճառ մը չէ, որ ամէն ճամբորդէ մէկ երկու շահի չստանան որպէս ծառայութեան վարձատրութիւն։ Մարդիկ ռոճիկ չունին, ի՞նչով պիտի ապրին որ։ Հազիւ հազ ցնցոտիներու մէջ պլլուած, ծանր վարանոտ հրացանները չօպանի լախտի պէս գործածելով, կկզած օճախի առջեւ, շիրին չայով կը հիւրասիրեն անցորդները։ Երբ գիս կը տեսնեն, տեղերէն վեր կը ցատկեն, քիչ մը կը հեռանան տնակէն, որպէս թէ շրջակաները հետախուզելու, որ չլինի թէ յանկարծ աւազակները վրայ գան, եւ վտանգ մը պատահի իրենց ազիզ հիւրին։ Ու քիչ վերջը վերադառնալով՝ կը յայտնեն, թէ ոչինչ չկայ, ամէն ինչ լաւ է եւ թէ մինչեւ Կուչճի ալ իրենցմէ մէկը ինծի պիտի ընկերանայ, որպէսզի Աստուած չընէ բան մը չպատահի ինծ։ Ցաւ կը յայտնեն միանգամայն, որ եթէ գիտնային իմ գալս, իրենք դիմաւորելու կուգային...

Հրաշալի է, աննման է պարսկական քաղաքավարական խօսակցութիւնը։ Ուրիշ ոչ մէկ ժողովուրդ չի կրնար այնքան հեշտութեամբ եւ առանց կարմրելու ըսել բաներ, որ բոլորովին ըսել չուզէր։ Լսողն ալ սիրալիր, նոյն ձեւով պիտի պատասխանէ, եթէ նոյնիսկ ոչ մէկ բառին կը հաւատայ։

Բանից դուրս կուգայ, որ ինծ ընկերակցող զինուորը Կուչճի գիւղէն է, եւ հետս եկաւ, որ գիս իրենց տունը տանի հիւրասի-

բելու համար, հարկաւ լաւ վարձատրութեան մը փոխարէն: Խաթըը չեմ կոտրեր այդ մարդուն, որ 60-ի մօտիկ ալեւոր մըն է եւ որ, ամբողջ գիշերը իր փառաւոր անցեալը պատմելով, կ'ազատէ զիս պառկելու եւ չքնանալու սարսափէն: Սարսափ լուերէն էր, որոնք արտակարգ յարձակում մը գործած էին այդ օրերը Կուչճիի վրայ: Սակայն, վերջէն, փորձառութիւնը սովրեցուց ինձ համբերատար վերաբերմունք մը ունենալ այդ միջատներուն հանդէպ ու եղածն համարել բնականոն երեւոյթ մը:

Առտուն, շատ կանուխ ճամբայ կ'ելնեմ, դեռ արեւը չծագած, ժամ առաջ ազատելու այդ սպանդանոցէն...

Սիրալիր տանտէրս ձիուս սապանդակը բռնեց, որ ես ձին հեծնեմ, յոյս յայտնելով, թէ անկէ անցնելուս, իրենց տունը կը գիշերեմ նորէն, եթէ նոյնիսկ ինքը տունը չըլլի, տունը տեղը իմս է եղեր, բեչքեչ...

— Ի հարկէ՛, ի հարկէ՛,— կը պատասխանեմ ժպիտով մը, որ չեմ կրնար աշխարհաբար հայերէնի թարգմանել, վախնալով որ կրնամ ատով վրդովել ընթերցողներու փափկասուն ականջները:

Լայն ու հարթ ճանապարհ մը կ'երկարի մինչեւ Ուրմի քաղաքը, որը հրաշքի համազօր երեւոյթ մըն է Ատրպատականի մէջ: Շատ տեղեր ճամբու երկու կողմը ծառերու երկար շարքեր կ'եզերեն, որոնք խիաւան կը կոչուին, աջ ու ձախ գիւղեր, խաղողի այգիներով շրջապատուած:

Պարսպապատ քաղաք մըն է Ուրմին: Մեծ դուռնէն ներս կը մտնեմ, եւ կ'իջեւանիմ Սալմաստեցի վաճառական Հասրէթեանի գրասենեակը, Սամսոնի յանձնարարութեամբ: Ճեմարանական մըն է ,զարգացած ու խելօք: Աւելորդ է ըսել թէ Դաշնակցական է, ու սիրալիր կ'ընդունի զիս:

Քանի մը օրէն, Արմենակ Եկարեանի օժանդակութեամբ (որուն Ուրմիա ծանօթացեր էի եւ շատ լաւ եօլա կ'երթայինք), մօտակայ Ջարբաշ գիւղին մէջ սենեակ մը կը վարձեմ, ախոռով միասին: Ինծի դրկից կը բնակէր եւ ինքը, Եկարեանը, որ ինծի հանդէպ միշտ ալ սիրալիր եղաւ, թէեւ այդ օրերուն մեր երկու կուսակցութիւնները իրարու վրայ շուն ու կատուի նման կը նայէին:

Տան տիրուհիս վերին աստիճանի ազնիւ եւ կարեկից ասորի կին մըն էր, Ռախի պաճի անունով: Հազիւ վեց ամսուան հարս

եղած ժամանակ, ամուսինը անցեր էր Ռուսաստան՝ դրամ վաստըկելու, ինչ որ սովորական երեւոյթ մըն էր այդ շրջանին մէջ։ 8 տարիներ անցեր էին սակայն, եւ ոչ մէկ լուր կար անկէ։

Տան մէջ մենք առանձին էինք։ Ես տնտեսութեան մէջ աւելի քան անճարակ եմ։ Եթէ պատահեր քաղաք երթալ, որ հազիւ կէս ժամ հեռաւորութիւն ունէր, ի հարկէ կը ճաշէի հոն։ Բայց դիւղը մնացած ժամանակս, օրեր շարունակ միայն չոր հացով կը բաւականանայի։

Ամէն առտու կը մաքրէի անոր, կը լուայի ձիս, կը թիմարէի եւ կերը կուտայի։ Ասոնք բաներ էին, որ սիրով կ՚ընէի։ Բայց ինծի համար կերակուր եփելու բնաւ հաւես չունէի։

Խեղճ տանտիրուհիս կը տանջուէր իմ դրութիւնս տեսնելով։ Շատ անգամ քիթն ու բերանը եազմայով ծածկած՝ ան սենեակս կը մտնար պնակ մը կերակուրով ու քաշուելով կը խնդրէր, որ չմերժեմ։ Ի հարկէ, չէի մերժեր, կ՚ուտէի, բայց լաւ չեմ յիշեր, թէ շնորհակալութիւն կը յայտնէ՞ի թէ ոչ։

Եկարեանն ալ երբեմն իրենցը կը տանէր զիս, ուր սիրով թանապուր կ՚ուտէի, վանեցիներու ազգային կերակուրը։

Միջանկեալ՝ յատկանշական դէպք մը պատմեմ այդ օրերու մեր կեանքէն։

Տանտիկինս երիտասարդ կին մըն էր վերջապէս. ես ալ 24 տարեկան երիտասարդ մը ... թէեւ «կոմիտէ»։ Հասկնալի բան է, որ գիւղին մէջ անմիջապէս շրջան առին յուզիչ պատմութիւններ՝ մեր երկուքի «սիրային» հաղուերգութեան մասին։

Օր մը Եկարեանը մեր տուները զատող կամուրջին վրայ բռնեց զիս ու՝ ծիծաղէն մարելով (թէեւ այդ մարդը շատ քիչ կը ծիծաղէր)՝ պատմեց հետեւեալը.—

Անգամ մը իր կինը, եւ քանի մը ասորի կանայք, որոնք ընդհանրապէս քիչ մը շատ ազատ են, եւ իմ տանտիկինս, կամուրջին գլուխը նստած, գուլպայ կը գործեն։ Ասորի կիները կը սկըսին ակնարկներ նետել տանտիկնոջս, ըսելով. «լաւ է, առեր երիտասարդ կոմիտէն նստեր ես։ Ամուսինդ որ չի գար, դուն ալ անոր աչքը հանէ»։ Խեղճ կինը, շառագունած, կը պատասխանէ. «Մեղք կ՚ընէք ձեր հոգուն. կոմիտէն (այսինքն՝ ես) սուրբ է։ Այս կոմիտէները, երբ ընկերութեան մէջ կը մտնեն, դեղ մը կ՚ընդունին, որով իրենց կարողութիւնը կը վերջանայ, կանանց հետ

քոյր եղբօր պէս կը լինին»։

Տանտիկինս այսպէս համոզուած էր։ Չէի ուզեր ներշնչել ազնիւ ընթերցողներուս, թէ դեղի պատմութիւնը իրականութիւն էր Դաշնակցութեան մէջ... Եւ սակայն, իրականութիւն է, որ 6 ամիս մնացի Ռախի պաճիի տունը, եւ ոչ իսկ անգամ մը իր դէմքը տեսայ։

Հին երանելի օրեր էին, երբ յեղափոխական լինելը կը նմանէր դերվիշ լինելու. ոչ վրայ կար, ոչ ուտեստ, իսկ կանայք ալ տեսնելնուս, առջեւնիս կը նայէինք Թագա հարսի պէս։

Հետզհետէ կ'այցելեմ հայաշատ գիւղերը՝ Գեարտարապատ, Հախջիւան Թէբէ եւ օր մըն ալ Ռահվա, ուր կը հանդիպիմ գիւղի վարժապետին, Երուանդ Քէօսէեանին։

Երուանդ Քէօսէեանը* (Սեպուհ) կարծեմ Արաբկիրցի էր։ Սանասարեան վարժարանը աւարտելէ ետքը, կ'անցնի Տարօնով դէպի Վասպուրական։ Հոն ատեն մը, Աղթամարի մէջ ուսուցչութիւն կ'ընէ։ Վերջէն կ'անցնի Պարսկաստան։ Համեստ, անկեղծ, նուիրուած երիտասարդ մըն էր, մաքուր հայրենասէր մը, որ վարժապետութեամբ կ'ուզէր ծառայել իր սիրած ազգին։ Վերջէն նորէն կ'անցնի Վասպուրական, որպէս Արմենական ներկայացուցիչ։ 1907 Թուականին, խուզարկութիւններու շրջանին, տեղէ տեղ փոխադրուած ժամանակ, Թրքական ասկերներու կը հանդիպի եւ կը սպաննուի։

Անմիջապէս բարեկամացանք։ Եւ հասկանալի է, որ շղթայող մտերմութիւն մը շուտով առաջ եկաւ մեր միջեւ։ Ան գիտէր, որ ես Դաշնակցութեան ներկայացուցիչն էի, իսկ ինքը ոչ մէկ կուսակցութեան կը պատկանէր. իրենց գիւղը ունեցած Դաշնակցական հաւաքոյթիս, ինքն ալ մասնակցեցաւ։

Այդ գիշեր Երուանդի աղքատիկ անկողինը միասին բաժնեցինք։ Մանրամասնօրէն պատմեց իր Ոդիսականը։ Թէ ինչպէս երբ հասեր էր Շամշիտան, մեծ Շէյխը չէր ձգեր, որ անցնի Պարսկաստան, այլ ուզեր էր, որ մնայ Շէյխի մօտ եւ զբաղի ռեւէ առեւտուրով, որուն համար Շէյխը պատրաստ էր դրամագլուխ տալու. Թէ ինչպէս փանեցի Արմենական Սէմէրճեանի օժանդակութեամբ օձիքը հազիւ ազատեր ու անցեր էր Ուրմիա։

* Դժբախտաբար այս հայրենասէր երիտասարդի նկարը չկրցայ ճարել։

Դժուար չէ գուշակել, թէ ի՛նչ հետաքրքրութեամբ կը լսէի զինքը, մանաւանդ Շէյխի հետ կապ ունեցող պատմութիւնը: Անուղղակի հարցերով ալ աւելի լուսաբանութիւններ ստացայ: Բան մը, որ վրաս վատ ազդեց, այդ ալ Սէմէրճեանի ներկայութիւնն էր Շէյխին մօտ, որ արտաքին գործոց նախարարի պէս դեր մը կը կատարէր Շէյխին քովը: Իրեն ոչինչ ըսի, բայց արդէն ծրագիր մը կազմած էի:

Դժբախտութիւնը հոն էր, որ ոչ մէկ մօտիկ կուսակցական ընկեր ունէի հետը խորհրդակցելու համար:

Մինչեւ այդ, ես բաւական ծանօթութիւն ձեռք էի բերած քաղաքին մէջ, կը ճանչնայի շատ մը հայեր, ի մասնաւորի վանեցի դերձակ մը Դաշնակցական, որուն հայրը Շէյխի մօտ վաճառական էր: Անկէ լսածներէս ալ այն եզրակացութեան եկայ, որ քանի Սէմէրճեանը հոն է, բան դուրս չի գար: Միեւնոյն ժամանակ, ասորիներու հետ սկսայ յարաբերիլ, մինչեւ որ Մար-Շիմոնի ներկայացուցիչը Ուրմիոյ մէջ զիս ճաշի հրաւիրեց օր մը:

Խելօք, տարէց մարդ մըն էր այդ ասորին, որու անունը դժբախտաբար մոռցեր եմ: Երբ յայտնեցի ցանկութիւնս՝ երթալ Մար Շիմոնին այցելութեան, քիչ մնաց լեղապատառ լինէր: Սաստիկ վախեցաւ խեղճը: Այս մարդուն հետ շատ երկար խօսեցայ, բացատրելով անհրաժեշտութիւնը մեր համագործակցութեան, համոզելով որ մեր ժողովուրդները դարեր շարունակ դրկիցներ, հողի եղբայրներ են եղած, թէ մեր քաղաքական ճակատագիրը միացած է իրարու: Երկար համոզելէ վերջը, վերջապէս, խօսք տուաւ ինձ, որ պիտի գրէ Մար-Շիմոնին իմ մասին եւ, երբ ջուլօներ գան, ինձ կ՚ուղարկէ անոնց հետ: Խոստումը լաւ էր, բայց ներքնապէս համոզուեցայ, որ այդ գործը անոր միջոցով գլուխ գալիք բան չէր եւ որ, եթէ բան մը պիտի ընեմ, յոյսս միայն իմ վրաս եմ դնելու:

* * *

Ուրմիա գալէս անցեր էր ամիս ու կէս: Օրին մէկը, պազարը Եկարեանի հետ հանդիպեցայ Փէսաւոր, բարձրահասակ պարոնի մը: Եկարեանը ծանօթացուց: Սէմէրճեանն էր: Կողմնակի կերպով իմացայ, որ Շէյխի կողմէ կ՚երթար Թաւրիզ, թագաժառանգ Մէհմէտ Ալիի մօտ, որ վերջէն Պարսկաստանի Շահը եղաւ: Մտածեցի, որ երթալ գալը կ՚առնէ 10 օրի չափ, 5–10 օր ալ

Թաւրիզ կը մնայ, ուրեմն յարմար ժամանակ է փորձ մը ընելու: Զարպաշ գիւղացի դերձակ մը (Դաշնակցական) ղրկեցի Ռահվա, Երուանդին մօտ, որ անմիջապէս ինձ մօտ գայ այդ գիշեր իսկ:

Ծրագիրս պարզ է: Երուանդը պատմած էր, թէ Տամգիտանէն եկած է պարսկական հողը, Մար-Կեաւար, Շէյխ Իպատուլլահի քովը, որ մեծ Շէյխի հօրեղբօր որդին էր, ու անկէ եկած Ուրմի: Ուրեմն Սեպուհը ինձ կրնար հասցնել Մար-Կեաւար Շէյխ Իպատուլլահին, անկէ անդին ալ՝ եա՛ բախտ:

Զարպաշ կը բնակէր նոյնպէս Տրապիզոնցի Ճանիկ Վարդիկեանը, ժամանակին առաջնորդարանի քարտուղար եւ Դաշնակցական առաջին Կ. Կոմիտէի անդամ: Երկար պատմութիւն է, թէ ինչպէս այդ մարդը, որ բարեկեցիկ տան մը զաւակն էր, ինկեր էր հեռաւոր Ուրմիոյ փոքրիկ գիւղերէն մէկուն մէջ: Այդ իրիկուն իսկ կանչեցի քովս, բացատրեցի անոր առնելիք քայլս ու խնդրեցի, որ Շէյխ Մէհմէտ Սատըղին նամակ մը գրէ Թուրքերէն, պարզէ պարզ ըսելով, որ ես Դաշնակցութեան ներկայացուցիչն եմ, որ կը ցանկամ իրեն հետ տեսնուիլ, մեծ կոմիտէի թելադրանքով, որ մեր տեսութիւնը երկու դրացի ազգերու ապագայ յարաբերութիւններու տեսակէտով օգտակար պիտի լինի: Միաժամանակ անոր ասպետական մեծահոգութեանը կը յանձնէի ինքզինքս, սիրայօժար երթալով իրեն քով, առանց երկիւղի, առանձինն: Ի վերջոյ, կը խնդրէի, որ քանի մը առաջնորդներ ղրկէ զիս տանելու, յայտնել որ ես Շէյխ Իպատուլլահի մօտ կը սպասեմ իր պատասխանին: Հասկցուցեր էի Շէյխին, որ ես կը ճամբորդեմ իբրեւ Ամերիկացի բժիշկ, այնպէս որ ոչ ոք, բացի իրմէն, պիտի գիտնայ իմ հայ լինելս:

Խնդրեցի Վարդիկեանէն, որ նամակս Թրքական փոլիթիքայով գրէ: Երանի այդ յիմարութիւնը ըրած չլինէի: Մեր եղբայր Ճանիկն ալ նամակը կը վերջացնէր մօտաւորապէս հետեւեալ խօսքերով. «Ինչպէս Ձեր լուսահոգի հայրը բարերարած է հայ ժողովուրդը, կը յուսամ, թէ դուք ալ նոյն վերաբերմունքը կ՚ունենաք հայ ժողովուրդի հանդէպ»:

Ի՞նչպէս չէ: Ու, սիրելի ընթերցող, գիտէ՞ք, թէ ո՞վ էր Շէյխ Մէհմէտ Սատըղի հայրը: Ոչ այլ ոք, եթէ ոչ 77 թուականի Շէյխ Իպատուլլահը, որ Շէյխ Ճելալէտտինի հետ ձեռք ձեռքի,

քար ու քանդ ըրաւ Աղբակի ու Ալաշկերտի գաւառները։

Այս բանը պարզուեցաւ, երբ վերադարձիս, ժընէվ պահուելու կ՚ուղարկէի Ուրմիայի արխիւը։ Այդ ժամանակ է, որ Ճանիկին բառ առ բառ թարգմանել տուի իմ ղրկած նամակս, ու վերջի մասը կարդալուս սառեցայ մնացի։

Եղածը եղած էր, սակայն։ Եւ Վարդիկեանի թրքական փոլիթիքան, մինչեւ այսօր ալ շատ տխուր յիշողութիւններ կ՚արթընցնէ մէջս։

Կէս գիշեր կը լինէր, երբ Ռահվաէն եկաւ Երուանդ Քէօսէեանը (Սեպուհ), մինչդեռ Վարդիկեանը Շէյխին նամակը մաքուր կ՚ընդօրինակէր։ Երուանդը շատ զարմացեր էր անակնկալ կերպով զինքը կանչելուս համար։ Բայց ես այդ գիշեր ոչինչ ըսի անոր՝ պատրուակելով, թէ գլուխս սաստիկ կը ցաւի։ Երկուքս միասին երկնցանք անկողնին վրայ։

Ամբողջ գիշերը չքնացայ։ Զանազան մտածումներ միտքս կը չարչրկէին անընդհատ։ Ինչ խօսք, որ լիակատար գիտակցութիւն ունէի վտանգին ու թերեւս նաեւ կեանքի կորուստին։ Բայց թո՛ղ ներէ ինձ ընթերցողը ըսելու, առանց հերոսանալու ցանկութեան, որ այն ժամանակ շատ էի երիտասարդ ու կ՚ապրէի պատմական շրջան մը, երբ Հայաստանի համար զոհուիլը պարզապէս քաղցր երազ մըն էր, եւ շատեր կային, ինձմէ աւելի պատրաստակամ, որ վայրկեան մը իսկ չպիտի տատամսէին ինքզինքնին կրակը նետելու՝ հայրենիքի համար։ Կեանքի վտանգէն շատ աւելի ինձ տանջողը այն միտքն էր, թէ արդեօ՞ք առնելիք քայլս խելօք է, ու թէ ես յարմա՞ր մարդն եմ այդ պատասխանատու գործը կատարելու, թէեւ գործի կարեւորութիւնը խիստ կ՚ըմբռնէի։

Տատանումներու մէջ անցուցի ամբողջ գիշերը։ Բայց հաստատապէս գիտէի, որ այդ ամենայարմար ժամանակն էր գործի ձեռնարկելու, եթէ երբեք այդ բանակցութիւնները պիտի կատարուէին։ Ու, վերջապէս, որոշեցի, Թղթամոլի մը նման «եա՛ պանք» երթալ։

Առաւօտ կողմն էր, երբ արթնցնելով յոգնած Երուանդը անուշ քնէն, բացատրեցի իմ նպատակս անոր ու այն միջոցները, որոնցմով կը կարծէի հասնիլ նպատակիս։

Երուանդը, կէս քնատ, ապշած, երեսիս կը նայէր։

— Բայց այդ խելագարութիւն է. կրնաս գլուխդ վրայ տալ, — ըսաւ ան վերջապէս,— դու չես գիտեր, թէ ի՞նչ խորամանկ օձ է այդ Շէյխը: Եթէ նոյնիսկ գլուխդ ինքը չուտէ, կրնայ քեզի առօք փառօք Թուրք կառավարութեան յանձնել՝ անոնց սիրալիր ծառայութիւն մը ընելու համար. հետեւանքը միեւնոյնը կը լինի: Ես կը խնդրեմ, որ լաւ մտածես՝ այդպիսի ծանր քայլ մը առնելէդ առաջ: Լաւ է նախօրօք գրես անոր, որոշ երաշխաւորութիւններ ստանաս, ու ապա՝ երթաս. թէ չէ ուղղակի երթալ գայլի բերանը իյնալը՝ ոչ խելօքութիւն է եւ ոչ ալ քաջութիւն:

Կը զգայի, որ անոր նկատողութիւնները ճիշդ են: Բայց ինքն ալ ինծի նման համոզուած էր, որ գործը ձգել անորոշ ապագային՝ կը նշանակէր ձեռք քաշել գործէն վերջնականապէս:

Երկար բարակ խօսելէ վերջ, համոզուեցաւ Երուանդն ալ, որ միասին ճամբայ ելնենք՝ լոյսը բացուելուն: Ան պիտի առաջնորդէր զիս մինչեւ Թառ-Կեավար, Շէյխ Իպատուլլահի մօտ, որը, ինչպէս նախօրօք ըսած եմ, կ'ապրէր Թուրք-պարսկական սահմանագլխին պինդ մօտիկը, պարսկական մասի մէջ եւ մեծ Շէյխին հօրեղբօր որդին էր:

Ծիծաղելին այն է որ, թէեւ Երուանդը մինչեւ հոն, որպէս թէ վալադութիւն պիտի ընէր ինծի, բայց ինքն ալ հազիւ մէկ անգամ անցեր էր այդ ճամբով, որ ինքնին ճամբայ ալ չէր, այն ալ քրտական քարվանով: Եւ դեռ աւելին ալ. շատ ալ վստահ չէր, թէ սաղ-սալամաթ տեղ պիտի հասնէինք. որովհետեւ այդ շրջանի քրտերը, իրենց համեստ ապրուստի համար, շատ ալ անսովոր չէին աւազակութեամբ զբաղուելու: Այդ շրջան մըն էր, հողամաս մը, եթէ կ'ուզէք ըսէք չէզոք գօտի մը, որ անուանապէս միայն պարսկական էր:

Ըսեր եմ արդէն, որ գրած էի Շէյխին թէ գնալու եմ որպէս Ամերիկացի բժիշկ: Յոյս ունիմ, թէ ընթերցողս պիտի ներէ որ զինքը քիչ մը լուսաբանեմ իմ բժշկական կրթութեան մասին:

Պարսկաստան աշխատող յեղափոխական գործիչ մը պէտք է որ բան մը լինէր, առնուազն, վարժապետ մը, եթէ չէր կրնար աւելի յարմար բան մը լինել: Ես որոշած էի բժիշկ լինել, վարժապետութիւնը շատ ծանր գտնելով իմ նիհար ուսերուս համար: Թո՛ղ ոչ ոք չզարմանայ, որ որոշում տալը բաւական էր այդ բանին համար՝ այդ երանելի երկրին մէջ, որու հեռաւոր անկիւն-

ներուն՝ ամէն գլխարկաւոր օտարական անշուշտ որ բժիշկ մըն էր: Բայց ես պահանջուածէն ալ աւելի ունէի. ոչ միայն ամերիկեան քաղաքացի մըն էի, ու լայնեզր սեւ գլխարկ մը ունէի գըլխուս, այլ եւ Ղալասարի մէջ անցեր էի որոշ բժշկական դասընթացք մը՝ ամենագէտ Սամսոնի հեղինակաւոր հսկողութեան տակ:

Չեմ ուզեր Սամսոնի համեստութիւնը վիրաւորել ցուցադրելով այն բազմակողմանի յատկութիւնները, զոր ան կը մարմնաւորէր իր մէջ. բայց արդարութիւնը եւ յեղափոխական փաստացի պատմութեան սէրը կը պահանջեն յիշատակել մէկ երկուքը անոնցմէ՝ ցոյց տալու համար թէ յեղափոխական գործիչ մը ինչե՜ր պարտաւոր էր լինել, եթէ նոյնիսկ բան մը չլինէր ինքը:

Սամսոն զինագործ արհեստաւոր էր, ուսուցիչ էր, դերասան էր, ղաչախներու մեծն էր, ճարտարապետ էր, Թաւրիզի Առաջնորդարանի ներկայացուցիչն էր, հայ գիւղացիներու անպաշտօն բայց իրական քեարկիւզարն էր, արդար դատաւոր էր, թեմական տեսուչ էր, բոլոր գիւղերու դպրոցական հոգաբարձութեանց պատուաւոր նախագահն էր, քաջ կռուող էր, Սալմաստի Խանն էր, խելօք մարդ էր, բժիշկ էր, ատամնաբոյժ էր, հասարակական գործիչ էր եւ դեռ շա՜տ, շա՜տ բաներ ալ էր: Բաւական է ըսել, թէ ան Հ. Յ. Դ. Սալմաստի ներկայացուցիչն էր, ու հետեւաբար այդ բոլոր բարեմասնութիւններուն ալ տէրը:

Պէտք է խոստովանիլ, միաժամանակ որ Սամսոնը փորձառութեամբ բժշկական մեծ գիտութիւն ձեռք բերած կամ ինչպէս սովորական է ըսել, ամփարած էր: Լաւ կը յիշեմ՝ երբ խեղճ Երկաթը եկաւ երկրէն, յետակողմը չոր թամբին քուռակէն լեղկըւած, ի՜նչ ճարտարութեամբ եւ սառնութեամբ Սամսոնը այոտայնով կ'այրէր վէրքը, մինչդեռ Երկաթը ցաւէն ոռնալով կ'ոստոստէր մշեցու շորորը պարելով:

Այդ ճարտար գործողութիւնը մեծ ու անջնջելի տպաւորութիւն ըրաւ վրաս, եւ ես որոշեցի բժիշկ լինել, բայց երբեք Սամսոնի ձեռքին մէջ հիւանդ մը, վախնալով, որ մշեցու շորորը լաւ չկրնամ պարել:

Սամսոնի սեղանին վրայ փոշոտած «Տնային բժշկարան» մը գտայ պատահմամբ. շատ մը թերթեր ետեւէն ու առջեւէն պոկուած էին: Նստայ եւ լուրջ կերպով բաւական մը կարդացի:

Այդպիսով բժշկութեան տեսական մասը լուծուեցաւ. մնաց գործնականացումը, որ կեանքը եւ ոչորմելի հիւանդներս պիտի սորվեցնէին ինծի։

Ընթերցողը թո՛ղ չկարծէ, թէ միայն ես էի բժիշկ։ Ոչ, գրեթէ ամէն յեղափոխական գործիչ բնածին յատկութիւն մը ունէր բժշկութեան։ Շիտակը ես չհանդիպեցայ մէկու մը, որ իր գործունէութեան շրջանին բժշկութիւն ըրած չլինէր։ Բայց դեռ աւելի ալ ունէինք մենք, ըսել կ'ուզեմ համբաւեալ, բայց ինքնաստեղծ բժշկապետներ, եթէ ոչ եւրոպական, գէթ տեղական համբաւով նշանաւոր։ Օրինակ, մենք ունէինք Վահան Փափազեանը, որ Կոմս ըլլալէն զատ, բժշկական մեծ համբաւի ալ տիրացեր էր... շնորհիւ իր բժշկարանին, որ միշտ հետը կը պտտցնէր։ Անոր առաւելութիւնը ինծմէ այն էր, որ «Տնային բժշկարանը» համբերութեամբ ամբողջովին կարդացեր էր երկիր մտնելէս առաջ ու երկիր մտնելէս վերջն ալ բաներ մը կը յիշէր տակաւին իր կարդացածէն, որը ընդհանրապէս սովորական երեւոյթ մը չէ։

Ուսէս անցուցած փոքրիկ պայուսակ մըն ալ ունէի, որուն ներքին բաժանմունքներուն մէջ կ'ամփոփուէին հրաշագործ դեղերս։ Այդ խորհրդաւոր պայուսակիս տպաւորութիւնը ահագին էր քրտերու վրայ։ Ամէն անգամ, որ կը բանայի առասպելական պայուսակս, ի՜նչ երկիւղածութեամբ ու խորհրդաւորութեամբ անոնց նայուածքները կը խուժուէին պայուսակիս խորքը, ուր իրար կողքի կային քինին, անգլիական աղ, ասպիրին, ֆենասեթին, եօտօֆորմ, եօդ, վազելին, քանի մը փաթթոց վիրակապ եւ բամպակ։ Թերեւս ընթերցողներէս ոմանք գտնան, թէ դեղերուս տեսակը շատ էր պակասաւոր, բայց կը մոռնան այդպէս մտածողները, որ ճիշդ տոր մէջ կը կայանայ ճարտար բժշկի մը առաւելութիւնը, թէ չէ բազմաթիւ դեղերով ամէն մարդ ալ կրնայ բժշկութիւն ընել...

Ճիշդ է, որ բժշկական վկայական չունէի. բայց կարծեմ ընթերցողը ինքն ալ արդէն համոզուեցաւ առաջ բերածս անհերքելի փաստերով, որ կանոնաւոր բժիշկ մ'էի, եթէ նոյն իսկ նախանձոտ մարդիկ հակառակը պնդեն, որ հետեւանք է իրենց անհասկացողութեան։

* * *

Ճամբայ ելնելէս առաջ նստայ եւ նամակ մը գրեցի Թաւրիզի Կ. Կոմիտէին, որ կ'երթամ Շէյխին մօտ, ինքնաբերաբար, եւ չեմ գիտեր թէ ինչ ընդունելութիւն պիտի գտնամ. յամենայն դէպս, եթէ երեք շաբաթէն չվերադառնամ, առանց մտահոգուելու, սրտի կատարեալ խաղաղութեամբ, այլեւս կրնան հոգեհանգիստ մը կատարել տալ հոգուս փրկութեան համար, որ բաւական դժուարին խնդիր մըն էր:

Առտու կանուխ ճամբայ ելանք՝ մնաս բարով ըսելով Վարդիկեանին, որ երեխայի մը նման սկսաւ լալ:

Տուտով անցանք Ամերիկեան Գոլէճի առջեւէն, եւ քիչ վերջը մտանք նեղ ու քարքրած ձոր մը, որը միակ անցքն էր Մար-Կեավար տանող: Մօտ երկու ժամ երթալէն վերջ, առանց անցորդի մը իսկ հանդիպելու, հասանք Մար-Կեավար:

Ընդարձակ սիրուն դաշտ մը, թաւ կանանչով ծածկուած: Հոս հոն գետնափոր քրտական գիւղեր, որոնք աննշմար կրնային մնալ, եթէ քովերնին բարձրացած չտեսնայինք թրիքի դէզերը, սեւի զարնող:

Կարծեմ, ոչ մէկ տեղ հերկուած հողի չպատահեցանք: Ընդհանրապէս խաշնարածներ էին անոնք: Ոչ շատ բարձր լեռնաշղթայ մը, հիւսիսէն հարաւ ձգուած, կը բաժնէ Տաճկաստանը Պարսկաստանէն: Ու մտածել, որ այդ լեռներու միւս կողմը Հայաստանն է, Կեավարն ու Բաշ-Քալէի շրջանը: Սաստիկ յուզուած եմ: Երկուքս ալ կ'երգենք հայրենասիրական երգեր, ու ձիերու սանձը բաց ձգած, արագ կըկտրենք կանանչ, ծաղկալի դաշտը:

Երբեմն քրտական գիւղերու մէջէն ալ կ'անցնինք. խեղճերը ուղղակի զարմացած են. չեն գիտեր, թէ մեր ներկայութիւնը ինչպէս բացատրեն. ոչ ոք ձեռք չի տար մեզի. խոր գլուխ կուտան իմ ամբարտաւան թեթեւ բարեւին: Կասկած չկայ, որ մեզ ամերիկացի միսիոնար բժիշկներէն կը կարծեն, որոնք մարդասիրաբար իրենց հիւանդները ձրի կը բժշկեն Ուրմիայի իրենց հիւանդանոցին մէջ եւ որոնց հանդէպ բարեկամական վերաբերմունք մը ունին ընդհանրապէս:

Մար-Կեավարէն կ'իջնանք Թառ-Կեավար, որը աւելի սիրուն դաշտ մըն է, բազմաթիւ չէն գիւղերով:

Սեպուհը ձին կանգնեցուց: Չորս կողմի գիւղերը աչքէ կ'անցընէ: Աւելորդ է ըսել, թէ մենք ճամբայով չէ որ կ'երթանք, այսինքն՝ որոշ ճամբայ չկայ որ երթանք, այլ ընդհանուր ուղղութեան մը կը հետեւինք: Վերջապէս, ձեռքը երկնցնելով դէպի գիւղ մը, Սեպուհ ըսաւ, թէ այդ պէտք է որ լինի Շէյխին գիւղը, որուն կեդրոնը կ'երեւէր քէօշկը, միակ երկյարկանի տունը ամբողջ շրջանին մէջ:

Ուղիղ դէպի այդ գիւղը քշեցինք մեր ձիերը: Երբ գիւղին պինդ մօտեցանք, յիշեցուցի սիրելի Սեպուհին, որ ինքը ծառայ մ'է, ես ալ Ամերիկացի բժիշկ մը, Տոքթ. Ճանսըն:

Շէյխի քէօշկին առջեւ Սեպուհը վար ցատկեց ձիէն, սանդուխներով բարձրացաւ վեր՝ յայտնելու, թէ Ամերիկացի բժիշկ մը այցելութեան եկած է Շէյխին:

Քիչ անցած ղօլամները վար թափեցան, օգնեցին ինծի: Ես ալ ծանր ու մեծ իջայ ձիէս ու բարձրացայ վեր:

Շէյխի ընդունարանը ամբողջովին լեցուած էր հիւրերով: Վերջէն միայն հասկցայ, թէ Բայրամի առաջին օրն էր այդ, եւ շրջակայքի բէկերն ու աղաները եկած էին շնորհաւորութեան:

— Աչքիս վրայ, գլխուս վրայ,— ու կողքին տեղ ցուցուց ինծի:

— Լսած էի անունդ եւ համբաւդ, Շէյխ, ու եկայ տեսնելու քեզ,— պատասխանեցի անոր ու ծալապատիկ տեղաւորուեցայ թանձր մինտէրին վրայ:

Չորս կողմէն բարեւ կուտան, թանկագին քէֆս հալս կը հարցնեն: Բոլորին ալ պէտք է պատասխանել: Շէրբէթ ու սուրճ կը հրամցնեն:

Կամաց կամաց կը մեկնին պատուաւոր հիւրերը: Ամենուն ալ պարտաւորուած խօսք կուտամ, որ անպատճառ իրենց գիւղը պիտի այցելեմ: Ամէնքն ալ անշուշտ հիւանդ ունին նայել տալիք:

Երուանդը՝ դրան մօտ, ղօլամներուն քով նստած՝ հեգնանքով ինծի կը նայի: Երբեմն հազիւ կը զսպեմ ծիծաղս:

Ի հարկէ, Շէյխին պատուաւոր հիւրը այլեւս ես եմ: Վարպետութեամբ մը կ'ուզէ իմանալ ինչ պտուղ լինելս: Կարճ կապելու համար՝ կը հանեմ ամերիկեան անցագիրս եւ երբ կ'երկարեմ իրեն, Շէյխը կը յայտնէ, թէ ինքը Ամերիկեան Գոլէճը ուսանող եղած է տարիներ առաջ: Կ'երեւակայէք իմ սարսափս, ներկայա-

ցած էր որպէս ամերիկացի Տոքթ. Ճանսըն, իսկ անցագիրս իսկական անունովս էր:

Բարեբախտաբար, անցագիրս գլխիվար կը բանայ: Մեծ շունչ մը կը քաշեմ: Շէյխը մատը դնելով շարքի մը վրայ՝ որպէս թէ կը փորձէ կարդալ.

— Տոքթ. Ճանսըն,— կ՚ըսեմ:

— Պէլլի, պէլլի, Աստուած ալ գիտէ, որ այդպէս է,— ու Շէյխը հպարտ նայուածքը չորս կողմ կը պտտցնէ յաղթական, ուրախանալով, որ իր անգլիագիտութիւնը ցուցադրելու պատեհութիւն ունեցաւ:

Վախնալու բան չկայ այլեւս, այս մէկ փորձանքէն ազատեցանք: Անցագիրը գրպանս կը դնեմ: Գրեթէ բոլորն ալ քաշուեր են, բացի Շէյխի քանի մը ղօլամներէն: Կը սկսինք մտերմօրէն խօսակցիլ: Կը յայտնեմ, թէ նամակ ունիմ, որ անմիջապէս պէտք է Շամտինան հասցնել, մեծ Շէյխին: Անմիջապէս ասորի յայտնի վալադ մը կը կանչէ, որը կը խոստանայ հինգ օրէն նամակիս պատասխանը բերել: Ես ալ առատաձեռնաբար կը խոստանամ մէկ թուման իրեն բախշիշ տալ, եթէ ժամանակին հասնի: Մարդը, նամակը ստանալով՝ ճամբայ կ՚ելնէ:

Ես ու բէկը՝ նստած տեղերնիս ճաշեցինք, իսկ Երուանդը ղօլամներու հետ, դրան քով: Երկուքս ալ հազիւ մեր ծիծաղը կը զսպէինք: Լաւ, որ մինչեւ այստեղ դեռ սխալ մը չըրի: Միակ սխալս երկարավիզ կօշիկներս ու տասնոց ատրճանակս իր փայտէ ամանով ցուցադրելն էր, որ սակայն ծածկելու հնարաւորութիւն չունէի: Ու եթէ կասկած ունեցան մարդիկը, այդ ալ իմ անփորձութեան պատճառով էր: Փոխանակ ատրճանակի, եթէ Սուրբ գիրք մը հետս վերցուցած լինէի, ոչ ոք ամենաթեթեւ կասկած մ՚իսկ չպիտի ունենար: Ուշ անդրադարձայ, բայց սխալը այլեւս չէի կրնար ուղղել:

Ճաշէն վերջը, Շէյխը խնդրեց, որ քննեմ իր կինը, որ գրեթէ միշտ հիւանդ է: Կ՚անցնինք միւս սենեակը, ուր քանի մը կիներու հետ քիւրսիի տակ նստած է երիտասարդ կին մը, զարմանալիօրէն ճերմակ, կըս–կլոր դէմքով, այնքան թխլիկ, որ կարծես բամբակով շինուած լինի:

Կարծեմ, բժշկական էթիքէթի դէմ է փրօֆէշընըլ գաղտնիքներու մասին գրել: Այնպէս որ զանց կ՚ընեմ Շէյխի կնոջ հիւան-

դութեան մասին խօսիլ, եթէ նոյնիսկ ընթերցող բժիշկներէս ոմանք կարծեն, թէ ես ոչինչ հասկցայ կնոջ հիւանդութենէն: Քրիստոնէական համբերութեամբ պէտք է տանիլ նման կասկածները, չէ՞ որ նախանձը այնքան հին է որքան աշխարհը: Բայց պէտք է խոստովանիմ, որ գլխու ցաւի համար տուած ասպիրինս շատ օգնեց համբաւիս տարածուելուն ամբողջ գիւղին մէջ, որպէս շնորհալի բժիշկ:

Մեզի համար Շէյխի տնէն տեղաշոր ղրկուեցաւ ասորիի մը տունը, ուր եւ քնեցինք երկուքս ալ: Իսկ կերակուրը Շէյխի տընէն կուգար:

Հոս արժէ քանի մը խօսք ըսել ընդհանրապէս Ուրմիոյ ասորիներու եւ մասնաւորապէս Թար-Կեավարի գիւղերու մէջ ցըրուածներու մասին:

Նախ ըսենք որ Ասորիները թէեւ մէկ ազգ, բայց երկու շատ տարբեր հաւատածներու կը բաժնուին: Ջուլամերիկի, ինչպէս եւ Մաւանայի ասորիները, որոնք Ջուլօ կը կոչուին, կը ներկայացնեն այդ ազգի աշիր, կիսանկախ լեռնականները, յանդուգն, կորիճ, եւ ռազմասէր: Ասոնք քիւրտ աշիրաթներու սովորութիւնները եւ կեանքը կ'ապրէին դարերէ ի վեր: Վերին աստիճանի հիւրասէր են, ասպետական եւ փարած իրենց պապենական սովորութիւններուն ու ազգային հնաւանդ եկեղեցիին: Աղքատ կեանք մը կ'ապրին, չարքաշ ու զրկանքներով լեցուն: Կը սիրեն ձին ու հրացանը, եւ կռիւներէ չեն խուսափիր:

Որքան Ջուլօները առնական, գեղեցիկ ժողովուրդ, այնքան ալ Ուրմիոյ եւ շրջակայ գիւղերու ասորիները, ճզմուած, աննկարագիր եւ այլասերած էին: Անշուշտ այդ երեւոյթի ամենագլխաւոր պատճառը անոնց տնտեսական վատթար վիճակն էր: Գրեթէ Ուրմիոյ ամբողջ գիւղերը սեփականութիւն էին զանազան պարսիկ աղաներու եւ իշխանաւոր կրօնաւորներու, որոնք տզրուկի նման ինկած գիւղացոց ջանին, քմահաճ տուրքերով, կը քամէին ժողովուրդը: Բնականաբար ասորիները պիտի ձեռք առնէին պանդխտութեան ցուպը: Տուն չկար որ մէկէ աւելի պանդուխտ չունենար Ռուսաստան: Կ'երթային շատեր, ու տարիներով հեռու կը մնային իրենց ընտանիքներէն, նորահարսերէն, որով պատճառ կը դառնային կիներու բարոյական անկումին, որը շատ աչքի զարնող երեւոյթ մ'էր: Նկարագրի ու բարոյական այլասերման պատ-

ճառներէն մէկն ալ՝ մարդորսութեան պատճառով կրօնական միսիոններու ներքին պայքարն էր, շուկայի տէր դառնալու համար:

Առանց ուրանալու ամերիկեան միսիոնարներու կատարած շինարար աշխատանքը՝ այդ շրջանի մասնաւորապէս կրթական մարզին մէջ, պիտի ըսենք որ ներքին պայքարը անոնց, կաթոլիկներու եւ վերջէն եկած օրթոտոքսներու (ռուսական միսիոնարութեան) միջեւ, ստեղծեր էր այնպիսի անբարոյական տրամադրութիւն մը, որ ասորի ժողովուրդը դրամի եւ պաշտպանութեան սիրուն, զգեստ փոխելու չափ հեշտութեամբ եկեղեցին կը փոխէր, ու այդ՝ տարին մէկէ աւելի անգամներ: Պարզապէս դրամի խնդիր էր, ով որ աւելի կուտար, անոր կը յարէր ասորի ժողովուրդը: Հոս պէտք է շեշտենք, որ ռուս միսիոնարները, որոնք աւելի քաղաքական նպատակներ հետապնդելու համար ճամբըւած էին ռուս կառավարութեան օժանդակութեամբ, իրենց ցոփ կեանքով ու կասկածելի վարք ու բարքով մեծապէս նպաստեցին այդ ժողովուրդի այլասերման:

Եթէ քաղաքի եւ շրջակայքի ժողովուրդը այս տխուր պատկերը կը ներկայացնէր, Թար-Կեավարի ափ մը ասորիներու կեանքը, ուղղակի ողբալի էր: Հազիւ թէ ճորտական դրութեան մէջ, գիւղացին այն աստիճան իրաւազուրկ լինէր, որքան ասոնք էին: Անոնք կ'աշխատէին ամբողջ տարին, կտոր մը սեւ հացի փոխարէն, հազար ու մէկ անպատուութիւններու ենթակայ: Ինչ որ ես հոն տեսայ, ոչ մէկ տեղ չեմ հանդիպած: Անոնք բառի ամենալայն իմաստով գերութիւն մը կ'ապրէին, աշխատելով քիւրտերու համար, ծառայելով անոնց զզուելի հաճոյքները գոհացընելու այնպիսի ցնցող պարագաներու մէջ, որ անկարող եմ հոս պատկերացնել: Ամենասովորական երեւոյթ մ'էր, գեղեցիկ աղջիկներու բռնի իսլամացումը: Այդ խեղճ, կորած ժողովուրդը դեռ պատիւ կը համարէր, եթէ ազդեցիկ քիւրտ մը ունենար փեսացու կամ «տան բարեկամ»:

Ծայր աստիճանի աղքատ էին թէեւ, բայց չարքաշ աշխատաւորներ՝ առանց որեւէ սեփականութեան տէր լինելու: Հողը, ինչպէս բնակած տներնին, Շէյխինը կը համարուէր: Տներնին մերկ էր որեւէ կահկարասիէ, ունեցած չունեցածնին քանի մը թաղիք էր եւ մէկ երկու պղինձ:

Այս ասորիները պառկելու ժամանակ բոլորովին կը մեր-կանային, առանց որեւէ շոր վրանին պահելու: Ինչպէս սովորու-թիւն էր, Թոնիրի շուրջը կը բոլորուէին, ոտքերը դէմ տուած Թոնիրի բերանին: Թէ ի՛նչպէս կը դիմանային ձմեռուայ ցրտին, դժուար է երեւակայել իսկ:

Ընդհանրապէս բարձրահասակ, մասնաւորաբար կիները, գեղեցիկ եւ լաւ աշխատողներ են: Ինչ որ զիս շատ զարմացուց, ա-նոնց անտարբեր վերաբերմունքն էր իրենց ողորմելի կեանքի հանդէպ: Ճակատագրական բան մը կար իրենց ըմբռնողութեան մէջ, կ'երեւի աւելի լաւը չէին տեսեր, ու անտրտունջ կը տա-նէին այդ կեանքը, առանց ամենաթեթեւ վրդովմունքի:

* * *

Շէյխի մօտ հասնելուս յաջորդ օրը, կարաւանով Ուրմի ճամ-բեցի Երուանդը, ճիշդ ըսելով, շատ սրտաբեկ վիճակի մէջ:

Ըսենք, առաջ ալ գիտէի, բայց հոդ գալէս ու մինակ մնալէս վերջը ըմբռնեցի վիճակիս ամբողջ ծանրութիւնը: Միս մինակ ինկած այդ շրջանը, կեղծ անունով մը երթալու համար մէկու մը քով, որ զիս չէր կանչած, ու չէի ալ գիտեր, թէ ինչ ձեւի ընդունելութիւն պիտի ընէ ինծի: Եւ վերջապէս, կարծես թէ աշ-խարհը կը սկսէր քաղցրանալ, ու կեանքը վրայ տալու գաղա-փարն ալ՝ հետզհետէ կորսնցնելով գաղափարի մը համար զոհ-ուելու գրաւչութիւնը, անհրապոյր կատակ մը կը դառնար ան-ժամանակ:

Բայց իմ փորած հորը ինկեր եմ ու պիտի քաշեմ, տեսնենք վերջը ի՞նչ կը լինի: Մտքիս մէջ ինքնիրենս կ'ըսեմ. «Է՜հ, եղ-բայր Մալխաս, եփած ապուրդ է, հրամմէ կեր»:

Շէյխի տան մարդն է Ֆախկին, գիւղի աղան, շատ սատա-նորդի բան մը, որը զիս վայրկեան մ'իսկ ազատ չի ձգեր: Այդ մարդը առջի րոպէին իսկ կասկածեցաւ վրաս, թէեւ շատ քաղա-քավարի կը վարուէր հետս, կ'երեւի սպասելով մեծ Շէյխէն ստանալիք պատասխանիս: Շատ ժամանակ չանցաւ, երբ գլխի ինկայ, որ քաղաքավարի կերպով բանտարկեալ մ'եմ ես, եւ, ե-թէ ցանկանամ իսկ վերադառնալ Ուրմիա, չպիտի ձգեն որ եր-թամ: Ուրիշ ճար չկար. խնդումերես համակերպեցայ դրու-թեանս հետ, թէեւ սիրտս տարբեր բան կ'ըսէր:

Երկու օր վերջը, Ֆախկիի ու երկու ղուլամներու հետ այցի գնացի մօտիկ գիւղի մի բէկին: Ինչպէս ըսի, Բայրամ էր, ու բէկը խնկական ընդունելութիւն մը պատրաստեր էր Տօքթ. Ճանսընի համար:

«Սէր սէրան, սէր չավան» կը դիմաւորէ բէկը՝ շրջապատուած գիւղի երեւելիներով, ու կ'առաջնորդեն զիս ու Ֆախկին իր տան թօնրատունը: Հազիւ թէ արտաքնապէս մեծ տարբերութիւն մը լինէր գիւղացոց եւ բէկի տան մէջ, միեւնոյն ցած դուռը, մանուածապատ միջանցքը, ախոռի անխուսափելի գարշահոտութիւնը, երդիքէն իջնող անբաւական լոյսով լուսաւորուած կիսախաւար թօնրատունը: Անշուշտ կապերտներով, թաղիքներով, պղինձներով, տաւարով ու ոչխարով բէկը աւելի հարուստ է քան սովորական քիւրտ գիւղացին, բայց այդ դեռ չի նշանակեր թէ քիւրտը ընդհանրապէս աւելի ունեւոր չէ քան Ուրմիոյ գիւղացին:

Հազիւ թէ պայմանադրական բարեւները շրջան մը կ'ընեն, երբ քրտի կնիկները սկսան ճաշի պատրաստութիւն տեսնել: Բոլորս շարուեցանք սփռոցի չորս դին, ծալապատիկ նստելով: Զարմանալի առատութեամբ, ամէն մէկուս առջեւ լաւաշ հաց դրին, որ հազիւ թէ երեք օր ուտելով կարելի լինէր հատցնել, բայց ըստ նահապետական սովորութեան եւ հասկցողութեան, քրտերու մէջ շատ մեծ ամօթ եւ անպատուութիւն կը համարուի, եթէ հիւրի առջեւի հացը հատնելով, սփռոցը երեւի: Բազմաթիւ պղինձէ խոր ու կլոր թասերով կերակուրներ կը դնեն սփռոցին վրայ: Ջորվա, տապակած հաւ, տապակած միս, պարսկական փիլաւ, իւղի մէջ տապակած արմաւ եւ զանազան խմորեղէններ՝ քիչ մը շատ քրտավարի պատրաստուած: Ի հարկէ ոչ պատառաքաղ եւ ոչ դգալ կայ սեղանի վրայ: Քրտերը մեծ ճարպիկութեամբ, նոյն իսկ ջորվայի նման ջրալի կերակուրը կուտեն լաւաշի օգնութեամբ, առանց մատներու ծայրերն իսկ իւղոտելու: Իմ ցուցուցած շնորհքիս մասին կարծեմ աւելորդ է խօսիլ, երկու ձեռքս ալ պլշկելով հազիւ թէ բան մը կը պեճէրէի: Մէկ ալ տեսնես քիւրտ մը, որպէս թէ պատիւ ընելու մտադրութեամբ, մսի կտոր մը ձեռքովը վերցնելով, առջեւս, լաւաշի վրայ կը դնէ...: Զարմանալի կերպով շատակեր եւ որկրամոլ են, բերան-աղօրիքները այնպէս արագ եւ շառաչուն կերպով կը գոր-

ծեն, որ անշուշտ քովի գիւղէն ձայնը կը լսուէր:

Կամաց մը մէջքի գօտիդ կը քանդես, քիչ մը եւս տեղ բանալու համար, զուր աշխատանք սակայն, որքան ալ ուտես, չես կրնար գոհացում տալ անոնց սպասումին: Լաւ ուտող մարդ մը, յարգանք կը վայելէ անոնց մէջ:

Վերջապէս տկռած փորով սեղանէն կը քաշուինք, նոր փորձանքի մը հանդիպելու համար սակայն: Այս անգամ ալ ֆշֆշացող սամավարը ներս կը մտնայ: Երեք բաժակ թէյ խմելը պարտադիր է. չեմ գիտեր այս անպատճառ երեք բաժակ թէյ խմելու պատմութեան ծագումը: Հազիւ բաժակ մը խմած, արդէն քրտինքներու մէջ կը լողամ: Ըսին թէ երկու բաժակ թէյ իրենց պարտական մնացի, զոր պէտք է վճարեմ յաջորդ անգամուն, երբ նորէն իրենց հանդիպիմ:

Մեծ ուրախութեամբ ոտքի ելայ, ազատուելու համար այդ քիրտ բարեկամիս հիւրասիրութենէն: Բայց սիրելի ընթերցողս անշուշտ կրնայ երեւակայել իմ յուսահատութիւնս, երբ ըսեմ թէ յաջորդ տան մէջ ալ, ճիշդ միեւնոյն պատմութիւնը կրկնուեցաւ, գրքի մը երկրորդ տպագրութեան պէս, առանց փոփոխութեան: Եւ այդպէս մինչեւ երեկոյ, կարծեմ չորս աչքի զարնող քրտերու մօտ եղանք, եւ ամէն տեղ ալ միեւնոյն պատմութիւնը: Այդ եւ յաջորդ օրերը ինծի համար կատարեալ պատուհաս մը եղան, ակամայ ուտելն ալ այնքան տանջանք էր, որքան եւ սոված մնալը:

Աւելորդ է ըսել, թէ ամէն մէկ գիւղ մտնելուս՝ հիւանդներով կը շրջապատուէի: Ու, Տէր Աստուած, ինչ ու ինչե՜ր... Եթէ շատ պատճառներ չունիմ հպարտանալու որպէս բժիշկ, գէթ խիղճս թեթեւ է, որ վնաս մը տուած չեմ. անմեղ դեղեր կը գործածէի: Իսկ իրական բժիշկներէն քանի՞ն միեւնոյն բանը կրնան ըսել խղճի մտօք:

Երեք օր գիւղէ գիւղ տարին զիս անբաժանելի Ֆախկիին հետ, որ հետզհետէ զիս կը ջղայնացնէր իր կասկածոտ վերաբերմունքով: Երրորդ օրը վճռեցի վերադառնալ Շէյխին մօտ: Կը յուսայի, թէ սուրհանդակը վերադարձած կը լինի, ու իմ բախտս վճռուած: Թէեւ Ֆախկին կ'ուզէր դեռ երկու գիւղ ալ երթալ, բայց իմ վճռական պնդումիս վրայ՝ ճարահատ ինձ հետ միասին վերադարձաւ, թէեւ կարգին թշնամացաւ ինձ հետ: Յայտնի էր

որ ատամ կը կրճտացնէր, եւ պատեհ առիթի մը կը սպասէր բուրդս գզելու:

Սուրհանդակը դժբախտաբար դեռ չէր վերադարձած: Շատ կոտրուեցայ: Խայտառակութիւն կը լինէր, եթէ սահմանն իսկ չանցած՝ գլուխս ուտէին: Ֆախկին Շէյխին հետ տաք տաք կը խօսէր, աշխատելով ինչ որ բանի մասին զայն համոզել: Կը զգայի, որ իմ մասին է խօսակցութիւնը: Մէկ երկու անգամ «խաֆիէ» բառը գործածեց: Իսկ Շէյխը հանդարտ բաներ մը կը պատասխանէր:

— Գիշեր բարի,— ըսի ու գնացի քնելու, ու վայ ան քնելուն որ քնացայ:

Հազարաւոր լուերէն զատ, որոնք կարծես խօսքերնին մէկ ըրած էին այդ գիշեր զիս տանջելու, Ֆախկիի չար դէմքը, հոգէառ սադայէլի նման, զիս կը հալածէր: Հետզհետէ դրութիւնս կը լրջանար, ու կը զգայի վտանգը, որմէ խուսափելու հնար չունէի այլեւս:

Գիտեմ, թէ իմ սիրելի ընթերցողս պիտի ուզէր, որ ես վըտանգի հանդէպ հերոսաբար գլուխս վեր վերցնէի անկողնէս ու երգէի.

«Ա՜խ Հայաստան, ես քու սիրուն...»

Անշուշտ այս աւելի քան վսեմ կրնար լինել, բայց բոլորովին այդպիսի տրամադրութիւն մը չունէի, ու սառ քրտինքը ճակտս ու մարմինս ծածկած էր:

Առտուն Շէյխին հետ նախաճաշ կ՚ընէինք, երբ սուրհանդակը եկաւ՝ բերելով սպասածս պատասխանը:

Տէր Աստուած, աղջիկ է թէ մանչ...

Նամակը ուղղուած էր Շէյխ Իպատուլլահին:

Նամակի միտքը հետեւեալն էր: Մեծ Շէյխը ուրախութեամբ կը սպասէ Տօքթ. Ճանսընին ու անոր ապահովութեան համար 15 զինուոր կը ղրկէ՝ անոր ուղեկցելու: Միեւնոյն ժամանակ մեծ Շէյխը կը յանձնարարէր Շէյխ Իպատուլլահին, որ հիւրին պէտք եղած ընդունելութիւնն ու յարգանքը չզլացուի:

Ուրախութենէս մէկու մը վզին փաթթուիլս եկաւ, եթէ իսկ որ այդ մէկը լինէր իմ բարեկամ Ֆախկին...

Երկար շունչ մ՚առի: Ֆախկին տեղը սմքեր մնացեր էր: Ա-

ռաջին քայլս լաւ անցաւ, մտածեցի, մնացածին համար ալ Աստուած ողորմած է:

Սրտապնդուած, ըսի Ֆախկիին որ ձիերը (բարակ) բերել տայ եւ աղուէսի որսի երթանք: Ամբողջ երեք օր գլուխ տարեր էր այդ առաջարկութեամբ, բայց ես վախնալով որ ան վատ մտադրութիւն մ'ունի, մերժեր էի: Ամբողջ կէս օրէն վերջը որսի էինք, մօտ 20 ձիաւոր: Ճիշդ է, որ աղուէս չբռնեցինք, բայց երեք հատ նապաստակ բռնեցին ձիերը:

Իրիկնամուտին, երբ վերադարձանք գիւղ, Շէյխը յայտնեց որ զինուորները եկեր են եւ հրամանիս կը սպասեն ճամբայ ելլելու համար: Ըսի թէ առտուն կանուխ ճամբայ կ'ելլեմ:

Առտուն շատ կանուխ քովս եկաւ զինուորներու մեծը, Սուլթանը, եւ յայտնեց, որ իրենք պատրաստ են: Մնաք բարով ըսի Շէյխին, որ իրապէս բարի եւ պապա մարդ մ'էր, եւ ճամբայ ելանք դէպի Շամդինան:

## ՇԷՅԽ ՄԵՀՄԷՏ ՍԱՏԸՂ

Երեք քառորդ ժամէն կը հասնինք լեռնաշղթայի ստորոտէն բացուող նեղլիկ ձոր մը, որ հետզհետէ բարձրանալով մեզ կը տանի սիրուն լեռնադաշտ մը: Ճիշդ ձորաբերանին մօտ կը տեսնեմ երկու «բուրձեր», եթէ կ'ուզէք, ըսէք բերդիկներ, ուր Շէյխի զինուորները պահակութիւն կ'ընէին: Ըսեմ, որ մինչեւ Շամդինան շատ նոյնանման բուրձերու հանդիպեցայ, թէեւ անոնց մէջ պահակներ չկային:

Լեռնադաշտը, որ գրեթէ երեք մղոն երկարութիւն ունէր, կտրել անցնելով, սկսանք վերելքը: Սուլթանը յայտնեց, որ այդ գիշեր իր գիւղը պիտի գիշերենք, ու իրեն հիւր պիտի լինիմ:

Երեկոյեան կողմ, հեռուէն երեւցաւ գիւղը: Ամբողջ գիւղացիք դուրս էին թափած թամաշայի: Բայց երեւակայեցէք զարմանքս, որ, երբ գիւղին մօտեցանք, ինձ դիմաւորեցին քիւրտ գիւղացիներու հետ ասորիները քահանայով, խաչով խաչվառով եւ առաջնորդեցին զիս ուղիղ իրենց խղճուկ եկեղեցին:

Ուրմիոյ մէջ բազմաթիւ ամերիկացի միսիոնար բժիշկներ կային, որոնք երբեմն կը ճամբորդէին դէպի երկրի զանազան ծայրերը, հետեւաբար այդ խեղճ ու կրակ, աշխարհէն կտրուած

հասարակութեան համար ամերիկացի բժիշկ մը, անկասկած միսիոնար էր: Նախօրօք լսելով Սուլթանէն, որ կ'երթայ ամերիկացի բժիշկ մը տանելու մեծ Շէյխին, պարզամիտ սարինները, դիմաւորելու եկեր էին միսիոնարը: Ինչ որ է: Սխալուած՝ աղօթեցի... ու քարոզ մ'ալ խօսեցայ միսիոնարական յայտնի կոտրտած տաճկերէնով մը: Լաւ չեմ գիտեր թէ աղօթքս ինչպէս ընդունեց Աստուած. բայց քարոզիս այնքան հաւնեցայ, որ, եթէ յեղափոխական չլինէի, կարծեմ՝ քարոզիչ կը լինէի:

Գիշերը Սուլթանի մօտ մնացի: Անկողինը երկու թաղիքէ կը բաղկանար միայն, թոնիրի չորս կողմը փռուած: Ամբողջ ընտանիքին հետ միեւնոյն թաղիք վերմակը կը ծածկէր բոլորիս:

Առտուն, սարի քահանային տունը նախաճաշ ըրի: Տեսնելու բան էր այդ խեղճ ժողովրդի սարսափելի վիճակը: Վերջէն, երբ Վանի հայ գիւղացոց վիճակին մօտէն ծանօթացայ, համեմատելով երկուքը իրարու հետ, գտայ որ Շէյխի սահմաններուն մէջ ապրող գիւղացիները, ոչինչով աւելի լաւ չէին միջնադարեան ճորտերէն:

Աւելորդ է ըսել, որ մեկնելէս առաջ նորէն եկեղեցի առաջնորդեցին ինձ, ուր կրկին քարոզեցի՝ յոյսի քանի մը խօսքեր ըսելով այդ թշուառ ժողովուրդին:

Երեք օր տեւեց մեր ճամբորդութիւնը: Նկարագրել այդ ճամբան շատ դժուար է: Բաւական է ըսել, թէ ոչ մէկ հարթութեան չհանդիպեցանք: Անվերջ վեր ու վար, տաժանելի ճամբայ մը, ուրկէ երկու ձիաւոր կողք կողքի չէին կրնար անցնիլ: Կը գիշերէինք ընդհանրապէս բէկերու կամ Շէյխի բարեկամներուն մօտ: Անշուշտ սեւ պայուսակս շատ անգամներ բացուեցաւ՝ հատցընելով գրեթէ քինինի պաշարս:

Չորրորդ օրուայ առտուն, երբ բարձրացանք բարձր սար մը, հոն գագաթէն վար, ձորի մը մէջ երեւցաւ Շամդինանը, գիւղաքաղաք մը, եթէ կ'ուզէք, մեծ Շէյխի մայրաքաղաքը: Գիւղաքաղաքին ծայրը, ճերմակի կը զարնէր հսկայ շէնք մը, չորս յարկանի, քարաշէն: Այդ ողորմելի երկրին մէջ տեսածս, հրաշքի պէս բան մըն էր:

Մէկ երկու հրացան պարպեցին իմ հետեւորդներս: Քիչ վերջը քաղաքէն քանի մը ձիաւորներ սրընթաց սկսան վեր բարձրանալ: Անշուշտ կուգային դիմաւորելու:

Շամդինանի նեղլիկ փողոցներէն անցնելու ատեն, խանութպան, կին, երեխայ անկիւնները հաւաքուած էին ամերիկացի բժիշկը տեսնելու:

Հասանք Շէյխի տանը առջեւ: Բայց այս տուն մը չէր, այլ հսկայ պալատ մը, ահագին դահլիճներով ու անվերջ սենեակներով:

Չէ, չէի կրնար երեւակայել իսկ, որ Քիւրտիստանի խորքերուն մէջ այսպիսի մեծագործութեան մը պիտի հանդիպիմ· շրջան մը, ուր գրեթէ ապակի իսկ չեն գործածեր:

Ընդարձակ բակը լեցուն էր ժողովրդով: Շէյխի հիւրերը ընդառաջ եկած էին: Անոնց մէջ քիւրտ մը աչքի կը զարնէր, որ բռնեց ձիուս սանձը: Յետոյ գլխի ինկայ, որ Շէյխի արարողապետն էր այդ:

— Բարի եկար, մեր աչքին, մեր գլխուն վրայ,— ու առաջնորդեցին զիս ընդարձակ սրահ մը, որ միւսաֆիր խանէ կը կոչուէր:

Բոլորը տեղաւորուեցան: Սկսան անհատնում բարեւները, համեմուած օշարակով ու ղայֆէով: Միեւնոյն քիւրտը, արարողապետը ըսել կ'ուզեմ, որ Թրքախօս քիւրտի մը միջոցով կը խօսէր հետս, ցաւ յայտնեց, որ դեռ սենեակս պատրաստ չէ· զիս հազիւ երեկոյեան կողմը կը սպասէին, բայց երկու ժամէն պատրաստ կը լինի:

Այդ հսկայ շէնքը, որու վրայ տարիներով աշխատեր էին դեռ վերջնականապէս աւարտած չէր: Մաքուր, սրբատաշ ահագին քարերով հիւսուած, շատ բարձր և լայն մուտքի դռնով ու ներքին ծածկուած բակով մը անմիջապէս կը մտնուէր շէնքի ներսի կողմը: Որքան կը յիշեմ, այդ շէնքի ճարտարապետը վանեցի հայ մ'էր, որու շինած քար կոտրելու փայտաշէն գործիքները երբ տեսայ, զարմացայ այդ հանճարեղ վարպետի ուշիմութեան վրայ, որ իր ատամնաւոր անիւները թիթեղով պատած էր, դիմացկուն դարձնելու համար զանոնք:

Հոդ, այդ հիւրանոցին մէջ հանդիպեցայ Աւղանիստանէն ու Արաբիայէն եկած այցելուներու, որոնք ահագին հեռաւորութենէ եկած էին, մեծ Շէյխին ձեռքը համբուրելու:

Հազիւ կէս ժամ անցեր էր, երբ յայտնեցին, որ սենեակս պատրաստ է, ու զիս առաջնորդեցին հոն: Նախագաւիթ մը, շատ

ընդարձակ, ուր խառն ի խուռն տեղաւորուած էին ինծ ընկերացող զինուորները. յետոյ երկրորդ սենեակ մը, ինծ յատկացուած: Պատերը, դեռ ծեփուած չըլլալով, ծածկուած էին գեղեցիկ գորգերով. յատակը նոյնպէս թանձր գորգեր. վիէննական սեւ աթոռ մը, մէկ անկիւնը թանձր մինտէր մը, աթոռի քով կլոր փոքրիկ սեղան մը, ու պղնձէ բարձր կրակարան մը:

Կ'ուրախանամ, որ վերջապէս ես ինծի պիտի մնամ: Ամբողջ ճամբու ընթացքին վայրկեան մ'իսկ մինակ չէի մնացեր. մարդ ես վերջապէս, կ'ուզես առանձին մնալ, կամ եթէ կ'ուզէք, խօսքը մէջերնիս մնա՛ սիրելի ընթերցող, մարդ ես, քերուիլ կ'ուզես: Ու զգալ, որ անվերջ հետաքրքիր աչքեր կը հետեւին քու շարժումներուդ, կարծես չգտնուած անասուն մը լինիս... Անհրաժեշտօրէն առանձնութեան պէտքը կը զգաս, թէկուզ քանի մը վայրկեանի համար:

Արարողապետը թարգմանի միջոցով կը յայտնէ ինծ, ցոյց տալով գեղեցիկ պարթեւ երիտասարդ մը, թէ ան Շէյխի ազգականներէն է ու ինծի պիտի ծառայէ. ու կը մեկնի, մինչ երիտասարդը, ձեռքը խանչալին վրայ, արձանացած կը մնայ դռան մէջ, որ բաց կը պահուի: Տօ՛, միայն այս էր պակաս: «Այս փորձա՞նքը որտեղէն դուրս եկաւ», կը մտածեմ ինքնիրենս, սրտնեղած, որմէ այնչափ ուրախութեամբ հրաժարելու պատրաստ էի: Բայց այդ պատուաւոր փորձանքը ամբողջ երեք օր վայելեցի, միայն քնացած ժամանակս ազատուելով անոր սիրալիր ներկայութենէն:

Կը հասկնայի, որ Շէյխը կ'ուզէր պատուել զիս իր հարստութեամբ ու ազդեցութեամբ:

Ժամը երկուքի առենները, սպասաւոր մը ահագին պղնձէ ափսէով ճաշ բերաւ: Չեմ յիշեր, թէ քանի՞ տեսակ կերակուր կար, բայց լաւ կը յիշեմ, որ քսան հոգի ապահովաբար կրնային կշտանալ ատով:

Առաջին ափսէին հետեւեցաւ երկրորդ ափսէն, նոյնպէս ծանրաբեռնուած զանազան անուշեղէններով, ու միեւնոյն քանակութեամբ: Հազիւ մէկ երկու պատառ վերցուցի: Առաջին ափսէն իմ առջեւէս վերցուելով՝ մատուցուեցաւ իմ հոգէառ պատուաւոր պահակին, որը դռանը մէջ նստելով, թեւերը սոթթած, լափաթին կերաւ, ու կշտանալէն վերջը ափսէն անցուց ինծ հետեւող

զինուորներուն, որոնք, աւելորդ է ըսել, փշրանք մ'իսկ չաւելցուցին։ Երկրորդ ափսէին ալ միեւնոյն ճակատագիրը վիճակուեցաւ։

Ու այսպէս շարունակուեցաւ երեք օր։

Սրճեփի մասին ալ բան մը չեմ ըսեր։ Գրեթէ ժամը անգամ մը, այդ մարդը ձեռքը երկու լեցուն ճեզվէ, սենեակս կը մտնէր։ Այս մարդը այդպէս ամբողջ օրը հիւրերուն կ'երթար, սուրճ հրամցնելով։

* * *

Երեկոյեան դէմ էր, երբ Շէյխի երկու զաւակները արարողապետի հետ միասին, ինձ այցելութեան եկան։ Մեծ տղան կիսապուշ մըն էր. ոչ մէկ բառ արտասանեց այցելութեան ընթացքին, չոչորդի նման նստած, դէմքս կը դիտէր։ Փոքրը՝ հազիւ 11–12 տարեկան երեխայ մըն էր, շատ աշխոյժ ու խելօք արտայայտութեամբ։ Այս փոքրը, որուն անունը Թահա էր, վերջէն, մեծ պատերազմի ընթացքին, արդէն հօրը տեղը Շէյխ դարձած, երկդիմի դեր մը խաղաց՝ մերթ Թուրքերուն ու մերթ ռուսներուն օգնելով, մինչեւ որ օր մը ռուսները զինքը ձերբակալելով, Թիֆլիս բերին։

Ինչպէս վերջերը կարդացի «Հայրենիք»ի մէջ, առանց մասնակցելու քրտական ապստամբութեան, իր հետեւորդներով անցեր է, պապենական օճախը չէնցնելու... եթէ Թուրքը զինք հանգիստ ձգեն։

Քիւրտը ինձ յայտնեց, որ մեծ Շէյխը վաղը ինձ պիտի ընդունի։

Ամբողջ օրը անվերջ հիւրեր ունեցայ։ Գրեթէ ամէն մարդ Շէյխի տան մէջ, այցելութեան եկաւ։ Հետաքրքիր հաւաքոյթ մ'էր այդ։ Երեկոյեան կողմն էր, երբ տեղին անուանական Թուրք գայմագամը ու յայտնի վաճառականներ ինծի այցի եկան։ Ըստ քրտական սովորութեան, պատի տակ ծնկի վրայ նստան։ Ըսկըսանք խօսակցիլ աջէն ու ձախէն, ի հարկէ Թուրքերէն։ Վաճառականները բոլորն ալ վանեցի հայեր էին, ու մէկը Ուրմիի դերձակ Դաշնակցականին հայրը։

Զաւեշտական դէպք մը պատահեցաւ, զոր չեմ կրնար չյիշել հոս։

Խօսակցութեան ընթացքին, ես ամերիկացու միամտութիւն

կեղծելով, իմ կոտրտած Թրքերէնովս հարց տուի հայերուն, թէ ճի՞շդ է, որ 95–96 Թուականներուն Թուրքերը ու քրտերը հայկական ջարդեր էին կազմակերպած, որ ամբողջ երկիրը թալանի էին տուած, ու այն ալ շատ անգամ կանոնաւոր զինուորի օժանդակութեամբ:

Տեսնելու բան էր այդ հայերուն խրախանցումը: Իրար բերնէ խօսք կը խլէին՝ արդարացնելու Համիտի կառավարութիւնը, ամբողջ մեղքը նետելով բուռ մը ջահել խենթերու վրայ, որոնք կ'ուզէին յեղափոխութիւն առաջ բերել: «Հայրախնամ» Համիտի հանդէպ օրհնութիւնները այնքա՜ն բուռն էին, որ, վայրկեան մը ինքզինքս կորսնցնելով, պոռացի, որ լռեն: Ատկէ վերջը միայն Գայմագամին հետ խօսակցեցայ: Ի հարկէ կը հասկնայի անոնց դրութիւնը, որ ստիպուած էին այդպէս խօսիլ: Բայց պատկերը շատ, շատ էր տգեղ, մանաւանդ երբ կը տեսնէի, թէ ինչպէս ամէն մէկը կ'աշխատէր աւելի գովաբանելով գայմագամին աչքը մտնալ, իր լոյալութիւնը ցուցադրել:

Անոնց այցելութենէն մէկ երկու ժամ վերջը, երբ կը պատրաստուէի անկողին մտնալ, մէկ ալ տեսնեմ, ցերեկուայ հայ վաճառականները մէկիկ մէկիկ ներս սպրդեցան սենեակս, ու պատի երկայնքին նստելով, ա՛լ բան չմնաց, որ չըսէին եւ կառավարութեան եւ Սուլթանի հասցէին, բան մ'ալ բաժին հանելով Շէյխին, զոր ներկայացուցին ինծի որպէս աններեւակայելի բռնակալ մը:

Բաւական ծիծաղելի դրութեան մէջ էի, պէտք կեղծէի, չհասկնալ ձեւացնէի շատ մը բաներ, զորս իրենց չափ գիտէի: Ինչ որ է, երկար խօսելէ ու իրենց ցաւերը յայտնելէ վերջ մեկնեցան:

Օ՜խ, այ, վերջապէս, մինակ եմ մնալու եւ այդ դռանը կանգնած հոգէառս ալ քաշուելու է: Անկողինս կը բերեն, որ ամբողջովին մետաքս է. ահագին Թանձրութիւն ունին ներքնակները: Բայց ինչ որ ուշս կը գրաւէ՝ անկողնի բարձերն են: Հազիւ գլուխ տեղաւորելու մը չափ ազատ տեղ կայ. իսկ մնացածը ոսկի Թելով հրաշալի բանուածք մըն է, այնքա՜ն գեղեցիկ որու նմանը հազիւ տեսած լինէի:

Վերջապէս, կարգին պիտի հանգստանամ այս գիշեր. մոմը կը մարեմ, ու հանգիստ մը կ'երկննամ... քնելու:

Բայց ո՞վ է ըսեր, թէ պիտի հանգստանամ։ Հազիւ աչքերս կը փակեմ, եւ այս փափուկ ու մաքուր անկողնին մէջ կը զգամ այն հարիւրաւոր պարազիտներու գոյութիւնը, որոնք հաւաքեր եմ ճամբորդութեանս ընթացքին, զանազան տեղերէ։ Այդ անասունները կարծես խօսք մէկ ըրած, ընդհանուր արշաւանքի մը կը սկսին, արիւնս ծծելով։ Ճարահատ կ՚ելնեմ ճրագը կը վառեմ ու կը նստիմ մաքրագործումի։ Ճիշդը ըսելով, մեր յեղափոխական կեանքին մէջ, այսպէս թէ այնպէս, միշտ կը պայքարէինք այդ պարազիտներու հետ, թէեւ անյաջող. այնքա՜ն առատ էին անոնք գրեթէ ամէն տեղ։

Միւս օրը, առաւօտեան ժամը 10 կար, երբ Շէյխի մարդը եկաւ զիս վեր տանելու։ Ընդարձակ դահլիճ մը, ուր Արեւելքն ու Արեւմուտքը իրար խառնուած էին, բաւական անճաշակ կերպով։ Ահագին հայելիներ, իւղաւոր լամբեր, հանգստաւէտ թիկնաթոռներ, թրքական սէտըրներ։ Դահլիճի վարի անկիւնը՝ լայն բազմոց մը, որու վրայ ծալապատիկ բազմած էր մօտ յիսուն տարեկան, միջահասակ, ալեխառն մօրուքով Շէյխը, բաց դեղին գոյնի փարաճա մը հագած։

Երբ ես ներս մտայ, դրան երկու կողմերը, շրջանի բէկերն ու աղաները կանգնած էին։ Ուղիղ դէպի Շէյխը առաջացայ։ Որոշած էի, եթէ տեղէն բարձրանայ զիս ընդունելու՝ ձեռքը համբուրել, իսկ եթէ նստած մնայ՝ ձեռք տալ պարզապէս։

Ինչպէս ըսած եմ արդէն, Շէյխը, վարպետորդի մարդ մը, մինչեւ այդ իր ընդունելութիւնը իսկապէս որ իշխանական ձեւով կատարեր էր։ Եւ վստահ եմ, թէ մասնաւոր կարգադրութեան հետեւանք էր եւ ոչ պարզ պատահականութեան, որ իր քովը երթալուս՝ բէկերն ու աղաները հոն գտայ. անոնք որպէս թէ եկած էին մնաս բարով ըսելու Շէյխին, մեկնելէ առաջ։

Երբ բաւական մը մօտեցայ, Շէյխը կամաց մը բարձրացաւ նստած տեղէն։ Իսկ ես քայլերս արագացնելով մօտեցայ ու ձեռքը համբուրեցի, թէեւ քրիստոնեաները ընդհանրապէս քղանցքը կը համբուրեն։ Թեւէս բռնած՝ իր քովը թիկնաթոռի վրայ նստեցուց զիս։

Ծանր ու հանդարտ կը խօսի, խուզարկու հայեացք մ՚ունի, եւ անկասկած խելօք ու փորձուած մարդ մ՚է։

Քրտերէն ինչ որ բաներ կ՚ըսէ, եւ բոլոր հիւրերը մէկտեղ

կը մեկնին: Կը մնանք Շէյխն ու ես, ու մէկ ալ իր քիւրտը՝ արաբողպետը, որ, ինչպէս ըսի արդէն, Թուրքերէն չի հասկնար:

Հռչակաւոր Շէյխ Իպատուլլահի երկրորդ որդին էր Շէյխ Մէհմէտ Սատըղը: Մեծ եղբայրը, Ապտիլ Գատէր, Համիտի օրով կանչուեցաւ Պոլիս եւ ձերբակալուելով աքսորուեցաւ Եէմէն, ուր եւ մնաց մինչեւ Սահմանադրութեան հռչակումը: Վերջէն Ժէօն Թուրքերու շրջանին ծերակուտական նշանակուեցաւ, մեծ հեղինակութիւն վայելելով ընդհանրապէս քիւրտերու մէջ:

Խելօք մարդ էր, խորամանկ եւ բնածին քաղաքագէտ մը, որու սրտին մօտիկ էին իր ժողովուրդի շահերը:

Դժբախտաբար, չունենալով լայն քաղաքական հորիզոն մը, չկրցաւ համերաշխութեան լեզու մը գտնել մեզի հետ, թէեւ այդ բանին կ'աշխատէին մասնաւորաբար Արամն ու Վռամեանը: Զինադադարէն վերջը ինքը եղաւ կեդրոնական դէմքերէն մէկը, որոնք ստեղծեցին քրտական ազգային շարժումը:

Քրտական ապստամբութեան առթիւ, Թուրք կառավարութիւնը յարմար առիթ համարեց ազատուիլ վտանգաւոր քաղաքագէտի մը ներկայութենէն, և խաբեբայութեամբ, գաղտնի գործակալի մը միջոցով, այնպիսի խոստովանութիւններ եւ փաստեր ձեռք բերաւ անոր նկատմամբ, որ ամբաստանելով զայն որպէս քրտական շարժման ղեկավարներէն մէկը, Պոլսոյ մէջ կախաղան բարձրացուց զայն: Ան թէեւ ամէն տուեալները ունէր քրտական շարժման առաջնորդը լինելու, բայց չկարողանալով գնահատել քաղաքական մոմենտի արժէքը եւ այն հնարաւոր սպասելիքը, որ մեզ հետ համերաշխ գործակցութիւն մը կրնար իրականացնել, զոհուեցաւ, ինչպէս եւ շատ մը ուրիշներ, քըրտական դատի համար, որ դժբախտաբար շատ յապաղեցաւ:

Շէյխ Մէհմէտ Սատըղ, որու համար չար լեզուներ կ'ըսէին թէ եղբօր աքսորման մէջ մաս ունէր, եղբօր տեղ Շէյխ հռչակուելով հաստատուեցաւ Շամդինան, (Նէրի), ուր կ'ապրէր որպէս միջնադարեան աւատական իշխան մը, գրեթէ անկախ՝ Թըրքական կառավարութենէն: Թէեւ Թուրք կառավարութիւնը հոն ունէր անուանական գայմագամ մը, բայց անոր դերը պարզապէս խրտուիլակի մը դերն էր, որը ոչ հեղինակութիւն ունէր եւ ոչ ալ իրական ազդեցութիւն մը: Մէկն էր, որ պարզապէս կ'ապրէր Շէյխի սեղանին աւելցուքներովը:

Շամդինանը ընդարձակ գաւառ մ՚էր, իսկ Շէյխի ազդեցութեան սահմանները մէկ կողմէն մինչեւ Մուսուլ, արեւմուտքէն մինչեւ Ճուլամէրիք, իսկ հիւսիսէն մինչեւ Կեավար–Պաշկալէ կը հասնէին: Կրօնական պետ մէ՚ր եւ իր մէջ կ՚ամփոփէր նաեւ ցեղապետի մը իրաւունքները: Չենթարկուելով որեւիցէ քոնդրոլի կառավարութեան կողմէ, առասպելական հարստութիւն մը դիզած էր, ի հարկէ որոշ բաժին մըն ալ հանելով կառավարական բարձր պաշտօնեաներուն, որպէսզի մատի արանքով նային իր շրջանի եւ իր գործերուն վրայ:

Իր զինուորական ուժի մասին եղած կարծիքները զանազան էին. ոմանք մինչև հինգ հազարի կ՚իջեցնէին, իսկ ոմանք մինչեւ տասներկու հազարի կը բարձրացնէին: Ճշգրիտ թիւ մը նշանակել դժուար է:

Ճշմարտութիւն է, սակայն այն, որ Շէյխը վտանգաւոր թշնամի մը կը համարուէր Պարսկաստանին եւ որը մեծ անկախութիւններ ունէր քրտական Պարսկաստանի նկատմամբ, թերեւս Թուրք կառավարութեան գիտակցութեամբ եւ դրդումով: Ընդհարումները պարսկական սահմանի վրայ յաճախադէպ էին: Եթէ չեմ սխալուիր, իննսունական թուականներու վերջերը Շէյխի զինուորական ուժերը յառաջացեր էին Պարսկաստան՝ լուրջ կերպով սպառնալով Ուրմի քաղաքին:

Այդ ժամանակ իսկ, Սէմէրճեանի պատգամաւորութիւնը դէպի Թաւրիզ, Պարսկաստանի դահժառանգին մօտ, երկուստեք սահմանային համաձայնութեան մը գալու բնաւորութիւնը կը կրէր:

Ահա այս մարդուն մօտ է, որ գնացեր էի ես որպէս Հ. Յ. Դաշնակցութեան ներկայացուցիչ՝ հնարաւոր համագործակցութեան մը գետինը պատրաստելու:

Շէյխը մեղրածոր խօսքերով բարի գալուստ մաղթեց ինձ, եւ մեծ ուրախութիւնը կոմիտէի ներկայացուցիչը տեսնելու:

Ըստ արեւելեան սովորութեան՝ ես ալ իրմէ պակաս չմնացի յայտնելու, թէ ո՛րչափ ուրախ էի իր նման հռչակաւոր Շէյխ մը ողջունելու եւ Մեծ Կոմիտէի բարեւները հաղորդելու: Ամէն անգամ որ Մեծ Կոմիտէի բառը կ՚արտասանէի, կ՚աշխատէի դէմքիս եւ ձայնիս այնպիսի բնաւորութիւն մը տալ, ինչպիսին մեծ պետութեան մը դեսպանը կ՚ունենայ օտար արքունիքի մը մէջ,

երբ կ՚ըսէ՝ «Իմ Տէրս, Նորին Արքայական Վեհափառութիւնը»...

Մեր քաղաքավարական խօսակցութեան ամբողջ պաշարը պարպելէ վերջը՝ անցանք բուն նիւթին:

Մանրամասն կերպով բացատրեցի իրեն մեր ծրագիրը, մեր պահանջները, միաժամանակ յայտնելով, որ մեր կազմակերպութիւնը սկսած օրէն իսկ բուռն ցանկութիւն է ունեցած մեր քիւրտ հայրենակիցներու հետ համագործակցութիւն մը ստեղծել: Օրինակ բերի անոր՝ Պետրխան պէյի կոչը, որ տպագրուած էր «Դրօշակ»ի մէջ: Աշխատեցայ համոզել զինքը, որ մեր շարժումը պէտք է լինի համապետական եւ որ ան ոչ մէկ կերպով ուղղուած չէ քիւրտ ժողովուրդի դէմ: Ըսի, որ մենք կը համարենք քիւրտերը հողի հարազատ եղբայրներ, եւ որ մեր շարժումը չի ձգտիր միայն հայ ժողովուրդի դրութիւնը բարելաւելու, այլ բոլոր անոնց, որոնք կ՚ապրին այդ հողամասի վրայ: Դժբախտաբար, համիտեան բռնակալութիւնը, շահագործելով քրտերու տգիտութիւնը, միջոց է դարձուցեր զանոնք կռուեցնելու մեզի հետ: Բացատրեցի, որ մեր կռիւներուն մեծագոյն մասը հարկադրաբար տեղի կ՚ունենայ քրտերուն հետ, որոնց դէմ մենք թշնամութիւն մը չունինք. որ մեր կռիւը ուղղուած է Թուրք ռէժիմին դէմ, որու փոփոխմանը համար է որ մենք ասպարէզ ենք իջած: Յայտնեցի, որ մենք կ՚ուզենք ստեղծել իրաւակարգ մը, որ կարողանայ համահաւասար կերպով, բոլոր ազգութիւններու համար ալ ցանկալի լինել: Խօսեցայ նոյնպէս կամ աւելի ճիշդ է ըսել փորձեցի բացատրել անոր փէտէրացիայի կամ դաշնակցութեան գաղափարը, որու մասին ճիշդը ըսելով ես ալ շատ գաղափար չունէի եւ ոչ ալ խոր հաւատք մը:

Չեմ կարծեր, թէ Շէյխի գլուխն ալ շատ բան մտաւ իմ բացատրածս փէտէրացիայէն եւ ոչ ալ անոր սրտին շատ մօտ էր պետական հմայիչ նոր իրաւակարգի մը հաստատումը. որը արդէն պիտի լինէր ժխտումը իր անքոնթրոլ իշխանութեան:

Մեր խօսակցութեան ընթացքին, անդրադառնալով այդ հանգամանքին վրայ, ես աւելի շեշտեցի այն քաղաքական առաւելութիւնները, որ ձեռք պիտի բերէին քիւրտ եւ հայ ժողովուրդները:

Ինծի կը թուի թէ՝ դիւանագէտի մը յատուկ ճկունութեամբ, ես սկսայ իմ նահանջս, համապետական յեղափոխութենէն մին-

չեւ ազգային ինքնայատուկ շահերը դառնալով:

Կիսանկախ Շէյխի մը հետ էր խօսակցութիւնս. անոր բոլորովին չէին կրնար հետաքրքրել ինչ որ համապետական ռեֆորմներ, որոնք իրականին մէջ, իր անձնական շահուն դէմ էին: Զայն սոցիալիստ դարձնելու ցանկութիւն մ'ալ չունէի, ինքս դեռ այդ փարախը չմտած:

Եթէ մեր մէջ, որեւէ համագործակցութիւն մը կրնար առաջ գալ, այդ ալ միայն անոնց անձնական շահերը (եւ որ կը նշանակէ ազգային) ի նկատի առնելով կրնար հիմնաւորուիլ:

Երկու անգամ տեսնուեցայ Շէյխին հետ: Ժամերով խօսեցանք: Ահաւասիկ ամփոփումը Շէյխի յայտնած մտքերուն.—

— Դուք, հայերդ, ձեր քրիստոնեայ լինելու հանգամանքով, որոշ պաշտպանութեան ենթակայ էք: Հազիւ թէ գիւղի մը մէջ հայու մը քիթը կ'արիւնի, եւ ահա Պոլսոյ մեծ դեսպանները կը բողոքեն կատարուած անարդարութեան դէմ: Թուրքը կը սպաննէ, քիւրտն է մեղաւոր: Կառավարութիւնը կը հալածէ, դարձեալ քիւրտն է մեղաւոր: Չկայ դէպքութիւն մը, որուն հեղինակը քիւրտը չլինի, եւ չկայ զուլում մը, որուն ենթական հայը չլինի: Այդպէս են հաւատացեր մեծ պետութիւնները: Այդպէս ալ կ'ըսէք դուք: Ձեզ սիրելու մասնաւոր պատճառ մը չունինք. բայց գիտենք, որ այս հողին վրան դուք այնչափ հին էք, որչափ մենք եւ որ նորեկը թուրքն է, որուն հանդէպ երկուքս ալ սիրալիր տրամադրութիւն մը ունենալու պատճառը չունինք: Մեր հողամասը ընդարձակ է, լայն ու լայն կը բաւէ մեր երկուքին ալ: Սկսելով Պաշկալաէն ու Նորտուզէն մինչեւ Մուսուլ մերն է, վերն ալ՝ ձերը: Ահա այս բանի մասին է, որ պէտք է մտածենք մենք: Եթէ դուք մեզի աջակցիք, մենք ալ պատճառ մը չունինք ձեզ հակառակելու՝ ձեր ծրագիրներու իրագործման համար:

Այս դիւանագիտական նախաբանէ վերջը անցանք աւելի գործնական հարցերուն: Իմ պահանջներս էին, որ Շէյխը ա) ապահովէ մեր սուրհանդակներու եւ ապրանքատար չալակուորներու ապահով անցքը մինչեւ Խոշապի շրջանը կամ, աւելի ճիշդը, վերին Հայոց Ձոր. բ) օգնէ իր բարոյական հեղինակութեամբ որոշ հասկացողութիւն մը առաջ բերելու մեր եւ սահմանամերձ աշիրաթապետներու միջեւ:

Շէյխը պատասխանեց, թէ մեր սուրհանդակներուն ազատ

ճամբայ կուտայ, թէ ապրանքի փոխադրութիւնը իր մարդոց ձեռքով կ'ապահովէ մինչեւ Հայոց Ձոր, թէ առայժմ զինուած խումբերու երթեւեկը անյարմար կը նկատէ, բայց լուրջ շարժման մը պարագային, ազատ ճամբայ պիտի տայ մեզ, միայն թէ բոլոր ծախսերը պէտք է վճարէ Մեծ Կոմիտէն: Ի վերջոյ աւելցուց, որ ինքը կը խոստանայ Մայիսին, երբ ես վերադառնամ Մեծ Կոմիտէի ներկայացուցչին հետ, շրջակայ բոլոր բէկերը հըրաւիրել Շամդինան ընդհանուր ժողովի, որուն պիտի մասնակցին նաեւ Նորտուզի Շաքիր բէկը եւ Թակուրցի Հիւսէյին բէկը:

Իր կողմէ Շէյխը կը պահանջէր,

ա) Որ մենք Շամդինան կամ այլուր պիտի հաստատենք իր ծախսով փամփուշտի գործարան մը, ուրկէ օգտուելու մենք ալ իրաւունք ունինք:

բ) Որ Շամտինանի ծխախոտի արտածումը դէպի Եգիպտոս կամ եւրոպական հրապարակներ, մեր ներկայացուցիչներու միջոցով պիտի յաջողցնենք:

Այս խնդիրը շատ լուրջ կերպով ան կը պնդէր: Ամբողջ շրջանի միակ արդիւնաբերութիւնը Շամտինանի սքանչելի ծխախոտն էր, որ թէեւ քանակով քիչ բայց որակով շատ բարձր էր: Ծխախոտն էր Շէյխի գլխաւոր հասոյթի աղբիւրը:

գ) Որ մենք իր գծած սահմաններու նկատմամբ ոչ մէկ առարկութիւն պիտի ունենանք:

դ) Որ մենք եւրոպական քրիստոնեայ մեծ պետութիւններու օժանդակութիւնը ձեռք պիտի բերենք, յօգուտ Քիւրտիստանի:

Մեր խօսակցութեան ընթացքին կողմնակի կերպով հասկըցուցի իրեն, թէ լաւ կը լինէր, որ Ճուլամէրիկի Մար-Շիմոնի հետ ալ մենք գայինք որոշ հասկացողութեան մը:

Պատասխանէն զգացի, որ ինքը չախորժեցաւ իմ առաջարկութենէս, յայտնելով, թէ ինքը իր կողմէ ունի Մար-Շիմոնի իշխաններէն մէկ քանին, ու որ ինքը ուզած կերպով կրնայ զայն ղեկավարել, եթէ միայն մենք երկուքս (Մեծ Կոմիտէն եւ Շէյխը) կարողանանք համաձայնիլ: Բայց եթէ ես պնդեմ, իր խոլամներու ընկերակցութեամբ զիս կրնայ ապահով հասցնել Ճուլամէրիկ, Մար-Շիմոնին:

Զգալով, որ իր ցանկութեան հակառակ պիտի լինի այդ եւ մանաւանդ վախնալով վերահաս ձմեռէն, որու ընթացքին ակա-

մայ պէտք է կղզիացած մնայի որեւէ վայրի մէջ, լաւագոյն համարեցի յետաձգել Մար-Շիմոնի այցելութիւնս աւելի յարմար պարագայի մը, երբ առանց Շէյխի գիտութեան, Կեավարով, Մաւանացիներու օգնութեամբ, կրնայի անցնիլ Ջուլամէրիկ:

Ինչպէս ընթերցողն ալ կը նկատէ, իմ առաքելութիւնս եղած էր վերջնական բանակցութիւններու համար հող պատրաստել: Երեք օր մնացի Շէյխի մօտ եւ բաժնուեցայ անկէ, այն հաստատ խոստումով, որ Մայիսին պիտի վերադառնայի Բիւրոյի ներկայացուցչին հետ:

Վերադարձի մասին շատ բան չունիմ ըսելիք. միեւնոյն ճամբաները, միեւնոյն գիւղերը եւ մանաւանդ միեւնոյն հիւանդները, որոնց տուած իմ հրաշագործ դեղերս կ'երեւի օգուտ մը չէին ունեցեր եւ նորէն եկեր էին զիս դիմաւորելու, իրենց ազերսանքներով:

Վերջին գիշերը մնացի Սուլթանի գիւղը, այս անգամ գիշերելով Ասորի քահանայի մօտ: Գիշերը ձիւներ էր սաստիկ: Առտուն շատ կանուխ ճամբայ ելանք ինձ հետեւող զինուորներու հետ: Մինակ ես էի ձիաւոր: Զինուորները առջեւէն կ'երթային ճամբայ բանալով: Հետզհետէ կը բարձրանայինք լեռնադաշտը: Սաստիկ ցուրտ էր, եւ քանի կը բարձրանայինք այնքան կ'ուժեղանար ձիւնախառն քամին:

Լեռնադաշտին վրայ սատանայական պար մը բռնեց ձիւնափոթորիկը, որու նմանը մինչ այդ չէի տեսած ես: Հսկայական ձիւնի բլուրներ կը կազմուէին այնտեղ ուր քիչ առաջ ցամաք էր. խելառ ուրական մը, մինչ երկինք հասնող ձեան սիւներէ կազմուած, որ անհնարին թափով պտոյտ կուգար լեռնադաշտին մէջ: Ձիէն իջած էի: Ձիս մէկ կերպ կը քաշքշէին քրտերը, իսկ զիս, երկու թեւերէս մտած, գրեթէ քաշքշելով կը տանէին: Չեմ գիտեր ինչո՞ւ այդ ժամանակ մտքէս անցաւ, մեր ազգային փառասիրութիւնը գգուող յայտնի բանաստեղծութեան առաջին տողը —

Հայաստան, երկի՛ր դրախտավայր···

Չէ՛, ալ չեմ ըսեր, թէ ի՛նչ անցաւ մտքէս…

Չեմ գիտեր, որքան տեւեց այդ չարչարանքը, ես բոլորովին թմրած էի, երբ ինքզինքս գտայ Պարսկաստանի քրտական խեղճուկ գիւղի մը ախոռին մէջ, երկնցած ձիու աղբակոյտի մը վր-

բայ. ոտքերս, ականջներս եւ ձեռքերս ցուրտը տարած էր:

Ի հարկէ ինձ նման արտակարգ դեսպանի մը համար չատ անփառունակ պատսպարան մ'էր ախոռը, բայց անասուններու չունչովը տաքցած այդ անկիւնը ինծի համար դրախտի մը քաղցրութիւնը ունեցաւ, այդ պահուն:

Կերպով մը գլխ հասցուցին Շէյխ Իպատուլլահի մօտ:

Երկու օր հոն հանգստացայ եւ ապա չարունակեցի ճանապարհս դէպի Ուրմի, ոտքերս Թաղիքներու մէջ փաթաթուած, ձեռքերս անկարող գործածելու, խղճալի վիճակի մը մէջ:

## ԹԱՒՐԻԶ

Այս վերադարձս թէեւ չատ հերոսական չէր, բայց վերջապէս վերադարձ մ'էր եւ չէմ կրնար ըսել թէ՝ մեծ բաւականութեամբ, իմ Թէկուզ աղքատիկ սենեակս չմտայ:

Անմիջապէս հեռագրեցի Թաւրիզ վերադառնալս, միաժամանակ յայտնելով, որ չուտով կը լինիմ իրենց մօտ:

Քանի մը օրէն մեկնեցայ Ուրմիայէն դէպի Թաւրիզ: Գտնելով որ Թղթակցութեամբ գլուխ գալիք գործ չէր Շէյխի հետ բանակցութեան խնդիրը, որոչեցի բերանացի տեղեկութիւն տալ Թաւրիզի ընկերներուն, անկէ ալ Թիֆլիս անցնելով, մանրամասն զեկուցում տալ Բիւրոյին:

Սալմաստ կանգ չառի երկար: Սամսոնը հոն չէր, գացեր էր Հ. Յ. Դաշնակցութեան Ընդհ. Ժողովին. գործերը կը վարէր Երուանդ Ֆրանգեանը:

Անչուչտ գիչերը մնացի Փայաջուկ Երուանդի մօտ, որ այն ժամանակ դեռ «տոքթոր փիլիսոփայութիւն» չէր եղած. այդ տիտղոսը ինչ մեղքս պահեմ, կը Թուի Թէ մեր հայերու մէջ տարբեր կերպով կ'անդրադառնայ, չատ անգամ պակասումի նչան է քան աւելացումի: Սակայն եղբայր պատուական, իմ ի՞նչ գործս է նման խնդիրներով մէկ երկու Թշնամի ալ աւելցնել ամբողջ բանակի մը վրայ, եղածը արդէն բաւական է. ըսելիքս միայն այն էր Թէ, այս «տոքթոր փիլիսոփայութիւնները» լաւ կը լինէր որ հաւաքէինք մէկ հաստատութեան մը մէջ, ուր հնարաւորութիւն ունենային գիտցածնին մոռնալու, ու առողջ միջնակարգ

կրթութիւն մը ստանալու:

Անշուշտ խօսքս անոնց մասին է, որոնք որեւէ գրութիւն ըստորագրելու ժամանակ, թէկուզ պախալի տրուած պատուէր մը, չեն մոռնար «Տոքթեռ Փիլիսոփայութեան»ը:

Ըսի որ գիշերը մնացի մեր Երուանդին մօտ, որ այդ ժամանակ Փայաճուկի վարժարանին տեսուչն էր:

Ամբողջ գիշերը գլուխս արդուկեց իր դպրոցով, մանկավարժական հարցերով, որոնցմէ բան մ'ալ չէի հասկնար, եւ ապագայ մեծ ծրագիրներով, որ ան Սալմաստի համար գծեր էր դպրոցական մարզին մէջ: Անոր այնքան տարուածութիւնը դըպրոցական հարցով, գիս ուղղակի կ'ապշեցնէր, եթէ երբեմն փէշը չքաշէի, ան ամբողջ գիշերը կը սպառնար խօսիլ այնպիսի չահեկան հարցերու մասին, ինչպիսին է մանր տղայոց բ—ա—դ, բառը արտասանել եւ տառերը սովրեցնելը…:

Շատկեկ մը կը կռուէինք իրար հետ. եթէ երկու հակոտնեայ տիպեր կարելի էր մէկտեղել, Երուանդն ու ես էինք:

Երուանդը ծնունդով, կրթութեամբ, էութեամբ իսկական վարժապետ մ'էր, այդ բառի լաւագոյն իմաստով:

Տիգրան Ռալմաճեանի օրով եկեր էր առաջին անգամ Թաւրիզ, որպէս ուսուցիչ: Բացառիկ տիպերէն էր, որոնք կը սիրէին այդ ասպարէզը եւ որոնք իրենց ամբողջ էութեամբ նուիրուած էին անոր:

Որքան ալ որ անառակ տիպ մ'էի, անոր այդ նուիրումը, գիս կը լեցնէր հիացումով, թէեւ կը զգայի որ ես ժամ մը իսկ չէի կրնար դպրոցի մը մէջ անցնել, որպէս ուսուցիչ:

Հաւատացող եւ համոզուած Դաշնակցական մ'էր Երուանդը. ան կը հաւատար որ ամբողջովին նուիրուելով դպրոցին, լաւագոյն կերպով ծառայած կը լինէր Դաշնակցութեան: Ու կարծեմ սխալ տեսակէտ մը չէր այդ: Եղեր էր Ատրպատականի Կ. Կոմիտէի անդամ: Վերին աստիճանի աշխատող, ինքնամփոփ, նուիրուած հայ դպրոցին, Երուանդը, մեր նահանջի ժամանակ, անցաւ նորէն Պարսկաստան, ուր դժբախտ պատահարով մը, այդ լաւ հայ ուսուցիչը, համեստ Դաշնակցականը, կնքեց իր մահկանացուն: Հողը թեթեւ քու վրադ, սիրելի Երուանդ:

Սալմաստ եւ Թաւրիզ ձիւն եկած էր արդէն, այնպէս որ ճանապարհին շատ նեղութիւն քաշեցի ձեռքերուս եւ ոտքերուս

պատճառով, որոնք վէրքերով ծածկուած էին, ու սաստիկ կ՚անհանգստացնէին զիս։

Թաւրիզ ժամանակաւոր կերպով իջայ «Պապոնց» տունը։

Առաջին օրն իսկ լսեցի, որ Տոքթ. Յարութիւն Տէր Ստեփանեանը Թաւրիզ է եկեր Ամերիկայէն։ Անմիջապէս վազեցի քովը։ Նորէն թո՛ղ ներէ ինձ համբերատար ընթերցողս, որ քիչ մը ետ պիտի երթամ, աւելի հին օրերուն։

96 թուականին, Անգլիայէն Ֆիլատելֆիա եկաւ Յարութիւնը, ատամնաբուժութիւն ուսանելու։ Եւ ինչ խօսք, որ շուտով մտերիմ բարեկամութեամբ մը կապուեցանք իրարու։ Կենսուրախ մարդ էր։ Ճիշդ է, ինքզինքը հեռու կը պահէր կուսակցութիւններէ, բայց մեզ հետ էր իր համակրանքը, մինչեւ որ տարիներ վերջը, արդէն Դաշնակցութեան յարեցաւ եւ ունեցաւ գործօն մասնակցութիւն մը Ամերիկայի կազմակերպական կեանքին մէջ։

Պարսկաստան գալէն վերջը, տոքթ. Յ. Տէր Ստեփանեան ամբողջովին կլանուեցաւ կուսակցական գործերով։ Մինչեւ այժմ ալ, ան յայտնի է որպէս Դաշնակցութեան «ֆիւթիւկ»ը և անկարելի է երեւակայել Կ. Կոմիտէ մը առանց Տոքթորին։ Նուիրուած մարդ մ՚է, աշխատող, յաճախ կրքոտ, հասարակական զօրաւոր ջիղով զինուած, բայց քիչ մը շատ կուսակցամոլ։ Բաւական է լսել թէ Թէքիրտաղցի է... երբ փէսը ծռէ, ա՛լ մի խօսիք, ճամբայ տուէք, թո՛ղ անցնի։

Հոս պէտք է ըսեմ, որ Տոքթորը, իր ունեցած կապերու շնորհիւ, (գահաժառանգի անձնական ատամնաբոյժն էր) շատ օգտակար եղաւ կուսակցութեան։ Նեղ րոպէներուն աչքի զարնող մարդն էր ան, որու ձայնը արժէք եւ կշիռ ունէր։

* * *

Տասնուհինգ օրի չափ մնացի Թաւրիզ, սաստիկ հիւանդ վիճակի մէջ։ Կարծես ոտքերուս ու ձեռքերուս ցաւը բաւական չէր, գիզանիթերի մ՚ալ սկսաւ, որ զիս կմախքի վերածեց, եթէ արդէն կմախքէ մեծ տարբերութիւն մը ունէի։ Շարժելու անկարող էի, հալ չկար վրաս, մինչդեռ ես կ՚ուզէի օր առաջ Թիֆլիս հասնիլ։

Այդ ժամանակներն էր, որ Թաւրիզ եկեր էին երկու նորընծաներ՝ յեղափոխական գործին մասնակցելու։ Ատոնք էին կար-

սեցի երիտասարդ մը, Մ. Մխաքեանը եւ Կոստի Համբարձումեանը։ Բոլոր սկսնակ յեղափոխականներու նման աոնք ալ անհամբեր էին եւ կ'ուզէին օր առաջ սահմանը հասնիլ, կ'երեւի վախնալով, որ Հայաստանը կ'ելլէ կ'ազատի, ու իրենք անմասնակից կը մնան աշխատանքին։

Ընդհանուր մեծ սենեակի մը մէջ կը պառկէինք, բոլորս միասին։ Ինչպէս ըսի, ես անկողին էի ինկած։ Պետրոսը հնարաւոր խնամքը կը տանէր։ Բժիշկը անպակաս էր։ Բայց ես լաւանալու միտք չունէի։ Այս երկու նորընծաներն ալ անհամբեր կը սպասէին, որ ես լաւանայի ու զիրենք հետս տանէի սահմանամերձ կայանները, որ գործին ծանօթանան։

Անգործ էինք բոլորս ալ, բացի արհեստաւորներէն, որոնք Պետրոսի ղեկավարութեամբ կ'աշխատէին Դաշնակցութեան արհեստանոցին մէջ։ Ամբողջ ցորեկը երեքս տանը կը մնայինք։ Մեծ մեծ ծրագիրները անպակաս էին։ Բայց ամենէն շատ զիրենք զբաղեցնողը, իրենց կեղծ անուներն էին։ Օրը հազար անուն կը փոխէին, առանց ոեւէ մէկուն վրայ կանգ առնելու սակայն։ Ջահլէս գնացեր էր։ Քիչ մըն ալ ջղային էի։ Կարծեմ, «քիչ մըն ալ» ըսելս աւելորդ է, աոնք իրենց անունի փնտռտուքի մէջ գլխս տպաննեցին, մինչեւ որ գիշեր մը, ա՛լ չդիմանալով, երբ ճրագը հանգցնելէն վերջը, երկուքը միեւնոյն անկողնին մէջ դեռ կը շարունակէին անուններու վրայ վիճիլ, խարխափելով անկողնէս ելայ եւ կուժով սառը ջուրը գլուխնուն թափելով մկրտեցի զիրենք՝ Շաւրօ եւ Ուխտաւոր... Ասով մկրտութեան հոգեհան արարողութիւնը վերջացաւ, թէեւ խեղճ տղաքը մինչեւ առտու սրբսրբացին թաց անկողնին մէջ։ Ընենք՝ անունները իրենց նախասիրած կերպով ընտրեցի. այնպէս որ, թէեւ կնունքի արարողութիւնը քիչ մը սառցային, բայց վերջանալուն, իրենք ալ գոհ էին, ծանր խնդիր մը կուժ մը ջրով լուծուած լինելուն համար։

Նման կնքահայրութիւն մ'ալ Տիգրանին ըրի, ամբողջ սափոր մը ջուր գլխէն վար թափելով։

# ԴԷՊԻ ԹԻՖԼԻՍ

Ես լուանալու միտք չունէի: Դիզանթերիս կը շարունակուէր: Տղաքը շատ անհամբեր կը դառնային: Կ. Կոմիտէի մէջ ալ որոշուեցաւ, որ ես զանոնք տանիմ Սալմաստ ու Խոյ, եւ ապա՝ Արապլուով անցնիմ Կովկաս: Ըսի, թէ անկարող եմ, թէ Թաւրիզ-Ջուլֆա գծով կ'ուզեմ երթալ, թէ միւս ճամբային չեմ դիմանար... բայց ազատ մէկը չկար, կամ ազատ չէին զգար, հետեւաբար որոշուեցաւ որ ես երթամ հետները: Շատ էի դառնացած ընկերներու դէմ, որոնք կարծես կոյր էին ու չէին տեսներ վիճակս:

Դեռ խամ էի, չէի գիտեր, որ մեր գործին մէջ խնայել չկար, քանի չէի մեռած ու ինծի համար չէր ըսուած «նա էլ ընկաւ»: Անկէ վերջը կը հերոսանայի արդէն, պատկերս ալ «Դրօշակ»ի մէջ կը տպուէր:

Այլեւս ճարահատ, ըսի, որ կառքի մասին կարգադրութիւն ընեն, քանի որ ես քալելու իսկ կարողութիւն չունէի: Առտու մ'ալ կանուխ ձայն տուին, որ ելլեմ, պիտի երթայինք: Հագնուեցայ: Եաքունճիով մ'ալ լաւ մը փաթթեցին զիս: Չմոռնամ ըսել, թէ 12 հատ ալ մօսին հրացան կը տանէինք հետներս, անկողնի մէջ փաթթուած, ու մեծ քանակութեամբ փամփուշտ:

Երբ թեւերս մտած՝ տան դուռը հասանք, կատաղութենէս քիչ մնաց պիտի խենթենայի: Փոխանակ փայթօնի մը, մեր խելօքները, «ընկեր» կառապանի մը խօսքերուն հաւատացած, սահնակ մը վարձեր էին... Եւ սահնակ վարձելու պատճառն այն էր, որ այդ ընկերոջ բոլոր փայթօնները Ջուլֆա էին գնացեր, ու Նախիջեւանէն եկած պատահական սահնակ մը միայն ունէր տրամադրելի... Դժուար չէ երեւակայել, որ ալ բերանս բացի ու ականջներս գոցեցի:

Թէեւ ըսի, որ ոչ մէկ կերպով կը համաձայնիմ երթալու, թէ այդ ճամբայով սահնակ երբեք չէ անցած, ու չի կրնար անցնիլ, բայց մեր նորընծաները այնքան թախանձեցին եւ խնդրեցին, որ ես ալ «ջհանդամ» ըսելով, ելայ բազմեցայ սահնակի վրայ, տղաքն ալ քովս: Դեռ ճամբայ չելած իսկ՝ երեւակայեցի մեր ճամբու քաշելիքը:

Մինչեւ Սոֆիան լաւ չօսէ էր, ձիւնով ծածկուած: Ի հարկէ սահնակը՝ թեւ առած սուրաց:

Սոֆիանի մէջ ալ գիշերեցինք: Թաւրիզէն շատ մը ծանօթ վաճառականներ կային, որոնք Թիֆլիս կ'երթային: Բոլորուեցանք առատ սեղանի մը շուրջը. ամէն տեսակ բարիք կար սեղանին վրայ: Ամէնքը կ'ուտէին եւ կը խմէին ճամբորդներու յատուկ անհոգութեամբ, իսկ իմ առջեւս կոստին նորէն բրինձով լաբա դրաւ: Վերջնելս ու պատուհանէն դուրս նետելս մէկ եղաւ: Թեւերս սոթթեցի եւ զորս դու պատուիրեցեր, կերայ այն ամէնը, ինչ որ արգիլուած էր բժիշկի կողմէն, ու կարգին ալ խմեցի: Եւ այդ օրուընէ տիզանիթերիս հիմնաւորապէս վերջացաւ: Անկէ վերջը որոշեցի իմ հիւանդներուս երբեք դիեթ պահել չտալ... Չէ՞ որ բժշկութիւնը փորձառութեան վրայ հիմնուած է:

Երկրորդ օրը սակայն, սկսաւ մեր գողգոթան: Եւ մեր ճամբորդութիւնը մինչեւ Սալմաստ իսկական Ոդիսական մը եղաւ: Բաւական է ըսել, թէ երեք օրուայ ճամբան մենք եօթ օրէն կտրեցինք, ու փոխանակ սահնակով երթալու, մենք սահնակը քշեցինք մինչեւ Սալմաստ...

Իջեւանեցանք Երուանդին մօտ, Փայաջուկ:

Յաջորդ օրը տղոց հետ գացի Ղալասար, մեր տունը: Եկաւ մեր պատուական Սարգիս Սարուխանեանը, մեր Ղալասարի թանկագին ընկերը: Կանչեցինք եւ «Զարվատարը», (վանեցի Յակոբը) որուն պիտի հանդիպէինք մեր պատմութեան շարունակութեան ընթացքին: Կոստին յանձնեցի Զարվատարին, որ տանի Ուրմի, իմ տեղս, եւ Շաւրոյին հետ պարսիկ ձիապաններով անցայ Խոյ:

Խոյ ինձ առաջնորդեցին ատամնաբոյժ Քիբրիթճեանի խանութը, պազարի մէջ:

Հոն, առաջին անգամ լինելով, հանդիպեցայ Փայլակին (Ռուբէն Դերձակեան), որուն հետ վերջէն այնքան երկարատեւ ու սրտագին ընկերութիւն մը ունեցայ:

Արժէ, որ կանգ առնենք այդ անուան առջեւ: Կարճահասակ, չէկ մազ մօրուքով, կապոյտ աչքերով, սղեկի նման յարաշարժուն ու աքթիւ մարդ մ'էր Փայլակը, մէկը շատ հիներէն ու երդուեալներէն, որոնց սերունդը հիմակ արդէն գրեթէ վերջացած է:

Բնիկ մշեցի էր Ռուբէնը, կամ, ինչպէս ծանօթ էր այդ

շրջաններուն, բժիշկ Փայլակը: Մանկութեան տարուած էր Պոլիս: Քիչ ու միչ դպրոց երթալէն վերջը, մտած էր դեղագործի մը մօտ, ուր տարիներ աշխատելով, դեղագործութեան հետ խըրացուցած էր եւ բժշկութիւնը: Նկատի ունենալով Պարսկաստանի մէջ պահանջուած ցենզը, ինչ խօսք որ, ան ինձ հետ համեմատուած կարգին փրոֆեսօր մ'էր:

90 Թուականներուն, չեմ գիտեր ինչպէս, հոտը կ'առնէ Կուկունեանի արշաւախումբին, կը ձգէ գործն ու տունը եւ չունչը կ'առնէ Կովկաս:

Խօսեր եմ արդէն Կուկունեան արշաւախումբի մասին: Փայլակը դժբախտութիւնը կ'ունենայ ձերբակալուածներէն մէկը լինելու, եւ հետեւաբար կ'աքսորուի Բալա-Ջանի հետ, Սախալին կղզին: Ռուբէնն ալ, Բալա-Ջանի նման արհեստ մը ունենալուն, տանելի կեանք մը կը ստեղծէ իրեն համար, նոյնիսկ կը յաջողի քիչ մ'ալ դրամ չինել, որպէս դեղագործ աշխատելով պետական դեղատունին մէջ:

Երկար կը մնայ Ռուբէնը Սախալին կղզին, կարծեմ մինչեւ 1902-ը, մօտ 12 տարի: Ապա՝ ձեռք անցնելով պարսկական անցագիր մը, ինքզինքը կը ձգէ Բագու, ուր ընկերները խորհուրդ կուտան իրեն անմիջապէս հեռանալ դէպի Պարսկաստան: Հաստատուելով Խոյ, ուր այդ Թուականին չատ ալ կուսակցական կեանք չկար, մեր գործերով զբաղուելով հանդերձ, անուն կը հանէ որպէս բժիշկ, քանի որ ատամնաբոյժ Քիպրիթճեանի խանութին մէկ մասը կը զարդարէ զանազան գոյնի սրուակներով, որոնք հեքիմ Լոխմանի դեղերէն պակաս չէին, իրենց հրաշագործ ներգործութեամբ:

Շաւրօն ըստ մեր համաձայնութեան պիտի մնար հոդ, Փայլակի հետ գործերուն հետեւելու համար: Այդ համաձայնութեամբ ալ բաժնուեցանք իրարմէ:

Հազիւ երկու օր մնացի Խոյ: Քիչ մը կազդուրուելով՝ ճամբայ ելայ չարվատարի քոստ ձիու վրայ նստած դէպի Արաբլու, կամ ռուսական Շայթախտ: Ոտքերս ու ձեռքերս դեռ չէին լաւացած: Սաստիկ ցուրտ էր: Այդ երկու օրուան անտանելի ճամբորդութիւնը հոգիս հանեց: Ու երբ սահմանը անցած, մտայ ռուսական Շայթախտ, կարծես լոյս աշխարհ ելայ: Փոստայի կառք մը վերցնելով՝ անցայ Երեւան, ուր ընկերները տենելէ

վերջ, յաջորդ օրն իսկ մեկնեցայ Թիֆլիս:

Ինչպէս ըսի, Հ. Յ. Դ–եան Ընդհ. Ժողովի ժամանակ էր: Բոլորը գնացեր էին ժողովի: Թիֆլիսի մէջ հանդիպեցայ բժ. Թադէոսեանի տանը, Հայր Աբրահամին եւ Ա. Ահարոնեանին, որոնք Բիւրոյի գործերը կը տանէին: Մանրամասն զեկուցում տուի անոնց, բացատրեցի Շէյխի դիրքը եւ այն հնարաւոր օգուտները, որ մենք կրնայինք ունենալ անոր հետ գործակցելով: Միաժամանակ վճռականապէս յայտնեցի, որ եթէ մէկ ուրիշ մարդ հետս չղրկեն, ես ոչ մէկ կերպով այլեւս չեմ երթար:

Ըստ սովորութեան, խոստումներով կերակրեցին զիս եւ բաւականաչափ գումար մը տուին, որ պէտք եղած նուէրները գնեմ Շէյխին համար, ու Ուրմիա դառնալով սպասեմ հոն, մինչեւ որ բացակայ ընկերներն ալ գալով Ընդհ. Ժողովէն, որոշ կարգադրութիւն մը լինի այդ մասին:

Հազիւ քանի մը օր անցեր էր, ես ալ քիչ թէ շատ կազդուրուած էի, երբ մէկ ալ տեսնեմ Սամսոնը, Թորգոմը (Թուման Թումանեան) եւ Վարդան Շահպազը վերադարձան՝ Ընդհ. Ժողովը կիսատ ձգած:

Սասունի կռիւներու նախօրեակին էր: Ընդհ. Ժողովը, զգալով վերահաս վտանգի անխուսափելիութիւնը, աճապարեր էր ուղարկել սահմանի գործիչները, ինչպէս եւ երկրի ընկերները, որ իրենց տեղերը գտնուին, ձեռք առնուելիք օգնութեան ձեռնարկներուն օժանդակելու համար:

Բախտս էր: Հազիւ թէ քիչ մը սկսած էի հանգստանալ ու քիչ մ'ալ վայելել Թիֆլիսը, մէկ ալ նորէն Պարսկաստանի ճամբան ձեռք պիտի առնէի:

Մինչեւ Ալեքսանդրապոլ բոլորս միասին գնացինք: Բաժնուելէ առաջ, Թումանը ամէն մէկուս մէկ մէկ յիշատակ տուաւ: Այսքանը կը յիշեմ, որ Սամսոնն ու ես Թորգոմի տուած նուէրները անմիջապէս կորսնցուցինք: Սամսոնը այս շատ վատ նշան համարեց: Ես ծիծաղեցայ... Բայց վերջէն, երբ Սամսոնի ձախ աչքի խաղալու պատմութեանը ծանօթացայ, շատ բանի հաւատացի, նոյնիսկ ճինճիներու չինած նուսխային... Բայց այս մասին վերջէն: Ինչո՞ւ աճապարենք՝ ամէն բան մէկ անգամէն ըսելու համար:

Երեւանէն մեզ ընկերացաւ Արշակ Յովհաննիսեանը, որ յե-



ԹՈՐԳՈՄ (Թուման Թումանեան) եւ իր խումբի մէկ մասը, որոնք ինկան Օլթիի սահմանի վրայ կռուելով:

ղափոխական նորընծայ մ՚էր ու կուգար Պարսկաստան յեղափոխութիւն սորվելու եւ Լիլավայի վարժարանին մէջ ալ աշակերտներուն սորվեցնելու՝ ինչ որ ինքը լաւ գիտէր: Շատ համեստ, լուռ երիտասարդ մ՚էր, քիչ մնաց պիտի ըսէի, չխօսկան հարսի մը նման ամչկոտ:

Տարիներ վերջը, իրարու հանդիպեցանք Հայաստանի պարլամենտին մէջ, երկուքս ալ իբրեւ երեսփոխաններ՝ բազմած փայտէ աթոռներուն վրայ, որոնց դուրս ցցուած գամերը տափատս քանի մը տեղէ պատռեցին: Ան յեղափոխական լեցուն կեանք մը ապրած եւ լաւ հռետորի համբաւ շահած էր: Կարմրագոյն ձախն էր, մեր Խորհրդարանի Դաշնակցական կաս կարմիր Փրակցիայի, ես ալ, աւա՛ղ, աջակողմեաններու աջն էի, եթէ չհաշուենք մեր պատուական «ընկեր Հիւսէյին պէկը» Եղիզլինեբու աղան, որ բնականօրէն, լինելով աշիրաթապետ մը, պէտք է որ ինձմէ ալ աջ համարուէր: Հակառակ այս արեւի նման պայծառ փաստին, քչեր չէին որ կը պնդէին, թէ ամենաաջը ես էի, քանի որ աթոռս աջակողմեան պատին մօտ էր:

Թո՛ղ այդպէս ըլլայ, եղբայր, պզտիկ բաներու համար իրար սիրտ ինչո՞ւ ցաւցնենք, մանաւանդ որ անցած բան է, ու հիմա ոչ աջը կայ ոչ ձախը, այլ միայն Դաշնակցութիւնը, որու շարքերուն մէջ, այդ բոլոր հոսանքները եղբայրացած՝ կ՚ապրին:

Այլեւս չեմ անդրադառնար մեր ճամբորդութեան անցուդարձերուն: Արաքսը անցնելէ ետքը՝ մենք արդէն ինքզինքնիս տէր կը զգայինք ու ապահով:

## ՈՒՐՄԻԱ

Քանի մը օր Սալմաստի մէջ Սամսոնէն հիւրասիրուելէ վերջը այն սիրտ խառնող կերակուրով, որու անունը ջօրվա էր, եւ որը մասնաւոր ճէնճի համ մ՚ունէր միայն Սամսոնի տանը, ես ու Շահպազը մեկնեցանք Ուրմիա, քանի որ դեռ մէկ երկու ամիս ժամանակ կար, մինչեւ որ ձիւնը հալէր եւ Վարդանը կարենար Երկիր անցնիլ:

Միջանկեալ ըսեմ, որ Կոստի Համբարձումեանը (Ուխտաւոր), իմ բացակայութեանս, Ուրմիա քիչ մը մնալէ վերջ, Թո-

ղեր գնացեր էր Խոյ, ուր որպէս թէ շատ գործ կար։ Չեմ գիտեր, թէ այս կարգադրութիւնը ո՞վ էր ըրած, բայց հաւանական է, որ Շաւրոյի Խոյ գտնուիլն էր ամենամեծ խթանը անոր Հոն երթալուն։

Քանի մը խօսք ալ Շաւրոյի մասին։

Շաւրօն, իսկական անունով Մկրտիչ Միսաքեան, բնիկ Ղարսեցի էր, Չէյթունցի Յակոբի տղան։ Մանկութեան կը ճամբուի ճեմարան եւ բոլոր կարգին ուսանողներու նման, կ'արտաքսուի ճեմարանէն, իր ըմբոստութեան պատճառով։ Ներսիսեան վարժարանի մէջ ուսումը կը շարունակէ, եւ աւարտելէ վերջ, կը վերադառնայ իր ծննդավայրը, Ղարս, եւ ռուսական դատարանի մը մէջ գրագրի պաշտօն կը ստանայ։

Իր գրագրութեան շրջանին է, որ հնարաւորութիւն կ'ունենայ շատ կարեւոր պետական «գաղտնի հրահանգներ» մերոնց ձեռքը հասցնել։ Բայց այդ «գաղտնի հրահանգներու» բացայայտ դառնալը առաջ կը բերէ կասկածներ, եւ օձիքը ձեռք չտուած, Շաւրօն կ'անցնի Պարսկաստան, այլեւս Ղարս մնալը հնարաւոր չլինելով։

Ինչպէս վերը պատմեցի, ան որպէս թէ Խոյ պիտի մնար, բայց Կոտիկի հետ երթալով, Շաւրօն կ'անցնի Մենաւոր (Թադէոս առաքեալի վանք) Ընծայրին օգնելու համար։ Բնաւորութեամբ շատ եռանդուն, քիչ ալ քէլէկէօզ, չբաւականանալով Մենաւորի աշխատանքով, փոխադրական գործին աւելի մեծ մղում մը տալու ցանկութեամբ, կ'անցնի Ապաղայի շրջանը, հակառակ Ընծայրի ընդդիմութեանը։

Հոն, սակայն, փոխանակ տեղացիներու միջոցով աշխատելու, կը ծանօթանայ Հայտարանցի Կոբ Մէհմէտ բէկի ղոլամ Ֆախկիին, եւ անոր հետ որպէս թէ եղբայրացած, կ'աշխատի վանքի ապրանքը փոխադրելու միջոցներ գտնել։ Օր մը, սակայն, Ֆախկիի հետ ճամբորդած ժամանակ, աղբիւրի մը քով, երբ Շաւրօն կը ծռի ջուր խմելու, նամարդ «եղբայրը» գնդակով մը կը մահացնէ այդ պատուական երիտասարդը, որը հազիւ քըսանեւչորս տարեկան լինէր այդ ժամանակ։

Բարձրահասակ, թխորակ սիրուն երիտասարդ մ'էր Շաւրօն,

կենդանի եւ ոգեւորուող բնաւորութեամբ:

Ուժեղ ղեկավարի մը ձեռքին տակ, ան անկասկած որ շատ օգտակար ուժ մը կարող էր դառնալ, մինչ իր բախտին ձըգուած, այդպէս անժամանակ նահատակուեցաւ:



ՇԱՒՐՕ
(ՄԿՐՏԻՉ ՄԻՍԱՔԵԱՆ)

Դեռ Թաւրիզ եղած ժամանակնիս, ան գրեց իր երեք տարեկան զաւակին, շատ յուզիչ նամակ-կտակ մը, որը հետագայ էջին մէջ կը կարդայ ընթերցողը: Այդ նամակը իսկական պատկերացումն է Շաւրոյի ռոմանթիք, եռացող հոգիին:

«Սիրելի եւ պաշտելի Յակոբիկս,

«Վերջին անգամ քեզ իմ սրբազան կտակն եմ անում: Դու միշտ աչքի առաջ ունեցիր, որ ես քեզ՝ քո զէյթունցի պապի, իմ հօր Յակոբի անունն եմ տուել: Քո պապը եւ քո հայրը գնացին միեւնոյն ճանապարհով, եւ դու, իբրեւ արժանի յաջորդ՝ պարտաւոր ես նոյն ճանապարհով գնալ: Այդ ճանապարհը փշոտ է եւ դառն, այնտեղ երբեք վարդեր չեն բուսնում: Քո պապը եւ հայրը երբեք վարդերի վրայով չեն անցել, այնպէս որ դու էլ չես անցնի:

«Իբրեւ նուիրական յիշատակ՝ քեզ ուղարկում եմ, որպէսզի անպատճառ հագնիս այս չերքեզկին, կապես հօրդ գօտին եւ այս մահացու սուրն էլ վրադ կրես: Թող իմ հայրական օրհնութիւնը քեզ վրայ լինի, Թող այդ սրբազան դաշոյնը քո մէջ բորբոքի վը-

րէժխնդրութեան ազատարար թոյնը որ դու կարողանաս քո հօր վրէժը առնել: Ես գնում եմ մեռնելու եւ կտակում եմ քեզ, անդին զաւակս, որ դու նոյնպէս գնաս արիւնի եւ արտասուքի Երկիրը, վրէժխնդիր լինես քո հօր, սպաննուած մայրերի, բռնաբարուած անհամար քոյրերի պատուի համար:

«Եթէ ես մեռնիմ եւ այլեւս չկարողանամ քեզ, սիրելի Յակոբիկս, տեսնել, այս երկտողս կարծում եմ բաւական է, որ դու ըմբռնես այն գործի սրբութիւնը, ազատութեան այն ջերմ ու սուրբ փափաքը, որին դու գիտակից կերպով պէտք է վերաբերուես եւ հօրդ վերջին կամքը կատարես: Իսկ եթէ դու իմ արժանաւոր զաւակը պիտի չլինիս եւ քո բարօրութեան եւ եսի մասին խորհիս՝ հէնց այժմից անիծում եմ քեզ, թող յաւիտենական ամօթը միայն դրոշմուի անարժան որդու ճակատին, որ չլսեց հօր խրատը:

«Ես գնում եմ մեռնելու, վրէժ առնելու, արտասուքներ սրբբելու. Թող իմ այդ սրբազան պատգամը քո մանկական հոգու խորքը թափանցէ հէնց այժմեանից: Ես յոյս ունեմ, որ իմ թանկագին զաւակը կը լինի այնպէս, ինչպէս որ եղել է իր հայրը եւ պապը:

«Է՛հ, սիրելիս եւ պատուական ամուսինս, քեզ վրայ նոյնպէս պարտականութիւն եմ դնում քո որդուն կրթել այնպէս, ինչպէս որ ես եմ պատգամել: Չէ՞ որ ես քեզ սիրում եմ, եթէ դու էլ ինձ ես սիրում (ես դրան հաւատում եմ) վրիժառու ասլան-առիւծ դարձրու իմ Յակոբիկին:

«Մնաք բարով, թող Աստուած օրհնի ձեզ եւ թող իմ ցանկութիւնները միայն ցանկութիւն չմնան: Համբուրում եմ բոլորիդ:

Իսկ կը ցանկայի, որ Այծեմիկը լինէր այնպիսի հերոսուհի, որպիսին էր Անիի պարիսպների վրայից պատերազմող Այծեմիկը:

«Մնաք բարով, համբուրում եմ խորին կարօտով բոլորիդ»:

Ձեր Մ. ՄԻՍԱՔԵԱՆ (Գուրգէն Վանանդեցի)

24 Յունուար, 1904
Թաւրիզ

# ՄԱՒԱՆԱ

Եթէ չեմ սխալիր, Դեկտեմբերի մէջ էր, որ Վարդանն ու ես հասանք Ուրմիա։ Խիստ ձմեռ էր։ Երկուքս ալ, ես ու Վարդան Շահպազը անճարակ տնտեսութեան մէջ, գրեթէ չոր հացով կ՚անցնէինք մեր օրերը, թէեւ բարեսիրտ տանտիրուհիս, երբեմն ղարիպներուս բաժին կը հանէր իր կերակուրներէն։

Վարդանը երկար չմնաց Ուրմի, քիչ մնալէն վերջ անցաւ Սալմաստ, եւ ես մնացի Ուրմի միս մինակ, ուշ մնացած արագիլի նման։

Գրեթէ գործ չունէի ընելիք, երբեմն հայ գիւղերը կը հանդիպէի, բայց խելքս միտքս Ջուլամերիկ՝ Մար–Շիմոնին երթալու ետեւէն էր։ Բայց այդ ձմրան երթալու մասին մտածելն իսկ խենթութիւն լինելով, Մար–Շիմոնի փոխարէն, մտածեցի Մաւանա երթալ, որը մեր գործերուն համար աւելի նպաստաւոր վայր մ՚էր, գտնուելով ուղիղ Կեավարի քով, ցած լեռնաշղթայով մը պատուած անկէ։ Մաւանայի միջոցով հեշտութեամբ կրնայի հաղորդակցութեան գիծ մը բանալ Վանայ եւ Ուրմիայի միջեւ։

Մաւանան, ճիշդ Թրքա–պարսկական սահմանագլխի վրայ չորս գիւղերէ բաղկացած շրջան մ՚էր, կորսուած քրտութեան մէջ։ Որքան դաշտաբնակ ասորին թուլամորթ եւ վախկոտ է, այնքան ալ ջուլօն կամ լեռնային ասորին կտրիճ է ու ասպետական. անոր ապրելակերպը ոչնչով չի տարբերիր քրտերէն։

Այդ ժամանակ իրենց իշխանը Պէճանն էր, որու խօսքին կը հնազանդէին անպայման կերպով բոլորն ալ, մեծէն մինչեւ մանուկը։ Պէճանը ամէն ինչ էր հոն, զօրապետ, դատաւոր, կառավարիչ, տէր ու տիրական։ Այդ զարմանալի ծերունին, բուռ մը կտրիճներով տարիներ շարունակ կուրծք էր տուած ծով քրտութեան, պահեր էր Մաւանայի գոյութիւնը, թէեւ ալան թալանը, մարդասպանութիւնը երկուստեք անպակաս էր։ Քրտերն ալ, Մաւանացիներն ալ իրարմէ վար չէին մնար։

Իմ երթալու ժամանակ, կարծեմ Մարտին էր, երկու կողմն ալ կատաղի խելագարութեամբ իրար ետեւէ էին ինկած. քրտերը կերպով մը 12 ջուլօներ մարագի մը մէջ սպաննած էին, իսկ ասորիներն ալ փոխ վրէժի էին ելած, ու իրար հանդիպելնուն՝ մէկ երկուք չկար, գնդակը կը խօսէր։

Այդ էր պատճառը, որ թէեւ երկար սպասեցի, բայց մինչեւ Մարտ, Մաւանայի ջուլօները չեկան Զարպաշ: Ճամբայ գիտցող մը պէտք էր, որ ինձ տեղ հասցնէր: Առջի անգամ Շէյխին երթալուս, աքանչելի Երուանդը (Սեպուհ) գտած էի: Այս անգամ ալ դիմեցի Զարպաշցի Դաշնակցական դերձակի մը, որ հին կուսակցական մ'էր եղած, եւ ինչպէս ինք կ'ըսէր, մեր Արամայիսին ալ ծանօթ: Ուրախութեամբ համաձայնեցաւ ինծի ընկերակցիլ: Աւելի ճիշդը, ես էի, որ անոր հովանիին տակ ապահով պիտի հասնէի Մաւանա: Իսկ ճամբան, ինչպէս ինքը կ'ըսէր, ան իր հինգ մատներուն նման գիտէր:

Շատ տպաւորուեցայ այդ պարոնէն: Իր ըսելով անվախ կտրիճ մ'էր: Իրիկունը երկար պատմութիւններ պատմեց իր անցեալ փառաւոր գործերէն: Ինքզինքս կը մեղադրէի, որ ամիսներ չարունակ այսպիսի կտրիճ ընկեր մ'ունեցեր էի իմ տրամադրութեանս տակ, ու չէի կրցեր օգտագործել զայն:

* * *

Յաջորդ առտու կանուխ ճամբայ ելանք: Այս անգամ տանտիկինս ու դրացի կիները փողոցը լեցուեր էին բարի ճանապարհ մաղթելու: Դու մի ըսեր, ասոնք ինծի հերոսացուցեր էին, որ իբր թէ ես կ'երթայի Մաւանայիներուն օգնութեան... քրտերու դէմ կռուելու: Ասոնք՝ բոլորը տարաձայներ էր իմ պատուական կտրիճ առաջնորդս, այն յոյսով, որ գովեստի մէկ մասն ալ իրեն բաժին պիտի իյնար բնականաբար, քանի որ ինքն ալ հետս կուգար, խողովակը կտրուած բերդան հրացանը ուսին նետած:

Սաստիկ բարկացայ երբ գլխի ինկայ անոր բաց բերանութեան, բայց ի՞նչ կրնայի ընել: Առջի իրիկուն ես խնդրեր էի այդ կտրիճ դերձակէն, որ ոչ մէկուն չըսէ ուր երթալնիս, նոյնիսկ կինը, որպէս թէ չպիտի իմանար, որ Մանաւա կ'երթայինք:

Ես գիտէի, որ ինծի ուշադիր հետեւողներ կան, ու կ'ուզէի իմ ճամբորդութիւնս բնականօրէն գաղտնի կատարել: Եւ ահա դեռ նոր ճամբայ ելած, ամբողջ գիւղը գիտէր: Այս ալ իմ գաղտնի գործունէութիւնն էր:

Մաւանա երթալու երկու ճամբայ կար: Մէկը՝ շատ երկար, ահագին պտոյտ կատարելով, պարսիկ գիւղերու մէջէն, ապահով ու հանգիստ. իսկ միւսը կ'անցնէր քրտական շրջանի մէջէն,

կարճ էր, անապահով եւ ճամբան ալ տաժանելի: Բնականաբար, որպէս... յեղափոխականներ, մենք երկրորդ ճամբան ընտրեցինք:

Ճիշդը ըսելով՝ ես երկու ճամբաներուն տարբերութիւնը չէի գիտեր: Ինծի պէտք եղածը Մաւանա հասնիլն էր:

Երեք չորս ժամէն կտրեցինք դաշտը, ու սկսաւ վերելք մը, հազիւ նկատելի արահետէ մը առաջնորդուած:

Լեռան ստորոտը քրտական գիւղ մը կար: Ես ուզեցի գիւղը մտնել, քիչ մը թան խմելու, շատ ծարաւցեր էի: Բայց խորհրդատու ընկերս թոյլ չտուաւ:

— Քրտեր են, պարոն, ո՞վ գիտէ՝ ի՞նչ կը պատահի:

Խելօքիկ մը իմ մենտորիս խօսքին մտիկ ընելով, սկսանք բարձրանալ սարն ի վեր: Ան առջեւէն կ'երթար, ես ալ ետեւէն: Բաւական մը բարձրացեր էինք, մէկ ալ տեսնեմ ընկերս ձին կանգնեցուց:

— Հը, մեր տղայ, ի՞նչ կայ:

— Պարոն, ետ դարձիր, աւազակներու հանդիպեցանք:

— Տօ ի՞նչ աւազակներ:

— Քրտեր են:

— Ի՞նչ կայ որ:

— Զինուած են, եւ մտքերնին ծուռ է:

— Դէ՛, ալ մի՛ կենար, անմիջապէս առաջ գնայ:

— Պարոն, ես օղուլ չոճուղի տէր եմ...

— Շուն շան որդի, ձիդ քալեցուր, թէ չէ կը գնդակահարեմ քեզ, չուտ...

Վալադս սարսափէն առաջացաւ, ես ալ ետեւէն: Քրտերը, երբ իմ եւրոպական զգեստներս ու գլխարկս տեսան, կարծելով թէ Ամերիկացի բժիշկներէն մէկն եմ, պատկառանքով մը ճամբայէն ելան եւ խոր գլուխ տուին:

Հազիւ քիչ մը հեռացած էինք, տեսնեմ ընկերս ձին կը մըտրակէ, կ'ուզէ վազցնել: Կանգնեցուցի եւ ըսի, որ կամաց երթայ ու երբեք ետ չնայի: Ես ալ ետ չնայեցայ, սիրելի ընթերցող... Եւ դժուար է ըսել, թէ ո՞վ էր չատ վախեցած այս սիրալիր հանդիպումէն, ե՞ս թէ իմ առաջնորդս:

Քրտինքը մէջքէս վազել սկսաւ, ու հազիւ քիչ մը հեռացած, երբ ազատ շունչ քաշեցի, ալ հազար երդում ըրի, որ եթէ այս փոր-

ձանքէն ալ ազատիմ, առանց ժամանակ կորսնցնելու հեռանամ…
ետ երթամ Ամերիկա, հայրենասիրութիւնը լաւ է եղբայր, բայց հեռուէն…

Բայց թէկուզ մօտաւոր անցուկը, չուտով մոռցուկ կը լինի, կ՚ըսէ ժողովրդական առածը: Քիչ վերջը, ամէն բան մոռցեր էի ու ամէն տեսակ գեղեկեօզութիւն ընելու պատրաստ: Բարձր լեռնաշղթայի անցքին (կէչիտ) վրայ կը գտնուէինք: Ձախ կողմս Մար-Կեավարի դաշտն էր, դիմացը լեռնաշղթայ մը երկարաւուն, թրքական սահմանը բնորոշող, իսկ մեր աջին Մաւանան էր, որ դեռ չէր տեսնուեր:

Շատ բարձրերէն բազէ մը, թեւերը լայն բացած ծանր կը սաւառնէր. չեմ գիտեր ինչ խելօքութենէ մղուած, ըսի՝ գնդակ մը պիտի արձակեմ, տեսնեմ, կրնա՞մ զարնել բազէն, որը իսկի զարնելու բան չէր, ինչ որ է: Իջայ ձիէս, նշան բռնեցի, ու տասնոցս արձակեցի:

Ճիշդ է, որ բազէն թեւերը չուտ չուտ թափահարեց, կ՚երեւի, գնդակը մօտէն էր անցեր, բայց նոյնպէս ճիշդ է, որ իմ խելօք ձիս իմ ըրածէս կ՚երեւի չախորժելով, գլուխը վերցուց եւ հայտա՛, գնայ որ կ՚երթաս, իմ վալադս ալ ետեւէն, ես ալ հետեւոտն, անոնց ետեւէն…

Բարեբախտաբար, մօտ էինք Մաւանային: Բարձրութիւն մ՚ալ անցայ, եւ ահա ամբողջ Մաւանան ոտքերուս տակն էր: Վալադս՝ ձիս բռնած՝ ինձ կը սպասէր: Հասայ իրեն, ու շարունակեցինք ճամբան:

Մինչեւ մեր տեղ հասնիլը, շատ մը ջուլօ ձիաւորներ մեզ հասեր էին արդէն: Լսած լինելով հրազէնի ձայնը, կարծեր էին, թէ իրենցմէ մէկը հաւար կը կանչէ: Ու ձի նստողը քշեր էր դէպի սարը ու … հանդիպեր էին մեզ:

Իմ վալադս, որ ատրպախօս էր, չեմ գիտեր թէ ինչեր պլպըլացուց ջուլօներուն, որ գիս մեծ յարգանքով շրջապատած տարին երկրորդ գիւղը, ուր կ՚ապրէր իշխան Պէճանը:

Վաթսունննոց առոյգ ծերունի-երիտասարդ մ՚էր Պէճանը: Դէմքը անհամար կնճիռներով էր ակօսուած: Հարուստ անցեալ մ՚ունէր, իսկական ջուլօ ռազմիկ մը, որու ամբողջ կեանքը անցեր էր կռիւներու մէջ: Միայն ոտքերուն վրայ գնդակի հինգ սպիներ համրեցի, իսկ մնացեալ մասերուն վրայ… Աստուած գիտէ:

Ախ ու վախի մարդ չէր։ Բուռ մը ժողովուրդի գլուխը անցած, դրեթէ կորած ծով քրտութեան մէջ, ան իր ցեղի գոյութեան պայքարը կը մղէր, յամառած իր հայրենի հողին վրայ, որմէ չէր ուզեր զատուիլ։ Բառին իսկական իմաստովը՝ ժողովրդական հերոս նահապետ մ'էր, ինչպէս եւ Մաւանայի մեծը, որու խօսքը պատգամ էր բոլորին համար։

Հոս չկար քիւրտ բէկութեան շուքը, մեծութեան առանձնաշնորհումները· բոլորն ալ մէկ հաւասար լինէին կարծես· յարաբերութիւնները նահապետական, եթէ կ'ուզէք, ըսէք դեմոկրատիկ էին։

Երբ Պեճանը կը խօսի, բոլորը պատկառանքով մտիկ կ'ընեն՝ ոչ միայն որպէս մեծի մը, այլ եւ խելօք մարդու մը, որ տարիներու փորձառութիւնը ունի։

Պեճանը ինքն ալ պարզ գիւղացու մը կարողութիւնը ունի· չես տեսներ անոր քով առանձին շուք մը կամ հարստութեան ակնյայտնի նշան մը։ Տունն ու կահկարասիները ոչնչով չեն տարբերիր միւսներէն։ Զմայլանքով կը դիտեմ այդ ծերունի առիւծը, իր կորիւններով շրջապատուած։ Ահա իսկական հերոսը, որ իր հերոսութեան գիտակցութիւնը չունի, եւ թերեւս ատոր համար է որ հերոս մ'է։

Իր բաւական ընդարձակ սենեակը լեցուած է բազմութեամբ· եկողը ներս էր մտեր, բարեւեր ու նստեր։ Երիտասարդները ընդհանրապէս ոտքի վրայ, դրան քով, կանգնած մնացին։

Աջէն ու ձախէն կը խօսինք։ Այդքան բազմութեան մէջ անյարմար է խօսիլ իմ գալուս պատճառներուն վրայ։ Պեճանն ալ ոչինչ չի հարցներ, գիտէ, թէ «Կոմիտէ» եմ, եւ այդքանը բաւ կը համարէ։

Մաւանացիք աղքատ են ու սակաւապետ։ Ջաւարէ փիլաւ կուտենք մածունով, իսկ գիշերն ալ կը պառկինք հաստ թաղիքներու տակ, որոնցմով հանդիստ ծածկուիլ անկարելի է· փայտի կարծրութիւն ունին։

* * *

Առտուն Պեճանի հետ առանձին եմ։ Երկար բարակ կը խօսինք։ Ան մեզի լաւ գիտէ, քիչ մ'ալ մեծ հաւատք ունի մեր կարողութեան վրայ· կ'ուզէ որ, եթէ հնար է, 10–15 ֆէտայի ուղար-

կեմ, որ մշտապէս ապրին իրենց հետ, միաժամանակ մեր գործերուն նայելով։ Ան կը զարմանայ, որ ես առանց զինուորներու եկեր եմ, վստահելով այդ դերձակին, զոր վատ անունով մը կ՚որակէ։ Կը պատասխանեմ, թէ չէի ուզեր, որ իմ գալը աչքի զարնէ, ատոր համար վալաղով մը միայն եկայ։

Ցէտայիներ ղրկելու մասին ըսի, որ կը խորհրդակցիմ ընկերներուս հետ։ Իսկ ինչ որ իրմէ կը սպասէինք, գիծ մը բանալ է մինչեւ Վան, որը եթէ կանոնաւորուի, աւելի ընդարձակ գործ կունենանք իրեն հետ. այն ժամանակ հնարաւոր կը դառնայ եւ մեր իրեն օգնելը։ Այս անգամուան համար կը խնդրեմ, որ պարզ նամակ տանող սուրհանդակ մը ճարէ ինձ, Վան երթալու համար։

Կը քաշուիմ առանձին սենեակ մը, կը պատրաստեմ գաղտնի թանաքը, որ գրած ժամանակ իսկական թանաքի նման գոյն կը ստանայ, բայց հետզհետէ գոյնը կը թռցնէ եւ կը մնայ մաքուր թուղթ, առանց որեւէ հետքի։ Այս Դաշնակցութեան գաղտնի թանաքն էր, որը եթէ չեմ սխալիր, Ռոստոմն էր գտեր։ Տող ընդմէջ իսկական թանաքով շատ անմեղ նամակ մը կը շարադրեմ։ Եւ որովհետեւ ուրիշ հասցէ չունէի, ծրարին վրայ կը գրեմ՝ Սահաթճի Նշանին, առանց գիտնալու, թէ ո՞վ է այդ մարդը կամ այդպիսի մարդ մը գոյութիւն ունի՞. բայց գիտէի, որ այդ՝ Վանի մեր հասցէն է։

Նամակը կը յանձնեմ Պեճանին որ իր սուրհանդակին հետ ճամբէ, խոստանալով լաւ վարձատրութիւն մը, եթէ յաջողի պատասխան մը բերել։

* * *

Կէսօրէն վերջն էր, երբ նստած էինք Պեճանի եւ ուրիշ ախսախկալներու հետ, մէկ ալ վարի գիւղէն հաւար փրթաւ։ Տեսնելու բան էր Պեճանի երիտասարդական աւիւնը։ Երկու վայրկեանի մէջ ձիերու վրայ էինք արդէն։

Խօսքը մէջերնիս, այնպիսի դրութիւն մը ստեղծուեր էր, որ կամայ ակամայ ես ալ երթալու էի հետները, ալ ի՞նչ օրուան «Կոմիտէ» էի, որ տանը մնայի։ Եւ հետները քշեցինք դէպի կողքի բլրակը, որ կը հսկէր չորս գիւղերու վրայ։ Բարեբախտաբար, կեղծ հաւար մ՚էր, ու մենք, թշնամիի դէմ կուրծք տալու հերո-

ուլթենէն ազատած, սաղ սալամաթ գիւղ վերադարձանք, քիչ մը ձիերը քրտնցնելէ վերջը:

Նամակս ղրկուեցաւ: Ես ալ երկու օր մնալէ ետքը, երրորդ առտուն կանուխ պատրաստուեցայ մեկնելու: Պեճանը իր մեծ տղան հետս ղրաւ, մօտ քսան հատ ալ կորիճ ձիաւոր երիտասարդներ, մինչեւ դաշտ ինծի ընկերակցելու:

«Մնաք բարով» ըսի իմ նոր բարեկամներուս, եւ ճամբայ ելանք:

* * *

Հոս բան մը պատահեցաւ, որ երբեք չեմ մոռնար, եւ որ ցոյց կուտայ, թէ ի՜նչ ասպետական տիպի մարդ էր Պեճանը:

Պեճանի տղան առաջ ինկած՝ մենք ալ կը հետեւէինք անոր: Հասանք վարի գիւղը, անկէ շեղուեցանք դէպի արեւելք, որ մեր եկած ճամբուն ճիշդ հակառակն էր: Քիչ անցած ջուլօներու մէջ վժժուկ մը ինկաւ: Բոլորն ալ կանգ առին: Ետ նայիմ, տեսնեմ, որ երկու ձիաւորներ կատաղօրէն ձիերը կը քշեն մեր կողմը. մէկը Պեճանն էր, միւսն ալ ծերունի Խաչէն (քահանան):

Հազիւ մեզ հասած՝ Պեճանը յարձակեցաւ տղուն վրայ, ձիէն վար առաւ, եւ կարծեմ պիտի սպաննէր, եթէ քահանան ոտք ձեռք չ'իյնար: Ինչ խօսք որ ես ալ ցատկեցի ձիէս, ու կ'աշխատէի հանդարտեցնել Պեճանը, առանց սակայն բան մը հասկնալու եղածէն:

Սպրդնած էր ծերունի Պեճանը, աչքերէն արիւն կը կաթէր. դէմքը այնպիսի կատաղի արտայայտութիւն մը ունէր, զոր դժուար թէ կարողանամ նկարագրել: Բառերը կցկտուր, սլաքի նըման, դուրս կը թռչէին իր անատամ բերնէն: Տղան — 28 տարեկան գեղեցիկ պարթեւ երիտասարդ մը — հազիւ քանի մը խօսք կակազեց, մահատիպ գունատութիւն մը դէմքին:

Դրութիւնը փրկեց իմ... կորիճ դերձակ առաջնորդս, որ բաներ մը ըսաւ, որ կարծես հանդարտեցուց ծերունին: Պեճանը ինձ դառնալով հարցուց, թէ ե՞ս ուզեցի այս կողմով երթալ: Իմ առաջնորդիս աչքը կծծելէն հասկցայ, որ պէտք է «այո՛» պատասխանել, ես ալ «այո՛» ըսի:

Անգամ մ'ալ, այդ սքանչելի մարդու ձեռքը սեղմեցի, ու բաժնուեցանք:

Տարիներ անցեր են, բայց երբեք, երբեք չեմ մոռնալու այդ փոթորկուած ծերունին, որ կատաղութենէն այլակերպուած, իր սանձարձակ ձիուն հետ կերտուած, դէպի մեզ կ'արշաւէր:

Երբ խաղաղուած, բաւական մը ճամբայ կտրած էինք, հարցուցի իմ հերոս դերձակ առաջնորդիս, թէ ի՞նչ էր պատճառը: Պեճանը երբ կը տեսնէ իր տան պատշգամէն, որ տղան փոխանակ իմ եկած ճամբայով զիս հոս տանելու, կ'առաջնորդէ զիս երկար ու ապահով ճամբով, վիրաւորուած հպարտութիւնով ձին նստածին պէս կը քշէ, պատժելու տղան, որ զէնքը պենամուս է ըրեր:

— Շան ծիծ կերած, այս մարդը միս մինակ, դերձակի կտորի մը հետ լերան ճամբայով եկաւ, դուն ինչպէ՞ս քանի ընկերով դաշտի ճամբայով կը տանիս զէնքը, ի՞նչ պիտի մտածէ մեր մասին հիմակ,— կը պոռայ Պեճանը, այլայլած տղու երեսին:

Ու այդտեղ է որ իմ վալադս, որը թէեւ կորիճութեամբ շատ ալ պարծենալու պատճառ մը չունէր, դիւանագիտօրէն մէջ կը նետուի ըսելով, թէ ես ուզած էի դաշտի ճամբով երթալ, որպէսզի երկու ճամբաներուն ալ ծանօթ ըլլայի: Եւ դրութիւնը այս կերպով կը փրկէ:

Չէի ուզեր, որ ընթերցողը սխալ գաղափար կազմէր իմ մասին: Եկած ատենս ես ճամբաներու մասին գաղափար իսկ չունէի, ու եթէ այս դէպքը զիս հերոսացուց մաւանացիներու աչքին, այդտեղ ես նոր ծնած երեխայի նման, բոլորովին ազատ եմ մեղքէ: Ակամայ հերոսութիւն մ'էր, որ աւելի շատ կը պարտիմ իմ կորիճ դերձակ առաջնորդիս:

* * *

Ատկէ վերջը շատ չմնացի Ուրմիա: Ինչպէս նախօրօք ըսեր եմ, Սասունի կռիւներու նախօրեակին էր, Դաշնակցութիւնը որոշեր էր սահմաններէն փոքրիկ արշաւախումբեր ղրկել դէպի Երկիր՝ Սասունի օգնութեան: Գլխաւոր խմբերը պիտի անցնէին Բասէն-Ալաշկերտով: Իսկ որոշուած էր, որ Դումանն ալ ձիաւոր խումբով մը Վասպուրական անցնի՝ Սալմաստով:

Օրին մէկն ալ հեռագիր մը ստացայ Դումանէն, որ Ուրմին ձգեմ եւ անմիջապէս անցնիմ Սալմաստ:

Մեր առանդական կեանքին մէջ սովորական երեւոյթ մ՚էր տեղէ տեղ փոխադրուիլը, բայց ես մեծ դժկամակութեամբ է որ հեռացայ Ուրմիայէն, ուր գործի սկսեր էի, ու դեռ կէս ճամբին, ստիպուած էի հեռանալ՝ ալ երբեք ետ չվերադառնալու համար:

Տխուր՝ հեռացայ Ուրմիայէն: Երկրորդ օրը հասայ Սալմաստ, Ղալասար, Դաշնակցութեան տունը, ուր Սամսոնը եւ նոր եկած ընկերներ, գործի սկսեր էին արդէն:

Սակայն նախ քան իմ վերջնականապէս հեռանալը Ուրմիէն, մէկ քանի խօսք ըսենք, այդ շրջանի հայութեան մասին:

Ուրմի քաղաքի եւ ամբողջ շրջանին մէջ հազիւ 5000 հայեր կային այդ ժամանակ, որոնց ճնշող մեծամասնութիւնը գիւղացիներ էին: Քաղաքաբնակ հայերը ընդհանրապէս կամ արհեստաւոր եւ կամ վաճառականներ էին, գաղթած ուրիշ քաղաքներէ, Վանէն, Սալմաստէն, Թաւրիզէն:

Ուրմիոյ ընդարձակ դաշտին վրայ սփռուած գիւղերէն հազիւ հինգ հատը զուտ հայաբնակ էին, իսկ հայ ժողովուրդի մնացած մասը ցրուած էր զանազան գիւղերու մէջ, ուր անոնք կ՚ապրէին խառն, Թուրքերու, քրտերու, եւ ասորիներու հետ:

Զուտ հայաբնակ գիւղերն էին, Գեարտարապատ, Նախիջեւան-Թէփէ, Իքի-Աղաջ, Իսալու եւ Ռահւա:

Իմ ժամանակս, այս գիւղերէն Ռահւա, Գեարտարապատ եւ Նախիջեւան Թէփէ, կազմակերպուած էին, թէեւ իմ մեկնելէս վերջը, մանաւանդ պարսկական յեղափոխութեան շրջանին, հոն գնացող Դաշնակցական գործիչները, կազմակերպեր էին գրեթէ ամբողջ շրջանը, շատ տեղեր ասորիներն ալ կազմակերպութեան մէջ առնելով:

Հայ գիւղացիներու եւ ընդհանրապէս գիւղացիութեան վիճակը, ողորմելի էր Ուրմիոյ շրջանին մէջ: Ինչպէս առաջ ըսած եմ, գիւղերը, շատ չնչին բացառութեամբ, աղաներու կը պատկանէին, որոնք տէր ու տիրական էին հոն: Պետական ընդհանուր պարտադիր հարկային սիսթեմ մը գոյութիւն չունենալուն, ամէն աղա, ըստ իր քմահաճոյքին, եւ ունեցած ազդեցութեան, հարկային սիսթեմ մը ստեղծեր էր, որ գիւղէ գիւղ կը տարբերէր մեծապէս:

Այդ բազմաթիւ գիւղերու մէջ, ուր հայերը ցրուած կ՚ապրէին, հազիւ երեքը ունէին դպրոցներ, եղածներն ալ նիւթական

*խեղճութեան պատճառով, պատահական բնոյթ կը կրէին։ Տարբերութիւնը Սալմաստի եւ Ուրմիոյ շրջաններու մէջ այնքան աչքի զարնող էր, որ մարդ կը փորձուէր կարծելու թէ՝ այդ շրջանները տարբեր կուլտուրական աստիճան ունեցող պետութիւններու կը պատկանէին։*

*Ինչ որ սակայն անուրանալի է, այդ Ուրմիոյ բնական գեղեցկութիւնն էր։ Բազմաթիւ գետերով եւ գետակներով օժտուած, ան կը ներկայացնէր ընդարձակ պարտէզ մը, փարթամ բուսականութեամբ ծածկուած։ Ինծի կը թուի թէ, Վանէն վերջ, պատմական Հայաստանի գեղեցկագոյն վայրերէն մէկն էր այդ շրջանը։*

## ՆԻԿՈԼ–ԴՈՒՄԱՆ

*Նիկոլ–Դումանի խումբը կը պատրաստուէր մեկնելու։ Նիկոլը նախկին եւ վստահելի հայդուկներէն ընտրովի խումբ մ'էր կազմած. բոլորն ալ հին, փորձուած զինուորներ էին, յեղափոխական անցեալ ունեցող։*

*Առաջին անգամն էր որ ես կը հանդիպէի Նիկոլին, Դաշնակցութեան այդ յայտնի եւ կարող հայդուկ զինուորական ղեկավարին, որու մասին շատ էի լսեր մինչ այդ։ Հետագային պիտի խօսիմ անոր մասին, հոս կ'ուզեմ առաջին Թաւրիզի տպաւորութիւններուս մասին գրել։*

*Ղալասարի տան առջեւ, ձիէն վար ցատկելով, սանդխամատերը երկերկու կ'առնեմ, ու սենեակ կ'իյնամ։ Սենեակի պատուհանի առջեւ, կանգնած Սամսոնն ու բարձրահասակ, քիչ մը ուսերը կքած, ոսկրոտ մէկը, հրացանները ձեռքերնին, դիմացի երդիքին թառած ճնճղուկներուն նշան կ'առնեն։*

*Սամսոնը կը ծանօթացնէ։ Նիկոլն է։*

*Արդեօ՞ք կը հիասթափուիմ։ Թերեւս կը սպասէի հանդիպիլ մէկու մը, դէմքի խիստ արտայայտութեամբ, յօնքերը կիտած, երկար պեխերը վեր, լայն կուրծք, հսկայ հասակ, տիրական շարժուձեւ։ Ու այդ յատկութիւններէն ոչ մէկը։ Բարեհամբոյր, վերին աստիճանի ընկերական մէկն է որ ձեռքս կը սեղմէ, վաղուցուայ ծանօթի մը մտերմութեամբ։*



ՆԻԿՈԼ-ԴՈՒՄԱՆ

Դեռ երեկոյ չեղած, Նիկոլը գլխամբողջովին տիրեր է. այնքան որ ան պարզ, ընկերական վերաբերմունք մ'ունի, եւ ինքզինքը պարտադրելու ոչ մէկ ճիգ: Ճաշէն վերջ քիչ մը կ'երկրնճանք, ըստ սովորութեան: Նիկոլը սքանչելի պատմող մ'է, նուրբ հիւմորով մը, որ կծութիւն չունի սակայն: Պատմութենէ պատմութիւն, կը հասնինք հին օրերուն: Նիկոլը ընդհանրապէս իր մասին չի խօսիր, եւ ոչ ալ իր գործերուն, բայց զարմանալի սուր յիշողութիւն մ'ունի ու համակրելի պատմելու ձեւ մը, թէկուզ չնչին մանրամասնութիւն մը վերյիշած ժամանակ: Կը պատմէ Ջալլադէն, քիչ մը Էքսանդրիկ տիպ մը, մեր շատ հին ընկերներէն: Օր մը Ջալլադը ձիով Փայաջուկէն Ղալասար ե-

եկած ժամանակ, Ջօլայի մէկ թեւովը պէտք է անցնի անպայման, կամուրջ չկայ հոն, գերան մը ձգուած է ոտանաւորներու համար, իսկ ձիաւորները պարզապէս գետով կանցնին՝, որ խոր չէ: Սակայն Ջալլադը կը պահանջէ որ յեղափոխականի ձին անպայման տարբեր լինի ուրիշ ձիերէ, քիչ մը Սուրբ Կարապետի շնորհքէն ունենայ, լարախաղացի մը նման գերանին վրայէն անցնելով: Հող երկար կ'աշխատի որ ձին գերանով անցնի միւս կողմը, մինչեւ որ Ջալլադն ու ձին կ'ընկնին գետը:

Ջալլադէն դեռ ուրիշ շատ պատմութիւններ կ'ըսէր Նիկոլը, բայց հետաքրքիրը, երգի մը առթիւ պատմածն էր: Մենք բոլորս ալ գիտենք այդ երգը, շատ անգամներ երգեր ենք, որը պաշտօնական Դաշնակցութեան հիմը լինելու հանգամանքը ունէր առաջ, մինչեւ որ մեր դասակարգային գիտակցութիւնը զարգանալով, թխածոյ, «Մշակ բանուոր բենջպեր ախպեր» մը մէջտեղ հանեցինք, կարծես թէ առաջ հայ ժողովուրդը ուրիշ բան մը եղած լինէր:

Անշուշտ ընթերցողը հասկցաւ որ խօսքս «Կռուեցէք տղերք» երգի մասին է: Հոն երկու տող կայ, որու իմաստին առանց անդրադառնալու, ձայներնուս բոլոր ուժովը կ'երգենք.

«Ահեղ կռուի մէջ, մի փոքրիկ հերոս
Անմոռանալին կտրիճ Մարտիրոս»:

Երբ եւ իցէ, մէկը լսե՞ր է այս փոքրիկ հերոս Մարտիրոսի կատարած հերոսական գործերու մասին: Ի հարկէ ոչ: Նիկոլը կը պատմէր թէ, այդ տղան շալակաւոր մ'էր, որ միացած իր խումբին, կ'երթար իր ծննդավայրը, Վան, ու Պօղազ-Քեսենի կռուին եղեր էր բնականաբար, առանց կռուելու սակայն:

Եւ կը պատահի որ, այդ Մարտիրոսը կ'ունենայ դպրոցական ընկեր մը, քիչ թէ շատ բանաստեղծ, որ կ'ուզէ անմահացնել իր ընկերը, եւ ահա երգը կը գրուի բաւական յաջող կերպով, եւ կ'երգուի մինչեւ այսօր: Ու Նիկոլը առանց հիւանդոտ ինքնասիրութեան, բարեմտօրէն կ'երգէր միեւնոյն տողերը, ներողամըտաբար ժպտալով:

Ինչպէս պատմութիւնը, նոյնպէս երգերը երբեմն քարս կը գրուին, եւ սակայն, հերոսութեան ծարաւի հայ ժողովուրդը



ՆԻԿՈԼ–ԴՈՒՄԱՆ ԵՒ ԻՐ ԽՄԲԻ ՄԷԿ ՄԱՍԸ

կ՚ապրեցնէ զանոնք. եւ շիտակը ըսաւ չունենալէ նախընտրելի է, թէկուզ «փոքրիկ Հերոս Մարտիրոսի» երգը ունենալ:

Այս քիչ մը վանեցիական յատկանիշը, չափազանց շեշտուած է այդ ժողովուրդի մէջ: Վանեցու համար, իր ունեցած քիչը, նախընտրելի է ուրիշի ունեցած շատէն: Հայ ժողովուրդի ոչ մէկ հատուածը այնքան այլամերժ է ու չունի այնքան ուժեղ տեղական հայրենասիրութիւն, որքան Վանի քաղաքացին, որ հայրենիքի կենդրոնը Վան քաղաքը կը համարէ, իսկ Հայաստանը... անոր գաւառներէն մէկը:

Ինչպէս ըսի, Նիկոլը շատ համով պատմող մ՚էր, եւ վարակիչ ծիծաղ մը ունէր: Այդ քանի մը օրը որ մնացի հոն, օձիքին փակած էի, միշտ նոր պատմութիւն մը լսելու հետամուտ:

Նիկոլի ճոկած տղաները, յայտնի, անուն եւ անցեալ ունեցող հայդուկներ էին: Անմիջապէս նկատեցի, որ ըստ երեւոյթին, այս մեղմ, հանդարտաբարոյ մարդը, որ շառաչուն հրամաններ չէր արձակեր, եւ ոչ ալ դիրք կը բռնէր, ինչ կարգադրութիւն որ ընէր, գիժ Թադոսի եւ Դաշնակցական Խեչոյի նման յայտնի զինուորները, առանց տնտնալու կը կատարէին:

Իսկական զինուորական ղեկավար մ՚էր, ինքնագլուխ, ընկերական լինելու աստիճան մօտ, բայց բարոյական հմայքով բարձր եւ տիրող, հանգամանօրէն մտածող, արտայայտութեան մէջ շատ որոշ եւ կտրուկ եւ դաժան լինելու աստիճան հետեւողական եւ անզիջող:

Վերջէն, Խոյի մէջ սակայն, անոր կատաղութեան ալ հանդիպեցայ: Թէեւ ինչպէս միշտ, ինքնագլուխ, բայց անօթի գայլի մը տպաւորութիւնը ձգեց վրաս, կատաղութենէն փայլող աչքերով, դէմքի դաժան արտայայտութեամբ, դժոխքի չափ մըռայլ: Սակայն ատոր մասին վերջէն:

Ինչպէս ըսի արդէն, Նիկոլ Դումանը, ընկերներու ստիպումներու հետեւանքով եկեր էր Երկիր անցնելու, առանց այդ ձեռնարկի վրայ անձնապէս հաւատք ունենալու, որպէս Դաշնակցական զինուոր, եղած կարգադրութեան մը հպատակեր էր պարզապէս, հետը բերելով իր հին զինակից ընկերներէն ոմանք:

Դժուար թէ յիշեմ բոլորը. հոն էին Դաշնակցական Խաչօն, Սարպազ Խաչօն, Գիժը (Թադէոս Ամիրեան), Ինտելլիգենտ Սար-



ՆԻԿՈԼ–ԴՈՒՄԱՆԻ ԽՄԲԻ ՈՒՐԻՇ ՄԷԿ ՄԱՍԸ

գիրը, զինուոր Ռուբէնը, որ վերջին դարձաւ Ռուբէն փաշա եւ ուրիշներ:

Բայց ատոնց մէջ, ամենէն աւելի իմ վրաս տպաւորութիւն ձգեց բժիշկ Զաւրեանը, այդ զարմանալիօրէն հազուագիւտ մարդը, որ արդէն հասակն առած, հոգեբանական զարմանալի յեղաշրջումով մը ինքնաբերաբար եկած էր հայ ժողովուրդին ծառայելու: Թէեւ քիչ մը ուշ, ուխտի եկած էր հայ օճախին, ու մինչեւ վերջն ալ մնաց ինքնազոհ անհատը, որ աննման ուժգնութեամբ կարողացաւ իր մէջը սպաննել սեփական երջանկութեան պահանջը, ամբողջովին ապրելով հայ ժողովուրդի ցաւը:



ԲԺ. Յ. ԶԱՒՐԵԱՆ

Բացառիկ տիպ մըն էր բժ. Զաւրեանը, գաղափարականութեամբ իսկական ռուս նարոդնիկ մը (ժողովրդասէր): Թէեւ անծանօթ հայ իրականութեան, ժողովուրդին ու լեզուին, ան իր լաւագոյն կարողութիւնները տրամադրեց հայ ժողովուրդի ազատագրման գործին:

Դժուար պիտի լինի ըսել, թէ ան Դաշնակցական մ'էր, բառի ընդունուած իմաստով: Անոր նոյնիսկ հայ լինելը հարցական է: Ան կը յիշեցնէր սկզբնական դարերու այն քրիստոնեայ առաքեալները, որոնք ուրիշի ցաւերու մեղմացման մէջ կը փնտռէին իրենց հոգեկան երջանկութիւնը: Ուրանալով ինքզինքը՝ ան ամբողջովին նուիրուեցաւ հայ ժողովուրդին, ու 1904 թուականէն սկսեալ մինչեւ իր եղերական մահը, այդ մեծ քրիստոնեան քալեց հայ յեղափոխականի փշոտ ճանապարհով, մինչեւ Գողգոթա, ուր եւ խաչուեցաւ քրիստոնէական աննման հեզութեամբ:

Այդ արիստոկրատ ընտանիքի մարդը, կեանքի լաւ պայման-

ներու մէջ ապրելու վարժուած, վերջին ամիսները անցուց զինուորի պատռտած վերարկուով, չուան մը մէջքին կապած, կօշիկները առանց ներբանի, Մոսկուայի հիւանդանոցի մը մէջ, բծաւոր թիֆոյէ վարակուած հազարաւոր զինուորները բժշկելով: Գիտնալով հանդերձ անխուսափելի վտանգը՝ ան րոպէ մ'իսկ կանգ չառաւ իր մարդկային պարտքը կատարելու անոնց հանդէպ, որոնք զէնքը որպէս պատանդ վար էին դրած, սպաննելու մտադրութեամբ: Ու հոն ալ, վարակուելով, մեռաւ:

Եթէ հնարաւոր լինէր երկու բառով բնորոշել բժ. Զաւրեանը, ես պիտի չքաշուէի ըսել, թէ ան ապրեցաւ որպէս ռուս գաղափարապաշտ մտաւորական, գործեց որպէս իսկական քրիստոնեայ, անսահման բարութեամբ զինուած, եւ նահատակուեցաւ որպէս հայ եւ Դաշնակցական

Մենք դեռ շատ պատեհութիւններ կ'ունենանք ընթերցողին հետ, անդրադառնալու այդ եզակի մարդու կեանքին եւ գործին:

## ԽՈՅ

Հակառակ իմ ցանկութեանս, որ դեռ ատեն մ'ալ մնամ Ղալասար, դէթ մինչեւ խմբի մեկնիլը, Կոստիի (Ուխտաւոր) դրութեան լրջութիւնը սակայն, ստիպեց զիս, որ առաջ մեկնելու դէպի Խոյ:

Բնաւ մտքէս չպիտի ելնէ այն պատկերը, որ Խոյ հասնելուս պէս, աչքիս ներկայացաւ: Հազիւ թէ ներս մտած՝ Մակուցի Մեսրոպի տան դռնէն, ընդարձակ բակը, առաջին մարդը որ տեսայ, մեր Կոստին էր, որ ահագին կողով մը չալակած ախոռէն դուրս կուգար: Ախոռի մաքրագործման ժամանակն էր, ու Կոստին, չեմ գիտեր ինչու, արիւն քրտինքի մէջ կորած, այդ աշխատանքին լծուեր էր: Ամբողջ տափատը՝ կողովէն վազող միզախառն աղբէն թրջուած էր:

Կողովը պարտէզը դատարկելէն վերջը, Կոստին եկաւ կատաղած վրաս գոռգոռալով:

— Բարով, Մալխաս, ինչո՞ւ ուշացար, տնաքանդի՛ տղայ, աչքիս մէկը կուրացել է արդէն, վախենում եմ միւսն էլ կորցնեմ:

Աչքը բոլորովին առողջ կ'երեւար: Չկրցայ խնդուքս պահել:

Շիտակը, չէի հաւատար, թէ մէկ աչքը իսկապէս բոլորովին լոյսէ զրկուեր էր։

— Սիրելիս, երկու աչքը լիւքս է, մէկով ալ եօլա կ'երթաս, կատակով մխիթարեցի Կոստին, որ ինծի կը հայհոյէր, կարծես ես եղած ըլլայի պատճառը։

Բայց հանաք մասխարկութիւնը մէկդի, իսկապէս որ մեր Կոստիի աչքը բոլորովին կուրցեր էր։

Պատմեմ, թէ ինչպէս պատահեցաւ այդ։

Ըսեր եմ արդէն, որ երբ Թաւրիզէն մեկնեցանք Շաւրօն, Կոստին եւ ես, այս երկուքը՝ չուզելով սպասել քանի մը օր, սահնակով Սալմաստ երթալու նշանաւոր գաղափար ունեցան։ Պարսիկ սահնակավարը ճամբան չէր գիտեր, երբեք գնացած չլինելով Սալմաստ, իսկ ես միայն երկու անգամ էի անցեր այդ ճամբայով։ Ճամբայ որ կ'ըսեմ, ընթերցողս չ'ելլէ ու կարծէ, թէ շօսէի կամ կարգին ճամբայի մասին է խօսքս, այլ այնպէս ինքնաշէն ուղիի մը, բնութեան կերտուածք մը, որ ոչ այս է, ոչ ալ այն, այլ Պարսկաստանի աստուածաշէն ճամբան։

Մեր ճամբորդութեան չորրորդ օրն էր։ Գիշերը անվերջ ձիւներ էր։ Առտուն թէեւ պայծառ, բայց սաստիկ ցուրտ էր, ու սառեցնող քամի մը կար։ Ըսենք, սառելէ վախ չունէինք, ընդհակառակը, արիւն քրտինքի մէջ էինք՝ օգնելով երկու քնծրտած ձիերուն, որ առաջացնեն սահնակը, թէեւ անոնք այդ բանը ընելու բոլորովին տրամադրութիւն չունէին՝ ամբողջ բեռը ձգելով իրենց օգնականներուն, այսինքն մեր վրայ։ Եթէ հետներս տարած զէնքերը չինէին, ես հազար անգամ պիտի նախընտրէի տապանակ ուխտի շարունակել ճամբան։ Բայց ճար չկար, պէտք էր սահնակը Սալմաստ հասցնել՝ հեզահոգի ձիերու դերը կատարելով եղբայրաբար։

Պատճառ մը չկայ ճշմարտութիւնը չ'ըսելու, որ Սօֆեանէն սկսեալ մինչեւ Սալմաստ հայհոյեր եմ Կոստիին ու Շաւրոյին, որ այս փորձանքը բերին գլխուս. բայց, Տէր աստուա՛ծ, ե՞րբ է տեսնուեր, որ հայհոյելով մէկը կուրնայ։ Մեր մայրերն ալ, երբ դարակէն անուշեղէն գողցած կը փախէինք, ետեւնուս կը պոռային, «վա՛յ քեօռ ըլլաս դուն» բայց այս անէծքը պատճառ մը չէր որ յաջորդ օրը, պայծառ աչքերով նորէն չմօտենայինք պահարանին։

Կէս օրուայ մօտ, աչք կուրացնող ձիւնախառն փոթորիկ մը սկսաւ պտոյտ գալ մեր չուրջ ալ, փա՛ռք ստեղծողին, աւելի, ծածկելով ճամբայ ըսուածին վերջին հետքերն ալ, որոնք երթեւեկող կարաւաններու համեստ աւանակներու աղբերէն կը բաղկանային:

Եափունճիները գլխներնուս քաշած՝ երեք չորս ժամ մնացինք բաց դաշտին մէջ: Կորսնցուցեր էինք ուղղութիւնը, ու չէինք գիտեր ո՛ր կողմ երթալնիս: Ըսենք, բան մ'ալ տեսնել անկարելի էր արդէն: Ցրտահար կը դողայինք, բայց քամին եւ բուքը դադրելու բնաւ միտք չունէին, ժամանակն ալ իրիկուան մօտ էր, ու մեր անցնելիք գիւղերուն հեռանկարը՝ շատ անհրապոյր:

Ճարահատ, ձիերէն մէկը արձակեցինք: Ես հեծայ, որպէս թէ այդ կողմերուն ծանօթ, որ չորս կողմը նայիմ՝ գիւղ մը, ախոռ մը, կամ ճամբու կտոր մը գտնալու համար: Պատուիրեցի, որ հեռանալէս քիչ վերջը հատ հատ հրացան արձակեն, որպէսզի զիրենք հեշտութեամբ գտնամ: Բաւական մը թափառելէ վերջը, ղայֆախանա մը գտայ: Լաւ կը յիշէի, մեր ճամբուն վրան էր, ու առջի երկու անգամներուն ալ կէս օրին կանգ էինք առած հոդ: Գիտէի եւ այն, որ բլրակի ետին ալ գիւղն էր, որ չ'երեւար ճամբայէն:

Ետ դարձայ, որ տղոցը լուր տամ: Այս անգամ ես ալ կորսուեցայ. ոչ սահնակ կը տեսնէի, ոչ ալ իմ ձիուս հետքերը. տղաքն ալ թարսի պէս հրացան չէին արձակեր: Այնպէ՛ս ցուրտ էր որ... Մէկ ալ հրացանի ձայն առի պինդ մօտէն: Շուտով տղոց քով հասայ: Շուրօն էր հրացան արձակողը, իսկ խեղճ Կոստին, եափունճիի մէջ փաթթուած, անշարժ երկնցեր էր սահնակի վրան:

Շուրօն ծիծաղելով յայտնեց, որ Կոստիին բան մը պատահեցաւ. խենթցեր է, կ'ըսէ թէ աչքերը չեն տեսներ: Ալ ժամանակ չկար Կոստիի աչքերով զբաղելու, ձին տեղը լծեցինք, ու սահնակը քշելով, գէշ աղէկ գիւղ հասանք, թէեւ ան միշտ ալ կը պոռար թէ աչքերը չեն տեսներ:

Տաքուկ քիւրսիի հաստ վերմակին տակ կիսովին թաղուած, քիչ առաջուան ծանր վիճակը արդէն շատ վաղուցուան անցեալի մը նման յիշելով միայն, մենք երեքս ալ, անառակ դպրոցականներու նման, կը կատակէինք՝ միեւնոյն յանկերգը կրկնելով.

«Հըպը՛, Հայաստան ազատելն զօռ է՛...» Կոստին ալ մոռցեր էր, թէ մէկ աչքը չի տեսներ, կամ լաւ չի տեսներ։

Մեր ճամբորդութեան ամենաուրախ գիշերն էր այդ։

Վերջէն սակայն, Կոստիի աչքը հետզհետէ ծանրանալով, բոլորովին կուրացաւ։



ՈՒԽՏԱՒՈՐ
(ԿՈՍՏԻԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ)

Խոյ հասնելէս երկու օր վերջը ճամբեցի Կոստին։ Ան գնալն էր որ գնաց։ Կովկաս մասնակցեր էր Հայ-Թաթարական կռիւներուն։ Վերջէն անցաւ Պելճիքա՝ գիւղատնտեսութիւն սորվելու։ Այդ քանի մը տարիներու ընթացքին, Կոստին զարմանալի կերպով հասունցեր եւ կատարեալ հասարակական գործիչ մը դարձեր էր։ Բնաւորութեամբ պարզ եւ մաքուր, ան ուր որ ալ երթալու լինէր, մեծ ժողովրդականութիւն կը վայելէր։ Մեծ պատերազմին Կովկաս էր նորէն. կարծեմ Քաղաքներու Միութեան մէջ կ՚աշխատէր։ Յետոյ անցաւ Վան, եւ վերջէն, Վանայ գաղթին, չուզելով բաժնուիլ ժողովուրդէն, այդ հսկայ բազմութեան գլուխն անցաւ որպէս ղեկավար առաջնորդ մը։ Սողուչպուլախի մօտ, Թրքական թակարդը իյնալով, Կոստին սպաննուեցաւ, դեռ ծաղիկ հասակին մէջ։

Ժողովուրդի մարդն էր Կոստին, խոնարհ խաւերու սիրելին։ Ընենք, դժուար բան էր զայն չսիրելը։ Վճռական էր եւ գոր-

ծունեայ, կրնար նեղ պահերուն հաւատք ներշնչել յուսալքուած ամբոխին: Ղարաբաղցի Կոստին, այսօր այլամերժ վանեցու համար խնկելի յիշատակ մ'է, «Վասպուրականի Կոստին»: Այս երեւոյթը ինքնին արժէքաւոր գնահատական մ'է սիրելի Կոստիին, որ բարձր մտաւորական մը լինելով հանդերձ, զարմանալիօրէն ժողովրդական մարդ մ'էր, աշխոյժ, նուիրուած, եւ աշխատանքէ չվախցող: Այո՛, Թանկագին Կոստի, «Հայաստանը ազատել, զօր՛...»: Յիշատակդ եւ տուած անձնազոհութեան օրինակդ, անթառամ մնայ մեր եւ գալոց սերունդի մէջ, ազիզ Ուխտաւոր...

* * *

Երկու խօսք աւելորդ պիտի չլինի ըսել Խոյի հայութեան մասին: Երբեմնի հայաշատ այդ շրջանը, 1828-ին, ռուս-թրքական պատերազմէն վերջ, գրեթէ պարպուեցաւ: Գաղթականական մեծ հոսանքը անցաւ Կովկաս՝ Նախիջեւանն ու Սուրմալուն լեցնելով: Մնացին բուռ մը հայեր, մաս մը քաղաքին մէջ, իսկ մնացածները ցրուած՝ շրջակայ գիւղերը, որոնց ամբողջ թիւը հազիւ 250 տուն լինէր:

Չեմ սխալուիր, եթէ ըսեմ, թէ Ատրպատականի ամենախեղճ հայութիւնը՝ Խոյինն էր: Ափ մը ժողովուրդ, ցրուած հոծ թրքութեան մէջ, հազիւ հազ կրցեր էին իրենց գոյութիւնը պահել: Ամբողջովին ենթարկուած տիրող տարրի ազդեցութեան, անոնք իրենց զգեստներով, նիստ ու կացով գրեթէ ձուլուած էին պարսկական Թուրքերուն: Դեռ աւելին. հոդ միայն կը հանդիպէինք նման անուններու, ինչպէս են, օրինակ, Դարվերտի, Խուտավերտի, Իսավերտի, Շահվերտի, Իսագուլի... Չէ, պարսիկներու կամ Թուրքերու անուններ չէին ասոնք, այլ իսկական հայ քրիստոնեաներու:

Շատ ալ աղքատ էին: Եւ այդ է պատճառը, որ շատերը կը զբաղէին օղեգործութեամբ...: Քաղաքաբնակ հայերը կ'ապրէին պարսպապատ քաղաքամէջի երեք արուարձաններու՝ տեղական կոչումով՝ Թաղերուն մէջ: Թաղերէն մէկուն մէջ կար փոքր եկեղեցի մը եւ նորաշէն դպրոց մը, Գ. Ծ. Վարդապետ Նալպանտեանի ջանքերով կառուցուած, ուր ուսուցչութիւն կ'ընէր մեր վանեցի ընկերներէն Ազիզը, նուիրուած մարդ մը, որու իսկական անունը դժբախտաբար չեմ յիշեր:

Խոյ քաղաքի եւ շրջակայ հայ ազգաբնակչութեան ընդհանուր թիւը մօտաւորապէս 1200 էր, որոնցմէ 600-ը կ'ապրէին քաղաքի երկու թաղերու մէջ, իսկ մնացեալները ցրուած էին Սէյտավար, Դեզա, Շորաւ, Մահլազան գիւղերու մէջ, որոնցմէ միայն Սէյտավարն էր զուտ հայաբնակ:

Խոյի մէջ, գերմանական «Արեւելեան Միսիոնարական Ընկերութիւն»ը 1898 թուականէն սկսեալ բացեր էր որբանոց մը, որը մեծապէս օգտակար էր եղած Խոյի շրջանին, ուր կը պատսպարուէին մօտաւորապէս 100 որբեր:

Առանց այլեւայլի պիտի ըսենք, որ այդ որբանոցը աւելի քան օգտակար եղաւ որբերուն՝ ոչ միայն ուսում տալով, այլ եւ սորվեցնելով զանազան արհեստներ, դուրս գալէ վերջ ինքնապահ դառնալու համար: Քանի մը անգամ հոն եղայ, եւ պիտի խոստովանիմ որ տպաւորութիւնս շատ նպաստաւոր էր: Այն որ այցելած է ամերիկեան միսիոնարական որ եւ է հաստատութիւն, նըկատած կը լինի այն կրօնական սեղմ կրթութիւնը, որ անոնք կուտային իրենց որբերուն, կարծես թէ անոնցմէ մէկ մէկ պատուելիներ պատրաստելը լինէր իրենց նպատակը, միաժամանակ քաջալերելով դաւանափոխութիւնը, աշակերտներու մէջ:

Այս գերմանական որբանոցը, որ նոյնպէս միսիոնարական հաստատութիւն մէր, շատ աւելի աշխարհիկ տարրական կրթութիւն մը կուտար իր սաներուն: Շատ լաւ հիմքերու վրայ դրուած էր մանաւանդ արհեստանոցը, ուր որբերը կը սորվէին հիւսնութիւն, կօշկակարութիւն, կտաւագործութիւն: Այս բաժանմունքի ղեկավարն էր երիտասարդ եւ կորովի գերմանացի մը, պր. Շէօնիմէն, որուն հետ շատ մօտ յարաբերութիւն ունէի, որուն նորէն պիտի հանդիպի ընթերցողը: Միս Հարնաքը, որբանոցի մայրիկն էր, վերին աստիճանի զարգացած եւ անձնուէր տարեց օրիորդ մը, որը ամբողջ կեանքը նուիրեր էր միսիոնարական գործին, ծառայելով Չինաստան եւ Աֆրիկէի մէջ:

Միս Հարնաքի օգնական էր, գերմանական ազնուական ընտանիքի մը պատկանող Միս Ֆօն-տէր-Շուլենպուրկը, նոյնպէս զարգացած եւ բարեկիրթ օրիորդ մը, որ նոր էր եկեր Խոյ:

Ընդհանուր առմամբ, այդ գերմանական որբանոցը, որ իսկապէս «որբանոց» մը չէր, այլ ընտանեկան օճախ մը, գեղեցիկ եւ օգտակար հաստատութիւն մ'էր եւ մեծ դեր կատարեց հոն:

* * *

Մեսրոպի տնէն ես փոխադրուեցայ Նորաշէն գիւղը, որ ամառուան արձակուրդներու ատեն դատարկ էր։

Քանի մը օր վերջն էր, որ Սալմաստէն սուրհանդակ եկաւ յայտնելու, թէ Դումանի խումբը ճամբայ ելած է։ Հեշտ է ըսել, թէ խումբ մը ճամբայ է ելած, բայց պէտք է ապրիլ սահմանի վրայ, հասկնալու համար այդ խօսքերու նշանակութիւնը։ Ե՞րբ, արդեօ՞ք տեղ պիտի հասնին։ Ընկերներէն ո՞րն է վիրաւորուած ըլլալ. արդեօ՞ք մէկ ալ պիտի տե՞սնենք իրար. հարցեր, որոնց ո՞վ է պատասխանելու... Պիտի անցնի երկար ժամանակ, ու թերեւս Երկրէն լսենք նորութիւններ։

Հազիւ քանի մը օր անցեր էր սակայն, երբ չարագուշակ լուրեր սկսան շրջան առնել պազարին մէջ։ Բերնէ բերան կը պատմէին թէ, Կոթուրի քով սաստիկ կռիւ է եղեր Ֆէտայիներու եւ տաճիկ զօրքերու ու քրտերու միջեւ, թէ ֆէտայիներէն շատեր սպաննուած են։

Մամուլը առաւ ինծ։ Այդ քանի մը օրը խեղճ սուրհանդակները հանգիստ չունէին՝ Սալմաստի եւ Խոյի ճամբաները չափչփելով։ Օր մ'ալ սուրհանդակ եկաւ Սամսոնէն, յայտնելով, թէ խումբի մէկ մասը ողջ առողջ վերադարձեր է Սալմաստ, բայց Նիկոլը, բժ. Զաւրեանը եւ Գիժ Թադէոսը չկան, նոյնպէս եւ չորս զինուորներ։

Անցաւ 4–5 օր եւս։ Դժուար չէ գուշակել մեր դրութիւնը, մանաւանդ իմ ջղայնութիւնս։

Անգամ մը նստած էի գիւղի պատշգամբը նամակ մը կը կարդայի։ Մէկ ալ Թաղեցի հայերէն մէկը վազէ վազ ներս ինկաւ՝ պոռալով.

— Վա՜յ, պարոն, աչքդ լուս, եկան, հըրէ՛ն...

Ուրախութենէս խենթեցած վազեցի դէպի դուռը։ Կարծեմ կուլայի յուզումէս։ Դռանը առջեւ հանդիպեցայ անոնց։ Եւ արցունքն ու սուգս մոռցած, սարսափելի քրքիջ մը բռնեց զիս. խակապէս որ տեսարան էր...

Նիկոլը, բժ. Զաւրեանը եւ Գիժ Թադոսն էին, որոնք 6–7 օրէ ի վեր սոված, արեւէն խանձուած, ցերեկները թագնուելով, սարէ սար, Կոթուր չայի ուղղութեամբ, եկեր հասեր էին Խոյ։

Նիկոլը անկարող քալելու, մօտակայ պարսիկ գիւղէ մը համեստ աւանակ մը վարձեր էին: Գիժ Թադոսը իշու ականջէն կը քաշէր, բժիշկը ետեւէն կը հրէր, դպրոցի բակը մտցնելու համար համբերատար չորքոտանին, որու յամառութիւնը բռնած, դէպի ներս քայլ մ'ալ չէր ուզեր առնել, կ'երեւի վարժարան երթալ չսիրելուն համար...

Գրկախառնումներ ու համբոյրներ... Այս ապրանքը քիչ մը շատ առատ էր մեր մէջ այն օրերուն. իսկ հիմակ, կարծեմ, Դաշնակցականները իրար հանդիպելու ատեն չեն համբուրուիր, շատ շատ, ձեռք կուտան իրարու:

* * *

Իմ տունս, այսինքն՝ Դաշնակցութեան տունը այն ժամանակ քիչ մը շատ համեստ էր: Անկողին չունէի, երկու եափունճի կար եղած չեղածը, մէկ թիթեղէ սամավար, երկու բաժակ, մէկ պըղինձէ կաթսայ, եւ հողէ մեծ պնակ մը:

Այս հազուագիւտ եւ թանկարժէք իրերը, հնագիտական թանգարանի մը վայել, ես ժառանգութիւն էի ստացեր Կոստիէն, որ հակառակ Ղարաբաղցի մը լինելուն, եւ ոչ փոկ մը, բայց նորէն, տնտեսութեան մէջը սաստիկ խնայողութեան կողմնակից էր: Շատ հարկաւոր բաներ իսկ, աւելորդ պերճանք մը համարելուն, նոյնիսկ անյարմար էր գտած դանակ մը ու պատառաքաղ մը ունենալը: Ես ալ, հետեւելով իմ նախորդիս, անոր թողած կարգ ու սարքին վրայ բան մը չէի աւելցուցած:

Անկարելի էր, որ այդ դրութեանս մէջ ես կարողանայի պահել ընկերները իմ մօտ, ուստի զինուոր մը ղրկեցի Մամիկոնին՝ խնդրելով, որ երեքն ալ ինքը հիւրասիրէ, մինչեւ երթան Սալմաստ: Գիժ Թադոսն ու Նիկոլը ուրախութեամբ գնացին Մամիկոնի մօտ, որուն հնէն ծանօթ էին, բայց ինչ ալ որ ըրի, բժ. Զաւրեանը չհամաձայնուեց երթալ:

— Սիրելիս, ես քեզ հետ կը մնամ:

Բայց խնդիրը այն էր որ, իմ քովս իսկապէս մնալու տեղ չկար, ըսել կ'ուզեմ յարմարութիւններ:

Երեկոյեան կողմ, տղաքը «որպէս թէ ջուրվա» էին եփած: Բոլորուեցանք սեղանի չորս բոլորը: Անշուշտ ընթերցողը կը հասկնայ թէ հոս ընդունուած ոճ մը գործածեցի պարզապէս. ի-

բողութիւնը այն էր, որ սեղան չունենալնուս, շուրջանակի նըստանք յատակին: Եւ մէկ ալ այդ կասկածելի կերակուրը, որ ոչ համ ունէր, ոչ ալ հոտ, թափեցին հողէ ամանին մէջ, տղաք բոլորն ալ ձեռքերով, սկսան իրարու ձեռքէխլշտել մսի կտորները: Խեղճ բժիշկս, կամաց մը քաշուելով սեղանէն, չոր հացը սկսաւ կրծել՝ յայտնելով, թէ սոված չէ, մինչդեռ մինչեւ այդ կ՚ըսէր, թէ սաստիկ սոված է: Ես հասկցայ, բայց ի՞նչ կրնայի ընել:

Դրացիներէն ձեռք մը անկողին բերել տուի, որ բժիշկը հանգիստ պառկի: Մնացածներս ալ երկնցանք եափունճիներու վըրայ: Մէկ ալ տեսնեմ, բժիշկը ելաւ եւ զոռով տարաւ զիս իր քովը:

— Սիրելիս, անկողինը շատ մեծ է, երկուքիս ալ կը բաւէ:

Այս բաւական խոշորկեկ սուտ մ՚էր, հազիւ թէ բժիշկը մէջը հաւքէր կարգին, բայց եւ մերժելը անօգուտ, ստիպուած միասին պառկեցինք, եւ ըսեմ որ մինչեւ լոյս ոչ ես քնացայ եւ ոչ ալ խեղճ բժիշկը:

Բացատրեցի բժիշկին, թէ Խոյի Դաշնակցութեան տունը, նոր հաստատուելուն, դեռ սարքուած չէ, եւ շիտակը ատոր յատուկ ալ պիւտճէ չունէի:

Միւս օրը բժիշկը, տեղացի մը հետը վերցուցած, պազար իջաւ եւ քանի մը ժամէն վերադարձաւ երկու մշակով: Ալ ինչե՜ր չէր գնած մեր սիրելի բժիշկը, որ կ՚երեւի կը կարծէր թէ, ես հիւրանոց պիտի բանամ հոն:

— Սիրելիս, չե՛ս նեղանալու, չէ՞. ծախսուած դրամը կուսակցական դրամ չէ: Բարեկամներ տուել են՝ իմ հայեցողութեամբ ծախսելու: Սրանից աւելի լաւ բանի չէի կարող ծախսել:

Ու մինչեւ իրիկուն նստելով՝ պատուհաններու... վարագոյր կարեց...

Խոյէն երթալէն առաջ ալ, իր ունեցած իրեղէններէն մեծ մասը ինձ ձգեց, ճամբորդութեան ծալովի դանակ, պատառաքաղ, որոնք երկար ժամանակ պահեցի քովս:

* * *

Յաջորդ գիշերը, միւս կորսուած չորս զինուորները, երկար թափառումներէ վերջ, կը հասնին թաղը, բայց իմ տեղս չիմանալով՝ գերմանական որբանոցի առջեւ կը բռնուին գիշերային

պարսիկ պահակներէ եւ կը բանտարկուին:

Առտուն միայն կը լսեմ եղելութիւնը: Այդ ժամանակ Զարդամն էր Խոյի դատաւորը, որ տարիներ առաջ Մահլամի մէջ, գլխատեր էր մեր եօթը հայդուկ ընկերները:

Անմիջապէս մեր տեղացի աչքի ընկնող բարեկամներէս մէկը կը ղրկեմ Զարդամի մօտ՝ «Թիւրիմացութիւնը» անուշ տեղ մը կապելու: Իսկ ինքս բժիշկին հետ կ'աճապարենք Նիկոլը տեսնելու: Արդէն լսած էր: Կը յայտնեմ անոր, Զարդամի մօտ մարդ ուղարկելու մասին: Ճար չունէինք, պէտք է սպասէինք ուղարկածս մարդու վերադարձին: Բաւական երկար սպասելէ վերջ, մեր բարեկամը եկաւ յայտնելով որ, դժբախտաբար, Թրքական հիւպատոսը լսած է եղելութիւնը, ու մինչեւ որ Թաւրիզէն հրաման չգայ, դժուար թէ Զարդամը բան մը կարողանայ ընել: Միեւնոյն ժամանակ մեր բարեկամը, կարծիք յայտնեց, որ եթէ երկու հարիւր թուման լինի, հաւանական է բան մը յաջողցնել:

Նիկոլը կատաղութենէն երկինք թռաւ: Երբեք Նիկոլը այդ վրդովութեան մէջ չէի տեսեր, ըստ երեւոյթին հանդարտ տեղը նստած, բայց դէմքը սարսափելի արտայայտութիւն մը ստացաւ:

— Կը կարծէ՞, թէ մենք Մահլամը մոռացե՞լ ենք: Այս երկրորդ դէպքը կը լինի, եւ մենք չենք կարող ներել նրան...

Մեր բարեկամը կամաց մը դուրս սպրդեցաւ սենեակէն: Մենք մնացինք, ու երկար բարակ վիճաբանութիւն մը բացուեցաւ, թէ ի՞նչ ընենք ընկերները ազատելու համար:

Ուրիշ ճար չկար: Նիկոլը ըսաւ, որ ես, որպէս Խոյի ներկայացուցիչը, ելնեմ երթամ ուղղակի Զարդամի մօտ, ու յայտնեմ, թէ ես եմ գլխաւորը ղաչաղներուն, թէ մարդիկս կ'ուզեմ, թէ իրեն հետ հնուց արդէն հաշիւ մ'ունինք մենք, եւ այս անգամ պիտի գտնանք իրեն հետ վարուելու եղանակը:

Թէեւ մեր բժիշկը հակառակեցաւ այդ որոշման, բայց ես ալ Նիկոլի տեսակէտէն լինելով, ըսի որ այդ լաւագոյն կերպն է, եւ պատրաստ եմ երթալու:

Բայց մինչեւ միւս թաղէն ձիս բերելը, միջնորդ հայը նորէն մէջտեղ բուսաւ, եւ յայտնեց թէ Զարդամը՝ չուզելով վատամարդ դառնալ մեզ հետ եւ ցուցնելու համար, թէ ինքը մեզ որքա՛ն կը յարգէ, այս գիշեր մեր տղաքը ազատ պիտի ձգէ, խնդրելով միայն, որ Խոյի մէջ չպահենք զանոնք:

Գիշերը մեր տղաքը եկան, քսանըչորս ժամ պարսկական բան-
տի քաղցրութիւնը վայելելէ վերջը: Որքան կը յիշեմ, հրացան-
ներէն մէկը միայն փոխեր էին: Այլեւս չէր արժեր հրացանի մը
համար նոր խնդիր հանել, եւ եղածով գոհացանք:

Քանի մը օրէն Նիկոլը, բժիշկը եւ Գիժ Թադոսը մեկնեցան
Սալմաստ, Սամսոնի մօտ:

* * *

Ինծմէ առաջ, Խոյի մէջ գործեր էր Բալա-Ջանը, որ միեւնոյն
ժամանակ եւ ուսուցիչ էր Սէյտավարի մէջ: Կարծեմ, տարի մը
միայն մնաց հոն: Անոր յաջորդեր էր Պետրոս Սերեմճեանի փոքր
եղբայրը, Հայկ Սերեմճեանը, որ ժամանակ մը մնալէ վերջ,
մեկնած էր Պուլկարիա: Մինչեւ այդ՝ Խոյը անցողական կայան
մը կը համարուէր. ծանրութեան կեդրոնը Սալմաստն էր, ուրկէ
երկիր կ'անցնէին մեր խմբերը, սուրհանդակները, ուրկէ կը փո-
խադրուէր մեր «ապրանքը» դէպի ներս:

Երկրի կազմակերպութեան զօրացումով սակայն, եւ տարինե-
րու փորձառութենէն վերջ, փոխուեցաւ սահմանի գործունէու-
թեան սիստեմը: Նախկին ձեւի զինատար խմբերու երթեւեկը
այլեւս ոչ թէ անհարկի, այլ եւ վտանգաւոր էր գործի համար,
որ հետզհետէ ընդարձակուած ըլլալով, համապատասխան նոր
ձեւի գործունէութեան մը հրամայական պէտքը ունէր:

Նոյնը պէտք է ըսել նաեւ խմբերու Երկիր անցնելու մա-
սին, որոնք այլեւս ոչ թէ միայն օգտակարութիւն մը չունէին,
այլ եւ պատճառ կը դառնային աւելորդ մարդկային զոհերու,
կառավարութեան հետապնդումներուն հետեւանքով եւ մեծապէս
կը ծանրացնէին Երկրի հայ ժողովուրդի եւ կազմակերպութեան
վիճակը:

Վահանի (Կոմս) օրով էր, որ ծծմաճ եղանակը որդեգրուե-
ցաւ Վասպուրականի շրջանին համար՝ շատ մեծ յաջողութեամբ,
որու մասին պիտի խօսինք: Այդ նոր սիստեմը տուաւ այնպիսի
անսպասելի արդիւնք մը, որու նմանը մեր յեղափոխական պատ-
մութիւնը երբեք չէր տեսեր:

Զինուած խումբերու առաքումն ալ դադրեցաւ շնորհիւ այն
բանի, որ յեղափոխութեան սկզբնական շրջանին տեղի ունեցած
հայդուկային եւ զինատար խմբերու կռիւներն ու արշաւանքնե-

րը, առաջ էին բերած նոր սերունդ մը Երկրին մէջ իսկ, վարժ պէնքի գործածութեան, ընդունակ կռուելու եւ պահանջուած ժամանակ ղեկավարելու կռիւը:

Դումանի խմբի անխառունակ փորձը եկաւ աւելորդ դաս մը տալու, թէ այդ ուղղութեամբ գործունէութիւնը աննպատակայարմար էր արդէն: Ինքը Նիկոլն ալ հաւատք չունէր, եւ աւելի ընկերներու ճնշման տակ էր, որ յանձն էր առած խմբով Երկիր անցնիլ:

Ես դեռ Ժընէվ էի, երբ Թորգոմի ձիաւոր խումբը, յաջողութեամբ անցաւ Սասուն: Այդ լուրը առնալով, մինչ բոլորս ուրախացեր էինք, Քրիստափորը շատ մտախոհ, վախ յայտնեց որ այդ յաջողութիւնը կրնայ շատ ոգեւորել Ղարսի ընկերները նորանոր խմբեր ճամբելու:

94 Թուականի խումբերու մեծ ոգեւորութեամբ սահմանը անցնելու փորձը, մասամբ այդ յաջողութեան հետեւանք էր:

Իրար ետեւէ փորձեցին Սասուն հասնիլ Խանի, Թորգոմի, Նեվրուզի, Կայծակի, Երկաթի խմբերը, որոնք առանց բացառութեան կոտորուեցան հազիւ սահմանը անցած:

Այդ այնպիսի ոգեւորութեան շրջան մ՚էր, որ դրեթէ անկարելի պիտի լինէր երկիր անցնելու շարժումը կասեցնել, թէեւ ճիշդը, կասեցնելու մասին ոչ ոք ալ չէր մտածեր լրջօրէն:

Եթէ Սասունի գահավէժ դէպքերը դեռ կրնային որոշ աստիճանով մը արդարացնել զինուած խումբերու Երկիր անցնելու փորձը, որոնցմէ ոչ մէկը դժբախտաբար տեղ չհասաւ, Սասունի անկումէն վերջը, սակայն, Փոխիկի խումբի առաքումը արդարացման ոչ մէկ հիմք կրնար ունենալ: Զարտաբաստիկ ձեռնարկ մ՚էր այդ, անմիտ ու անժամանակ, ու իր սաղմնաւորութեան մէջ իսկ դատապարտուած անյաջողութեան:

Ինծի համար պարզ չեն այն տուեալները, որոնց վրայ հիմնըւած, Սամսոնի յուշերու մէջ, այդ խմբի առաքման պատասխանատուութիւնը Վասպուրականի Կ. Կոմիտէութեան վրայ կը ձգուի: Եթէ նոյնիսկ, նման պահանջ մը եղեր էր Երկրէն, այդ խմբի անդամները ոչ մէկ կերպով կրնային լրացնել եղած պահանջը, գլխաւորաբար այն պատճառով, որ անոնց մեծամասնութիւնը Սալմաստի մէջ ամուսնացած, տուն տեղ եղած, հազիւ թէ երկար ժամանակ մը կարողանային մնալ Երկրի մէջ: Իսկ



ՃԱՓՈՆ ԽՈՒՄԲ.— Ձախէն աջ.— Սահակ, Սեդրակ, Փոխիկ, Եւնան:
Նստողները.— Խուրշուդ, Արշակ, Յակոբ, Սարգիս, Մովսէս:

որպէս հայդուկային ժամանակաւոր խումբ, կամ զինակիր խումբ, անոնց երթալը բացարձակապէս իմաստ չունէր եւ ցանկալի ալ չէր:

Այդ խումբը, հին եւ փորձուած Փոխիկի ղեկավարութեամբ, Սալմաստէն կը մեկնի, եւ հազիւ սահմանը անցած, մինչ կը հանգստանար ցերեկով, կը շրջապատուի հարիւրաւոր քրտերով, որոնք նախօրօք կասկածելով, աչալուրջ կը հսկէին բոլոր լեռնային անցքերուն: Անհաւասար կռուի մէջ, տղաքը հերոսաբար կռուելով, ինչպէս նաեւ քիւրտ վալադ Մստօն, բոլորն ալ կը նահատակուին:

Ճափոն խումբը, (այդպէս անուանակոչուեր էր ան) մէկ երկուքի բացառութեամբ, կազմուած էր Դաշնակցութեան չատ հին, կռիւներու մէջ եփուած հայդուկներէ, որոնցմէ ամէն մէկը կ՚ուզեմ ներկայացնել ընթերցողին։

Վահրամ Յովհաննէսեան (Փոխիկ) բնիկ Շատախցի էր, Սակ գիւղէն։ Հազիւ քսան տարեկան, ան արդէն Դաշնակցութեան յայտնի զինուորներէն մէկը կը համարուէր։ 94ին, Պետոյի հետ կուգայ Սալմաստ։ Ջ՚ուզելով հոն խաղաղ կեանքով ապրիլ, 1895 թուին՝ Վարդանի ղեկավարութեամբ, նորէն Երկիր կը մըտնայ։ 1896 թուին զինքը կը գտնանք Նիկոլի հետ, Դերեկի յայտնի կռուին մէջ։ Ինչ խօսք որ, Խանասորի արշաւանքի ժամանակ, Փոխիկը հրապարակ կուգայ նորէն, եւ որպէս հին, փորձուած զինուոր, կ՚ընտրուի հարիւրապետ։ 98 թուականին խմբով նորէն կ՚անցնի Վասպուրական, ապա վերադառնալով, կ՚ամուսնանայ եւ կը տեղաւորուի Սալմաստ։ Սակայն ագնիւ նժոյգի նման, Սասնոյ կռիւներու հեռաւոր արձագանգը իր հայդուկի տաք արիւնը եռ կը բերէ կրկին։ Վերջին անգամ մ՚ալ, Փոխիկը, որպէս Ճափոն խմբի խմբապետ, իր հին ընկերներով միասին, Երկրի ճամբան ձեռք կ՚առնէ։ Ու հոն, հայրենի Երկրի հողին վրայ, վերջ կը գտնայ այդ արկածալից հայդուկի կեանքը, որ պատանեկութենէն մինչեւ մահը զէնքը ձեռքին, չափչփեց Վասպուրականը, եղաւ անոր լաւագոյն կռուող գաւակներէն մէկը։

Ծանրախոհ, ինքնամփոփ, չափուած, ձեւուած արտայայտուելու ձեւով, Փոխիկը իմ վրաս կը ձգէր քիւրտ բէկի մը ազատութիւնը, իր ազնուական ծանրութեամբ, իր ընկերները հպատակեցնելու անձիդ կարողութեամբ, որ կարծես բնածին էր իր մէջ։

Երկրորդը, Խանասորի արշաւանքի յայտնի փալատ, Շատախցի Ենանն էր, որ դեռ Պետոյի ժամանակէն, Դաշնակցութեան մէջ մտած, 1896 թուականին կը մասնակցի Դումանի խմբին եւ Պօղազ Քեսէնի յայտնի կռուին։

Յաջորդը Սեդրակ Խալօեանցն էր, Խանասորի փալադներէն մէկը, որ Շաշոյի խմբի հետ Երկիր կ՚անցնի, եւ կռուի մը ընթացքին կը վիրաւորուի։ Բաւական ժամանակէ մը ի վեր Սալմաստի մէջ, ամուսնացած կ՚ապրէր։

Չորրորդը, Շատախցի Սահակ Յակոբեանն է, որը 1890 թը-

ւականէն որպէս Արմենական մասնակցեր է յեղափոխական աշխատանքներու: 1894-ին կը միանայ Դաշնակցական Պետոյի խումբին: Դումանի հետ եղած է Դերեկի կռուին: Մասնակցեր է Վազգէնի խմբին, Սալմաստէն Երկիր անցնելուն: 96-ի դէպքերու ժամանակ, Վանի ինքնապաշտպանութեան կռուին մասնակցեր է: 1897 Թուին երկրէն դուրս գալով, կը մասնակցի Խանասորի արշաւանքին:

Հինգերորդը Խուրշուդն է (Խլօ Տաշօեան), բնիկ Փեսան դաշտէն, Վարդանի լաւագոյն հայդուկներէն մէկը, որ վերջին տարիները հաստատուեր էր Սալմաստ:

Գարեգին Գիւլէսերեանը (Արշակ), Վերին Ագուլեցի, Պաքուայ «Կայծակ» խմբի անդամներէն էր: 1903-ին կ'անցնի Պարսկաստան, կենդանի մասնակցութիւն ունենալու համար գործի մէջ, ու տարիի մը չափ Դաշնակցութեան Թաւրիզի արհեստանոցի մէջ աշխատելէ վերջ, երկիր մտնելու ցանկութեամբ, կ'անցնի Սալմաստ եւ կը միանայ Փոխիկի խմբին: Պատրաստակամ, համեստ, այդ համակրելի երիտասարդը, հին, փորձառու ընկերներու կողքին, արիաբար կռուելով կը նահատակուի:

Փափախը ծուռ, իր աշխոյժ ձին նստած, քիչ մը զարդարուելու հակամէտ, կարծես դեռ աչքիս առջեւն է Յակոբ Ասլանեանը, բնիկ Փեսան դաշտէն, որ հին փորձուած զինուոր մ'էր, Խանասորի արշաւանքի լաւագոյն կռուողներէն:

Ութերորդը Մոքսի, Աբրխամա Թաղեցի, Սարգիս Պետրոսեանն էր, նոր ընդունուած զինուոր մը:

Իններորդը Մովսէս Աւետիսեանն է, Կարճկանի Կուժ գիւղէն, որ պատանեկութեան կ'անցնի Պոլիս, դրամ վաստկելու համար: Հոն ալ կ'անդամակցի Դաշնակցական խմբի մը, եւ կը մասնակցի Թիւթիւնճեվլի տեռորին: Արդէն վտանգուած, կը հեռանայ Կովկաս, ուրտեղէն Պարսկաստան գալով կը հաստատուի Սալմաստ: Լռակեաց, քիչ մը խոժոռ, բայց եւ կարգապահ զինուոր մ'էր ան:

Նոր ընդունուած զինուոր մ'էր եւ Յովհաննէս Յովսէփեանը (Գրեյի փոքր եղբայրը), Մոկսի Կնեկանց գիւղէն:

Բնիկ Մշեցիր էր Նազար Ալամդարեանը, որ յեղափոխութեան մասնակցեր էր դեռ 1891 Թուականէն սկսած: 1904 Թուականին, Սասունի կռիւներուն ժամանակ, որպէս կամաւոր կը բարձրանայ Սասուն, ու ձախ ուսէն կը վիրաւորուի: Սասունի անկումէն

վերջ, խմբի հետ կը հեռանայ դէպի Պարսկաստան, մասնակցելով Կուրաւի, Շամիրամի եւ Աղթամարի կռիւներուն:

Տիգրան Խարբութլեանը, Խարբերդցի, Ամերիկայէն եկած նոր զինուոր մ'էր, որուն կը հանդիպինք կրկին իմ պատմութեան ընթացքին:




ՅՈՎ. ՅՈՎՍԷՓԵԱՆ   ՆԱԶԱՐ ԱԼԱՄՂԱՐԵԱՆ

Փոխիկի խմբի փորձը՝ վերջին ձեռնարկն էր: Ատկէ վերջը Սալմաստ կորսնցուց իր արժէքը, որպէս յեղափոխական գործունէութեան վայր մը երկրի համար, մնալով հոծ հայութեամբ բնակուած շրջան մը, իր տեղական կարիքներով ու գործունէութեամբ, մինչեւ պարսկական յեղափոխութեան շրջանը:

* * *

Յեղափոխական գործունէութեան ծանրութեան կեդրոնը, նոր սիստեմի շնորհիւ, զոր շատ խելօք կերպով կիրառած էին Երկրի գործիչները, այս անգամ շրջուեցաւ Մենաւորի վրայ:

Իր կարգին, երբ իր տեղը գայ, Երկրի գործունէութեան մասին գրելու, ես հանգամանօրէն կանգ կ'առնեմ մեր յեղափոխական գործունէութիւնը իրարմէ զատող երկու շատ որոշ, թէեւ իրար յաջորդող, բայց էութեամբ տարբեր ձեւերու մասին:

Խոյը, որ կեղծ անունով Աւարայր կը կոչուէր, բնական կեդրոնն էր Սակուայ եւ Մենաւորի, միաժամանակ եւ առաջին կա–

յանը Կովկասէն Երկրի համար մտցուած ռազմամթերքին, որ ներս կուգար Նախավկայի ճամբով։ Վերջէն, Կոմսը հնարաւորութիւն ստեղծեց նաեւ ուղղակի Վանի հետ հաղորդակցելու Կոթուրի վրայով։ Թեթեւ սուրհանդակային ճանապարհ մ՚էր այդ, գրականութիւն մտցնելու, նոյնպէս եւ իրար հետ արագ հաղորդակցելու համար։

Մենաւոր կը մնար այդ ատեն մեր ընկեր Գէորգ Ծայրագոյն վարդապետ Նալպանտեանը (Ընծայր), իսկ Մակուայ շրջանը՝ Փայլակը — Ռուբէն Դերձակեան, որու մասին նախապէս երկարօրէն խօսեր եմ արդէն։

Իր կարգին պիտի խօսիմ նաեւ Ընծայրի՝ այդ բազմաշխատ, եռանդուն կղերականի մասին, որ ահագին գործ է կատարած։ Անոր կը պարտինք մասամբ Մենաւորի արտակարգ յաջողութիւնը։

Կար ժամանակ, հին երանելի ժամանակ մը, երբ մեր «դասակարգային շերտաւորումը» այնքան չէր խորացուած, որ հնարաւոր կը դառնէր մեր մէջ առնելու անձնազոհ գաղափարական հոգեւորականներ, ինչպէս Ընծայրն էր, կամ Սահակ Արքեպիսկոպոս Այվատեանը, Պարսկահնդկաստանի առաջնորդը, որ վերջերս վախճանեցաւ... Եւ ցաւալի է, որ ոչ մէկ Դաշնակցական թերթ եւ հին ընկերներէն մէկը, երկու խօսք գտաւ ըսելու այդ պատուական հայ հոգեւորականի, հայրենասէր գործիչի մասին, որ Ատրպատական գտնուած ժամանակ այնքա՜ն ծառայութիւններ էր մատուցեր մեր գործին։ Ու քանի՜ քանիներ այդպէս անյիշատակ ու անհետ կորան, մարդիկ, որոնք մեր յեղափոխութեան սկզբնական օրերուն, նաեւ վերջէն, իրական եւ գնահատելի մասնակցութիւն ունեցեր են յեղափոխական գործին մէջ։

* * *

Եթէ չեմ սխալիր, Սեպտեմբերի վերջերն էր, երբ Կոթուրի վրայով սուրհանդակ մը եկաւ Վանէն։ Իսկական Վանեցի թուրք մ՚էր, իր մէկ ղօլամով, որ երկու օրէն հասեր էր Խոյ։ Այս արտակարգ արագութիւն մ՚էր։ Ընդհանրապէս մեր սովորական ճամբով մենք հազիւ թէ 15 օրէն կրնայինք նամակ ստանալ։ Զարմանքով կարդացի նամակը։ Վահան Փափազեանէն (Կոմս) էր նամակը, որմէ բաժնուած էի Ժընեվ, ուր եկեր էր ուսանելու։ Եւ ահա յանկարծ Վանէն լուր կը ստանայի իրմէ։

Նամակի բովանդակութիւնը մօտաւորապէս հետեւեալն էր.—

«Անդրանիկը իր ամբողջ խմբով Վասպուրական անցաւ Աղթամարի կղզիի վրայ, Թուրքերու հետ կռուելէ վերջ։ Ապահով մտեր է Վան։ Կարող են նոր բարդութիւններ եւ կռիւներ առաջ գալ։ Սաստիկ կարիք ունինք դրամի եւ փամփուշտի։ Հնարաւոր ամէն ջանք թափեցէք մեզ օգնելու, քանի ուշ չէ»։

Քիչ մը դրամ ուղարկեցի Կոմսին, որքան որ քովս կար, յայտնելով միաժամանակ որ ինքս անմիջապէս կ՚անցնիմ Կովկաս, իմ լաւագոյնս ընելու։

Անշուշտ այս քայլս հակակարգապահական էր, հարկաւոր էր Թաւրիզի Կ. Կոմիտէին գրել. բայց բաւական փորձառու էի գիտնալու, թէ այդ պատճառով գործը պիտի ձգձգուի, եւ ուշանայ։ Ես ըստ հնարաւորութեան, ընդհանրապէս Սամսոնի հետ խորհրդակցելով նման ծանր քայլեր կ՚առնէի, այս պարագային չեմ յիշեր թէ անոր հետ խորհրդակցեցա՞յ թէ ոչ։

Տնտնալու ժամանակ չէր։ Անմիջապէս անցայ Արապլու, անկէ Երեւան։ Ընկերները հաւաքեցի, կարդացի Կոմսի գրած նամակը, պակասն ալ ես աւելցուցի, խնդրելով որ զարկ տան ռազմամթերքի փոխադրութեան։ Իսկ ինքս այդ գիշեր իսկ մեկնեցայ Թիֆլիս։

Եթէ չեմ սխալիր, Բիւրոյէն ստացայ երկու հազար ռուբլի։ Անմիջապէս հոնկէ ալ մեկնելով, Խոյ հասայ տասնեւմէկերորդ օրը։

Բաւական ժամանակ վերջը նորէն Վանէն սուրհանդակ մը եկաւ։ Կոմսը կը յայտնէր, թէ Անդրանիկը եւ իր խումբը որոշած են դուրս գալ երկրէն, Մենաւորի ճամբայով, եւ պէտք եղած պատրաստութիւնները տեսնենք՝ զանոնք ընդունելու։

Շատ չանցաւ այդ նամակէն, Մենաւորէն սուրհանդակով իմացուցին թէ Անդրանիկը ընկերներով ապահով դուրս է եկած, եւ յաջորդ օրը պիտի մեկնի Աւարայր։

Երկու զինուորով գնացի դիմաւորելու Անդրանիկը։ Մենաւորի ճամբուն, կողմնակի քարվանսարայի մը մէջ, կը հանդըստանային անոնք, երբ ես հասայ։ Բաւական ցուրտ էր, բուխերիկը կը վառէր, եւ խումբ մը մարդիկ, շրջապատած կրակը, կը տաքնային։ Անդրանիկն էր իր զինակից ընկերներով։

Իրիկուան մութով քաղաք մտանք, եւ իջանք իմ անշուք բը-

նկարանը, որ դպրոցէն փոխադրուած էր միջին Թաղը, աղքատ կնոջ մը միակ բնակելի սենեակը: Արդէն եղած չեղածը մէկ սենեակ էր, այնպէս որ բոլորս ալ մէկտեղ քնացանք, ալ ով ինչպէս կրցաւ, Թէեւ տանտիկինն ինչ ունէր չունէր՝ բերաւ:

Կարծեմ, շատ ալ պարծենալու պատճառ մը չունիմ, Թէ գիրենք լաւ հիւրասիրեցի: Առտու իրիկուն խաշած լուբիա կ'ուտէինք, որուն մէջ բախտաւորները միայն երբեմն մսի կտորի նման բաներ մը կը գտնէին: Անդրանիկը երբեմն կէս կատակ կը հայհոյէր իմ լուբիայիս: Խեղճը չէր գիտեր, Թէ Սալմաստ ալ անվերջ Սամսոնի անհամ ջորվան պիտի վայլէր:

Ես երբեք այլեւս չհանդիպեցայ նման սքանչելի խումբի մը: Զարմանալի ներդաշնակութիւն մը եւ համերաշխութիւն մը կար անոնց մէջ, աւելի կարծես նահապետական մեծ ընտանիքի մը հարազատ եղբայրները լինէին, հոգատար իրար հանդէպ, գուրգուրոտ եւ ուշադիր:

Կեդրոնական դէմքը անշուշտ Անդրանիկն էր: Շատ տարի չկար որ Անդրանիկի անունը սկսէր էր տարածուիլ: Առաջին անգամ Առաքելոց վանքի պաշարման եւ կռուի առԹիւ, Գէորգ-Չաւուշի եւ Անդրանիկի անունը արտասահմանի Դաշնակցական Թերթերու մէջ երեւցան: Զարմանալի կերպով սակայն, որ երբեք չէր պատահած, այդ անունը մեծ ժողովրդականութիւն վաստկեցաւ, նոյնիսկ նախքան Սասունի կռիւները, մասնաւորապէս Կովկասի մէջ: Անշուշտ այդ ժողովրդականացման մեծապէս նպաստեց կովկասահայութեան հոգեբանական վիճակը, որ կ'ապրէր եկեղեցական կալուածներու փոթորկալի պայքարի շրջանին: Ինչպէս ըսի, դեռ Սասունի կռիւները չեղած, Կովկասի հայ աշուղները կ'երգէին արդէն,

«Անդրանիկը քաջ, իր ընկերներով
Կ'ուզէ պատերազմ, կը սպասէ գարնան»:

Իսկ կռիւներու ընթացքին, երբ իրար յաջորդող խումբերը, ընդհանուր ոգեւորութեան մէջ, կը փորձէին Սասուն անցնիլ, օգնելու Անդրանիկին, արդէն Անդրանիկ անունը դարձեր էր սիմպոլ մը, կռուող Հայաստանի: Դժուար Թէ գտնուէր ամենայետ ընկած գիւղի մը երդիքը, ուր չ'երգուէր Անդրանիկը, որ արդէն անձ մը չէր այլեւս, այլ ազգային, լեգէնդական հերոս մը, բո-



ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆԸ

Աջէն առաջին խաչքարը, կը ներկայացնէ Դաւիթ Անյաղթի գերեզմանը:



ԳԷՈՐԳ ՋԱՒՈՒՇ

լոր հերոսները մարմնաւորող։ Ինչ խօսք որ Երկրէն դուրս գալէն վերջը, փառաւոր կռիւներու շարքէ մը վերջ, Էֆստագի հասնող երկիւղածութեամբ, Անդրանիկը, հայ ժողովուրդի կողմէ, դրուեցաւ հոգեկան պատուանդանի մը վրայ, որպէս կուռք մը։ Սակայն հոս պէտք է ըսենք շատ բացորոշ կերպով, որ Անդրանիկ անունը իր մէջ կը պարփակէր Գէորգ Ջաւուշն ու Սեբաստացի Մուրատը, Կայծակ-Առաքելը, Աւօն, Սէյդօն ու Սեպուհը, Մշեցի Կորիւնն ու Մջոն, Կոթոյի Հաճին եւ Սմբատը, եւ բազմաթիւ Սասունցի եւ Մշեցի աներկիւղ կռուողներ։ Ամբողջ հաւաքականութեան մը անունն էր ան։ Ու այս, ոչ մէկ կերպով, չի նուազեցներ Անդրանիկի ո՛չ հերոսութիւնը եւ ոչ ալ փառքը։ Իր անձնական արժանիքներով բարձր կանգնած, ան բախտաւորներէն մէկը եղաւ, որ շրջապատուեցաւ այնպիսի ուժերով, որոնցմէ ամէն մէկը, մէկ մէկ ղեկավար էր, հերոս հայդուկ մը, հարուստ անցեալով։

Ինչպէս ըսի արդէն, խմբի կեդրոնական դէմքը Անդրանիկն էր։ Համեստ, իր հերոսութեան դեռ անգիտակից, մեծ ընկեր մը, առանց որեւէ յաւակնութեան, ան զարմանալիօրէն կենդանի դիմագծով դուրս կուգար, նման ձնուանի կորիճներով շրջապատուած։ Այս խումբը, Անդրանիկն ալ մէջը լինելով, իմ վրաս կը ձգէր զարմանալի տպաւորութիւն մը։ Կը թուէր թէ, անոնք Կիկլոպներու ցեղէն սերած էին, ամէն ինչ անոնց մէջ մեծ չափով կ՚արտայայտուէր, բայց հակառակ ատոր, խոշոր երախաներու նման առտուընէ մինչեւ իրիկուն իրար հետ կը զրուցէին։ Ու ի՜նչ զրուցատուք։ Հոս պէտք ըսեմ, որ այդ, որպէս թէ կատակ կռիւները կը սկսէին գրեթէ միշտ Անդրանիկի թելադրանքով։ Հանդարտ նստած, աջէն ձախէն կը խօսակցէին, մէկ ալ ան,



ԱՆԴՐԱՆԻԿ

աչք կ՚ընէր տղայմէ մէկն ու մէկին, քովինի վզակոթին մէկ հատ մը հասցնելու... Եւ ահա կը սկսէր կիկլոպեան վայրենի մենամարտ մը, եւ բոլորը, կատղած գազաններու նման իրար կը խառնուէին: Անշուշտ այս կրնար հետաքրքիր լինիլ... հեռուէն դիտելու համար, սակայն իրենց մէջը... չէ ախպեր, հաշմանդամ լինելու բնաւ միտք չունէի, եւ արագ մը կը ցատկէի պատուհանի մը մէջ, հոն տեղաւորուելու, որպէսզի պատահական հարուած մը չստանայի, որը իրենց համար կրնար հանաք մը լինել, բայց ինձ համար, մինչեւ եօթներորդ երկինք հասնելու ձրի անցագիր մը կրնար դառնալ:

Այդ խմբի գեղեցկագոյն զարդն էր, մեր աննման ժողովրդական հերոսը, Սեբաստացի Մուրատը, լեցուն ու կայտառ կազմով, խոհուն դէմքով, ուժի ու խելքի մարդը, որ իմ վրաս, մեր Վահագն աստուծու տպաւորութիւնը կը ձգէր: Այդ սեբաստացի հերոսը, որ ընդհանրապէս յայտնի էր անվախ կորիճութեամբ, թէեւ գրեթէ անգրագէտ, զարմանալի սուր ըմբռնողութիւն եւ դատելու մեծ կարողութիւն ունէր: Ես կարծեմ չեմ սխալուիր, եթէ ըսեմ թէ խմբի ուղեղն էր ան, պարզ, կորուկ, եւ միշտ ուղիղ դէպի հարցը:



ՄՈՒՐԱՏ

Տարիներու ընթացքին, եւ ես բաւականաչափ տաճկահայ խմբապետներու հետ ծանօթացեր եւ անձնական շփում ունեցեր եմ, ճանչցածներուս մէջ, իմ դատողութեամբ, Մուրատը ամենաբարձըր տեղը կը գրաւէ իր բազմակողմանի յատկութիւններու շնորհիւ: Փաստելու կարիք չկայ անոր անվախութիւնն ու կտրիճութիւնը, բայց ատկէ աւելի ան եւ ղեկավար մ'էր, ոչ սովորական իմաստով: Հայ-թաթարական ընդհարումներու ժամանակ, Դալարագեազ եւ Զանգեզուր, երբ հըռչակը մունետիկի նման առջեւէն կը վազէր, ան, զարմանալի անտարբերութեամբ դէպի փառքը, իր գործով տարուած, ուրիշ բան չէր տեսներ, բայց միայն իր պարտքը: Խելօք եւ մտածող, պարզ ըլլալու չափ համեստ, բայց եւ տըպաւորիչ, իր ձեւի ճարտասան, որու խօսքերը ուղղակի ժողովուրդի հոգու խորքը կը մտնար, ինքնազուսպ եւ հաւասարակշռուած, ամէն դուռ իր առջեւ բաց գտնող, բայց երբեք այդ ազատութիւնը չշահագործող, Մուրատը ժողովրդական իսկական հերոս մ'էր, առանց սակայն հերոս ըլլալու գիտակցութեամբ արբեցած ըլլալու: Բացառիկ, գեղեցիկ տիպ մ'էր



ԱԽՕ, ԵՐԶՆԿԱՑԻ ՔԵՌԻ, ԿԱՅԾԱԿ ԱՌԱՔԵԼ

ան, մեր Մասիսի պէս հսկայ, առնական եւ սարալանջերուն ծաղկած վայրի վարդենիի ծաղիկներու նման գունաւոր եւ հոտաւէտ:

Այդ խմբի հոգին էր Կայծակ Առաքելը, կամ Աղան, մէկը մեր ամենահին հայդուկներէն: Երզնկացի Քեռիի գործակիցներէն, Կայծակ – Առաքելը զարմանալիօրէն կենդանի եւ անհանգիստ, հակառակ խումբի ամենատարէցը ըլլալուն, գլուրտուքի աղդանշանը տուողը կը լինէր միշտ: Անկասկած էր որ բոլորը կը սիրէին եւ կը յարգէին զինքը, եւ խաթրը կը պահէին: Դժուար է ըսել թէ Աղան քանի կռուի մէջ է գտնուած, քանի խմբի է մասնակցած, այնքան որ բազմաթիւ են անոնք: Զարմանալի քնքշութեամբ մը սակայն, այդ քիչ մը կծու ու ծաղրող լեզու ունեցող



ԱՆԴՐԱՆԻԿ ԵՒ 'ԻՐ ԶԻՆԱԿԻՑՆԵՐԸ

մարդը, կապուած էր իր երեք ընկերներուն, Մուրատին, Աւոյին եւ Սեպուհին: Ասոնք յայտնի չորրորդութիւն մ'էին Դաշնակցութեան մէջ, դեռ Սասուն չգնացած:

Տեսե՞ր էք, գարնան, տերեւներու մէջ կորած մանուշակը, հոտը կայ ու ինքը չ'երեւար... այդ Կիւմիշխանեցի Աւօն էր, Կայծակ Առաքելի եւ Երզնկացի Քեռիի զինակից ընկերը: Դժուար է զայն ներկայացնել, այնքան որ կը սիրէր ստուերի մէջ մնալ, ինքնամփոփ ու լուռ: Ա՛ն այն տիպերէն էր, որոնք փառքեր կը կերտէին, առանց սակայն մասնակից լինելու անոր: Ես երբեք չեմ հանդիպած անհատի մը, որ այնքան բնականօրէն, առանց իր եսը ցուցադրելու կարողանար ապրիլ: Երբ անոր կեանքի մասին մարդ կը լսէր անոր ընկերներէն, առաջին պզա-

ցումը բնականաբար զարմանքը կը լինէր, անսպասելի նորութեան մը հանդիպողի մը նման:

Կարծեմ աւելորդ պիտի լինէր ըսել թէ այս չքախումբի զարդերէն էր նաեւ Սեպուհը, Բաբերդցի Արշակը, որ ինծ կը յիշեցնէր Ոդիսականի միաչքանի Կիկլոպը: Հին վաստակաւոր ֆետայի մ'ալ ան, որ Հայաստանի ճամբաներու վրայ մաշեցուց երիտասարդութիւն մը, անկէ բաժին հանելով Ամերիկային ալ, ուր կ'ապրի այժմ, Հայաստանի կարօտովը տապակուելով: Այդ խումբի մէջ, գրոց բրոցը Սեպուհն էր, որ երբեմն բանաստեղծութիւններ ալ կը գրէր:

Մշեցի սակաւախօս Սեյտօ-Պօղոսն ալ, ոչ նուազ յայտնի որպէս հերոսական կռուող մը, այդ խմբի մէջ էր: Այդ աննման հայդուկի մասին, Ռուբէնը իր յուշերուն մէջ, երկարօրէն կը խօսի, արժէ որ ընթերցողը անգամ մ'ալ կարդայ այդ տողերը, խիսքանչանալու համար Սէյտոյի անձնական քաջութեամբ, խիզախ կռիւներով: Այդ հերոսը վերջէն զոհ գնաց այնքան եղերականօրէն, հայ-քրտական համերաշխ գործունէութեան:

Խմբի ամենաերիտասարդը Մշեցի Սմբատն էր, բարձրահասակ սիրուն երիտասարդ մը, դռուզ մազերով, արծաթէ երկար քեօսթէկով մը զարդարած կուրծքը: Սասունի բոլոր կռիւներուն մասնակցեր էր, ու վերջէն Անդրանիկի հետ դուրս եկած Երկրէն:

Այս գլուխը վերջացնելէ առաջ, կ'ուզէի երկու խօսք ըսել «Ցանթ» խումբի մասին:

Ինչպէս ըսի, այս չորսը, Կայծակ-Առաքելը, Մուրատը, Ասոն եւ Սեպուհը իրար կապուած, անբաժան ընկերներ էին: Դեռ 1902 թուականին, «Ցանթ» խմբի թափառումներու ժամանակ, մենք կը հանդիպինք անոնց, որոնք Խանի խմբապետութեամբ, ու Դաշնակցութեան Արեւելեան Բիւրոյի կարգադրութեամբ, կը փորձէին երկու նոր գիծեր բանալ, մէկը Բարթող սարով, Ղալա-Պօղազ, Հասան Ղալայի մօտ վանք մը, Հերթիւ Խնուս եւ Սասուն, միւսը՝ Ղալա-Պօղազով Իսպիր, Լոնք (Բաբերդի շրջան) Կիվ, Դերջան, եւ Դերջանէն, Երզնկայի գիւղերու վրայով՝ Տերսիմ: Սակայն խումբը հազիւ սահմանը անցած կը նկատուի Թուրք կիներու կողմէ, եւ կը վերադառնայ: Վերջէն երկրորդ փորձի մը պարագային, ճամբան կը կորսնցնէ, երկու օր թափա-




ՇԱՆԹ ԽՈՒՄԲԸ.— վերի շարքը, ձախէն՝ Սեպուհ, Սեւ Աշոտ, Խան, Պապ Մանուկեան: վարի շարքը, Աւտալ, Մուրատ, Մենակ (Գէորգ Արաստամեան), կայծակ Առաքել, Մոկացի Գրիգոր, Զարսանճագցի Մէշետի, Աւօ:




1· Անդրանիկ
2· Սամսոն
3· Մալխաս
4· Առաքել
5· Աւօ
6· Մուրատ
7· Տիգրան
8· Սարգիս
9· Յովհաննէս
10· Գրիգոր
11· Սմբատ
12· Սէյտօ
13· Սեպուհ




Անդրանիկ Ռաշտի մէջ.— 1. Անդրանիկ, 2. Տոքթ. 3. Տէր Ստեփանեան, 3. Տոքթ. Թաշճեան, 4. Եփրեմ խան, 5. Գ. Սանասարեան:

ուելէ վերջ կը վերադառնայ Ջրաբերդ (Ղարս), սարերու վրայ ձիւն նստած լինելու պատճառով:

* * *

Սեյտավարի հայ հասարակութիւնը խնդրած էր, որ Անդրանիկը իր խմբով անպատճառ իրենց գիւղը երթայ: Այդ օրը ես

անկարող էի ընկերակցիլ խմբին. Վան սուրհանդակ էի ղրկելու: Խնդրեցի գերմանական որբանոցի ուսուցիչներէն պ. Շոյնիմէնէն, որ մերոնց ուղեկցի:

Գիւղացիք մեծ ընդունելութիւն ըրած էին խմբին, խաչով խաչվառով ու զանգակահարութեամբ ընդունելով զայն:

Քանի մը օրէն բոլորս միասին, մեկնեցանք Սալմաստ: Ղալասար ու Փայաջուկ մէկտեղած սրտագին ընդունելութիւն մը ըրին Անդրանիկին եւ ընկերներուն: Յաջորդ օրը գիշերով ես մեկնեցայ դէպի Խոյ:

Սալմաստէն Անդրանիկ եւ ընկերներէն ոմանք անցան Թաւրիզ: Թուրք կառավարութեան դրդումով, պարսիկ կառավարութիւնը Ջուլֆա հսկողութիւն նշանակած էր Անդրանիկը ձերբակալելու համար: Սախլուած, Տոքթ. Յ. Տէր Ստեփանեանի հետ, Անդրանիկը ցամաքով կ՚անցնի Ռուսիա Էնզելի, անկէ ալ ծպտուած Պագու: Կովկաս երկար չի մնար սակայն, ու կ՚անցնի արտասահման, Ժընէվ:

Մոռցայ գրելու, թէ Անդրանիկի խմբի հետ Մենաւորէն եկեր էր նաեւ Փայլակը, որ Մակուի գործը վերջացնելէն ետքը, թէեւ անցեր էր Ընծայրին մօտ անոր օգնելու, բայց որովհետեւ այս երկուքը իրար հետ չուն ու կատու կը խաղային, որոշեր էր իմ քովս գալ:

Անդրանիկի անցնելէն վերջը, ամիսներ շարունակ Փայլակն ու ես զբաղուած էինք Մշեցի զինուորներն ընդունելով ու Կովկաս ճամբելով:

Թաւրիզէն ստացեր էի աչագին քանակութեամբ պարսկական անցագիրներ, պարսիկ կառավարութենէն հաստատուած. կը մընար, որ անունները գրէի եւ ճամբէի տղաքը:

Խոյի պիթպազարին մէջ ալ հին զգեստ չմնաց, կարծեմ: Մեր պատուելին ամէն օր կանոնաւոր կերպով քաղաք կ՚իջնէր եւ բեռներով կը վերադառնար: Պէտք էր եկող Մշեցի զինուորներուն քիչ ու շատ պարսկահայի կերպարանք տայինք:

Եկող զինուորներու մէջ յայտնիներն էին՝ Մջօն, Հաճի Գեւոն, Ասլանը, Ղասապ Արամը, Զուլումաթը, եւ Կոթոյի Հաճին:

Ռ.-ի յուշերուն մէջ խօսուած է վերջինին մասին արդէն, ես կ՚ուզէի միայն անոր կեանքէն դէպք մը պատմել, որ գիս ապշեցուց:

Կռիւներու ժամանակ, Թրքական գնդակ մը չարաճճիօրէն եկեր ու Կոթոյի Հաճիի ցուցամատի վերի մասը կորեր էր։ Վէրքը վաղուց լաւցեր էր, բայց ոսկորը դուրս ինկած, հոս հոն հանդիպելուն, սաստիկ ցաւ կը պատճառէր։ Բնիկ խոյեցի բըժիշկ Սարգիս Եղիազարեանը, այն ժամանակ Ամերիկայէն նոր եկած, բժշկութեամբ կը զբաղուէր։ Տարի անոր մօտ։ Բժիշկը յայտնեց, որ պէտք է նախ քլորոֆորմով մարեցնել Հաճին, եւ ապա միսը պէտք է ճեղքուի, եւ դուրս ինկած ոսկորը տակէն սըղոցուի, ու միսը վրան բերելով կարուի։

Բաւականին երկար պատմութիւն էր։ Դժբախտաբար, Կոթոյի Հաճին քլօրօֆօրմ մըլօրօֆօրմ չէր հասկնար. պինդ մը նըստաւ աթոռին վրայ, գրպանէն հանեց մեծկակ կարմիր թաշկինակ մը եւ, քանի մը անգամ ծալելով, բերանը կոխեց ու ձեռքը երկնցուց զարմացած բժշկին. «Իշտէ գործիդ սկսէ»։

Ի՞նչ կրնայինք ըսել։ Ամբողջ գործողութեան ժամանակ, մեր Կոթոյի Հաճին ուֆ մ՚իսկ չըրաւ, թէեւ յայտնի բան է, որ մանաւանդ բժշկի սղոցած ժամանակ, սարսափելի ցաւեր կը զգար։

Հոս տեղն է յիշել, որ բժիշկ Սարգիսը մեզ շատ օգտակար եղաւ, ձրիաբար խնամելով մեր հիւանդները։

Անդրանիկի երթալէն բաւական վերջը, օր մ՚ալ վանքէն մեծ խմբով մը, Քեռին եկաւ Խոյ։

Այնքան բազմաթիւ եկողներ ունէինք, որ հազիւ թէ բոլորին ալ մօտէն կրնայինք ճանաչել, մէկ ալ, որ հազիւ վրան գլուխնին կը շտկէինք եւ անմիջապէս կը ճամբէինք Կովկաս, նոր եկողներու տեղ ունենալու համար։

Գիշերով եկեր էր Քեռին, չիտակը ես անունն ալ չէի լսած, այնպէս որ այդ գիշեր պատեհութիւն չունեցանք իրար ծանօթանալու։ Առտուն երբ կանուխ ելեր ըստ սովորութեան ախոռները կը նայէի, տեսնամ մէկը, բակին մէջ նստած, բոլոր թամբերը առջեւը ձգած, կը նորոգէ զանոնք։ Այդ մարդը մեր Քեռին էր, որ այդ օր իսկ մեր տան տնտեսութիւնը ձեռք առաւ, եւ կանոնաւորեց։ Դժբախտաբար շաբաթ մը միայն մնաց Քեռին, եւ հեռացաւ։ Քեռին զարմանալիօրէն հանդարտ խաղաղ մարդ մ՚էր, տարտիման եւ հարազատ։ Ծանօթանալէդ կէս ժամ վերջը, այնպէս կը թուէր թէ ամբողջ կեանք մը անցուցեր ես հետը։ Հայրական վերաբերմունք մ՚ունէր բոլորի հանդէպ, եւ բոլորն ալ ու-

բախութեամբ կ՚ենթարկուէին անոր ձեւերուն, որ վանողական ոչինչ ունէր: 1904ի Քեռին եւ 1914ի Քեռին բաւական տարբեր մարդիկ էին, թէեւ հիմնական գիծը իր նկարագրին անխաթար մնացած էր մէջը:

Սալմաստէն Խոյ վերադառնալէս ետքը, Փայլակին հետ, նոր մեծկակ տուն մը վարձեցինք, գերմանական որբանոցի դիմացը:



Ք Ե Ռ Ի

1904-ի աշունէն վերջը, փոխադրական գործը նոր թափ մը առաւ եւ հետզհետէ զարգանալով՝ իր ծայր աստիճանին հասաւ 906–908 թուականներուն: Փոխադրական գործի զարգացմանը հետ՝ մեր պահանջները աւելցան: Մեր նոր տունը ամբողջովին կը բաւարարէր մեզ. բացի երեք սենեակներէ, որոնք տանելի էին, ընդարձակ ախոռ մը ունէինք, ուր կարելի էր մինչեւ 10 ձի կապել, թէեւ երբեմն, մառաններն ալ գործածելով, 15 ձի կրնայինք պահել, մեզ համար ալ անհրաժեշտը այդ էր արդէն:

Փայլակէն ու ինձմէ զատ, մեր տան մշտական ապրողները հետեւեալն էին.

Մոկացի Յակոբը, որը ամէն ինչ էր, ծառայ, սուրհանդակ, զինուոր, տան կառավարիչ, ախոռապան:

Յակոբը, այդ զարմանալիօրէն չարքաշ գիւղացին, սերտօրէն կապուած է Խոյի յեղափոխական պատմութեան հետ: Յեղափոխական ծանր ու սեւ աշխատանքը անոր ճիտին պարտքն էր: Արշալոյսէն մինչեւ կէս-գիշեր ոտքի վրայ էր ան. իսկ մեր

տանը մէջ աշխատանքը չէր որ կը պակսէր աշխատողին համար:

Համարձակ կրնամ ըսել, թէ Յակոբը երբեք գիշեր մէկ փալասի վրայ չէ քնացեր իմ ժամանակս. մէկ ոտքը Սալմաստ էր, միւս ոտքը՝ Վանքը, ու այսպէս շարունակ ամիսներ, եւ այս բոլորը անտրտունջ, առանց բան մը կատարած լինելու յաւակնութեան:

Այդ համեստ զինուորը, ծնած Մոկսի գիւղերէն մէկուն մէջ, առանց այբ-բեն-գիմի կտոր մը ունենալու իր փորին մէջ, զարմանալի անձնուիրութեամբ կ'աշխատէր Ազգին համար: Ու հիմակ, երբ աչքիս առջեւ կը բերեմ շատախօս ճառախօսներու շարանը, որ քիչ մը շատ կայ ամէն կողմ, որքա՜ն կը բարձրանան անցեալ օրերու համեստ Յակոբները, որոնք Ազգի համար կը զոհաբերէին լաւագոյնը, որ մարդ կրնայ տալ, իրենց կեանքը, ու այդ կ'ընէին առանց ցոյցի, առանց բան մը տուած լինելու գիտակցութեան, ճիշդ այնպէս, որպէս բնական տուրք մը, պարտականութիւն մը:

Ինչպէս սահմանի վրայ գտնուող բոլոր միւսները, Յակոբն ալ երկիր անցնելու ցաւէ բռնուած է: Տեսակ մը փոխանցիկ հիւանդութիւն էր այս, որ մասնաւորապէս կը զարգանար սահմանագլուխի մօտ շրջաններու մէջ:

1903–1904-էն սկսած, Հայաստանի համար մեռնիլը տեսակ մը խօլ դարձեր էր քիչ թէ շատ զգայուն հայ հոգիներուն համար: Մոլեռանդ բան մը կար ասոր մէջ, տեսակ մը հոգեբանական յափշտակութիւն, որ ոչնչով չէր կարելի գոհացնել: Դուրսը աշխատիլ, թէկուզ ամենածանր պայմաններու մէջ, երբ կեանքի վտանգ չկար, չէր կրնար գոհացնել զիրենք, ասոր համար ալ Երկիր անցնիլը, կապուած կեանքը կորսնցնելու հետ, ունէր անդիմադրելի գրաւչութիւն մը:

Արդեօ՞ք պիտի լինի մէկը, որ հարազատօրէն պատկերացնէ այդ թուականներու երիտասարդութեան հոգեբանութիւնը, խանդավառ ապրումները...

Սահմանի վրայ, եթէ մարդ իր կաշիէն իսկ դուրս գար, նորէն բան մը պակաս կը մնար, երբ սահմանը չէր անցեր: Հայաստանի սահմանը անցնիլը, հին ժամանակներու ցամաքով Երուսաղէմ ուխտի երթալու պէս, մեծագործութիւն մըն էր. բարձրա-

գոյն յեղափոխական ցենզն էր այդ, որ կրնար ստանալ ոեւէ յեղափոխական գործիչ։

Այս մտայնութիւնը ոչ թէ յատուկ էր միայն զինուորներու, սահմանամօտ շրջանի գործիչներուն, այլ եւ նոյնիսկ մեր կուսակցական ղեկավարներուն, Սիմոնէն սկսած մինչեւ Քրիստափոր։ Եւ այդ մտայնութեան հետեւանքն էր Սիմոնի ու Վարդանի Կիլիկիա երթալը, ինչպէս եւ Քրիստափորի՝ մահափորձի ձեռնարկին մասնակցիլը։

Արամը իր յուշերուն մէջ, այս մասին խօսելով, քիչ մը հեգնանքով կ'ըսէ, թէ սահմանի գործիչներն իսկ, կարծես անգիտակից իրենց պատասխանատու աշխատանքին, սեւեռուն գաղափար մ'ունէին միայն՝ Երկիր անցնիլ։

Այդ, շատ ճիշդ նկատողութիւն մըն է։ Սամսոնի ոսկորները սկսեր էին փտիլ Սալմաստի խաղաղութեան մէջ. խեղճը օրը երկու հարիւր սիկարէթ կը ծխէր, երկաթագործի փուքսի պէս հառաչելով.

— Տօ տնաքանդներ, փտանք էլի, փտանք. մէկ Երկիր անցնէինք է՛»...

Ու իր տան տանիքէն Արտուլը կը դիտէր, որուն միւս կողմը կը տարածուէր Աւետեաց երկիրը, որը եթէ նշանաւոր չէր իր խաղողի հսկայ ողկոյզներով ու դդմանման խնձորներով (այստեղ չափազանցութիւն չկայ, կարծեմ Աստուածաշունչի մէջ եմ կարդացեր այս), յամենայն դէպս Խօշապի կարմիր ժաժիկովը, եւ Վանայ տառեխովը խոշոր գրաւչութիւն մ'ունէր։

Ես ալ որպէս թէ 5–6 ամիսով եկած էի սահմանի վրայ աշխատելու, ուր որպէս թէ քիչ մը փորձառութիւն ձեռք բերելէ վերջ, որպէս թէ նորեկի մը յանձնելով իմ տեղս, որպէս թէ իմ կարգին Երկիր պիտի անցնէի։ Տարի մը անցեր էր արդէն. ոչ եկող կար, ոչ գնացող. իսկ ես անհամբերութենէ ինքզինքս կուտէի։ Առաջ, Թիֆլիս Բիւրոյին քաղաքավար կերպով կը յիշեցնէի, որ իմ տեղս մարդ խոստացեր էին ղրկել, շուտ ընեն՝ մէկը հասցնեն... Հետզհետէ աւելի պահանջկոտ դարձայ, վերջէն ալ բազմաթիւ նամակներով հայհոյեցի։ Բայց բոլորը ի զուր։

Երբ Արամը իր յուշերուն մէջ այս մասին կը գրէր, կը մոռնար սակայն, որ ինքն ալ մեր հիւանդութենէն բռնուածներէն մէկն էր, որուն՝ սահմանի գործունէութիւնը բաւարարութիւն

չէր տար, եւ երկիրն էր միայն, ուր աշխատիլը, իսկական յեղափոխականի մը վայել գործ կը համարէր:

Սակայն դառնանք մեր պատմութեան: Ինչպէս ըսի, Յակոբն ալ Երկիր կ'երազէր, ու ո՞վ չէր երազեր որ. բայց անձնապէս ինծի հետ կապուած լինելով՝ խոստացեր էր մնալ սահմանի վրայ մինչեւ իմ Երկիր անցնիլս, երբ միասին պիտի վերցնէի զէնքը:



Մոկացի Յակոբ եւ Գանձակեցի Նիկոլ

Բարձրահասակ, ջըղուտ տղայ մ'էր Յակոբը, որուն վրայ աւելորդ փոնտ մը միս գոյութիւն չունէր: Զարմանալիօրէն տոկուն ու չարքաշ՝ յոգնիլ, դադրիլ չէր գիտեր, կարծես պողպատէ շինուած լինէր անիրաւը:

Մենք նորէն կը հանդիպինք, այդ պարզունակ գեղջուկ հերոսին:

Ատեն մ'ալ, Գանձակեցի Նիկոլը մնաց մօտըս: Այս նախկին պետական զինուոր մ'էր, որ Ալեքսանդրապոլի զինուորական մաքրազարդման մէջ պատասխանատու դեր մը կատարելուն, ընկերները ճամբեր էին Պարսկաստան: Համեստ, աշխատող զինուոր մ'էր:

Պատուելին. ճիշդը, ոչ իսկական անունը գիտեմ, ոչ ալ որտեղացի լինելը: Կարծեմ, Ընծայրի հետ Բուլղարիայէն եկած էր: Պատկառելի քիթ մ'ունէր, Սիրանոյական ցուցանք մը, որ ամէն օր չալկած պազար կ'իջնէր գնումներ կատարելու:

Ատեն մը Հայկ Քիբրիթճեանի մօտ կը մնար, բայց երբ Սասունցի զինուորներու անվերջ չարանը սկսաւ, ու բնականօրէն գնումներու գործը բարդացաւ, իմ խնդրանքով, Պատուելին

դարձաւ տեսակ մը գործակատար Դաշնակցական տան: Ամէն օր պազար կ'իջնար եւ կէսօրին տնքտնքալով կը վերադառնար, ծանրաբեռնուած չուատերով, հազար գոյնի շալվարներով, գըլխարկներով, էնթարիներով:

Կարծեմ, այդ օրերուն հնավաճառներու մօտ ալ ապրանք չմնաց, մեր տունը կրեցինք, մինչ Երկրէն դուրս եկող զինուորներու տուտը չէր երեւնար դեռ:

Տարիքը առած ծերունի մ'էր մեր Պատուելին· ծանր, քրոնիկ պռոնչիտ ունէր: Ամբողջ գիշերներ կը լուսցնէր հազալով, կարծես թոքերը դուրս պիտի թափէին, սարսափելի տանջանք մ'էր, որ կ'ապրէր այդ մարդը: Մոլի Դաշնակցական էր ու քթի տակէն կը մրթմրթար, որ ես Հնչակեաններու երես կուտամ:

Մարզպետի օրով ալ Խոյի մէջ մեռաւ, այդ աշխատաւոր մարդը:

Զմօ· ծառը արմատովն է ծառ, տունն ալ տանտիկնովը տուն, եթէ միայն Դաշնակցութեան տան մէջ տանտիկին մը կրնար գոյութիւն ունենալ:

Մեր տան որպէս թէ տանտիկինն ալ Զմօն էր, Կոթուրցի քրտախօս պառաւ մը, որուն Հայկազեան բառարանը հազիւ թէ 40 բառերէ կազմուած լինէր:

96–ի ընդհանուր ջարդերուն, Կոթուրը, որ քրտախառն գիւղ մ'էր Թրքօպարսկական սահմանի վրայ, ենթարկուեցաւ կոտորածի· հայութեան մէկ մասը քրտացաւ, իսկ մազապուրծ պըրծողները անցան Պարսկաստան, Խոյ եւ շրջակայ գիւղերուն մէջ տեղաւորուեցան:

Զմօն ասոնցմէ մէկն էր: Առանց միջոցներու, մխս մինակ, ասոր անոր տունը հաց թխելով, իր ողորմելի գոյութիւնը կը քաշքշէր այդ խեղճ պառաւը:

Դեռ դպրոցին մէջ ապրած ժամանակս, Յակոբին հետ, երբեմն կուգար մեր կերակուրը եփելու· իսկ երբ նոր տունը փոխադրըուեցանք, Զմօն ալ մեր շարժական կայքին հետ, փոխադրուեցաւ նոր տունը ու հոն հաստատուեցաւ:

Հեշտ բան չէր այդքան հոգու ծառայելը· թէեւ սովորաբար 4–5 հոգի կը լինէինք տանը· երբեմն սակայն, այդ թիւը կը բարձրանար 10–15–20–ի:

Այդ տանը մէջ, գրեթէ ամէն բան կար, բացի կարգ կանոնէ: Աստուած ինքը գիտէ, թէ Զմօն կեանքին մէջ, երբ եւ իցէ կերա–

կուր եփա՞ծ էր, ալ չհարցնենք, թէ՝ մեզ հրամցուցած կերակուրը ի՞նչ անուն ունէր ու ի՞նչ համ:

Կ'ըսեն, թէ Քրիստոս քանի մը ձուկով եւ եօթը նկանակով ամբողջ բազմութիւն մը կերակրեց անապատին մէջ: Մեղք չեմ գործեր ես, եթէ ըսեմ, թէ մեր Ջմօն ալ նոյնքան հրաշագործ էր. որովհետեւ հաստատ գիտեմ, որ հինգ հոգու համար պատրաստած կերակուրով, երբ անակնկալ կերպով սուրհանդակներ ու զինուորներ կուգային մեր թիւը բարձրացնելու քանի, մեր Ջմօն, սակայն, առանց նեղուելու մեզ կը գոհացնէր բազմապատկելով ջուրի քանակը, որով փոխած կը լինէր ե՛ւ կերակուրի էութիւնը եւ քանակը, միաժամանակ հրաշքով մը թաս քեպապը վերածելով թարխանայ չորպասիի: Անշուշտ, այս աչքաբացութեան համար զինուորները կը քրթմնջէին, երբեմն կը հայհոյէին ալ, բայց մեր Ջմօն բոլորովին անտարբեր, կը լսէր մեր բողոքները անիմաստ ժպիտով մը, եւ նորէն գիտցածէն վազ չէր գար: Շատ անգամներ սեղանէն կ'ելլէինք անօթի փորով, Ջմօյի կերակուրները պէտք եղածին պէս չկրնալով գնահատել:

Բայց եւ այնպէս Ջրօն շատ պէտքական էր: Բոլորի ճերմակեղէնները կը փորձէր լուալ, կը կարկտնէր, սենեակները կ'աւլէր եւ հաց կը թխէր: Ճիշդ է, ատոնք բոլորը կ'ընէր քիչ մը շատ քրտավարի կերպով, բայց մենք ալ շատ բարակը փնտռելու հակամէտ չէինք:

Մարզպետի օրով Ջմոյի ցաւոտ աչքերը բոլորովին կը կուրանան: Եւ չեմ գիտեր ինչո՞ւ, փոխանակ թողելու, որ տանը մէկ անկիւնը ինկած՝ իր վերջին օրերը անցնէ այդ էմէքթար պառաւը, տունէն դուրս կը հանուի:

Մարզպետը կը փորձէ 20 թուման տալ անոր երեք տարուան ծառայութեան համար: Բայց այդ անտիրական պառաւը, որ 5 սէնթ իսկ չունէր գրպանը, եւ ոչ ալ երբեք ունեցեր էր, կը մերժէ ըսելով.

— Ես քեզի համար չաշխատեցայ, ազգին համար ըրի:

Ու կե՛րթայ եկեղեցիի գաւիթը, ուր եւ անկիւն մը ինկած կը մեռնի, մէկ երկու շաբաթ վերջը:

Անցեր է տարիներու երկար շարք մը, ու մինչեւ այսօր ես ինծի հարց կուտամ. ի՞նչ զգացում էր, որ կը դրդէր այդ կնոջ աշխատելու ազգին համար. արդեօք ի՞նչ կը հասկնար ազգ ըսելով. ինչպէ՞ս կրցաւ մերժել քսան թումանը, որ իրեն համար ա-

հաղին հարստութիւն մ'էր, որով կրնար ապրիլ երկար ժամանակ։

Եւ շատ լուրջ կերպով ինծի համար հարց կը ծագի, թէ ո՞վ աւելի շատ տուաւ յեղափոխութեան. անո՞նք, որ գիտակցօրէն տարիներ աշխատեցան, շատ անգամ ալ վրայ տալով կեանքերնին, թէ՞ այդ խեղճ կինը, ու իր նմանները, որոնք աւլեցին, մաքրեցին, լուացին թափեցին, առանց վարձատրութեան ակնկալութեան, ինչ որ ազգի սիրոյն համար։

* * *

Փայլակն ու ես լաւ ѐօլա կ'երթայինք իրար հետ, ան ջղային, ես ջղային, ուրեմն ճուիթ։ Ի հարկէ կը կռուէինք, շուտով հաշտուելու պայմանով։ Բայց տնաքանդի տղան մեծ պակասութիւն մ'ունէր, որը ոչ մէկ կերպով չէր կարելի ուղղել։ Սաստիկ կը սիրէր կոնծել։ Շատ միջոցներու դիմեցի, նոյնիսկ արաղ քաշելու կաթսաները հաւաքեցի, հայկական թաղերու մէջ արաղ ծախելը արգիլեցի, բայց նորէն մեր Փայլակը ճարը կը գտնէր։ Խմելը չէր կրնար ալ պահել. հազիւ երկու բաժակ կոնծած, անմիջապէս քթին ծայրը կը կարմրէր, ծանրաչափի պէս բան մը, որ անշեղ կերպով կը ցուցադրէր խմուած ալքոհոլի քանակը։

Այդ՝ միակ պակասութիւնն էր Փայլակին։ Փայլակի ներկայութիւնը աւելի քան օգտակար էր ինծի համար. ամէն բան անոր գիտակցութեամբ եւ խորհուրդով կ'ընէի։

Սեպտեմբերի սկիզբներն էր, կարծեմ, երբ Սամսոնէն Տիգրան Խաչրուբեան անուն երիտասարդ մը եկաւ քովս, Սամսոնի յանձնարարականով։

Ըսենք միջանկեալ, որ Սամսոնը նման սիւփրիզներ երբեմն կը պատճառէր ինծի. այդպէս ան ղրկեց նշանաւորն Արթիւրը, Թարխանը, որոնց ինչ խօսք որ պէտք չունէի։ Թաւրիզը Սամսոնի գլխուն կը փաթթէր, Սամսոնն ալ՝ իմ, ես ալ իմ կարգին՝ Ընծայրի գլխուն։ Եւ որովհետեւ մեր մէջ կուսակցականօրէն ամենատկարը Ընծայրն էր, ան ալ կը քաշէր փորձանքի մեծագոյն բաժինը։

Տիգրանը Ամերիկայէն կուգար. ուրեմն հայրենակցական ինչ որ կապ կար մեր մէջ, թէեւ ես անոր ծանօթ չէի Ամերիկայէն։ Եւ որովհետեւ եկած էր, ուրեմն գործի մը պիտի ղնէի զին-

քը։ Կարգադրեցի, որ սուրհանդակներու հետ երթայ գայ դէպի Մենաւոր, փոխադրական գործին հետ կապուելով։

Քանի մը օրէն, Յակոբի հետ դէպի Մենաւոր ճամբեցի Տիգրանը ապրանքով միասին, որ առաջին մկրտութիւնը ստանայ։

Յաջորդ օրը, երբ իրիկուան կողմ, Փայլակի եւ տղոց հետ նստած, բակին մէջ, թէյ կը խմէինք, մէկ ալ յանկարծ ներս մտաւ Տիգրանը մինակ։ Առանց գլխարկի, երկարավիզ կօշիկներու փոխարէն չուստեր հագած, զգեստները պատռուած, ու առանց զէնքի։

Այնպիսի անակնկալի եկած էինք, որ երկուքս ալ պապանձըւած, իրեն կը նայէինք, առաջին անգամ տեսածի նման․ իսկ խեղճ տղան սաստիկ ընկճուած հոգեպէս ու մանաւանդ ֆիզիքապէս, չէր կրնար խօսիլ։

Փայլակը կռահելով որ ծանր բան մը պատահած է, եւ գիտնալով իմ դիւրաբորբոք բնաւորութիւնը, առանց ինծի ժամանակ տալու, վերցուց անոր թեւը եւ առանձնացաւ Տիգրանի հետ սենեակ մը։ Հոն երկար մնացին։ Տիգրանը մէկ լացեր էր, մէկ՝ պատմեր։ Վերջէն Փայլակը ինծի պատմեց եղելութիւնը, որ ահաւասիկ։

Դեռ Խոյի դաշտին մէջ, Սեյտավարի ճախճախուտներուն քով, իրիկնամթին, ճամբանին կը կորսնցնեն մեր տղաքը։ Մինչեւ մեծ ճամբան գտնալնին, աւելի քան 3–4 ժամ կը կորսնցնեն․ անկէ վերջը, որքան ալ որ կը քշեն ձիերը, հազիւ Կոռելի ձորը անցած՝ լոյսը կը բացուի, մինչդեռ առնուազն 5–6 ժամ կար վանքը հասնելու։

Մեր սուրհանդակները եւ ապրանք փոխադրողները պէտք էր որ, այդ ճամբան, Խոյէն մինչեւ Վանք, որ 12–14 ժամուան հեռաւորութիւն մ՚էր, մէկ գիշերուան մէջ կտրէին։ Նախ անոր համար, որ ճամբու երկայնքը քրտական ու պարսկական գիւղեր կային, որոնց բնակիչները շատ հակամէտ էին աւազակութեամբ զբաղուելու․ ապա անոր համար, որ մեր յաճախակի երթեւեկով, չէինք ուզեր վտանգել Մենաւորը, որ մեծ նշանակութիւն ունէր, լինելով ամենագլխաւոր կայանը փոխադրութեան։

Աշնան երկար գիշերները մեզի համար ամենանպաստաւոր օրերն էին, երբ հանգիստ կերպով կրնայինք իրիկունը մեկնիլ Խոյէն, եւ լուսը բացուելուն գտնուիլ Վանքի սահմաններուն մէջ։ Բայց խնդիրը կը փոխուէր, երբ գարնան կարճ գիշերները

կուզային։ Իսկ փոխադրութիւնը խոմ չէր կրնար կանգ առնել՝ ինչ է որ գարուն է եկեր։

Ու ահա այդ կարճ գիշերներուն էր, որ այդ ճամբան կը դառնար հոգեհան դժոխք մը է՛ւ մարդոց է՛ւ մանաւանդ ձիերու համար։ Հազիւ թէ պատահէր, որ ձի մը վերադառնար Մենաւորէն, առանց ահագին վէրք մը ունենալու մէջքին վրայ։

Այսպէս, ուրեմն, Յակոբն ու Տիգրանը հազիւ Կոռելի ձորը անցած՝ լոյսը կը բացուի, եւ մեր խեղճերը, ճամբէն քիչ մը անդին, կը նստին եւ կը սկսին ձմերուկ ուտել։

Այդ ժամանակ ձորէն քանի մը ճամբորդ քիւրտեր դուրս կուգան եւ տեսնելով մերոնց՝ կը յառաջանան դէպի տղաքը, ի հարկէ ոչ բարի մտադրութեամբ։

Յակոբը որպէս փորձ զինուոր, ինքզինքը քարի մը ետեւ կը նետէ եւ հրացանը կ՚ուղղէ եկողներուն՝ պոռալով անոնց, որ չմօտենան, եթէ ոչ, պիտի խփէ։

Տիգրանը, անփորձ նորեկ մը, կամ չփոթութենէն կամ վախէն, կը բռնէ Յակոբը՝ ըսելով․

— Մի՛ խփեր, անվնաս ճամբորդներ են, ու յետոյ մեզի պատուիրուած է Պարսկաստանի մէջ զգոյշ լինիլ, եւ դէպքի առիթ չտալ։

Ճիշդ է որ այս պատուէրը կը տրուէր բոլոր զինուորներուն։ Աւելի քան զգուշ էինք որ տեղի չտայինք որեւէ թիւրիմացութեան, որ կրնար առաջանալ, մեր եւ պարսիկ բարեացակամ կառավարութեան մէջ։ Բայց Մակուի սարերու վրայ, ան ալ աւազակ քրտերու հետ, այդ պատուէրը իր իմաստը կը կորսնցնէր․ հոն պէտք էր ուժի դէմ ուժ ցուցադրել։

Դժբախտ Յակոբը տեղի կուտայ՝ ազդուելով այն հանգամանքէն, որ Տիգրանը կիսաինտելիգենտ մըն է, պարոն մը, հետեւաբար պատասխանատու անձ մը։

Քիւրտերը կը մօտենան ու կը սկսին հանդարտ խօսակցիլ, մինչեւ որ Տիգրանի ձեռքէն կ՚առնեն հրացանը, որպէս թէ տեսնելու համար։ Մինչ այդ՝ Յակոբը քիչ հեռուն կը նստի, հրացանը ձեռքը։ Քիւրտերը կ՚ուզեն Յակոբի զէնքն ալ տեսնել, սակայն ան կը մերժէ։ Տիգրանը այդտեղ կ՚ելլէ եւ յիմարաբար, զոռով կ՚առնէ Յակոբի հրացանը, ու կուտայ քրտերուն, թէ, ահա տեսէք։ Ասկէ վերջը քիւրտերը կը հրամայեն, որ ատրճանակներն ալ յանձնեն, ու զգեստները հանեն։

Տիգրանը նոր կը հասկնայ եղածը, բայց արդէն ուշ էր։ Յակոբը արդէն կատաղած, կը հայհոյէ Տիգրանին ու կը նետուի քիւրտերէն մէկուն վրայ՝ ձեռքէն հրացանը խլելու, եւ երկուքն իրար գրկած՝ կը գլորուին գետին։ Այդ պահուն երկրորդ քիւրտը խանչալը կը հանէ ու կը վիրաւորէ Յակոբը ծոծրակէն։ Ահագին վէրք մը կը բացուի ծոծրակի ամբողջ երկայնութեամբ ու մինչեւ ոսկորը։

Յակոբը՝ երկու ձեռքով բռնած վիզը՝ կը փախչի․ քանի մը գնդակներ ի զուր կ՚անցնին․ ան այդպէս վիրաւոր կը սկսի վազել դէպի Վանքը։ Եւ այդ տղան, ահագին վէրքով, սաստիկ արիւն կորսնցնելով, վեց ժամ կը քալէ, մինչեւ որ կը հասնի Վանքի արտերը, ուր այլեւս ուժասպառ կը նուաղի։ Բարեբախտաբար, քաղհան ընող վանքի կիները կը տեսնեն, լուր կուտան Ընծայրին, եւ գրեթէ անկենդան Յակոբը կը փոխադրեն Վանք։

Քիւրտերը, լաւ մը պլոկելէ վերջ Տիգրանը, ազատ կը ձգեն զայն, որ հեռանայ։

Փայլակը այն ժամանակ ինձ չյայտնեց Յակոբի վիրաւորուելու պատմութիւնը։ Ինչ խօսք, որ ես սաստիկ բարկացայ Տիգրանին, խիստ յանդիմանեցի զինքը, որ փոխանակ Յակոբին անսալու, որ փորձուած զինուոր մըն էր, ինքը յիմարաբար խմբապետ էր խաղացեր, եւ պատճառ դարձեր այդ դժբախտ դէպքին։

Այդ գիշեր, առանց թոյլտուութեան, Տիգրանը հեռացաւ Խոյէն Սալմաստ։ Հոն յայտնած էր եղելութիւնը Սամսոնին, խնդրելով, որ թոյլ տայ իրեն միանալու Փոխիկի խմբին, ապա թէ ոչ սպառնացեր էր անձնասպանութիւն գործել։

Այդպէս, այդ հայրենասէր երիտասարդը, որ հեռաւոր Ամերիկայէն եկեր էր յեղափոխութեան ծառայելու, կը միանայ Փոխիկի խմբին, առանց պէտք եղած փորձառութիւնը եւ մարտունակութիւնը ունենալու, ու այդ խմբի հետ ալ կը նահատակուի։

Հեզահամբոյր, համեստ, աշխատող երիտասարդ մ՚էր ան, ոչ այնքան մը զարգացած, որ ղեկավար դեր մը կատարէր, եւ ոչ ալ այնքան մը ռազմունակ, որ զինուոր լինէր։

Այս դէպքը ես քիչ մը մանրամասն պատմեցի անոր համար, որ Արամը իր յուշերուն մէջ, Յակոբի վիզը կտրուիլը, ինձ հետ պատահած ուրիշ դէպքի մը ժամանակ տեղի ունեցած համարեր է իր յուշերուն մէջ։

* * *

Այդ տարի Պարսկաստան սաստիկ խոլերա ծագեցաւ, որ մանաւորաբար Խոյի մէջ առատ հունձք մը քաղեց: Աղտի եւ կեղտի մէջ ապրող պարսիկը, որ առողջապահութեան տարրական պայմաններուն անծանօթ է, ինչ խօսք որ, ամենէն շատ զոհը պիտի լինէր այդ հիւանդութեան:

Փայլակը փայլուն գաղափարը ունեցաւ Թադէոս Առաքեալի աջը Խոյ բերել տալու, որպէս հալածիչ խոլերայի: Ինծի բացատրեց իր միտքը, ես ալ համոզուեցայ: Փայլակը անմիջապէս ճամբայ ելաւ դէպի Վանքը, թէ աջը բերելու եւ թէ Յակոբի վէրքը բուժելու:

Չմոռնամ ըսել, թէ հայերը եւ մանաւանդ պարսիկները, որոնք մեծ հաւատք ունէին սուրբ մասունքի ամենաբուժ յատկութեան վրայ, կը պահանջէին որ այս սարսափելի համաճարակի ժամանակ Սուրբ Աջը բերուի քաղաք:

Քանի մը օրէն մեծ հանդիսաւորութեամբ Ընծայրը, առօք փառօք քաղաք մտաւ: Հազարաւոր ամբոխը, երկիւղածութեամբ, իրար կոխկռտելով, կը վազէր Առաքեալի աջը համբուրելու: Մեծ խաները փեշէնկ ձիեր ղրկած էին Սուրբ Աջը դիմաւորելու համար, ըստ պարսկական սովորութեան:

Հիմա ի՞նչ ըսեմ, ընթերցող. ըսե՞մ, թէ հայու Աստուածը զօրաւոր էր. այս ալ ինքնատեսակ ազգասիրութիւն մը կը լինի: Բայց իրողութիւն է, որ Առաքեալի աջը Խոյ մտաւ ու միւս դըռնէն ալ խոլերան դուրս գնաց վերջնականապէս:

Այսպիսի բնազանցական խրթին հարցերու մէջ չեմ ուզեր մտնել, թերեւս շատ բան մ՚ալ չեմ հասկնար: Բայց իրողութիւնը կը մնայ իրողութիւն, որ խոլերան դադրեցաւ, ու մասունքի հըռչակը հասաւ մինչեւ հեռաւոր գիւղերը, միաժամանակ բաւականաչափ կոկիկ հասոյթի աղբիւր դառնալով Վանքի աղքատ գանձանակին համար:

Վանքը շահեցաւ, տեղական ազգաբնակչութիւնը Աջի հրաշագործ զօրութեամբ ազատեցաւ պատուհասէն, մենք յեղափոխականներս պէտք չէր որ անմասն մնայինք:

Քանի մը օրէն վարդապետը պիտի մեկնէր: Օրը ցերեկով ճամբու դրինք Ընծայրը իր հետեւորդներով: Առջեւէն Մոկացի Յովհաննէսը կ՚երթար, վարդապետի ասան բարձր բռնած: Փայլակն ու վարդապետը՝ անոր ետեւէն, ու ապա՝ Վանքի ծառանե-

րը, եւ չարմաղարի կարաւան մը, որ Վանքի նորակառոյց դպրոցին համար, պիտոյքներ կը տանէր:

Իրողութիւնը սակայն այն էր, որ ամբողջ սնտուկները, խուրջինները լեփ լեցուն էին ռազմամթերքով, զէնքերով եւ լեցուած ռումբերով:

Ճամբան ծիծաղելի բան մը կը պատահի, որը սակայն մեր սիրելի Փայլակը երկարած դէմքով մը կը պատմէր, թերեւս անոր համար որ մենք հայերս ընդհանրապէս հիւմօրի զգացում չունինք:

Այն համեստ աւանակը, որուն բեռցուած կը լինին երկու սնտուկ, լեցուած ռումբերը, տեղ մը կը սայթաքի, եւ գլորուելով կ'իյնայ ահագին բարձրութենէ ու կը հասնի մինչեւ ձորի յատակը: Սնտուկներէն մէկը այդ ճամբորդութեան ընթացքին, կը ջախջախուի: Ընծայրն ու Փայլակը լեղապատառ կը հետեւին աւանակի անկումին, սարսափած որ կրնայ պայթիւն մը առաջ գալ: Բարեբախտաբար, այդ չի պատահիր, բայց կոտրուած սնտուկի արաքներէն արդէն կ'երեւին ռումբերը: Մեր Ընծայրը, ջորեպաններէն առաջ կը հասնի սնտուկի մօտ, իր փարաջայով կը փաթթէ սնտուկը, որպէս թէ «ազիզ քիթապ»ներու նուիրականութիւնը պահելու համար: Ու այդպէս ճամբու մնացորդ մասը, մեր վարդապետը, առանց փարաջայի, եափունջի մը նետած ուսերուն կ'երթայ:

Խոյի մէջ մեր ամբողջ ունեցածը, Փայլակի հնարամտութեամբ, մէկ անգամէն մաքրեցինք, բան մը, որ սովորական միջոցներով ամիսներ պիտի առնէր:

Այսպիսով, խօլերան, որ աղէտ կը համարուի, երբեմն կ'ունենայ ե՛ւ իր օգտակարութիւնը: Ու մենք դժգոհ չէինք, որ սնահաւատութիւնն ալ երբեմն կ'օժանդակէր մեր գործին:

* * *

Խոյի մէջ Հնչակեաններ չկային, ըսել կ'ուզեմ Հնչակեան կազմակերպութիւն չկար. արդէն եղածը ափ մը ժողովուրդ էր:

Սեյտավարցի Համբարձումը, որ կը համարուէր Հնչակեան ներկայացուցիչ, մէկ երկու անգամ եղած էր մօտս: Անգամ մըն ալ, երբ իրենց սուրհանդակը ձերբակալուեցաւ, դիմեց ինծի, որ կերպ մը գտնամ զայն ազատելու: Ես ալ կառավարութեան ծանօթ հայու մը միջոցով ազատեցի սուրհանդակը, նոյնպէս նա-

մակը ետ ստացայ՝ քան Թուման կաշառք տալով մեր կուսակցական միջոցներէն: Այդ գումարը մինչեւ վերջն ալ Հնչակեանները չկրցան վերադարձնել ինձ:

Օր մըն ալ Համբարձումի հետ պարթեւ, գեղեցիկ երիտասարդ մը եկաւ մօտս, Երուանդ անունով, բնիկ Էրզրումցի: Բաւական զարգացած եւ լուրջ երիտասարդ մ'էր, ինչպէս կ'երեւէր, աշխարհ տեսած: Ես արդէն լսեր էի, որ Հնչակեան ներկայացուցիչ մը եկեր է Երկիր անցնելու համար. բայց քանի որ մեր տեսակցութեան ընթացքին, Երուանդը ինձ ոչինչ չյայտնեց Երկիր անցնելու իր մտադրութեան մասին, ի հարկէ ես ալ բան մը չհարցուցի: Սիրալիր տեսակցութիւն մ'էր տեղի ունեցածը, եթէ խօսինք դիւանագիտական լեզուով:

Փայլակը վանքը մնացեր էր՝ փոխադրութեան զարկ տալու համար: Բայց այդ երկուքը, Ընծայրն ու Փայլակը, չեմ գիտեր ինչո՞ւ, խօլա չէին կրնար երթալ իրար հետ: Ամէն սուրհանդակի հետ երկուքէն ալ առանձին նամակ կը ստանայի. երկուքն ալ իրար մասին՝ զորս դու պատուիրեցեր: Ա՛լ ձանձրացեր էի. խեր մը չէին ըներ գրած նամակներս:

Իրապէս, աթոռի կռիւ չէր եղածը: Եւ ի՞նչ աթոռի մասին խօսք կրնար ըլլալ այն ծանր ու անտանելի պայմաններու մէջ: Եղածը աւելի հակակրութեան խնդիր էր. Փայլակը չէր կրնար տանիլ վարդապետը, վարդապետն ալ կը կարծէր, թէ Փայլակը փոխադրութենէ դուրս, կ'աշխատի Վանքի գործերն ալ ղեկավարել:

Անգամ մըն ալ սուրհանդակներ եկան Վանքէն: Յակոբը, կատարելապէս առողջացած, վերադարձաւ անոնց հետ: Ես անչափ ուրախ էի որ Յակոբը վերստին վերադարձաւ ինձ: Զարմանքով ստացայ նաեւ նամակ մը Հնչակեան Երուանդէն, որով կը յայտնէր իր Վանքը գտնուիլն ու Ընծայրի անբարեացակամութիւնը օժանդակելու, իր Երկիր անցնելուն: Կը խնդրէր, որ ես պէտք եղած կարգադրութիւնը ընեմ:

Հնչակեան Երուանդին ըրածը քիչ մը անհամ բան էր. եթէ կ'ուզէր Երկիր անցնիլ, պէտք է Խոյ եղած ժամանակ ինձ յայտնէր, եւ ոչ թէ ինձմէ գաղտնի անցնէր Վանք, ներս սպրդելու եղանակով մը: Բայց գրեցի Ընծայրին ու Փայլակին, որ վստահելի վալադներու միջոցով աշխատին զայն Երկիր ճամբել:

Կարգադրութիւնս լաւ, բայց կատարո՞ղը. Ընծայրը կ'ըսէր,

որ եթէ իր էշը Հնչակեան լինի, ականջները կը կտրէ: Կարծեմ միայն այս հարցին մէջ էր, որ Փայլակն ու Ընծայրը իրար հետ կատարելապէս համաձայն էին: Պարզ էր, որ եթէ անոնց մնար, Երուանդը անցնելու չէր Երկիր: Այդ բանին ու իրենց ներքին գժտութեանը վերջ մը տալու համար, որոշեցի, որ անգամ մը երթամ Մենաւոր, ու տեղին վրայ կարգադրեմ խնդիրը: Մանաւանդ Մենաւորն ալ չէի տեսած դեռ:

Սուրհանդակներու հետ ճամբայ ելայ, դէպի Մենաւոր:

## ԹԱԴԷՈՍ ԱՌԱՔԵԱԼԻ ՎԱՆՔԸ

Մոկացի Յովհաննէսը, վանքի գիւղացի Մելքոնը, Յակոբը ու ես ճամբայ ելանք Խոյէն՝ արեւը հազիւ մայր մտած:

Ըսեր եմ արդէն, որ այդ ճամբան պէտք է գիշերով կտրել անցնիլ՝ ձիերը անխնայ քշելով:

Մինչեւ Կոռելայ ձորը ճամբան լաւ էր, բայց հազիւ թէ Կոռելայ գետը անցանք, որուն մասին կ'ըսեն թէ պատմական Տըղմուտ գետն է, սկսաւ Կոռելայ յայտնի ձորը: Կաթոլիկները արքայութիւն երթալու համար, քաւարանը ստեղծեր են, որ երկինքի կէս ճամբուն վրայ կը գտնուի. Կոռելայ ձորն ալ՝ ալ տեղ չէր գտեր՝ եկեր ինկեր էր մեր ճամբու վրայ, մեր գործած ու չգործած, անցեալ ու ապագայ բոլոր մեղքերու քաւութեան համար:

Շատ ձորեր եմ տեսեր, մանաւանդ մեր անփառունակ նահանջի ժամանակ Հայաստանէն դէպի Պարսկաստան, Զանգեզուրի անդնդախոր սատանի ձորերն եմ անցեր, բայց ոչ մէկը այն ահարկու տպաւորութիւնը չէ ձգած վրաս, ինչ որ Կոռելը: Թերեւս ատոր պատճառը այն էր, որ երբեք ցերեկով չէի տեսեր, միշտ գիշերով էի անցեր այդ փորձանք ձորէն: Խաւարը, անորոշ ստուերները, մեռցնող լռութիւնը, հազիւ նկատելի նեղ ճամբան, ասոնք բոլորը մէկտեղ, ազդեր էին երեւակայութեանս վրայ:

Երկու ուղղաձիգ պատեր, ափ մը երկինք, ժայռերու վրայ ոլորտող կածան մը, տանջալի, անվերջ վերելք մը, որ երկու անպատ ժամ կը տեւէ, ահա Կոռելի ձորը:

Մեր վիճակը դեռ ոչինչ. պէտք է մտնել ե'ւ ձիերու դըրու-

թեան մէջ։ Վեց ժամ անդադրում քշեր էինք արդէն, դեռ խուրջիններն ալ լեփ լեցուն ռազմամթերքով։ Խեղճ անասունները, արիւն քրտինքի մէջ կորած, ճիգ կ՚ընէին բարձրանալու, հասնելու ձորի կատարը։ Հոդ արդէն կը պարզուէր ինծի համար, թէ ինչո՞ւ ձիերը, հազիւ անգամ մը վանք երթալով, կը վերադառնային Խոյ, մէջքերնուն ահագին վէրք մը բացուած։

Վերջապէս ձորը վերջացաւ։ Ընդարձակ լեռնադաշտ մը կը բացուի առջեւնիս. ձախ թեւի վրայ երկու քրտական գիւղեր կան։ Հազիւ պլպլացող ճրագներ կը մատնեն անոնց դիրքը։

Ութ ժամ է ձիերու վրայ ենք արդէն։ Մենք յոգնած ենք անչափ, բայց ձիե՞րը... Յովհաննէսը կը կարգադրէ քիչ մը հանգստանալ։ Ուրախութեամբ ձիերէն վար կը ցատկենք։ Քիւրտի մը գարիի արտին մօտ ենք։ Սանձերը կը հանենք, որ սոված անասունները բան մը ճարակեն։ Կէս ժամ վերջը արդէն ճամբայ կ՚ելնենք։ Ալ մինչեւ վանք ճամբան գրեթէ հարթ, հաւասար է։ Հեռուէն կ՚երեւի սպիտակին զարնող սար մը։

— Պարոն, էդ սարի քարերէն է շինուած մեր վանքի նոր մասը, կը բացատրէ ինծի Յովհաննէսը։

Վերջապէս, լուսաստղը կը բարձրանայ, հոգէառ հրեշտակը յեղափոխականին, եւ քիչ քիչ լոյսը կը բացուի։ Բայց այլեւս վանքի հողն ենք մտած։ Հանդարտ կը յառաջանանք։

Արեւը կը ծագի, ու դաշտի վարը, գմբէթ մը միայն կ՚երեւի, արեւի ճառագայթները չեղակի ինկած վրան։ Վանքն է, Թադէի հռչակաւոր վանքը։ Ողջո՛յն մեր փառաւոր նախահայրերու մեծ յիշատակարանին։ Աչքերուս մէջ արցունքը կը լճանայ։

* * *

Ընծայրի սենեակն ենք։ Սարսափելի ճնշող տպաւորութիւն կ՚ընեն վրաս ցածկեկ առաստաղը, անապակի պատուհանները, որոնք ծածկուած էին խղոտած թղթով։ Հազիւ կարելի է իրերը որոշել. այնքա՛ն մութ է սենեակը։

Հետզհետէ կուգան Փայլակը, Երուանդը եւ Վանեցի Հնչակեան Հաճի Յակոբը (Արծրունի)։ Հոս տեղն է ըսել, թէ Հաճի Յակոբը, ժամանակ մը մեր փոխադրական գործին օժանդակեր է անձնուիրաբար։ Երբ Փայլակը Մակուի շրջանի, Քիշմիշ Թեփէ գիւղն էր, փոխադրական գործով, Հաճի Յակոբը, որ այդ ժամանակ այդ տեղ կը գտնուէր, հնարաւոր աջակցութիւնը չէ զլա-

ցեր, օգտակար լինելու: Շատ հազուագիւտ բացառութիւններէն մէկն է եղեր, որ մէկդի դրած կուսակցական նեղ մտայնութիւնը, երբ կրցեր է, օգներ է մեզի:

Նախաճաշ ընելէ վերջ, դուրս կուգանք, եւ վարդապետը ինծի կ'առաջնորդէ, իր վանքը ցոյց տալու:



ԱՐԾՐՈՒՆԻ
ՀԱՃԻ ՅԱԿՈԲ ԱՒԵՏԻՍԵԱՆ

Իր վանքը ըսի գիտակցօրէն: Ու այդպէս էր: Անցեալի այդ հռչակաւոր պատմական վանքը, որ մօտ 15 սեփական գիւղեր ունէր ժամանակին, ահագին եկամուտ, ոչխարի հօտեր ու նախիրներ, գութաններ, ձիթհան գործարան, գրեթէ հիմնովին քայքայուած, հասեր էր աւերակ վիճակի մը՝ իրար յաջորդող ապիկար վանահայրերու անկարողութեան եւ թալանի հետեւանքով: Ընդհանրապէս մեր կղերականութիւնը, փճացած ու ապիկար, տնտեսութեան անկարող, կամ անփութութեան եւ անկարողութեան, եւ կամ անձնական շահու համար, իրենց աւանդ ձգուած հարստութիւնը կողոպտելով, քայքայեր են մեր վանքերու մեծագոյն մասը: Երջանկայիշատակ Սիմէոն արքեպիսկոպոսի շինարար վանահայրութենէն վերջը վանքը աւեր մ'էր, երբ Գէորգ Ծայրագոյն վարդապետ Նալպանտեանը (Ընծայր) Խրիմեան Հայրիկի կարգադրութեամբ կուգայ, որպէս վանահայր, ինչպէս ինքը կ'ըսէր, աւերակներու մէջ բոյն մը շինելու:

Սղերդցի այդ համեստ վանականը կը լծուի հերքիւլեան աշխատանքի եւ չեղածէն կը ստեղծէ տանելի դրութիւն մը: Անշուշտ Դաշնակցութիւնն ալ, որոշ չափով կ'օժանդակէ նիւթապէս: Մեծ դժուարութեամբ կը յաջողի վերաշինել քանդուած հին ջրաղացը, որոշ եկամուտ մը ապահովելով վանքին: Վաղուց ի




Թադէոս Առաքեալի վանքը· 1· Սահակ Արք· Այվատեան, 2· Թորոս, 3· Ալխբեր, 4· Դարմօ, 5 Փոխիկ, 6· Մեսրոպ

վեր դատարկուած ախոռը նորէն կը լեցուի կթան կովերով, ոչխարի փոքր հօտով, լծկան եզներով:

Ցարաջայի փեշերը մէջքը կոխած, այդ գործունեայ մարդը, ամէն բանի կը հասնի, ե՛ւ Աստուծուն ե՛ւ վանքի տնտեսութեան: Դար ու դադարում չունի. անվերջ կ'աշխատի իր սիրած վանքը նախկին պայծառութեան հասցնելու: Քանի մը մարդավարի սենեակներ ալ կը շինէ, թէեւ ոչ ամբողջովին լրացած, վանքի գիւղի մանուկներուն համար, որպէս դպրոց:

Թադէի վանքը կը բաղկանայ երկու մասէ, բուն խորանը եւ յարակից մասը, ուր ըստ աւանդութեան կը գտնուի Թադէոս Առաքեալի գերեզմանը, աւագ խորանի տակ, իսկական հին շինութիւնն է, կապտաւուն, սրբատաշ քարերով շինուած: Իսկ մնացած մասը եւ արեւմտեան ճակատն ու զանգակատունը, որոնք շինուած են ճերմակ եւ կակուղ քարէ մը, մեծագործ Սիմէոն Եպիսկոպոսի շինածն է, տասնեւիններորդ դարու սկիզբներուն, ամենայն հաւանականութեամբ, նախ քան պարսկահայոց գաղթը (1828 թուականին):

Վանքի այդ նորագոյն մասի արտաքին պատերը, գեղեցիկ քանդակներով, առաքեալներու եւ զանազան կենդանիներու նկարներով զարդարուած են: Եկեղեցու մուտքի սիւներու վրայ քանդակուած են զոյգ առիւծներ, բաւական շնորհալի կերպով: Պատերու, սիւներու եւ պատուհաններու վրայ բազմաթիւ արձանագրութիւններ կան, յիշատակող անունները այն բարերարներուն, որոնց ծախսով շինուած է այդ մասը:

Վանքը չորս կողմէն պարսպապատ է: Հիւսիսային կողմէն, դահավէժ դէպի ձորը կը կախուի, յենած լայն պարիսպին, որու երկու անկիւններուն ժանիքաւոր դիտարաններու քանդուած մասերը կը մնան դեռ: Հարաւէն, պզտիկ տարածութեամբ մը միայն կը բաժնուի վանքի գիւղէն, որ հազիւ 30 տունէ կը բաղկանայ:

Վանքի չորս բոլորը, բաւական ընդարձակ բակով մը զատուած, խուցերն ու թոնրատունն եւ մառաններն են:

Աւելի մռայլ, ցուրտ խուցեր հազիւ թէ տեսած լինէի : Ամբողջովին քարաշէն եւ կամարակապ, հազիւ մէկ նեղ պատուհանով լուսաւորուած, որուն լայնքը հազիւ կէս ոտք լինէր, այդ խուցերը աւելի միջնադարեան բանտերու տպաւորութիւն կը ձըգէին վրաս, քան միաբաններու բնակավայրի:

Եղածներուն մէջ, ամենատանելին վարդապետի երկու սենեակներն էին, երկու ողորմելի որջեր, փոքր, թղթածածկ պատուհաններով, ու ամէն մեղքիս վրան ալ, որպէս թէ առաստաղով մը, որու տախտակները այնքան փտած էին, որ ձիւն տեղալու նման, ճերմակ փայտալիւր կը թափէր վրանիս:

Գետակի միւս կողմը, հանդիպակաց բլուրներու վրայ, կ'երեւէին շարք մը մատուռներ, եւ մէկ ուրիշը, մեն մենաւոր, ինկած դաշտի մէջտեղը· այդ Սուրբ Սանդուխտ կոյսի մատուռն է, փոքրը բարձրութեան մը վրայ:



ԸՆԾԱՅՐ
ԳԷՈՐԳ Ծ· ՎՐԴ· ՆԱԼՊԱՆՏԵԱՆ

Դարերու պատմութիւնը կը խօսի այդ աւերակներէն, մատուռներէն, վանքէն: Հին շինարար պապերը մեր, ու մենք, որ նոր երազներով ոգեւորուած, նոր աշխատանքի մըն ենք լծուեր, թերեւս անկարելի իղձ մը, անհասանելի նպատակ մը ... Եկեր ենք, ու հաստատուն կռուան մըն ենք ըրած մեր նոր գործին համար, մեր մեծագործ պապերու դարեւոր հաստատութիւնը: Հինն ու նորը հոս իրար ձեռք ձեռքի են տուած, մաշթոցն ու խունկի ծուխը, պայթուցիկ ռումբերն ու ռազմամթերքը հոս եղբայրացեր են իրարու:

Շաբաթ իրիկունները Ընծայրը իր տխուր ու ազդող ձայնով Լոյս զուարթ կ'երգէ, ու գիշերները պահեստներու մէջ կը տեղաւորէ ռազմամթերքը:

Աշխարհի ո՞ր ծայրերէն եկար դուն, զարիպ ճամբորդ: Ո՞ր հովերը քեզի քշեցին մինչեւ այդ անապատ վանքը, ուր տարիներով քրտնաջան աշխատեցար սիրած երազիդ համար, ուր դուն ինքզինքդ մոռցար, ազգի ցաւովը ապրելու համար: Օր մ՚ալ տարիներու պանդխտութենէ վերջ, հայրենիքդ, Սղերդ գացիր, հոն քու հարազատ ժողովուրդիդ համար գործելու, երբ վրայ հասաւ պատերազմը ու մեծ եղեռնը, եւ բոլորի հետ դուն ալ նահատակներու ճամբայէն քալեցիր, միշտ քու ժողովուրդէն անբաժան, քու ժողովուրդին առաջնորդ:

Յիշատակդ օրհնուած լինի, Թանկադին վարդապետ, սիրելի Ընծայր:

* * *

Հնչակեան Երուանդը զիս առանձին տեսնել ուզեց: Ցաւ յայտնեց ինծի, որ Խոյի մէջ այնքա՛ն դաղտնապահ ուզեց մնալ, մինչդեռ մենք հոն կրնայինք հասկացողութեան մը գալ իրեն հետ: Եղածը եղած էր, սակայն: Խոստացայ, որ առաջին պատեհութեամբ իսկ Երկիր կ՚անցնի մեր վստահելի վալադներու հետ: Ինքը,— ըսի,— որպէս գիտակից յեղափոխական մը, վըստահ եմ թէ, Երկրի մէջ առանց տարուելու ներքին մանր թայֆայականութենէ, պիտի աշխատի մերոնց հետ համերաշխ գործունէութիւն մը առաջ բերել: Ես ընդհանրապէս լաւ տպաւորուեցայ այդ երիտասարդէն: Եւ կը մտածէի, որ նման անձնաւորութիւն մը, կրնար օգտակար լինել, ստեղծելու համար գործակցութիւն մը, Դաշնակցութեան, եւ Հնչակեան անկազմակերպ խումբերու մէջ: Դժբախտաբար սակայն, Երուանդը հազիւ 3–4 ամիս Վան մնալէ վերջ դուրս եկաւ Երկրէն, նախ որ բաւականաչափ հետեւորդներ չունեցաւ հոն, եւ երկրորդ որ նիւթական միջոցներէ զուրկ, ծանրացած մէկ երկու խումբերու վրայ, հնարաւորութիւն չունէր այլեւս մնալու:

Ես երբեք ճիշդ Դաշնակցական չեմ եղեր իմ յեղափոխական գործունէութեան ամբողջ շրջանին, եւ ոչ ալ հիմա եմ, ու հայրենասիրութիւնը մենաշնորհը չեմ համարեր Դաշնակցականներուն, որքան ալ որ բարձր գնահատեմ Դաշնակցութեան գործունէութիւնը եւ առաջ բերած ներքին կարգապահութիւնը, որ անօրինակ է հայ պատմութեան մէջ եւ որմէ զուրկ է ընդհանրապէս հայ զանգուածը:

Խորապէս հաւատացած եմ, որ Դաշնակցութիւնը ոչ թէ սոսկ

քաղաքական կուսակցութիւն մը եղաւ, այլ եւ վերազարթնող Հայութեան իրական արտայայտիչը բոլոր մարզերուն մէջ, լինի այդ՝ քաղաքական, թէ կուլտուրական:

Ինչ խօսք որ, ամենէն բարձրը ինձ համար Դաշնակցութեան վարած ազգային քաղաքականութիւնն է, որը կարմիր թելի նըման կ'անցնի Դաշնակցութեան պատմութեան մէկ ծայրէն մինչեւ միւսը: Սոցիալիստական ծիրանին ալ, որ ժամանակը եւ կովկասեան միջավայրը մեզ հագցուց, թերեւս ակամայ, Դաշնակցութիւնը իր գիտցած կերպով ձեւեց եւ ուսերուն առաւ, յարմարցնելով զայն մեր ինքնուրոյն ու բացառիկ իրականութեան: Շնորհիւ Դաշնակցական ղեկավարներու լայն ըմբռնողութեան ու կուսակցական դաստիարակութեան, կը կարծեմ թէ հայ քաղաքական կուսակցութիւններու մէջ ամենահամբերատարը եւ ազգային հարցի շուրջ մէկտեղուելու պատրաստակամը, նորէն ան է եղեր: Թերեւս այդտեղ որոշ դեր կատարեր է նաեւ ուժեղ լինելու գիտակցութիւնը:

Նախ քան Երուանդը ճամբելնիս, կարծեմ Սուրբ Խաչի օրը, մեր սիրելի Ընծայրը պատարագեց, Արծրունին, Երուանդը եւ ես ալ ուխտացութիւն ըրինք: Փայլակը, որ ագռաւի ձայն ունէր, եկեղեցիի հաստ սիւներէն մէկուն կրթնած, քթի տակէն կը խնդար մեր վրայ, որը անշուշտ վերագրելու է անոր նախանձոտութեան: Այդ իրիկուն լաւ ճաշով մը հիւրասիրեցինք Երուանդը ու ջերմ բարեմաղթութիւններով ճամբու դրինք, դէպի Երկիր:

* * *

Ինչպէս ըսեր եմ արդէն, Փայլակի եւ Ընծայրի միջեւ լուրջ խնդիր մը գոյութիւն չունէր: Ան վարդապետի քթին չէր հաւնէր, կը կարծէր, թէ մեծ է. իսկ վարդապետն ալ կ'ըսէր, թէ Փայլակը շատ է ջղային, մինչեւ իրիկուն կը հայհոյէ ու վանքի տնտեսութեան ալ կը խառնուի, որմէ բան մ'ալ չի հասկնար:

Մեր ընդհանրապէս ջղայնացնող կեանքին մէջ, ահագին նըշանակութիւն ունէր ընկերներու իրար հանդէպ ունեցած վերաբերմունքը: Հարցը երբեք այն չէր թէ մէկը որքան կարող է, այլ այն՝ թէ որքան կրնայ հօլա երթալ: Այս երկուքն ալ, Փայլակը թէ Ընծայրը, նուիրուած, աշխատասէր մարդիկ էին, դիրքի խնդիր ալ չկար, եւ այդ սարի գլխուն ի՞նչ դիրքի մասին կարող

էր խօսք լինել որ, եղածը պարզապէս անհամակրութիւն երկուստեք, առանց որոշ պատճառի։

Երեքով խորհրդակցութիւն մը ունեցանք, ու որոշեցինք, Փայլակը միմիայն փոխադրական գործին նայի, ի հարկէ Ընծայրի օժանդակութեամբ, եւ չխառնուի վանքի տնտեսութեան, եւ մանաւանդ նոր ռեֆորմներ չմտցնէ վանքի մէջ։

Քանի մը օր Ընծայրի հիւրասիրութիւնը վայելելէ վերջ, ճամբայ ելայ դէպի Խոյ։

Չեմ գիտեր, ո՞ր սատանան մէջս մտաւ, ու մերժեցի Յովհաննէսի եւ Մելքոնի ընկերակցութիւնը։

Խոյ պատրաստ ապրանք չունէի վանք ուղարկելու, հետեւաբար աւելորդ լիւքս մը համարեցի անոնց ընկերակցութիւնը։

Եւ Յակոբն ու ես ճամբայ ելանք, կէս օրէն վերջ, ժամը 4-ի առենները։

Այդ ճամբորդութիւնս՝ լեցուն է ինծի համար տխուր յիշատակներով։

## ԿՈՌԵԼԻ ՁՈՐԸ

Հազիւ վանքի սահմանէն դուրս եկած էինք, արդէն մթնեց։ Բաց դաշտն էր առջեւնիս, երկու կողմէն եզերուած լեռներով։ Առանց բառի՝ աշխոյժ ձիերուն գլուխը բաց ձգեցինք, լոյսը չբացուած տեղ հասնելու ցանկութեամբ։

Մեր սպարտական Յակոբը, ի բնէ լակոնական խօսակցութեան սիրահար, այդ գիշեր բերանը չբացաւ։ Քիչ մը ցուրտ էր։ Ես ալ, լաւ փաթթուած Փայլակի սիբերիական մուշտակին մէջ, կէս քնատ կը հետեւէի անոր, ձիու սանձը ազատ ձգած։

Երկու ժամ ճամբայ կտրած էինք արդէն, երբ Ճերմակ սարը մեր ձախ թեւին երեւցաւ։ Կեատուկի կէս ճամբին էինք ուրեմն եւ ամէն ինչ լաւ կ՚երթար։ Ճերմակ սարի մօտ, չեմ գիտեր, ինչ պատճառէ դրդուած, աւելի քան յիմար ցանկութիւն մը ունեցայ․ Յակոբին ըսի, որ ինքը ինծի հետեւի, ես վալադութիւն պէտի ընեմ ատկէ անդին, ու առաջ անցայ։ Երանի՛, այդ իմաստուն քայլը չառնէի։

Մութ գիշեր էր․ ճամբայ ըսուածը նախիրի ճամբայ մըն էր, երբեմն բարակ թելի նման երկարող, երբեմն ալ ինքնիրեն կը բազմապատկուի, հոս ալ ճամբայ, վարն ալ ճամբայ, վերն ալ

ճամբայ, չորս կողմդ ճամբայ, եւ սակայն իրական ճամբայ մը չկայ մէջտեղ:

Խաւար գիշերին մէջ այդ արահետները գունաթափ մոխիրի շերտերու կը նմանին. աչքերդ լարելու ես՝ բան մը տեսնելու համար: Թէեւ, փառք Աստուծու, շատ անգամ բան ալ չկայ, որ տեսնես: Սուզուող գետերու նման՝ ճամբայ ըսուածն ալ կ՚անհետի, բաւական մը վերջը նորէն անորոշ կերպով, աչքի զարնելու համար:

Ի հարկէ, մեծապէս կ՚օգնեն սարերը իրենց ձեւերով, խաւարի մէջ նշմարուող իրենց զիկզակ ուրուագծերով: Քանի մը անգամ միեւնոյն տեղով անցնող ճամբորդի համար սարերը բաւական են՝ ուղղութիւնը գտնելու համար: Իմ դժբախտութիւնս այն էր, որ ես մէկ անգամ միայն եկած էի, ան ալ հակառակ կողմէն, իսկ վերադառնալուս, սարերու գծագրութիւնը հիմնովին կը փոխուէր:

Ժամ մը անցեր էր, երբ զգացի, որ ուղղութիւնը կորսնցուցեր եմ: Թէ ո՞ւր կ՚երթայի, ճամբան ո՞ւր մնաց, շիտակ չէի գիտեր: Մեր եղբայր Յակոբն ալ, կ՚երեւի արտակարգ համարում ունենալով իմ վալաղական կարողութիւններուս վրայ, հանգիստ կը քնանար: Զայն տուի. մեր Յակոբն ալ, դեռ կէս քնատ, երբ տեսաւ որ ճամբան կորսնցուցեր եմ, առանց լաւ մտածելու, կամ աւելի շփոթուելով, ուղղութիւն մը բռնեց, որ քիչ ատենէն մեզ հասցուց ինչ որ գետակի ափին, մինչդեռ մեր ճամբու վրայ գետակ չէ, աղբիւր մ՚իսկ գոյութիւն չունէր:

Փիլիսոփայօրէն իջանք ձիերէն ու կուշտ մը խմեցինք. գէթ մեր կորսուիլը այդ օգուտը ունենար:

Յակոբը, երկար բարակ սարերուն նայելէն վերջը, յայտնեց, որ մենք շատ ենք ծռած դէպի ձախ, որ եթէ ուղիղ դէպի աջ զարնենք, ճամբուն պէտք է հանդիպինք: Այդպէս ալ եղաւ: Կէս ժամէն հասանք անտէր ճամբան, կամ աւելի ճիշդ է ըսել, Յակոբը այդպէս ըսաւ:

Մօտ երեք ժամ կորսնցուցեր էինք: Այդ պայմաններուն մէջ լաւագոյն պիտի լինէր վանք վերադառնալ, եւ յաջորդ օրը մեկնիլ: Ի հարկէ, այս ամենախելօք միջոցն էր, բան մը, որ սակայն ոչ ես մտածեցի, ոչ ալ Յակոբը: Ու շարունակեցինք մեր ուղին՝ քշելով ձիերը:

Կոռելի անցքի վերի կողմը երկու քրտական գիւղեր կան, որոնց արտերը կը հասնին մինչեւ ճամբան: Մեր տղաքը սովորութիւն ըրած էին, ամէն անգամ, հոդ քիչ մը հանգստանալ, ձիերն ալ բաց ձգելով գարիի արտերուն մէջ, որ արածեն: Ի հարկէ, աշխատաւորութեան դատի պաշտպան կուսակցութեան մը զինուորներուն համար, ասիկա քիչ մը անվայել արարք մըն էր, բայց սոված ձիերը կերակրելու ուրիշ յարմարութիւններու բացակայութիւնը կը ստիպէր, երբեմն անթոյլատրելի միջոցներու դիմել:

Այդ արտերէն մէկուն քով իջանք, սանձերը հանեցինք, ձիերու փորկապները թուլցուցինք, մենք ալ նստանք, որ քիչ մը հանգստանանք:

Բայց յանկարծ, դրա՛ք, դրա՛ք, դրա՛ք՝ գնդակներու տարափը արտի վերի կողմէն արձակուած, մեզ դիմաւորեց:

Վերոյիշեալ գիւղի քրտերը, գլխի իյնալով, որ ինչ որ ճամբորդներ սիստեմադիկ կերպով իրենց արտերը կը կերցնեն, քանի մը գիշերէ ի վեր պահակութիւն կ'ընեն եղեր: Ու թարսի պէս այդ ալ մեզ պիտի հանդիպէր: Վազեցինք ձիերուն քով, որոնք խրտնած կը փախէին:

Անտէր մնայ աճապարանքը. սանձը ձիու գլուխը չես կրնար անցնել. «փորկապը պնդացնեմ» ըսելով՝ բոլորովին կը թուլցնես զայն: Վերջապէս, ամէն բան իրար կ'անցնի, ու փոխանակ ձի նստել փախչելու, ձիու սանձը բռնած՝ կը սպասես չոչորդի նման, որ սիրալիր գնդակ մը չոյէ ճակատդ:

Գէշ աղէկ հազիւ կերպ մը ձիերը նստանք եւ քշեցինք: Յակոբը մէկ երկու անգամ կրակեց, իսկ ես թէեւ մաւզերս պատրաստ բռնած էի, բայց չկրակեցի:

Քիչ հեռանալով, տարճանակս փայտէ ամանին մէջ դրի, առանց մուրճը վար իջեցնելու եւ առանց փայտէ պատեանի բերանը փակելու: Թէ ինչո՞ւ, ես ալ չեմ գիտեր:

Այդտեղէն մինչեւ ձորաբերանը, սաստիկ քշեցինք ձիերը: Յակոբի վախը այն էր, որ գիւղի քրտերը, հրացանի ձայն առնելով, կրնան ձորաբերանը փակել մեր առջեւ: Հասանք Կոռելին: Ոչ ոք չկար: Ու սկսաւ տաժանելի վայրէջքը, որ, ինչպէս ըսի, մօտ երկու ժամ կը տեւէ: Ես առջեւէն կ'երթայի, Յակոբն ալ ետեւէս: Հասեր էինք ձորաբերանին պինդ մօտը, հազիւ քարընկէց մը հեռու գետէն: Հոդ ահագին ժայռ մը կար. ճամբայ ըսուածն

ալ անոր վրայէն կ'անցնէր, այնչափ նեղ, որ ձին աջ կամ ձախ քայլ մը չէր կրնար առնել, առանց վար գլտորուելու։

Ճիշդ այդ ժայռին վրայ յանկարծ հինգ քրտեր մեր առջեւը ելան, աւելի ճիշդը, ձիուս սանձը բռնեցին։ Անօրինակ խայտառակութիւն մ'էր այս, ապահովաբար ես քնած էի, թէ չէ այդ մարդիկը խոմ յանկարծակի գետնէն չբուսան առջեւս։ Կռուեցի քրտեր էին, որոնք կողոպտած էին մեր տղաքը եւ վիրաւորած Յակոբը։ Աւազակներու բոյն մըն էր այդ գիւղը, որ մեզ բաւական կ'անհանգստացնէր։ Անոնցմէ խուսափելու ճար չունէինք սակայն. միայն գիշերով անցնիլն էր միակ միջոցը անոնց հետ գործ կամ անախորժ հանդիպում չունենալու։

Երկուքը, որոնցմէ մէկը ձիուս սանձը բռնած էր, մնացին իմ առաջ. միւս երեքը անցան Յակոբի եւ իմ մէջը։ Լուսը բացուած էր արդէն։

Թէեւ փորձեցի ձիուս սանձը ազատել, բայց կարելի չեղաւ. ձին չէի կրնար ուզածիս պէս շարժել տեղի անյարմարութեան պատճառով։

Հետեւեալ խօսակցութիւնը տեղի ունեցաւ մեր միջեւ.

— Ի՞նչ կ'ուզէք, ինչո՞ւ ձիս բռնած էք։

— Աղա, մենք Կեառուկի պահակներ ենք. սեւամէթ փուլի կ'ուզենք։

Այս ի հարկէ սուտ մ'էր պոչաւոր, այդ Կեառուկի վրայ պահակ չէր մնար։

— Չէ՞ք գիտեր, պոռացի վրանին,— որ ես Սարդարի հեքիմ պաշին եմ, չունչանորդիներ, ձեր Թոզն ու ղումանը երկինք հանել կուտամ. շուտով առաջնորդեցէք գիս ձեր գիւղը, բըպլին քով։

Մինչ այդ՝ ինքզինքս գտած էի։ Բաւական մ'ալ ապրած լինելով Պարսկաստան, գիտէի, որ ամենաուժեղ զէնքը պըլըֆն է. երկրորդ՝ անվախ, աներկիւղ խօսիլն է, եթէ նոյնիսկ վախէդ լեղիդ պայթեր է ներսդ. ու երրորդ՝ տեղի չտալն է, որը, նման պարագաներու մէջ, կը համարուի «մայր իմաստութեանց»։

Կը մտածէի, որ եթէ իրենց աւազականոց գիւղը հասնիմ, ժամանակաւոր կերպով ապահովութեան մէջ կը լինինք, մինչեւ որ տեսնենք՝ ի՛նչ կրնանք ընել։

Իմ սպառնալիքը որոշ ազդեցութիւն ըրաւ։ Նոյնիսկ քրտերէն

մէկը ձիուս սանձը բռնողին ըսաւ· «Զգէ՛, թո՛ղ անցնին, Սարդարի մարդիկն են»:

Բայց այդ թշուառականը, որ խումբի Սուլթանն էր, մեր հասկցողութեամբ խմբապետը, ոչ միայն ձիուս սանձը բաց չձըգեց, այլ եւ յայտնեց, որ այս լեռներուն մէջ Սարդար–Մարդար չի ճանչնար, որ սելամէթ փուլի պիտի տանք, թէ չէ՝ չենք կրնար անցնիլ:

Սելամէթ փուլի ըսուածը՝ 1–2–5 շահիի մօտ բան է, այսինքն՝ 3–5 սէնթ, ով որքան որ կրնայ տալ: Խնդիրը սակայն այդ չէր: Ես զգացի, որ փոքրիկ զիջում մը, եւ պիտի կրկնուի նոյնը, ինչ որ պատահեր էր Տիգրանին ու Յակոբին, ամիսներ առաջ:

Յայտնեցի, որ մէկ շահի իսկ չեմ տար· ինչ որ կրնան ընել՝ թո՛ղ փորձեն: Սուլթանը ազատ ձեռքով այնալու հրացանը վար բերաւ ուսէն՝ սպառնալից կերպով մը:

Ի հարկէ, այս խօսակցութիւնները մեր միջեւ կը տարուէին քրտական քաղաքավարութեամբ, հայհոյանքով ու ամենաբարձր ձայնով, որուն ընդունակ է մարդկային կոկորդը:

Յակոբը, որ մինչեւ այդ կարծես հանդիսատեսի դերի մէջ կը գտնուէր, վերջապէս օրհնուած բերանը բացաւ՝ ըսելով՝

— Պարոն Մալխաս, ղալմաղալ չսարքենք, երկու ղրան (20 սէնթ) տուր, եւ անցնինք:

Գիտէի, որ սխալ էր Յակոբի ըսածը, որ եթէ քիչ մ՚ալ դիմանայի, շատ շատ նորէն պիտի պոռպռայինք, եւ բաժնուէինք իրարմէ: Բայց, կ՚երեւի, թոյլ րոպէիս հանդիպեցաւ եւ յիմարաբար երկու ղրան նետեցի քրտին: Դրամը տուած րոպէիս իսկ զղջացի, բայց արդէն ուշ էր:

Դրամը ինձ ետ տալով «քիչ է», ըսաւ Սուլթանը, «քեզի պէս աղա մարդ մը ամենէն քիչը 5 ղրան տալու է իր խոլամներուն:

Անգամ մը արդէն սայթաքած էի, ալ հնար չկար ետ դառնալու: Ստիպուած՝ հինգ ղրան տուի, մտքէս հայհոյելով Յակոբին ալ, ինծի ալ անոր հետ միասին, որ տեղի տուեր էի:

Վայրկենաբար աչքիս առջեւէն անցաւ խեղճ Տիգրան Խարբութլեանը, իմ խիստ յանդիմանութիւններս, եւ անոր ընկճուած, յուսահատ դէմքը: Ու պատմութիւնը կը կրկնուէր նորէն այս չարաշուք Կոռելի ձորի մէջ: Բայց ինձ ո՞վ պիտի սաստէր: Ամօթէս ինքզինքս կ՚ուտէի: Վստահ չեմ, թէ վախի զգացում ունեցայ, կը

յիշեմ սակայն, որ շատ ընկճուած կը զգայի ինքզինքս, զգացած ամօթէս:

Չերկարցնենք: Մեր 5 ղուանն ալ, ինչպէս կը սպասէի, ետ տուաւ քիւրտը՝ արդէն պահանջելով մէկ Թուման: Զաւեշտական էր ամբողջ անցուդարձը, եթէ սրտիս խորքը չզգայի, որ տրամայով պիտի վերջանայ:

Մէկ Թումանը դեռ Սուլթանի ափին մէջ էր, որ ան ընկերներուն աչքով ընելով, ըսաւ ինձ.

— Աղա, եթէ քսան Թուման չտաս, ասկէ սաղ սալամաթ չես կրնար անցնիլ:

Քիւրտական իւլթիմաթում մ'էր, Սուլթանի ըսածը, ու խօսքին յաջորդեց խօսքը, ձիուս սանձը ձգեց, քայլ մը ետ քաշուեցաւ, հրացանը ինձ ուղղելով:

— Տուր այդ Թումանը,– ըսի իրեն իմ կարգին, ես ալ հազիւ կատաղութիւնս զսպելով, որ քսան Թուման տամ քեզի:

Մօտեցաւ ինձ, դրամը դրաւ ափիս մէջ: Ես, փոխանակ դրամը դնելու մուշտակիս արտաքին գրպանին մէջ, ինչպէս մինչեւ այդ ըրած էի, ներքին ելեկիս գրպանը դրի, ու մավզերը քաշեցի տուփին մէջէն, որուն, ինչպէս ըսի արդէն, նոյնիսկ մուրճը չէի իջեցուցած վար:

Քրտերը յանկարծակիի եկան: Անոնք չէին իսկ կարծեր, թէ ես զինուած եմ: Մուշտակը ամէն ինչ կը ծածկէր: Նախ քան մավզէրը քաշելս՝ ես հայերէն Յակոբին ըսի, ո՛ր պատրաստ լինի:

Ատրճանակը քաշելս ու կրակելս մէկ եղաւ: Ընթերցող, ամէն մարդ բանի մը յաւակնութիւնը ունի. հայերը ընդհանրապէս կը կարծեն, թէ ձի նստել գիտեն, թէեւ մեր մէջ հազուագիւտ ձի նստող կայ: Տեսե՞ր էք մէկը, որ լաւ նարտի խաղալ չգիտնայ: Քաւ լիցի. ամէնքն ալ Իզմիր սովրած են, եւ վարպետներուն հետ խաղալով: Ես ալ, ինչ մեղքս պահեմ, այն յաւակնութիւնը ունէի, որ լաւ ատրճանակ կը գործածեմ. մեր տան պարտէզի ճնճղուկները հանգիստ չունէին ձեռքէս, ու պատահականները չէին ,որ գնդակիս զոհ կ'երթային:

Միայն երկու քայլի վրայ կը կրակէի: Ու չորս գնդակ, չեմ գիտեր ի՞նչ հրաշքով, առանց Սուլթանին հանդիպելու, կրցան անոր քովէն անցնիլ, եւ միայն հինգերորդը տեղաւորուեցաւ փորին մէջ:

Վայրենի աղաղակով մը Սուլթանը փռուեցաւ գետին՝ հողը ճանկռտելով:

Չեմ կրնար ըսել, թէ քիւրտերը իրենց նշանառութեամբ ինձմէ աւելի փայլուն դուրս եկան: Անոնցմէ մէկը ատրճանակով հինգ անգամ կրակեց վրաս, մէկ ուրիշը, չփոթուելով, փոխանակ հրացանը արձակելու, ղունտախով սարսափելի հարուած մը տուաւ գլխուս:

Աչքերէս կանանչ կարմիր կայծեր ցատկեցին: Րոպէ մը թուեցաւ ինձ, թէ գնդակով գլխս խփեցին: Ինքզինքս թափ տուի, եւ դարձայ գլխս զարնող քիւրտի վրայ կրակելու: Անտէր մավզերի փողին մէջ երկու գնդակ միանգամայն ինկան, անպէտք դարձնելով զայն:

— Յակոբ, քշէ՛, ու ձիս խթանելով անցայ ժայռէն, ձորաբերնի աւազուտէն, ու ինքզինքս գտայ Տղմուտի ափին:

Այս ամբողջը հազիւ թէ 3–4 վայրկեանի մէջ կատարուեցաւ:

Ինչ որ չհասկցայ, ու Յակոբն ալ ոչ մէկ կերպով կրցաւ բացատրել՝ այդ ամբողջ պատահարի ժամանակ Յակոբին բռնած դիրքն է: Կարծես պարզ թամաշաճի մը լինէր ան: Մօսին հրացանը գրկէն վար չառաւ. երբ «քշէ՛» ըսի, աքացի մը տուեր էր քիւրտի մը, ժայռէն թաւալգլոր վար նետելով զայն, ու քշեր էր ձին ինձ հասնելու համար:

Այդտեղ Տղմուտ գետը շատ խոր ու յորձանուտ էր: Մենք սովորաբար 5–600 քայլ վերէն, ծանծաղուտէ մը կ՚անցնէինք: Բայց այլեւս բարակը փնտռելու ժամանակ չէր. քրտերը շուտով կրնային հասնիլ մեզ, իսկ մեր դիմացը, դէպի ձախ, Կոռել գիւղն էր. այնպէս որ ազատելու հեռանկարն ալ շատ փայլուն չէր:

Առանց տատանուելու նետուեցանք Տղմուտ գետին մէջ, մինչեւ կէս մէջքերնիս ջրի մէջ. ձիերու հազիւ գլուխները կ՚երեւային: Վերջապէս գետի միւս կողմը անցանք:

Գիւղի այգիներու մէջէն կ՚անցնէր չորացած գետակի մը հունը, սաստիկ քարքարուտ: Բնական տեղ այդ էր ճամբայ ըսուածը: Կը քշէինք ձիերը, որքան որ հնարաւոր էր: Մինչ այդ, քրտերը, իրենց վիրաւորը դէպքի վայրը ձգելով, հասեր էին գետի մօտ, ուրկէ սակայն չէին կրնար անցնիլ այդ տեղով. եւ ամէն անգամ, որ մենք այգիներու մէջէն դուրս կուգայինք, մեզ կ՚ողջունէին հրացանի գնդակներով:

Մէկ ալ տեսնեմ Յակոբը քովս չէ: Ձիս կանգնեցուցի: Յետ

նայիմ տեսնեմ, որ Յակոբը իջեր է ձիէն. բոլորովին սառնարիւն կերպով, ձիու Թամբը որ փորի տակն է անցեր, կ՚աշխատի շտկել:

Վանքէն նեղ եւ երկար կարպետ էի գնած, նոր խուրճիններ չինելու համար: Կարպետը գիւղական հէյպէյի մը մէջ տեղաւորած էինք ու կապած Յակոբի ձիու Թամբի յետակողմը: Ժամանակին չէինք մտածեր փորկապով ամրացնել հէյպէն, այնպէս որ, երբ Յակոբը ձին կը քշէր, հէյպէյի երկու աչքերը, վեր վեր ցատկելով, Թեւաւոր ձիաւորի մը պատկերը կուտային մեր Յակոբին, Սուրբ Սարգիսի պատկերին նման: Ամէն անգամ, որ վազքը խիստ լինէր, կամ ձին սայթաքելու նման շարժում մը ընէր, այդ անտէր հէյպէյի երկու աչքերը, Թամբի մէկ կողմը իյնալով, Թամբի շրջուելուն պատճառ կ՚ըլլային:

Երբ Յակոբը քովս հասաւ, ըսի, որ հէյպէն նետէ, որ նորէն արագ քշենք ձիերը: Ի հարկէ, Յակոբը այդ անտէր բեռը չնետեց. ինչպէ՞ս կարելի էր որ...

Միեւնոյն պատմութիւնը երկու անգամ կրկնուեցաւ: Բարկացած պոռացի, որ հէյպէն նետէ, բայց բոլորը ի զուր: Յակոբը հէյպէն նետողը չէր: Բարկանալս օգուտ մը չէր ըներ: Խօսք հասկցնելու ալ ժամանակը չէր: Կը քշէինք ձիերը՝ որքան որ կրնայինք:

Հրացաններու ձայները կը բազմապատկուէին սակայն, գնդակներու անախորժ վզզոցը մեր չորս կողմը կը շառնար: Մենք յետ իսկ չէինք նայեր. կ՚աշխատէինք որքան կարելի է շուտով հասնիլ Խոյի կեառուկը, որ ամենէն քիչը, երկու ժամուայ հեռաւորութիւն ունէր տակաւին:

Մէկ ալ զգացի, որ մինակ եմ. ետեւէս ձիու վազելու ձայն չէր գար: Սարսափած՝ կեցայ: Ետ նայիմ տեսնեմ, որ ինձմէ 500 քայլ հեռու Յակոբի ձին, մեն մինակ, ճամբուն մէջտեղը մնացեր է, իսկ Յակոբի հետքն իսկ չկայ: Սարսափեցայ. արդեօ՞ք զարնուեր էր Յակոբը ու վար ինկեր ձիէն: Մինչ այդ՝ ես խանգարուած մավզէրս նորէն լեցուցեր էի: Ձիէն իջայ ու քարի մը ետին դիրք բռնեցի: Սարսափելի մինակ զգացի ինքզինքս. Յակոբը ի՞նչ եղաւ, եարապ:

Հրացաններու ձայները շատցան: Մեր հանդիպած քրտերու գործը չէր այդ, որոնք գետը եթէ անցած ալ լինէին, հազիւ ժամէ մը մեզ կրնային հասնիլ: Կոռել գիւղի քրտերը հրացանի ձայներ լսելով, ձին նստողը հաւարին հասեր էր. ես քիւրտերը չէի

կրնար տեսնել, բլուր մը մեզ կը բաժնէր իրարմէ։
Մէկ ալ տեսնեմ, ղօչախ Յակոբը սարն ի վեր կը մագլցի, անխուսափելի հէյպէճ շալակը։ Անոր վրայ էր որ քրտերը կը կրակէին։
Գիտնալով Յակոբը, պիտի ըսեմ, որ եթէ ուժը ներէր, ձին ալ միասին պիտի շալկէր տանելու սարն ի վեր։
Յակոբը քիչ բարձրանալէն վերջը քարի մը տակ մտաւ ու սկսաւ կրակել շուտ շուտ. քիչ վերջը նորէն ելաւ տեղէն, նորէն քիչ մը բարձրացաւ վեր, նորէն նստաւ ու սկսաւ կրակել։
Ձորը լեցուեցաւ հրացանի ձայներով։ Իսկ ես տեղս նստած մնացեր էի. ոչ կրնայի Յակոբին քով հասնիլ, ոչ ալ ճամբաս շարունակել այդ վիճակին մէջ։
Մէկ ալ Յակոբը քարի մը վրայ բարձրացաւ սիւնային հասակով, իմ կողմս դարձաւ, բաներ մը սկսաւ պոռալ, սակայն ոչինչ չէի հասկնար. հազիւ թէ ձայնը կը լսէի։ Փափախը հանեց ու սկսաւ շարժել դէպի Խոյի կողմը։ Չհասկցայ՝ ի՞նչ ըսել կ՚ուզէր։ Նորէն վար իջաւ քարէն ու դէպի սարին կատարը վազեց. տեղ տեղ նստելով ու կրակելով։
Իսկ ես ձեռքերս ծալլած, ինչ ընելս չէի գիտեր։ Ճիշդ է, հրացաններու ձայնը կը լսէի, բայց ոչ ոք չէի տեսներ, միայն Յակոբը հազիւ կը տեսնէի որ, գագաթի մօտ նստած, կը կրակէր։
Ձիս կը նստիմ, բայց ո՞ւր երթամ։ Ձիուս կը ձգեմ ճամբայ գտնելու հոգը։ Արեւը ծագեր է վաղուց. մուշտակս հոն կը ձգեմ, ու գրպանէս քիչ մը դրամ կը նետեմ ճամբուն վրայ, քիչ մտածելով, որ ատով կեանքս պիտի փրկէի։ Քիւրտերու մէկ մասը, մեծ շրջան մը կատարելով, ետեւէս կուգան, ու կը հանդիպին ձգած վերարկուիս, իրար հետ ատեն մը կռուելով, ժամանակ կուտան որ ես հեռանամ։ Ձորէ մը կը բարձրանամ։ Ի հարկէ, սխալ ճամբայ եմ բռնած։ Կը բարձրանամ սար մը, կ՚իջնեմ ձոր մը։ Նորէն սար մը կը ցցուի առջեւս։
Երեք ժամ կը տեւէ բարձրանալս։ Սարի ծայրէն Մասիսը կը տեսնեմ։ Ո՞րտեղ եմ՝ չեմ գիտեր։ Սարերու եւ ձորերու խառնարանի մը մէջ ինկած եմ մինակ։ Հրացանի ձայն չեմ լսեր։ Կ՚երեւի, որ շատ եմ հեռացեր։
Արեւը կամաց կամաց մայր կը մտնէ։ Ինչ որ ճամբու մը կը հասնիմ վերջապէս։ Ո՞ւր կը տանի այդ. գի՞ւղ մը. ո՞վ գիտէ, բայց վերջապէս ճամբայ մըն է։ Կ՚ուրախանամ։ Եթէ ճամբայ մըն

է, ուրեմն տեղ մը պիտի հասցնէ, թէկուզ քրտի գիւղ մը։ Ինչ կ'ուզէ լինի, բայց տեղ մը գոնէ կը հասնիմ։

Երկու ուշացած գիւղացիներու կը հանդիպիմ, Խոյի ճամբան կը հարցնեմ։ Կ'ըսեն, որ բռնածս ուղղութեամբ առաջանալով՝ երկու ժամէն կը հասնիմ։

Ձիս հազիւ ոտքի վրայ կրնայ մնալ։ Ժամը իրիկուան 7–ին կը հասնիմ տուն։

Իմ կայտառ, աշխոյժ ձին, Գոլոզը, հազիւ փայտացած ոտքերը կը շարժէ։ Կատակ բան չէ, ամբողջ 27 ժամ գրեթէ անվերջ քշեր եմ խեղճ անասունը։

Կարծես երազ լինի տեսածս, դուռը կը բանայ իմ սիրելի Յակոբը, որ զիս գրկած մինչեւ սենեակ կը տանի։

Տղաքը ուրախացած կը շրջապատեն զիս։ Կը խնդրեմ, որ ձիս արաղով մասաժ ընեն։ Ջուր կը տաքցնեն։ Զիս կը լողացնէ Յակոբը։ Կը պառկիմ։ Ի՜նչ լաւ բան է եղեր անկողինը, թէկուզ Դաշնակցական տան մը կարծր անկողինը։

* * *

Առտուն Յակոբը պատմեց իր պատմութիւնը, որ հետեւեալն է։

Երբ չորրորդ անգամ լինելով, նորէն չարաբաստիկ հէյպէյի պատճառով, թամբը կը շրջուի, Յակոբը կ'իյնայ քարերու վրայ եւ ծունկը սաստիկ կը ցաւցնէ։ Դժբախտաբար, այս անգամ թամբի փորկապն ալ կը կտրի։ Յակոբը ետեւէս ձայն չի տար, կարծելով, թէ քանի մը վայրկեանէն ինձ կը հասնի։ Մինչդեռ գէշ աղէկ թամբը վեր կը դարձնէ՝ ճարահատ մէկ փորկապով խօլայ երթալ որոշելով, մէկ ալ պինդ մօտիկ, հազիւ երկու հարիւր քայլի վրայ, կը տեսնէ ձիաւոր քրտերը։ Ասոնք Կոռելէն եկողներ էին, որոնք՝ հրացանի ձայն լսելով՝ հաւարի կը հասնէին։ Առանց ժամանակ կորսնցնելու, Յակոբը ինքզինք քարի մը ետեւը կը նետէ եւ կը սկսի կրակել։ Քրտերը, յանկարծակիի եկած, ետ կը փախչէին, նուշի այգիի մը ետին պահուելով։

Այդ նպաստաւոր առիթէն օգտուելով, մեր Յակոբը հէյպէն կը շալկէ եւ, ձին ձգելով իր բախտին, հանդիպակաց սարն ի վեր կը սկսի բարձրանալ։ Բաւական մը բարձրանալէն վերջը, քարի մը տակ կը նստի, քանի մը հրացան կ'արձակէ, նորէն կը բարձրանայ, միաժամանակ հետեւելով իմ շարժումներուս։

Տեսնելով, որ ես կանգ եմ առած ու խելօք մ'ալ ձիէն վար իջած, ձայն կուտայ ինծի, որ ճամբաս շարունակեմ, քանի որ ինքը իր դիրքէն արգելք կրնայ ըլլալ քրտերու յառաջանալուն դէպի իմ կողմը: Իր պոռալէն իմ բան մը չհասկնալս տեսնելով, ամէն վտանգ աչք կ'առնէ, երկար հասակովը կը ցցուի քարի ղըլխուն եւ գլխարկով Խոյի ճամբան ցոյց կուտայ:

— Ես թէ կը կռուէի եւ թէ քեզ կը հետեւէի,— կը պատմէր Յակոբ,— երբ տեսայ, որ դու սխալ ճամբայ բռնեցիր, ուրիշ ձոր մը մտնելով, յուսահատութիւն եկաւ վրաս: Եթէ ուէ հնար ըլնէր քեզի գալու, պիտի գայի: Մէկ ալ մտածեցի, որ քանի երկար ես այստեղ մնամ ու զբաղեցնեմ քրտերը, Մալխասին վտանգ մը չի կրնար հասնիլ: Դիրքէ դիրք վեր բարձրանալով կը կռուէի, մինչեւ որ դուն աներեւութացար աչքէս: Այն ժամանակ քանի մը հրացան ալ արձակելով, բարձրացայ սարի գագաթը ու կործուեցայ միւս կողմը: Քիչ քալելէ վերջ, մեծ ճամբան ինկայ, ու կէս օրին ուղիղ մեր տունը հասայ:

Յակոբը սանկ շատ հանգիստ կերպով կը պատմէր, կարծես սովորական բաներ ըլլային: Առտու կանուխ ելեր, ահագին ախոռը մաքրեր էր ամէն օրուայ պէս, տան համար ջուր էր կրած, ու ոչ մէկ յոգնութիւն:

Իսկ ես տուն էի հասած, կոկորդս ուռած, իսկ շրթունքներս՝ երկու մատի հաստութեամբ ուռած: Հալ չկար վրաս ոչ թէ քալելու, այլ եւ խօսելու կամ շարժելու:

Այսպէս վերջացաւ իմ վալադութեան անփառունակ առաջին փորձը: Ընթերցողը կրնայ վստահ ըլլալ, թէ երկրորդ անգամ մ'ալ չփորձեցի վալադութեան հիւնարս ցոյց տալ:

Յակոբին ձին ետ ստացանք: Վարդապետը բողոքեր էր Սարդարին, թէ Կոռելի քրտերը ամերիկացի ուխտաւոր մը ուզեցեր են կողոպտել, ու վանքի ծառաներուն մէկ ձին մնացեր է քրտերուն մօտ: Սարդարը, շատ լաւ գիտնալով խնդրի էութիւնը, բայց չուզելով մեզ հետ վատ մարդ դառնալ, իր մարդիկը ղրկեր էր Կոռել, որոնք սարսափելի ծեծեր էին քրտերը եւ ձին ետ առեր:

Սարդարը խոշորկեկ ճեռեմէ մը առաւ գիւղէն: Սուլթանը ամիսներ վերջը լաւացաւ ու մեր տղոց հետ ալ շատ բարեկամացաւ:

Մեր հիները խելօք խօսքեր շատ ունին, որոնք՝ փորձառութեան ու կեանքի դասերու վրայ հիմնուած, այլաբանական ձեւով խրատական խոր ճշմարտութիւններ կը պարունակեն իրենց

մէջ։ Այդ դէպքէն վերջն է որ ես հասկցայ մեր հիներու այս առասացուածքի ճշմարտութիւնը. «Մեծ պատառ կեր, բայց մեծ մի՛ խօսիր»։ Խե՛ղճ Տիգրան Խաչբուժեան։

# ԽՈՅ

Հոկտեմբերի վերջերն էր։ Օր մը Նախավկայի վանահայրը վանքէն եկեր էր, գործի մասին խորհրդակցելու։

Խանասորի արշաւանքի պատրաստութեան ժամանակ, այդ վանքը շատ մեծ դիւրութիւններ էր ընձեռած փոխադրութեան գործին։ Կարօն ու Մածուն Խեչօն այդ շրջանի յայտնի գործիչներն էին։ Ռուսական ափէն, քէլէկներով Արաքսի վրայով ռազմամթերք կ՚անցնէին պարսկական ափը՝ գիշերով, իսկ անկէ ալ կը կրէին Սալմաստ կամ Խոյ։

Բայց Խանասորի արշաւանքէն վերջ, այդ գիծը երեսի վրայ էր մնացեր տարիներ։ Երեւանի մեր ընկերները այդ ժամանակները նորէն մարդ էին ուղարկած Հին Ջուղա՝ գիծը բանալու։ Իսկ վարդապետն ալ եկեր էր ինձ մօտ այդ մասին խօսելու։

Վարդապետի հետ առանձնացած իմ սենեակս կը խօսէինք, երբ Յակոբը ներս մտաւ յայտնելով, որ Կովկասէն նորեկ երիտասարդ մը եկեր է, ու կ՚ուզէ զիս տեսնել անպատճառ։ Դուրս ելայ բակը։ Միջահասակ, նիհարակազմ երիտասարդ մը, ձեռքը փաթթած ճերմակ կտաւով, բարձրավիզ կօշիկներ հագին, ներկայացաւ ինձ, ու նամակ մը յանձնեց։

Երիտասարդը Արամն էր, հետագային այն բացառիկ կեդրոնական դէմքը, որ մեր վերջին 10–15 տարիներու ամենացայտուն, հոյակապ ղեկավար ուժը եղաւ։ Բայց եւ այնպէս, այն օրերուն Արամ փաշան չէր, այլ պարզ նոր սկսնակ մը, մեր սերունդի մէկ համեստ ներկայացուցիչը, որ ինքզինքը նուիրեր էր Գործին։

Նամակը բժ. Տէր Դաւթեանն էր գրած, աւելի քան լակոնական, ճիշդ այնպէս, ինչպէս կը խօսի։ Նամակին միտքը այս էր.—

«Գրաբերս մեր լաւ տղաներից է. Վան է անցնելու։ Աշխատիր շուտով ճանապարհել»։

— Ու Աստծու բարին։ Տօ տնաքանդներ, ինձ ուղարկեցիք միայն վեց ամսով Պարսկաստան, որ քիչ մը փորձառութիւն ձեռք բերեմ ու յետոյ անցնիմ Երկիր։ Ահա տարին վաղուց ան-

ցաւ, ու ոչ ոք չի գար տեղս բռնելու, որ ես ալ իմ կարգին Երկիր անցնիմ: Եւ սակայն մարդ կ'ուղարկէք «մեր լաւ տղաներից», որ շուտով երկիր ճամբեմ, մինչդեռ իմ անթիւ նամակներուս պատասխան իսկ չէք տար:




Ա Ր Ա Մ

Երկիր մտնելու ժամանակ

Ներսս կուտակուած մաղձը թափեցի Արամի գլխուն, եւ Բիւրոյին ալ, բժիշկին ալ տուի՝ զորս դու պատուիրեցեր:

Խեղճ Արամը շշմած մնացեր էր, առանց հասկնալու իմ կատաղութեան բուն պատճառը:

Զէնքը տարի միւս սենեակը տղոց քով, իսկ ես մտայ վարդապետին մօտ մեր ընդհատած խօսակցութիւնը շարունակելու:

Արամը իր «Յուշերուն մէջ այդ դէպքը բաւական զաւեշտական կերպով կը պատմէ եւ կը շեշտէ, որ նոյնիսկ սենեակս չեմ տարած զէնքը, այլ ձգեր եմ զինուորներուն մէջ:

Նախ ըսեմ, որ Արամը իր «Յուշեր»ը գրած է, երբ Արամ փաշա էր եղած եւ հասկնալի հոգեբանական փոփոխութեան մը ենթարկուած: Եւ երկրորդ՝ մեր տան մէջ զինուորի կամ ինձ յատուկ սենեակ չկար. ամէն սենեակ ամէնքին համար էր: Բայց երբ կարեւոր բան մը լինէր խորհրդակցելու, այն սենեակը կը քաշ-

ուէինք, ուր իմ անկողինս էր, ու բնական է, որ զինուորները մեզ չէին խանգարեր։

Ինքը կ'ըսէ արդէն, որ ես միւս սենեակի մէջ Նախավկայի վարդապետին հետ տեսակցութիւն ունէի։ Նոր մարդ մ'էր ինքը․ ճիշդ է, որ Բիւրոյէն նամակ ունէր, բայց այդ պատճառ մը չէր, որ ես անմիջապէս ամէն բան բանայի անոր առջեւ, մանաւանդ որ հազիւ երկու խօսք փոխանակեր էի իր հետ։ Եւ վերջապէս ի՞նչ կը նշանակէր «լաւ տղայ», մենք բոլորս ալ առանց բացառութեան «շատ լաւ տղաներ» էինք, քանի որ նոյն գործին էինք լծուեր՝ այնքան անձնուրաց կերպով։

Վերջէն Փայլակի հետ ներս եկան, երբ վարդապետը գնաց։ Փայլակը, որ ծանօթ էր Արամին Բագուէն, հանդամանօրէն ծանօթացուց մեզ իրարու։ Երբ բաւական մը խօսակցեցանք, Արամը ուժեղ տպաւորութիւն ըրաւ վրաս։ Եւ ոչ միայն անմիջապէս ուղարկեցի զինքը Մենաւոր, այլ Փայլակն ալ հետը դրի, որպէսզի որքան հնար է հեշտացնէ եւ արագացնէ Արամի Երկիր անցնիլը, թէեւ մեծապէս կը կասկածէի որ յաջողի, քանի որ ժամանակը անցած էր։

Արամը երբ իր «Յուշեր»ը կը գրէր, օր մը միասին կառք վերցուցինք ու գնացինք Ղուրտուղլի, ուր իր նշանածը կը մնար։ Հոն «Յուշեր»ը տուաւ, որ կարդամ, ու եթէ բան մը պակաս է ձգեր, յիշեցնեմ իրեն։

Իմ մասին գրածը որ կարդացի, ըսի, թէ անարդար է, թէ ես իր դէմ անձնական ոչինչ ունէի, թէ ես իմ կարգին կ'ուզէի Երկիր անցնիլ, ու չէի հանդուրժեր, որ ես մնամ Խոյ եւ ուրիշներ գան ու անմիջապէս անցնին Երկիր։

Միջանկեալ ըսեմ այստեղ, որ Արամը, իր «Յուշեր»ուն մէջ, երբ Սարգիսի ու իմ մասին կը խօսի, տեղ մը կ'ըսէ․—

«Մալխասը, առհասարակ կազմակերպական գործերի մէջ սիրողի դեր է կատարել, երբ ճէֆը տուել է՝ մտել է, մէկ էլ խառվել չէզոքացել է»։

Զեմ գիտեր ինչո՞ւ «Հայրենիք»ի մէջ Արամի այս կարծիքը փոփոխութեան էր ենթարկուած, ու «սիրողը» դարձած էր «սիրով դեր է կատարած»։ Վրիպա՞կ է այս թէ ինքնասիրութեանս խնայելու համար եղած, չեմ գիտեր։ Սակայն, Արամը ամբողջովին իրաւացի է իր յայտնած կարծիքին մէջ, երբ կ'ըսէ, թէ Մալխասը յեղափոխական սիրող է։

Այս մասին ես աւելի ընդարձակ կը խօսիմ իմ վերջաբանին մէջ: Լաւ է մարդ այնպէս դուրս գայ, ինչպէս որ կայ, եւ ոչ թէ ինչպէս կ'ուզեն ուրիշները:

* * *

Իր տեղին մօտցայ յիշելու, որ Թաւրիզէն Տիգրանը եկաւ Վան անցնելու համար: Միանալով Վարդանին, Տիգրան ապահով Վան հասեր էր, կարծեմ Սեպտեմբերի վերջերուն:

Տիգրանի մասին ես երկարօրէն պիտի խօսիմ, անոր Վան հանդիպելուս առթիւ:

Ըսեմ եւ միւսներու մասին (առանց ժամանակագրական կարգը պահելու), որոնք իմ օրով Երկիր անցան կամ փորձեցին անցնիլ:

Մակուեցի Մեսրոպը, բնիկ Պարսկաստանցի, հայրենասէր երիտասարդ մ'էր, ծանրաբեռնուած բազմանդամ ընտանիքով մը: Երբ Խոյ գնացի, ի հարկէ ծանօթացայ անոր հետ. այդ ժամանակ ան կը պատրաստուէր ընտանիքով իր ծննդավայրը՝ Մակու երթալ: Բուռն ցանկութիւն յայտնեց Երկիր անցնելու:

Խելքը գլխին, ծանրաբարոյ եւ նուիրուած մէկն էր: Միակ յանցանքը տեղացի լինելն էր, որ, դժբախտաբար, մեր յեղափոխական կեանքին մէջ, շատ անգամ, արգելառիթ հանգամանք մը կը համարուէր: Ինչպէս կ'ըսեն, մարգարէն իր գաւառին մէջ յարգանք չունի, այդպէս ալ տեղացի գործիչը, դրսեցիի գրաւչութիւնը չէր կրնար ունենալ:

Ամէն տեղ ալ այդ նախապաշարումը ցայտուն կերպով երեւան կուգար, բան մը, որ իր հոգեբանական որոշ պատճառներն ունէր: Հազուագիւտ տեղացի գործիչներ եղած են, որոնք ձգած լինին այն ազդեցութիւնը եւ հեղինակութիւնը, ինչ որ դրսեցիները: Եւ սակայն, շատ անգամ տեղացի գործիչներ, աւելի ընդունակ, աւելի գործունեայ, եւ աւելի իրատես են եղեր քան դրսեցիները:

Մեսրոպը դիմեր էր մէկ քանի անգամ Սամսոնին, որը սակայն, չեմ գիտեր ինչ պատճառով մերժեր էր: Անգամ մը Սալմաստ երթալուս՝ խօսեցայ Սամսոնի հետ, եւ համոզեցի զայն: Մեսրոպը, ընտանիքը Մակու ձգելէն վերջը, անցաւ Երկիր, ուր դժբախտաբար երկար չկրցաւ մնալ հիւանդութեան պատճառով:

Օր մ'ալ, կարծեմ Սալմաստէն, Արտաշէս Մելքոնեանը (Բր–

ընդար) եկաւ, Երկիր անցնելու համար:

Երեւանի կիմնազիայի յայտնի «Բօրեազ» խմբի անդամներէն մէկն էր ան, որ վերջէն, հայ-թրքական ընդհարումներու ժամանակ, Ղազախի կռիւներուն մասնակցեցաւ, Սեւ Քարեցի Սաքոյի խմբին մէջ մտնելով:

Բնիկ Երեւանցի էր, կամ մօտի գիւղերէն: Այս մարդը միշտ գոհ է եղեր իր քիչ մը կարճ խելքին ու չափազանց յափշտակուող բնաւորութեանը: Բայց իսկապէս գէշ տղայ չէր, քիչ մը ֆէլէկէօզ, ամէն բանի մէջ նետուող, նորութիւններու սիրահար, եթէ այդ նորութիւնը նոյնիսկ կոմունիստական արքայութիւն մը հաստատելու երեւակայական ցնորքը լինէր:

Անկասկած նուիրուած մարդ էր, տիպ մը, որ չունենալով ուժեղ նկարագիր, ենթակայ էր սայթաքումներու: Խառնուածքով՝ տաք ու դժբախտաբար, խելքով քիչ մը կարճ՝ այդ երիտասարդը եղերական վախճան մը ունեցաւ, որուն իրապէս արժանի չէր:

Ուղարկեցի զինքը Ընծայրին, որ Երկիր ճամբէ զայն: Վալադներու հետ կ'անցնի սահմանի լեռները եւ հոն, դժբախտ թիւրիմացութեամբ մը, իր ատրճանակի իսկ գնդակով բազուկէն կը վիրաւորուի ու կը վերադառնայ վանք, անկէ ալ Խոյ:

Վէրքը բաւական մը լաւանալէն վերջը, ճամբեցի զինքը կրկին Կովկաս:

Երկիր անցնիլ փորձողներէն մէկն ալ, Թարխան անունով պատանի մըն էր, որ կարծեմ կիսատ ձգած Երեւանի թեմականը՝ եկեր էր Երկիր անցնելու համար:

Ի հարկէ ազգային պարտականութեան գիտակցութիւնը, գնահատելի զգացում մ'է ամէն մարդու, ի մասնաւորի պատանիներու մէջ: Բայց Հայաստան երթալը կամ յեղափոխականի չարքաշ կեանք ապրիլը, որքան ալ ռոմանթիք եւ յափշտակող, ունէր շատ մը դժուարութիւններ, որոնց դիմագրաւելու համար հարկաւոր էր կազմակերպուած բնաւորութիւն, ֆիզիքական տոկունութիւն եւ կամք:

Լաւ եւ ոգեւորուած տղայ մ'էր Թարխանը, բայց ինչպէս կ'ըսեն բերանը դեռ կաթ կը հոտէր: Այս տղան ալ բժիշկ էր, այսինքն՝ որոշեր էր բժշկութիւն ընել: Կովկասէն հետը բերած էր տնային բժշկարան մը, եւ բաւական մը դեղեր: Դեղերու քանակին եւ տեսակին եթէ նայելու լինէինք, մասնագէտ բժիշկ մը պի-

տի համարուէր ան ինծ հետ բաղդատած, բայց այդ բան մ՚էր, որ իմ ինքնասիրութիւնս թոյլ չէր տար խոստովանիլ: Մէկ ալ այն կայ, որ ես աՀագին փորձառութիւն ունէի արդէն, իսկ բըժշկութեան մէջ, փառք Աստուծոյ, ոչինչ այնքան արժէք ունի որքան փորձառութիւնը:

Թարխանը քանի մը օր մնաց Խոյ, մինչեւ որ սուրհանդակներու հետ զէնքը վանք ուղարկեցի: Ընծայբը յաջորդ սուրհանդակի հետ գրած էր ինծ, թէ «այս տղան ղրկեր ես, բայց ինչո՞ւ մոռցեր ես վարտիքը կապելու, խօնջան մ՚ալ ղրկելու», ըսել ուզելով, որ շատ երեխայ է: Բայց եւ այնպէս յարմար վաղդներու հետ առաջին պատեհութեամբ իսկ ուղարկեր էր Երկիր:

Մեր Երեւանցի Տարտաղէնը, միւս չալակաւորներու նման, կը պահանջէ, որ իրեն ալ չալակի բաժին հանեն՝ ըսելով, թէ ինքը ուժեղ է եւ ոչ մէկէն ալ պակաս:

Սակայն, հազիւ թէ Ալակեանի տակ հասած, սաստիկ կը յոգնի այլեւս քալելու անկարող կը դառնայ: Եւ խեղճ վալաղները ոչ միայն իր բեռը իրենց միջեւ կը բաժնեն, այլ եւ թեւերը մտած կ՚օգնեն Ալակեանը բարձրանալու: Հազիւ սարի կէսը հասած, Թարխանի ոտքերը վերջնականապէս կը հրաժարին այլեւս առաջ երթալէ, թէկուզ մայր Հայաստանի հողը մտնելու համար: Ճարահատ երկու վալաղ կը մնան Թարխանի քով, իսկ միւսները կ՚անցնին, այն հասկացողութեամբ, որ քիչ հանգստանալով՝ շուտով իրենց պիտի հասնին սարի միւս կողմը:

Թարխանը եւ երկու վալաղները ոչ միայն կը նստին հանգչելու, այլ եւ կը պառկին եւ անուշ անուշ կը խռմփացնեն, մինչեւ որ արեւը կը ծագի: Երբ կ՚արթննան, կը տեսնեն, որ իրենց հանգստավայրը ընտրեր են քրտական կոներէն հազիւ երկու հարիւր քայլ մը հեռու, եւ քրտերը առօք փառօք եկեր զիրենք շրջապատեր են: Բարեբախտաբար, տղոց չեն վնասեր, քիչ մը կը ծեծեն, մաքուր մը կը թալլեն ու բաց կը ձգեն երկու վալաղները, որոնք Խաչանցի էին, եւ քրտերուն ծանօթ:

Թարխանը երբ կը տեսնէ, որ Հայաստան երթալու ճամբան այդպիսով քիչ մը շատ երկնցաւ, չնաչխարհիկ գաղափարը կ՚ունենայ յայտնելու, որ ինքը բժիշկ է, եւ կ՚իսլամանայ, եթէ իրեն չվնասեն: Մինչ այդ քիւրտերուն Շէյխը վրայ կը հասնի:

Ըսինք արդէն, որ Թարխանը վայելուչ պատանի մ՚էր հազիւ 17–18 տարեկան, եւ կը պատահի ալ, որ Շէյխը կ՚ունենայ մէկ

հատիկ աղջիկ մը, 15 տարեկան: Գործնական քիւրտ Շէյխը կը մտածէ՝ «Լաւ երիտասարդ է, դեռ բժիշկ ալ, ասկէ լաւ փեսացու չեմ կրնար ճարել», եւ առօք փառօք կը տանի Թարխանը իր վրանը: Իրիկուան, կը նշանեն Թարխանը Շէյխի աղջկան, Նիքեահը ձգելով չորաթուան վերջը: Այդպիսով մեր քիւրտ Շէյխը աղջիկը տալով Թարխանին, կողմնակի կերպով կը խնամիանայ Դաշնակցութեան հետ: Թերեւս՝ այս վատ ձեւ մը չէր փոխադրութեան գործին զարկ տալու. ո՞վ գիտէ, Թարխանը քրտանալով թերեւս տասնապատիկ աւելի օգտակար լինէր մեզի, քան Երկիր անցնելով, որմէ շատ ալ օգուտ մը չէինք ակնկալեր:

Սակայն, Ընծայրը քանի մը օր վերջը, իմանալով տղոց Թալանուիլը, եւ մանաւանդ Թարխանի նոր «ելոյթը», Շէյխի աղջըկան հետ ամուսնանալու պարտաւորութիւնը, կ'երթայ Մակու եւ՝ Սարդարին դիմելով՝ կը խնդրէ, որ միջոցներ ձեռք առնէ, վանքին սարկաւագը ազատելու, որ Խաչան կ'երթար քանի մը օրուան համար, եւ քրտերէն ... առեւանգուեր է:

Կը հասնի հարսանիքի օրը: Քրտերը կը պատմեն, թէ Թարխանը, միջավայրին յարմարած, շատ ուրախ տրամադրութեան մէջ է եղեր: Ըստ քրտական աղբիւրներու՝ աղջիկը թէ՛ գեղեցիկ է եղած, թէ՛ հարուստ եւ թէ՛ հէքիմ պաշիի վրայ թունդ սիրահարուած: Այնպէս որ միւս քիւրտ կճէները, սկսեր են նախանձիլ Շէյխի աղջկան անօրինակ բախտին:

Եթէ այդ հարսանիքը տեղի ունենար, ես կը հաւատամ, որ քիւրտ աղջիկները պիտի սոփլէին իրենց տղամարդոց, կռուի պարադային, ոչ թէ սպաննել ֆէտայիները, այլ գերել զանոնք իրենց հետ ամուսնացնելու համար: Եւ այդ ոչ ոք կրնայ ըսել, թէ աւելի վատ կը լինէր քան թէ մեռնիլը, եթէ նոյնիսկ մեռնիլը յեղափոխական բառարանով կոչուի նահատակուիլ:

Բայց խեղճ Թարխանը իր մուրազին չհասաւ, եւ մեր փեսացուն զօռով ետ բերին վանք... Այսպէսով Շէյխի մորթած երկու ոչխարներն ալ զոհ գնացին Քրտօ-Դաշնակցութեան խնամիութեան, որ իր կատարումին չհասաւ այն ատեն:

Վանքէն ուղղակի Կովկաս անցաւ Թարխանը: Տարիներ վերջը զինքը նորէն տեսայ. Քաղաքներու Միութեան մէջ ինչ որ պաշտօն ունէր եւ բոլորովին հեռացած էր մեզմէ:

Այդ տղան, բախտի բերումով, վերջէն փոխանակ Շէյխին փեսայանալու... ալ աղջիկ չգտաւ աշխարհի երեսին, գնաց ե-

կաւ, եւ Սուրբ Գրիգորի որբանոցէն աղջիկ մը առաւ կնութեան, որ մօրս որդեգիրն էր... այդ ձեւով, փեսայանալով ինծի:

* * *

Ըսեր եմ արդէն, թէեւ համառօտ, թէ ի՞նչ նշանակութիւն ունէր Խոյը երկրի գործունէութեան համար: Նախավկայի գիծը հետզհետէ սկսաւ կանոնաւոր կերպով գործել: Ռուսական ափէն թուլուխներով ռազմամթերք կը փոխադրուէր վանքը՝ պարսկական ափով, անկէ ալ պարսիկ ձիաւորներ կը հասցնէին Սէյտավար հայաբնակ գիւղը, որ Խոյէն հազիւ երկու ժամ հեռու լինէր: Այնտեղէն կը կեդրոնացնէինք մեր տունը, եւ պարբերաբար վանք կ'ուղարկէինք:

Կոթուրի վրայով բացուած գիծը, որ ամենակարճն էր եղածներուն մէջ, եւ որ բացառապէս թղթակցութեան եւ անլեգալ գրականութիւն ներս մտցնելու համար կը գործածէինք, դժբախտաբար, երկար բաց չմնաց: Սուրհանդակը Վանեցի Թուրք մըն էր, որ իր ծառային հետ կ'երթեւեկէր: Անգամ մ'ալ, Վանի ընկերներու յանձնարարութեամբ, ռազմամթերք տուի որ տանի: Տարաւ, բայց տեղ չհասցուց: Եւ ի վարձատրութիւն իր աչքաբացութեան, Վանի մէջ գլուխը կերեր էին մեր տղաքը:

Այդպէսով այդ գիծը փցուեցաւ մեզ համար:

Ես Խոյի մէջ լեգալ կ'ապրէի: Ճիշդ է, շատ քաղաք չէի երթար, բայց ե՛ւ կառավարութիւնը ե՛ւ Թուրք քօնսուլը շատ լաւ գիտէին իմ ինչացու լինելս, այսուհանդերձ ոչ մէկ անախորժութիւն պատճառեցին ինծի. ամերիկեան քաղաքացի լինելս իր արժէքն ունէր, կը զգուշանային աւելորդ գլխացաւանքէ:

Բայց Հայ-Թաթարական կռիւներու շրջանին դրութիւնը փոխուեցաւ. մանաւանդ ձախող դէպքէ մը վերջը, որը յետոյ դարձաւ իմ քաղաքէն հեռանալուս պատճառը:

Հայ-Թաթարական կռիւներու ընթացքին, երբ ամբողջ Կովկասը, համատարած կռուի ասպարէզ մ'էր դարձած, Պարսկաստանի մէջ, շնորհիւ պարսիկ կառավարութեան, ոչ մէկ միջադէպ պատահեցաւ. բայց ինչ կասկած, որ Կովկասի ընդհարումները վատ կ'արձագանգէին Պարսկաստանի, եւ մասնաւորաբար Խոյի մէջ, որ այնքան մօտ էր սահմանին: Բուռ մը հայութիւն, Թաթարական հսկայ զանգուածին մէջ կորած, զուրկ ինքնապաշտպանութեան որեւէ միջոցէ, ամբողջ յոյսը դրեր էր Դաշնակցու-

թեան վրայ: Իսկ մենք գրեթէ ոչինչ ունէինք:

Ճիշդ է, որ թաղի մէջ երկու խմբեր կային. նոյնպէս կազմակերպուած էր Սէյտավարը, Տիգան եւ Շորաւը. բայց մեր ունեցածը ամբողջ, հազիւ 20 կտոր զէնք լինէր, իսկ թէ գործածողները ինչ աստիճանի ռազմունակ էին, այդ ալ հարց է: Մեր ունեցած ողորմելի զէնքերն ալ ցրուած էին զանազան գիւղերու եւ թաղերու մէջ: Պատրաստած էի քիչ թէ շատ ռազմունակ ուժերէ թռուցիկ խումբ մը, դէպքի մը ժամանակ, օգնութեան հասնելու, բայց այդ ուժը բաւարար լինելէ շատ հեռու էր:

Խոյի մէջ, միշտ ալ մեծ քանակութեամբ փամփուշտ ունէինք, ամէն տեսակ զէնքի համար, բայց հրացաններ չունէինք: Գրեցի Ընծայրին, որ 5–6 հատ հրացան ուղարկէ ինծի, եթէ պահեստի մէջ բաւական մը ունի, մէկ քանի ամսուան համար, մինչեւ որ փոթորիկը անցնի: Այդ ժամանակ, թէեւ մենք բաւականաչափ փամփուշտ կը ստանայինք, մանաւանդ պերտանի փամփուշտներ, որոնք Ալեքսանդրապոլի զինարանէն մեր թռցուցածներն էին, բայց հրացաններ ընդհանրապէս չէինք ստանար, որովհետեւ Կովկասի մէջ ալ անոնց կարիքը շատ մեծ էր:

Չեմ գիտեր ի՛նչ պատճառով, այդ անգամ սուրհանդակները, հակառակ ընդունուած սովորութեան, դեռ լաւ չմթնած քաղաք մտան: Թէեւ հրացաններու խողովակները եւ փայտեղէն մասերը առանձին փաթաթուած էին, բայց շատ մեծ նրբամտութեան պէտք չկար՝ հասկնալու համար, որ զէնք կը տանէին:

Այդ լուրը՝ բերնէ բերան դարձաւ գերան, հինգ սուրհանդակներու թիւը պարսկական հզօր երեւակայութեան շնորհիւ դարձաւ քանի մը տասնեակ, որոնք ձիաբեռներով զէնք կը տանէին ղաչախպաշու տունը···

Այս լուրը ամենաշատ տարածողը եւ գրգռութիւն հրահրողը, մեր թաղի պարսիկ խանութպան մ՚էր, որմէ վերջերս մեր Պատուելին այլեւս պանիր եւ մածուն չէր գներ, ինչ որ թիւրիմացութեան պատճառով: Այդ մարդն ալ թշնամանալով, կ՚ուզէր որպէս թէ վնասել մեզ: Այս պատուելիական պոյքոթին ես բոլորովին անտեղեակ էի: Գիտէի այդ մարդը. ինքնատեսակ լրտես մ՚էր, ինքն իր հաշուին, աչալուրջ կը հսկէր մեր տան վրայ. ո՞ւր գնացի, ո՞վ եկաւ ինձ այցելութեան, քանի՞ զինուոր կայ տունը: Եւ գիտցածները դրկից հայերուն կը պատմէր, բայց մինչ այդ՝ ոչ մէկ վնաս չէինք տեսած:

Կ՚ըսեն փորձանքը առանձին չի գար: Եւ շիտակ է: Բան մը, որ պատահի, կծիկի թելի պէս կ՚երկարի: Նախավկայէն վերջին անգամ ուղարկուած ռազմամթերքը, մեծամասնաբար բէրտանի փամփուշտներ, քէլէկի դառնալու պատճառով Արաքս գետն էին թափեր. այնպէս որ ինձ հասան սաստիկ ժանգոտած վիճակի մէջ:

Իրիկուն մը, մեր տան վերի սենեակը հաւաքուած էին մեր զինուորները, եկող սուրհանդակները, նոյնպէս եւ տեղացի քանի մը տղաքներ մեր խումբերէն, եւ մեծ զգուշութեամբ աւազաթուղթով կը մաքրէին փամփուշտները: Արդէն մթներ էր, երբ գերմանական որբանոցի ուսուցիչներէն պ. Շէօնիմէնը ինձ այցի եկաւ:

Նստած նարտի (թաւլու) կը խաղայինք Շէօնիմէնի հետ: Ուշ ատեն մէկ ալ դրսի դուռը ծեծեցին: Սովորական բան մ՚էր մեր տան համար այդ: Յակոբը բոլորովին միամիտ դուռը կը բանայ: Ու ահա Քեարկիւզարի Փարաշ-պաշին 4–5 Փարաշներով ներս կը խուժէ դէպի բակը: Յակոբը թէեւ կ՚ուզէ արգիլել, բայց չի յաջողիր: Փարաշ-պաշին պէտք է թարգմանել ոստիկանապետ, այն օրերու պարսկական հասկացողութեամբ:

Ամբողջը մէկէն, աղմուկով սենեակս մտան եւ դրանը առջեւ շարուեցան: Մենք զարմացած իրենց կը նայէինք, իսկապէս որ զարմացած, որովհետեւ չէի կրնար բացատրել այդ անակնկալ այցելութեան պատճառը, որովհետեւ Պարսկաստանի մէջ, օտարահպատակներու տունը անձեռնմխելի կը համարուէր:

Շատ հանդարտ կերպով հարցուցի, թէ ի՞նչ կ՚ուզեն, եւ ինչո՞ւ այդքան բազմութեամբ ներս մտան, առանց հրաման առնելու: Պարսկական քաղաքավարութեամբ, Փարաշ-պաշին յայտնեց, որ Քեարկիւզարը վստահելի աղբիւրէ լուր ստացած է, թէ երեկոյեան կողմ իմ տունս են մտած զինուած ձիաւոր ղաչախներ, եւ կը պահանջէ, որ անմիջապէս զանոնք յանձնեմ կառավարութեան: Յայտնեց նոյնպէս, որ ինքը հրաման է ստացեր տունս խուզարկելու, եւ անմիջապէս աւելցուց, որ ինքը մեծապէս կը ցաւի, որ որպէս պաշտօնեայ ինքը պարտաւոր է Քեարկիւզարի հրամանը կատարել, հակառակ անոր որ ինծի պէս մեծ խանի մը դժգոհութիւն պիտի պատճառէ, որուն համար ինչ խօսք որ ինքը սարսափելի կերպով կը ցաւի:

Չէի գիտեր ծիծաղի՞մ թէ բարկանամ: Եղածը այնքան ա–

նակնկալ եւ անսպասելի էր, որ ինչ պատասխանելս ճիշդը չէի գիտեր: Մինչ այդ՝ վերի տղաներէն, վանքի երկու սուրհանդակներն ալ վար էին իջած, կ'երեւի փարաշներուն հանած ղալմաղալէն հետաքրքրուած:

Ծէօնիմէնը երկու բառով ինծի հասկցուց, որ ոչ մէկ կերպով տեղի տալու չէ, եթէ չեմ ուզեր այնպիսի կատարուած նախընթաց մը ունենալ, որ ապագային նոր անախորժութիւններու դուռ բանայ ինծի համար: Ես ալ նոյն մտքէն էի· ըսի փարաշ-պաշուն, թէ ես ամերիկեան քաղաքացի մ'եմ, թէ իմ տունս եղողները բոլորն ալ ծառաներս են, թէ առանց Թաւրիզի ամերիկեան քոնսուլի հրամանին ոչ ոք իրաւունք ունի խուզարկութիւն կատարելու տանս մէջ, եւ աւելցուցի սիրալիր կերպով, ի հարկէ բարկութենէս ատամներս սեղմած, թէ իմ կողմէս բարեւ ընէ Քեարկիւզարին, որուն ես վաղը առտու ինքս կ'երթամ տեսնելու:

Եւ որպէս թէ սկսայ նորէն նարտի խաղալ, բայց աչքիս պոչով կը դիտէի, թէ ի՞նչ ազդեցութիւն ըրաւ իմ պատասխանը: Կ'երեւի մարդիկը խիստ հրաման ստացեր էին· տեղերնէն չշարժեցան, իսկ փարաշ-պաշին իր սովորական քաղաքավարութիւնը մէկ կողմ նետած, վճռականօրէն յայտնեց, որ առանց ղաչախները ձերբակալելու պիտի չհեռանայ տնէս:

Դրամով կարգադրուելիք խնդիր մը չէր այդ, որ ի հարկէ կարելի էր: Անկասկած Քեարկիւզարը կրծօն մը կ'ուզէր· բայց անգամ մը օձիքս ձեռք տալէն վերջը, ջրի ճամբայ պիտի չինէին· հասոյթի նոր աղբիւր մը իրենց համար: Սաստիկ բարկացեր էի, կարծեմ մտրակովս զարկի փարաշ-պաշուն, ըսի տղոցը, որ դուրս նետեն, քիչ մը «կազմակերպելէ» վերջ:

Տղոցը ձեռքերը արդէն կը քերուէին, դուրս նետեցին սենեակէն բակը· հոն սիրալիր գիրկընդխառնութիւն մ'ունեցան անոնց հետ, որուն ընթացքին պարսիկները ինծի կը պոռային, որ ազատեմ զիրենք, եւ վերջը մերինները դրսի դռնէն դուրս նետեցինք զանոնք:

Բաւական մը խնդացինք, թէեւ անախորժ բան էր եղածը, բայց ճար չկար ուրիշ կերպով վերջացնելու: Ծէօնիմէնէն խնդրեցի, որ քիչ մը «բան» պիտի զրկեմ իրենց տունը, եթէ կը հաճի պահել: Հասկցաւ, թէ ինչ զրկել կ'ուզէի, եւ սիրայօժար պատրաստակամութիւն յայտնեց օգնելու ինչով որ կրնայ:

— Հիմա եւ ապագային, երբ իմ օգնութեան պէտք ունենաք,

կրնաք վստահիլ իմ օժանդակութեան,— ըսաւ այդ պատուական գերմանացի երիտասարդը, որ միշտ ալ օգտակար եղաւ մեզ:

Մեծ պատերազմի ընթացքին յայտնի եղաւ, որ այդ որպէս թէ որբանոցի հիւսնութեան ուսուցիչը, գերման բանակի կարեւոր սպաներէն էր, եւ շատ մեծ դեր կատարեց, ամբողջ Պարսկաստանը ափին մէջ առնելով: Վերջին գերմանական անյաջողութիւնները այնքան ազդեցին վրան, որ անձնասպանութիւն գործեց: Խոյ ամուսնացեր էր, հայ աղջկայ մը հետ:

Փամփուշտներու մեծ մասը խուրճինները լեցնելով, տղաքը շալկեցին, եւ Շէօնիմէնի ընկերակցութեամբ գնացին, բայց դեռ բաւական մը բան մնաց, առանց հաշուելու մեր տանը համար ունեցածնիս:

Քիչ վերջը Փայլակը, որ հիւր էր գնացեր դրացիի մը տունը, վերադարձաւ տուն բանէ պէխսաբէր: Քթի ծայրը սաստիկ կարմրած էր: Այդ անխուսափելի նշան մ'էր, որ ալքոհոլի քանակը քիչ մը շատ է փախեր:

Յակոբը, դեռ դրան առջեւ Փայլակին պատմեր էր Ֆարաշպաշու այցելութեան մասին: Մէկ ալ այն տեսնեմ, որ Փայլակը գոռգոռալով սենեակս մտաւ, ալ զորս դու պատուիրեցեր, բան չմնաց որ չըսէ ինծի, թէ ես թոյլ գտնուած եմ, թէ տեղի տալով, ապագայի նորանոր բարդութիւններու դուռ կը բանամ, եւայլն, եւայլն:

Թօափ էր Փայլակի այդ յանկարծակի պոռթկումը. բայց ես բոլորովին տրամադրութիւն չունէի զինքը լսելու: Մանաւանդ երբ կառաջարկէ'ր ինծի, որ տանը պատասխանատուութիւնը իր վրայ ձգեմ, քանի որ ինքն ալ օտարահպատակ է: Իսկ ինքը, ինչ որ Թրքական անցագիր էր ձեռք անցուցեր, եւ Թուրք քօնսիւլը պիտի պաշտպանէր մեզ...

Ըսի իրեն, որ հարբած է, եւ անմիջապէս պառկի եւ աշխատի քնել: Հաւանական է, որ այսպէս քաղաքավարի չարտայայտուեցայ. բայց գիտեմ, որ ինչ որ բան մրթմրթալով, Փայլակը անկողին մտաւ քէն ընող երեխայի նման: Չուզեցի Փայլակին եղածը բացատրել, քանի որ այդ անօգուտ էր այդ պահուն: Վստահ էի, որ առտուն հանգստացած, ի վիճակի կը լինի զիս լսելու եւ հասկնալու: Քիչ վերջը ես ալ անկողին մտայ, պատուիրելով Յակոբին, որ դուռը չբանայ առանց ստուգելու, թէ եկողները մերինցմէ են:

Ժամը երկուքը կար, երբ Յակոբը արթնցուց զիս, թէ բազմութիւն մը դուռը կը ծեծէ, թէ ֆարաշներ են եւ կը սպառնան դուռը կոտրել, եթէ չբանանք: Փայլակին ձայն չտուի, եւ առանց հագնուելու, Յակոբի հետ թոնրատան տանիքը ելայ, ուրկէ փողոցը կ'երեւէր:

— Ի՞նչ կ'ուզէք,— հարցուցի:

— Ղաչախները պիտի յանձնէք անմիջապէս, թէ չէ բռնութեամբ պիտի տանինք զանոնք,— պատասխանեց ֆարաշ-պաշին:

— Լաւ ըսի, գիտէ՞ք թէ ես ով եմ:

— Այո՛, ղաչախ-պաշին ես:

— Դէ՛, մտիկ ըրէ՛ք, ըսի, հիմա վար կ'իջնեմ եւ դրան ետեւը կը կանգնիմ. առաջինը, որ դրան մօտենայ՝ զոռով բանալու համար, Աստուած վկայ, պիտի գնդակահարեմ շան նման: Գիտէք, որ փամփուշտ շատ ունիմ: Դէ՛, Աստուած ձեզի հետ, ով որ ղօչախ է դրանս թող մօտենայ:



ՓԱՅԼԱԿ ՄԱԼԽԱՍ

(Ռ. Դերձակեան) (Ա. Յովսէփեան)

Եւ վար իջանք բակը, դրան ետեւը սպասելու:

Դուրսը, փողոցին մէջ անօրինակ քօմբտի մը սկսաւ: Յակոբին հետ, դրան ետեւ կծկուած՝ հազիւ մեր ծիծաղը կրնայինք պահել:

— Տօ՛, շան որդի Հասան, ես ֆարաշ-պաշի՞ն եմ թէ չէ՛:

— Վալլահ խան, դու ես որ կաս:

— Որ ես ֆարաշ-պաշին եմ, դէ՛, մօտեցի՛ր դրանը, աքացիով մը կոտրէ՛ դուռը:

— Ես քու գլխովը դառնամ Խան, ես որո՞ւ շուն եմ, որ երբ դու կաս, ես առաջինը մօտենամ դրանը։

— Տօ՛ Հիւսէյին, դուն կոտրէ՛ դուռը։

— Չէ, վալլահ, չեմ կոտրեր աղա. մենք ինչացո՞ւ ենք քու ներկայութեանդ որ...

Եւ այսպէս մօտ մէկ ժամ դրան առջեւ իրար վրայ կը ձգէին դուռս կոտրելու պատիւը, գտնելով որ այդպիսի մեծ փառքի մը արժանի կրնայ լինիլ միայն Փարաշ-պաշու պէս մեծ դիրքի տէր մարդը, որ իրենք հասարակ Փարաշներ, անոր ոտքի փոշիներն են։

Եւ որովհետեւ Փարաշ-պաշին լուրջ կասկած ունէր, թէ ներսէն գնդակ մը կարող է անախորժ ծակ մը բանալ իր մարմնոյն վրայ, երբ տեսաւ, որ իր հերոսներէն ոչ ոք չի համարձայնելու առաջինը մօտենալու դրանը, սարսափելի հայհոյանքներ թափելով իր Փարաշներու գլխուն, հեռացաւ գնաց։ Ձայները հետզհետէ հեռացան։ Մենք ալ ապահովուած, որ փորձանքը անցուցինք գէթ այդ գիշեր, գացինք քնելու։

Առտուն Փայլակը կանուխ ելեր էր։ Եւ ինծմէ որպէս թէ քէն ըրած, շտապ հագնուեր էր եւ փողոց դուրս ելեր։ Հազիւ քիչ մը հեռացած սակայն մեր տնէն, դրացիի մը տունէն Փարաշները, որ փողոցի երկու կողմն ալ բռնած են եղեր, դուրս էին թափեր եւ Փայլակը ձերբակալեր։

Միջանկեալ ըսեմ, թէ Փայլակը վրան զէնք պահելու սովորութիւն չունէր. ընդհանրապէս ան հետը զէնք չէր վերցներ նոյնիսկ վանք երթալու համար, գտնելով որ իր բնական զէնքը այնքան սուր է, որ ամէն դիպուածի ալ յարմար կուգայ։

Փայլակի անբաժան զէնքը իր լեզուն էր, որ եթէ սկսէր հոլովել, ալ դադրում չունէր։ Եւ որովհետեւ շատ բարձր կը պոռար, եւ պարսկական լեկալ եւ անլեկալ հայհոյանքներու հաւաքածոյ պաշար մ՚ունէր առձեռն, միշտ ալ կը յաջողէր դուրս պրծիլ նեղ դրութենէն։ Բայց այս անգամ, հակառակ Փայլակի բոլոր սպառնալիքներուն եւ հայհոյանքներուն, Փարաշները օձիքը բաց չէին ձգեր, որոնք բռնութեամբ կ՚ուզէին զինքը տանիլ։

Մինչ այդ՝ Յակոբը լսելով դուրսի ղալմաղալը, զիս արթընցուց։ Ես ալ մտրակս վերցուցի եւ շապիկով ու վարտիքով փողոց դուրս ելայ։ Հասայ, երբ Փայլակը քաշքշելով ոլորանոցի քովի նեղ փողոցէն վար կը տանէին դէպի քաղաք։

Թէ որո՞ւ կպաւ մտրակս, մարմնոյ ո՞ր մասերուն, չեմ գիտեր. բայց գիտեմ, որ Փայլակը բաց ձգած, ֆարաշները իրենք զիրենք ազատելու կ՚աշխատէին, առանց ինձ ձեռք զարնելու: Կ՚երեւի, չէին ուզեր, կամ պատուէր կար ինձ ձեռք չզարնելու:

Փայլակը տուն հասեր էր արդէն, երբ ես ալ ներս մտայ: Տեսայ, որ Փայլակը օրհնուած բերանը բացեր է: Համբերութեամբ քիչ մը լսեցի: Վերջը խնդրեցի, որ առ այժմ թող իր բանաստեղծական ոգեւորութեանը չափ մը դնէ, եւ խօսինք դրութեան մասին:

Փայլակի կատաղութիւնը աւելի իմ դէմս էր քան ֆարաշներուն, որովհետեւ, իր կարծիքով, ես թոյլ էի գտնուած: Մանրամասնօրէն պատմեցի իրեն առջի գիշերուան պատահարը, այնպէս, ինչպէս տեղի ունեցաւ, նոյնպէս եւ կէս գիշերէն վերջը նորէն գալերնին, եւ իմ սպառնալիքս: Չեմ գիտեր, թէ ատկէ աւելի ի՞նչ կրնայի ընել: Բայց Փայլակի հետ համաձայն էի որ ամէն գնով պէտք է աշխատիլ պատուով դուրս գալ այս դէպքէն, որպէսզի Քեարկիւզարը ըմբռնէ, թէ մենք տեղացիներ չենք, եւ մեզմէ դրամ քաշելու հաւասէն ձեռք քաշէ, եւ այդ որքան շուտ այնքան լաւ է:

Փայլակը այն կարծիքէն էր, որ պէտք է անմիջապէս երթալ Քեարկիւզարին, եւ միաժամանակ բողոքել նաեւ Թաւրիզի անգլիական հիւպատոսին, որ ամերիկեան քօնսիւլի բացակայութեան պատճառով մեր գործերուն կը նայէր:

Համաձայնեցայ, որ երթանք Քեարկիւզարին, բայց մէկ պայմանով, որ ինքը լռէ եւ ես միայն խօսիմ: Իսկ քօնսիւլին բողոքելը գտայ վտանգաւոր, քանի որ կրնար անցանկալի հետեւանքներ ունենալ մեզ համար:

Ձիերը նստանք եւ՝ Յակոբն ալ հետներս վերցուցած՝ փողոց դուրս ելանք: Քշեցինք դէպի քաղաք: Բաւական մը տեղ ֆարաշները մեր ետեւէն վազեցին, որպէս թէ մեզ ձերբակալած կը տանէին, բայց քիչ քիչ ետ մնացին: Քեարկիւզարի տան ընդարձակ բակին մէջ, իջանք ձիերէն: Ղօլամի մը հարցուցի, թէ որտե՞ղն է Քեարկիւզարը. ձեռքով սենեակ մը ցուցուց, որու պատուհաններն ու դուռը միաձեւ լինելուն՝ չէի գիտեր, որտեղէ՞ն ներս մտնել: Հաւանական է քիչ մը ուժեղ հրեցի փեղկ մը, պատուհան է եղեր, եւ շրջանակը քիչ մը ուժեղ պատին զարնուելով, ապակիները կոտրուեցան: Ես ու Փայլակը իրար ետեւէ վար

ցատկեցինք սենեակին մէջ, որ գետնէն արշին մը ցած էր:

Մեր այս անակնկալ՝ եւ պատուհանէն մուտքը խիստ վրդովեց Քեարկիւզարի անդորր մրափը: Քեարկիւզարն ու ես, կարծես խօսք մէկ ըրած, եկեղեցիի փոխասացներու նման, խօսքը իրար բերնէ կը խլէինք: Խօսքի ճակատամարտ մ'էր անվտանգ: Հետզհետէ այն ձայնը վար քաշեց, իսկ ես, որպէս թէ սաստիկ բարկացած, անցագիրս քթին դէմ տուած կը սպառնայի անգլիական քօնսիւլին բողոքել, միջանկեալ հասկցնելով, թէ վալիաթի մօտ ալ շատ մօտիկ մարդ ունիմ, որով կրնամ իրեն հետ հաշուի մտնել: Եւ սենեակի միւս անկիւնը նստելով — ի հարկէ առանց հրաւէրի — գրպանէս թուղթ եւ մատիտ հանեցի, որպէս թէ հեռագիր գրելու համար:

Եւ տեղի ունեցաւ ֆօմըրթիի երկրորդ արարը:

Որպէս թէ մինչ այդ մեր խօսակցութիւնը բոլորովին տարբեր նիւթի մասին եղած լինէր, մէկ ալ մեր բարեկամ Քեարկիւզարը, յօնքերը պռստելով, ինծի դարձաւ եւ շատ անուշ կերպով ըսաւ.

— Աստուածդ սիրես նէ՝ քիչ մը հանդարտ խօսինք. լաւ չհասկցայ քեզի. ըսել կ'ուզես, թէ իմ Փարաշաներս համարձակեր են քեզի երէկ գիշեր անհանգի՞ստ ընել...

— Անհանգիստ ընե՞լ...

Որքան ալ վարժուած էի պարսկական ինքնայատուկ փօլօթիֆային, պիտի խոստովանիմ, որ Քեարկիւզարի volte-face-ը այնքան յանկարծակի եւ վրան բաց էր, որ չկրցայ իսկ պատասխանել: Եւ ի՞նչ պատասխանէի որ: Ֆարաշ-պաշին, գլուխը կախ, մեղաւորի մը նման առջեւնիս կանգնած էր, մինչդեռ Քեարկիւզարը, որպէս թէ սաստիկ զայրացած, կը յանդիմանէր զայն, որ գիտնալով, թէ ես իր թանկագին բարեկամն եմ, առանց հրամանի այնքան առաջ է գնացեր, որ յանդգներ է նոյնիսկ սենեակս մտնել խուզարկութիւն կատարելու համար:

Ու Քեարկիւզարը իր տրամաթիք ճառը վերջացուց հրամայելով, որ պառկեցնեն շան որդի Փարաշ-պաշուն, եւ ֆալախանի կապեն զայն, մինչեւ որ ես բաւ համարեմ ծեծը: Եւ Քեարկիւզարը խօսքը վերջացնելով ինծի դարձաւ, ճարտար դերասանի մը նման, որ յաջող ժեստ մը կատարելէն վերջ, կը սպասէ, որ հանդիսականները զինքը ծափահարեն: Միաժամանակ դէմքի արտայայտութիւնը ակներեւ կերպով ըսել կ'ուզէր, թէ՝ «բան մըն

էր փորձեցինք, բայց անյաջող ելանք, ա՛լ դու ալ շատ վրայ մի՛ քալեր»։

Եւ իսկապէս, վրայ քալելու ալ բան չկար. փորձ մ'էր, Զատկըւան հաւկիթի պէս բան մը, որ Քեարկիւզար ակռային զարնելով՝ կարծրութիւնը փորձեց։ Եթէ կարողանար՝ փախցնելով գիս՝ կաշառք մը ստանալ, լաւ ու լաւ, իսկ երբ չյաջողեցաւ, պէտք էր անուշ տեղը կապել եւ սրտագին բարեկամութիւնը շարունակել։

Ի հարկէ, խնդրեցի, որ այս անգամ ինծի պաշխեն… Փարաշպաշու ծեծը…

* * *

Այս դէպքը պատճառ եղաւ, որ մենք մտածենք գաղտնարան մը ունենալու մասին։ Եւ ասոր գիւտը կը պարտինք Փայլակին։

Որոշեցինք ախոռին մէջէն գետնափոր անցք մը շինել, որ երկննայ դէպի կողքի դրացիի բակը, ու հոն ընդարձակ սենեակ մը փորել՝ հաստ գերաններու վրայ հողը վեր բռնելով։

Ախոռը ընտրեցինք որպէս Թագստոցի մուտքը, անոր համար, որ կրնայինք այնպէս մը կարգադրել, որ ոչ ոք չմտնի հոն որոշ ժամանակներ. իսկ տան միւս մասերուն մէջ այդ անկարելի էր։ Եւ մէկ ալ այն կար, որ Յակոբը, Փայլակը եւ ես միայն պիտի իմանայինք մեր պահարանի տեղը։

Գործի սկսանք։ Փայլակը նման աշխատանքներու չէր գար, գիշեր մը աշխատեցաւ միայն. վրան գլուխը ցեխոտած եկաւ, թէ սաստիկ յոգնած է ու ալ չի կրնար աշխատիլ։

Մեր աշխատանքը կէս գիշերէն վերջը տեղի կ'ունենար։ Հերթով ես ու Յակոբը կ'իջնէինք փոսին մէջ հողը փորելու, եւ յետոյ քթոցով հողը պարտէզ կը տանէինք։ Առտուները մեծ սալայատակ քարը տեղը կ'իջեցնէինք եւ կ'երթայինք քնելու։ Զինուորները, որ առտուն կ'երթային ձիերը խնամելու, արտասովոր ոչինչ կը նկատէին ախոռին մէջ։

Փոսը արդէն շատ էր խորացած, մէկ մարդաբոյէն աւելի, բերանը շատ փոքր, հազիւ երկու քառակուսի ոտք մեծութեամբ, իսկ խորքը շատ լայն էր, ուր ազատ կրնայինք կանգնիլ, բահ ու բրիչ գործածել։

Եւ պատահեցաւ, որ օր մը, երբ տան մէջ ոչ սուրհանդակ եւ ոչ ալ զինուոր կար, ամբողջ գիշերը աշխատելէն վերջ, դուրս եկանք եւ առանց քարը իր տեղը դնելու քաշուեցանք քնելու։

Առտուն Յակոբը զիս արթնցուց, յայտնելով որ իմ ձին, Գոլոզը չկայ, որ անպատճառ գողերը փախցուցեր են: Վազեցի ախոռը. իսկապէս որ ձին չկար: Բայց եթէ գողերը տարեր էին, ինչո՞ւ միայն այդ ձին եւ ոչ միւսներն ալ, եւ յետոյ ինչպէ՞ս դուռը բացեր էին:

Շուտով խնդիրը պարզուեցաւ սակայն: Մեր անհանդարտ Գոլոզը, գիշերը գլուխը կ'ազատէ մսուրի պարանէն եւ միւս ձիերուն հետ կը սկսի զզուըտիլ՝ երբ յանկարծ, ետեւի ոտքերը կ'իյնան փորուած ծակին մէջ: Ու հետզհետէ ելնել փորձելով աւելի եւս կը խրուի ծակին մէջ, մինչեւ որ ամբողջովին կ'իյնայ մեր բացած ծակին մէջ:

Որքան փորձեցինք երեքով բան մը ընել, ձին դուրս բերելու, բայց չյաջողեցանք: Ստիպուած՝ դրկից տղամարդիկ կանչեցինք, որոնք շատ մեծ դժուարութեամբ, ծանր աշխատելէ վերջ, վերջապէս յաջողեցան ձին ազատել:

Բայց մեր գաղտնարանը արդէն յայտնարան դարձաւ, եւ պատճառ՝ ծայր տուող առասպելներու: Ոմանք ըսին, որ տանս տակը ամբողջ գաղտնարաններ են, ռազմամթերքներով լեցուն. ոմանք ալ, աւելի սրամիտները, խորհրդաւոր կերպով իրար ականջի կը փսփսային, թէ ինչ որ «ընկեր» եմ սպաններ եւ ուզեր եմ հոն թաղել, որ ձայնը դուրս չգայ: Իսկ ամենէն աւելի սիրտ նեղացնողը Փայլակն էր, որ տեղի անտեղի, իմ գաղտնարանս կը ծաղրէր, հոգ չէ թէ իր գիւտն էր այդ:

Ի հարկէ, այս առասպելները միայն հայկական շրջաններու մէջ չէին մնար. բարեմիտ հայեր իրենց բարեմիտ Թուրք դրկիցներուն կը պատմէին, իսկ անոնք ալ բարեմտօրէն ուրիշներու: Եւ չեղածէն գլխունուս նոր փորձանք մը բացինք:

* * *

Այդ ժամանակները Խոյի հայութիւնն ալ, որ ափ մը ժողովուրդ էր, քիչ մը ամէն տեղի նման, իր ներքին քահանայական տագնապը ունէր: Կ'ուզէին տեղացի մը դրկել Էջմիածին որպէսզի քահանայանայ: Լաւ եւ պարկեշտ մարդ մ'էր, բայց այդքան միայն. մինչդեռ բարութիւնն ու պարկեշտութիւնը թերեւս ամենայետին յատկութիւններն էին, զոր մէկը պէտք էր ունենար Խոյի մէջ, հովուելու համար ժողովուրդ մը, մեծապէս ազդուած պարսիկներէն, եւ պաշտպանելու համար զայն Քեարկիւզարի ժա-

նիքներէն։ Պէտք էր խելօք եւ տակտով մարդ մը, որ կարողանար ազդեցութիւն ձեռք բերել, հակազդելու համար Կովկասի հայ-թաթարական կռիւներու պատճառով, պարսիկներու անբարեացակամ տրամադրութեան։ Պարզ տէրտէր մը աւելի, պէտք եղածը, կառավարութենէն պաշտօնապէս ճանչցուած ներկայացուցիչ մը հայ ժողովուրդը ներկայացնող։

Հանրագրութիւն մը պատրաստեր էին տեղացիները։ Ծիշդ է, որ ոմանք հակառակ էին քահանացուին, Թայֆայական հաշիւներէ տարուած։ Ես թեկնածուին անձնապէս հակառակ չէի, բայց գիտէի, որ moment-ի մարդը չէ. շատ շատ կրնար ըլլալ լաւ տէրտէր մը, բայց ժողովուրդին պէտք եղածը այդ չէր այդ պահուն, երբ ամբողջ ժողովուրդով նստեր էինք վառօդի տակառի վրայ։

Այնպէս որ հանրագրութիւնը քովս պահեցի յայտնելով, թէ շուտով, երբ ժամանակը գայ, ես կ՚իմացնեմ իրենց, որ քահանայացուն ղրկեն Էջմիածին, իսկ մինչ այդ աւելորդ դիմումներ չկատարեն։

Օրին մէկն ալ, հոգաբարձութիւնը եւ երեք Թաղերու աչքի զարնող մարդիկը կանչեցի քովս եւ յայտնեցի իրենց, թէ Խոյի համար նշանակուած քահանան եկեր է արդէն, որ Սէյտավար է, եւ պէտք է դիմաւորելու երթալ։

Եւ սպասածս փոթորիկը փրթաւ։ Ի՞նչ քահանայ էր այդ եկողը, որուն մասին իրենք ոչինչ գիտեն։ Չէ՞ որ իրենց թեկնածուն դեռ Խոյ է։ Ո՞վ է նշանակեր այդ քահանան, եւ ի՞նչ իրաւունքով։

Ու ըսին, թէ իրենք չեն ճանչնար զայն որպէս իրենց քահանան, եւ որ դիմաւորելու երթալու մասին խօսք ալ չի կրնար լինիլ։

Մտերմօրէն հասկցուցի իրենց, որ ախոռիս մէջ տասնէն աւելի ձիեր ունիմ. ոմանք ձիաւորուած մինչեւ Սէյտավար պէտք է երթան, իսկ մնացեալները, ժողովուրդին գլուխը անցած քաղաքի դրան առաջ պէտք է սպասեն։ Եւ երբ Տէր Հայրը գայ, պէտք է բերեն մեծ ցոյցով դէպի հայկական Թաղը, եկեղեցին։

— Բայց Աստուածդ սիրես, պ. Մալխաս, այդ ի՞նչ քահանայ է, մենք կը ճանչնա՞նք թէ չէ։

Ըսի, որ շատ լաւ կը ճանչնան։

— Ըսես թէ ո՞վ է։

Պատասխանեցի, թէ Սալմաստ բնակող Վանեցի Յակոբն է։

— Ի՞նչ, այն ջարվատա՞րը,— բարկաձայթ պոռացին երեխս:

Ի՞նչ ըսէի: Այո՛, ջորեպան Յակոբն էր նորընծայ քահանան: Իսկապէս որ անակնկալ մ՚էր այդ Խոյեցու համար:

Ծայր տուաւ անհամ վիճաբանութիւն մը, մինչեւ որ Փայլակը կտրուկ կերպով հասկցուց, որ մեր ախոռին մէջ բաւական ազատ տեղ կայ չ՚ենթարկուողները բանտարկելու համար: Փայլակին առաջ բերած փաստը այնքան տրամաբանական... եւ համոզեցուցիչ էր, որ բոլորն ալ անմիջապէս ենթարկուեցան: Եւ այսպէս մեր ջորտավար Յակոբը, այսինքն՝ քահանան առօք փառօք Հայոց եկեղեցին առաջնորդուեցաւ:

Ինչ խօսք, որ Խոյեցին կարծեց, թէ այս իմ խաղս էր· բայց պիտի ըսեմ, որ այդ բանին մէջ ես քիչ դեր էի կատարած: Բոլոր պատիւը կը պատկանէր Սամսոնին: Անոր գիւտն էր այս, ան էր յղացեր զայն, տաժանելի երկունքէ վերջ: Ճիշդ է, ես ալ գիտէի, եւ ամբողջովին համաձայն էի, բայց այդքան միայն. Թէեւ վստահ էի, որ Յակոբը կրնայ շատ օգտակար լինիլ ե՛ւ ժողովուրդին ե՛ւ մեզ:

Երբ երեկոյեան ընթրիքէն վերջ մենք երեքով մնացինք, Յակոբը, ըսել կ՚ուզեմ Տէր Հայրը պատմեց Կովկասէն, հայ–թաթարական ընդհարումներէն, մեր գործերէն, Երեւանի ընկերներէն: Ես ալ քանի մը խօսքով ներկայացուցի իրեն Խոյի ջղայնոտ վիճակը, Կովկասի կռիւներու անդրադարձումը պարսիկ եւ հայ ժողովուրդներու յարաբերութիւններու վրայ, եւ մեր... թիւրիմացութիւնը Քեարկիւզարին հետ, ինչպէս եւ դաղտնարանյայտնարանի առթիւ ծայր տուող ըսի–ըսաները:

Անշուշտ մեր նորընծայ Տէր Հայրն ալ միացաւ Փայլակին, վրաս խնդալու համար: Տօ եղբայր, գաղտնարանի գիւտը Փայլակը ընէ, սեւ աշխատանքի մէկ մասը ես կատարեմ, Փայլակը դրաղ քաշուի, եւ անմեղ հրեշտակի նման վրաս խնդայ: Քաշուեւլիք տարտ չէր ասիկա:

Գործունէութեան որոշ ծրագիր մը կազմեցինք, որու կատարողը պիտի լինէր քահանան, որպէս ազգի գլուխը:

Քանի մը օր վերջը, Տէր Եղիշէ քահանան, հայ ժողովուրդի գլուխն անցած, թափորով գնաց ուղղակի քաղաքամէջի մեծ մըզկիթը, համերաշխութեան հաւաքոյթի մը: Այս մօտան Կովկասէն անցաւ Խոյ, հոն հայ ու թաթար մէկ ձեռքով իրար կը դանկտէին, միւսով իրար ձեռք կը սեղմէին, խանի խա թէ՝ «եղբայր ենք

մենք»։ Յակոբը գրկընդխառնուեցաւ խօջային հետ եւ քարոզ ալ խօսեցաւ, աւելի յաջող եւ խելացի քան խօճան, ի մեծ հպարտութիւն հայ ժողովուրդին։ Հոդ միայն ժողովուրդը հասկցաւ, որ իրենց պէտք եղած քահանան էր ան, եւ ամուր կապուեցաւ անոր։

* * *

Եթէ ընթերցողը կը յիշէ, մենք արդէն հանդիպեր ենք ջարվատար Յակոբին ասկէ առաջ, երբ Շաւրոյի եւ Կոստիի հետ Թաւրիզէն Սալմաստ գալերնուս, Ղալասարի մէջ հանդիպեցանք անոր։ Արժէ որ այդ պատուական մարդուն, աւելի հիմնականօրէն ծանօթանանք։

Բնիկ վանեցի էր Յակոբ Մկրտիչեանը, որուն դեռ 1891 թըւականին կը հանդիպինք Դերիկի վանքին մէջ, ուր կարգ մը խանդավառ երիտասարդներու հետ, առաջին զինուորագրուողներէն մէկը կը լինի յեղափոխական գործին։

Վերին ատիճանի ճարպիկ եւ լեզուանի, նեղ պարագաներու մէջ սառնարիւն եւ հնարագէտ, անոր կը յանձնուի Դաշնակցութեան միջոցներով գնուած քանի մը ձիեր, ընկերներ ու ապրանք տեղափոխելու համար զանազան վայրեր, ու ահա այդպէս ան կը վաստկի ջարվատար (ջորեպան) Յակոբ անունը։ Ասկէ վերջ կը սկսի անոր թափառումներու շրջանը դէպի Մենաւոր, Խոյ, Սալմաստ, Նախավկայի վանք, Ջուլֆա եւ Թաւրիզ։ Անհատնում գործող մ'էր, միշտ ուրախ, կատակաբան, քիչ մը արսըզ, որ ծանր պայմաններու մէջ ալ միշտ բան մը կը գտնար ծիծաղելու ու ծիծաղեցնելու։ Մեր ուրախութեան անսպառ աղբիւրն էր, երբեմն երբ Սալմաստ Սամսոնի մօտ վեր կ'ընկնէինք, անգործութենէ յօրանջելով եւ ձանձրանալով, բաւական էր որ ջարվատար Յակոբը ներս մտնար, անկասկած մեր տրամադրութիւնը կը փոխուէր, պեխաւոր երեխաներու նման, կը սկսէինք գզուըտիլ, ծիծաղ, ղալմաղալ...

1900-ին Դաշնակցութիւնը կառք մը կը գնէ, գաղտնի պահարանով մը օժտուած, այս անգամ ալ մեր ջարվատար Յակոբը կը դառնայ կառապան Յակոբ, նոյն յաջողութեամբ, ինչպէս ջորեպանութեան շրջանին։

Կարծեմ 1898 թուականին ամուսնացեր էր, Ղալասարի մէջ տուն տեղ լինելով, երբ ինք մտադրութիւն կը յայտնէ քահանայ լինելու, ինչ որ Դաշնակցութեան ալ ցանկութիւնն էր։ Յակոբը

թէեւ բաւական պատրաստուած մարդ մ՚էր, լինելով Խրիմեան Հայրիկի օրով Վարագի սաներէն մէկը, բայց դժբախտաբար ամբողջ Ատրպատականի մէջ ծանօթ էր որպէս հասարակ ջորեպան մը։ Հասարակութիւնը անշուշտ չէր գիտեր անոր ջորեպանութեան



ՋԱՐՎԱՏԱՐ ՅԱԿՈԲ

(Տէր Եղիշէ Քահանայ Մկրտիչեան)

խսկական շարժառիթները, հետեւաբար՝ դժուար թէ որեւէ շրջան համաձայնէր Յակոբը իրեն քահանայ ընտրել։

Ինչպէս ըսի, արդէն իր կարգին Խոյի քահանայական խնդիրը կար, բայց ուղղակի Յակոբը առաջարկել որպէս թեկնածու, դժուար էր։ Անշուշտ վերջ ի վերջոյ Դաշնակցութեան կամքը կարելի էր պարտադրել Խոյեցուն, բայց ահագին գլխացաւանք պիտի ունենայինք, նոր երկպառակութիւններ, կռիւներ. բան մը, որ բոլորովին ցանկալի չէր։

Սամսոնի առաջարկութիւնն էր, առանց այլեւայլի Յակոբը երթայ Էջմիածին, եւ ձառնադրուի քահանայ։ Մէկ ձեռնադրուած, գործը կը հեշտանայ։ Երեւան Թորոսին նամակ մը գրուեցաւ, որ աշխատի այդ ուղղութեամբ ու Յակոբը մեկնեցաւ Սալմաստէն, եւ ո՛չ ոք, բացի Սամսոնէն, Փայլակէն ու ինձմէ, գիտեր անոր ճամբորդութեան նպատակը։

Ընթերցողին ծանօթ է արդէն, թէ ինչպէս Յակոբը որպէս Տէր Եղիշէ քահանայ, վերադարձաւ Խոյ, եւ արժանացաւ փառաւոր ընդունելութեան։

Թուրքիայի սահմանադրութեան հռչակումէն վերջը, Տէր Եղիշէն նշանակուեցաւ Թրքական քօնսիւլի փոխանորդ Խոյի մէջ, քիչ ժամանակ վերջը եւ Սալմաստի շրջանին։

Պարսկական յեղափոխութեան շրջանին, ան շատ խոշոր դեր

կատարեց։ Ինչպէս ըսեր եմ արդէն, բնականէն լեզուանի, հրաշալի կերպով տիրապետած Ատրպեճանի Թուրքերէն լեզուին, ան ղեկավարներէն մէկը դարձաւ պարսկական յեղափոխութեան, միշտ առաջնորդուելով կուսակցութեան թելադրանքներով, մինչեւ որ ռուսական զօրքը Ջուլֆայով խուժեց Ատրպատական, իրենց համար անտանելի յեղափոխութեան վերջ մը տալու եւ օգնելու Մեհմէտ–Ալի Շահին։

Կարկառուն դէմք մը, ինչպիսին էր Տէր Եղիշէն, անշուշտ որ ռուսական բանակի հրամանատարի ուշադրութիւնը պիտի դրաւէր, եւ շատ չանցած ան կորուկ պահանջ դրաւ Թաւրիզի Թրքական քօնսուլին, որ Տէր Եղիշէն եւ Փայլակը պէտք է հեռանան Պարսկաստանէն։

Եւ այդպէս, Խոյ–Սալմաստի առաջնորդական փոխանորդ եւ Թրքական փոխ–քօնսուլ Տէր Եղիշէն, Փայլակի հետ կը հեռանայ դէպի իր ծննդավայր Վասպուրական, Վան։ Իրմէ առաջ արդէն հեռացեր էին Սալմաստի եւ Խոյի մեր բոլոր ընկերները, Նիկոլ–Դումանը, Սարգիս Օհանջանեանը, Թորոսը (Գ. Ալօեան), Սամսոնը, Մարգպետը, Ամբատը ու շատ մը ուրիշներ։

Վանի առաջնորդ Սարաճեան եպիսկոպոսը, Տէր Եղիշէն կ'ուղարկէ Արճէշի շրջանը, որպէս առաջնորդական փոխանորդ։ Գործունէութեան նոր ասպարէզ մը կը բացուի մեր Յակոբին առջեւ, ձեռք ձեռքի տուած Թորոսի եւ Փայլակի հետ, որոնք նոյնպէս հոն կ'երթան հաստատուելու։ Կազմակերպել ամբողջ շրջանի գիւղերը, կրթական գործը դնել ամուր հիմքերու վրայ, կառավարութեան առջեւ տէր կանգնիլ հայ գիւղացուն, ասոնք գործեր էին, որոնք մեծ տակտ եւ եռանդ կը պահանջէին, որոնցմէ զուրկ չէր մեր Տէր Եղիշէն։

Վրայ կը հասնի մեծ պատերազմը, եւ սարսափելի Եղեռնը։ Արճէշի առաջի զոհերը կը լինին, Փայլակը, Տէր Եղիշէն, եւ մեծ որդին, հազիւ 17 տարեկան պատանի մը։

Այսպէս ուրեմն, հազարաւոր զոհերու նման, կը զոհուի եւ Տէր Եղիշէն, մէկը մեր ամենագործունեայ նուիրուած եկեղեցականներէն։ Բառի լայն իմաստով, ժողովրդական մարդ մ'էր ան, ժողովրդի շահերուն նուիրուած ամբողջովին։ Մեծ քաղաքներու անկիւնները ինկած մտաւորական առաջնորդներէն չէր ան։ Բաւական մը զարգացած, իր ունեցած քիչը, գործնական արժէքի վերածելու բնական խելքը ունէր, որով իրապէս հովիւն էր քաջ,

որ իր հօտին համար, ինքզինքը զոհելու պարտաւոր կը զգար:

Անշիրիմ մնացած ոսկորներդ, Տէր Եղիշէ, հարիւր հազարաւոր միւս մասունքներու նման, որոնք Հայաստանի լեռներն ու ձորերը ծածկեր են, ապրող սերունդի հոգուն մէջ, անշէջ փարոսի մը նման, պիտի վառ մնան, ցուցնելու մեզի պարտականութեան ճամբան, հաւատաւորելու մեզ՝ հայ ազգի լուսաւոր ապագային համար:

Մեռար՝ բայց որքան կենդանի ես դուն, թանկագին Տէր Եղիշէ, սիրելի ընկեր, ջարվատար Յակոբ:

* * *

Անգամ մ՚ալ Տէր Եղիշէն Քեարկիւզարը հրաւիրեց ճաշի, ինչպէս եւ ինձ, մեզ իրար մօտեցնելու կամ, ինչպէս ինք կ՚ըսէր, մէջերնիս եղած թիւրիմացութիւնը վերցնելու համար: Բայց արդէն ուշ էր, խուզարկութեան փորձը, յետոյ մանաւանդ գաղտնարանի յիմար պատմութիւնը, անախորժ տրամադրութիւն մը ստեղծեր էին: Խոյի ժողովուրդն ալ, սահմանի միւս կողմէն եկած չափազանցուած լուրերէն գերագրգռուած էր: Մինչեւ որ, օր մ՚ալ տանս առջեւ պարսիկները ցոյց մը ըրին՝ աղաղակելով, թէ չենք ուզեր, թո՛ղ երթայ այս քաղաքէն, չէ՛նք ուզեր ու չէ՛նք ուզեր:

Տէր Եղիշէն, ինչպէս նաեւ Հոգաբարձութիւնը եկան ինձ մօտ խորհրդակցելու: Բոլորն ալ կը պնդէին, որ ժամանակաւոր կերպով հեռանամ Խոյէն, եւ երբ յուզումը դադրի, նորէն վերադառնամ: Փայլակն ալ, որուն հետ շատ կապուած էի, միեւնոյն տեսակէտը կը պաշտպանէր:

Ուրիշ ճար չունէի, համաձայնեցայ: Եւ յաջորդ օրը, Յակոբը վերցնելով հետս, մեկնեցայ Խոյէն, քաղաքամէջէն անցնելով, որպէսզի պարսիկ ժողովուրդը տեսնէ, թէ արդէն կ՚երթամ, եւ գրգռութիւնը դադրի: Այդպէս ալ եղեր էր:

Միւս առտու շատ կանուխ հասանք Ղալասար, երբ Սամսոնը դեռ կը քնանար:

Մինչեւ այժմ, միջանկեալ կերպով բազմաթիւ անգամներ յիշեր եմ Սամսոնի անունը, այժմ անհրաժեշտ է խօսիլ այդ անձնաւորութեան մասին, որ պարսկական սահմանագլխի վրայ, յեղափոխական գործունէութեան ամենակարեւոր, աչքի զարնող Դաշնակցական գործիչը եղաւ:



ՂԱԼԱՍԱՐԻ ԳԱՂՏՆԻ ԶԻՆԱԳՈՐԾԱՐԱՆԸ

1· ՍԱՄՍՈՆ· 2· ՍԱՐԳԻՍ· 3· ՀԱՃԻ ԼԵԻՈՆ· 4· ԶՈՒՄՇՈՒԴ

Սամսոնը, իսկական անունով Ստեփան Թադէոսեան, Ագուլեցի էր, մեր պատմական Գողթան գաւառէն, ուրիշ խօսքով Ջոկ մը, որ պատանեկութիւնը անցնելով ծննդավայրին մէջ, վերջէն անցեր էր Թիֆլիս, զինագործութիւն սորվելու համար պետական արհեստաւորաց վարժարանին մէջ:

Լինելով Քրիստափորի քրոջ որդին ու Պապաշայի եղբայրը, բնականաբար անոր պատանեկութիւնը կ՚անցնի յեղափոխական եւ

հայրենասիրական մթնոլորտի մը մէջ, եւ այդ ազդեցութեան շնորհիւ, Ստեփանը փոխանակ չթի կամ երկաթեղէնի յաջող վաճառական մը դառնալու, 1986 թուին, երկու ընկերներով (Մածուն Խեչօ եւ Արամայիս), կ'անցնի պատմական Արաքսը, անմասն չմնալու գործին, որով խանդավառուեր էր պատանեկութենէ սկսած:

Բաւական ժամանակ աշխատելէ վերջ Թաւրիզի Դաշնակցութեան զինական արհեստանոցին մէջ, որպէս փորձ վարպետ, դէպքերու բերումով, Դաշնակցութեան Կ. Կոմիտէն կը տեղափոխէ զայն Սալմաստ, ուր կարեւոր աշխատանքներ կային ընելիք:

Այդ կարեւոր աշխատանքներէն մէկը, Խանասորի արշաւանքին գործածուած զէնքերու հաւաքելը, պահեստներու մէջ տեղաւորելը եւ ատոխճանաբար Երկիր անցնելն էր: Անշուշտ այդ զէնքերը շատ անգամ վնասուած եւ ժանգոտած, հարկաւոր էր աչքէ անցնել, նորոգել, եւ պատրաստ վիճակի մէջ ներս ուղարկել:

Այդ նպատակով, Ղալասարի մէջ արդէն եղած գաղտնի արհեստանոցը կը կանոնաւորէ, եւ Ղալասարցի Սարգսի հետ, երբեմն եւ ուրիշ օգնականներով, Խանասորի հարիւրաւոր հրացանները գործածելի վիճակի մը կը հասցնէ նորէն: Այս ծանր բայց արժէքաւոր աշխատանք մ'էր: Ժամանակի ընթացքին այս զէնքերը պարբերաբար, զանազան գծերով Երկիր մտցուեցան:

Զէնքերու խնդրէն աւելի ծանր ու պատասխանատու աշխատանք մը եւս դրուած էր Սամսոնի ուսերուն:

Խանասորի արշաւանքէն վերջ, երբ աշխարհի չորս ծայրերէն հաւաքուած կամաւորները ցրուեցան, ամէն մէկը որեւէ կողմ, խումբ մը զինուորներ սակայն մնացին Սալմաստ: Ճիտակը ըսելով, այս զինուորները, մասնաւոր տեղ մ'ալ չունէին երթալիք: Միջին դարու ասպետներու նման՝ բախտի զինուորներ էին, առանց հաստատուն կայանի, առանց ընտանեկան կապերու եւ օճախի, որուն շուրջը հաւաքուէին:

Խանասորի արշաւանքին վազեր եկեր էին, յանդուգն, կորիճ զինուորներ, մինչ առաջին շարքերու մէջ, աներկիւղ կռուողներ, որոնք սակայն խաղաղ կեանքի անվարժ, յեղափոխական գործէն դուրս, բեռ մը կը դառնային հասարակութեան վրայ, իրենց աշխատանքի աներդունակութեան եւ անվարժութեան պատճառով:

Նայած այդ զինուորներու անձնական նկարագրին, շատեր, գիւղի մը մէջ, անկիւն մը քաշուած, համեստօրէն, գէշ աղէկ

կեանքը կը քաշքշէին, համբերութեամբ սպասելով, մինչեւ նոր պատեհութիւն մը, որ նորէն իրենց սիրած գործին անցնէին։ Դժբախտաբար ոմանք ալ, եւ հոս պէտք է ըսենք որ, Դաշնակցութեան լաւագոյն եւ անուն հանած զինուորներէն, մէկ մէկ տերէպէյիներ դարձած Սալմաստցիներու գլխուն, զեխ եւ անպէտք կեանք մը կ՚անցնէին։

Խանասորի արշաւանքէն վերջ, այս ցաւալին երեւոյթը այնքան անտանելի դարձաւ, որ հայ մամուլը, մասնաւորաբար «Մշակ»ը, սկսաւ դատափետել Դաշնակցութիւնը, որ անկարող կը թուէր ըլլալ, սանձահարելու այդ պաշիպօզուքները։

Այսպէս ուրեմն, Խանասորի արշաւանքէն վերջ, զինուորներէն ոմանք կատարեալ պատուհասներ դարձած էին Սալմաստի շրջանին մէջ, եւ կարծես թէ երկրորդ արշաւանք մը անհրաժեշտ կը դառնար, Խանասորի արշաւանքի զինուորներէն մաքրելու համար Սալմաստը։

Այդ ծանր եւ պատասխանատու գործը նոյնպէս յանձնուեցաւ Սամսոնին, որ իրականին մէջ, Դաշնակցութեան ներկայացուցիչն էր։ Նորահաս, անփորձ երիտասարդ մը, առանց յեղափոխական անցեալի եւ հեղինակութեան, Սամսոնը պէտք էր սանձահարէր անուն հանած, եւ իրապէս հերոս զինուորներ, որոնց անցեալն ու յեղափոխական արժէքը գերիվեր էր մինչ այդ, իր ունեցածէն։ Բայց հակառակ այս արգելքներուն, Սամսոնը շնորհիւ իր գործնական խելքին, զարմանալի տակտին եւ գործելու քիչ մը դանդաղ, բայց անշեղ եւ վճռական ձեւին, կարճ ժամանակի մէջ ոչ միայն մաքրեց ամբողջ Սալմաստը, այլ եւ կրցաւ այնպիսի հեղինակութիւն մը ձեռք բերել այդ եւ յարակից շրջաններուն մէջ, որ դարձաւ գերազանցօրէն Սալմաստի ղեկավարը, կեդրոնական անձնաւորութիւնը, հասարակական եւ յեղափոխական բոլոր խնդիրներու մէջ հաւասարապէս, եւ այդ դիրքով մնաց ան, Սալմաստի մէջ, աւելի քան երկու տասնեակ տարիներ։

Անկասկած է, որ Դաշնակցութեան բարոյական հեղինակութիւնը խոշոր գործօն մ՚էր, փայտէ մարդ մ՚ալ, որպէս Դաշնակցութեան ներկայացուցիչ, որոշ արժէք մը կրնար ներկայացնել, բայց անկասկած է որ, Դաշնակցութեան հեղինակութենէն զատ, Սամսոնի անձնական բարեմասնութիւններն ալ մեծապէս նպաստեցին այն մեծ ժողովրդականութեան, որ ան, տարիներ շարունակ, իր անդուլ աշխատանքով վաստկեցաւ, մինչեւ որ Սամսոն

եւ Սալմաստ բառերը, շատ շատերու համար հոմանիշ արժէք ստացան:

Չէ եղած հասարակական հարց մը, մշակութային ձեռնարկ մը, Սալմաստի շրջանին մէջ, որուն ղեկավարող, մղիչ ուժը Սամսոնը չլինէր: Դպրոցական գործը մասնաւորապէս անոր գուրգուրանքին առարկան էր, եւ շարք մը նոր դպրոցներ անոր օժանդակութեամբ բացուեցան: Թատրոնական սրահներու եւ գրադարաններու մեծ մասը անոր նախաձեռնութեան հետեւանքն էին, ու ըսենք հոս, որ մեր Սամսոնը, մեծ ցանկութիւն ունէր, Ասլան Պալասի խաղալու:



ՍԱՄՍՈՆ
(Ստեփան Թադէոսեան)

Մարդ միայն զարմանալ կրնայ, որ սահմանափակ կրթութեան տէր այդ երիտասարդը, ինչպէ՞ս կրցաւ երկար տարիներ իր բարոյական հեղինակութեամբ, առաջնորդի դեր կատարել այդ շրջանին մէջ, անցած խաղաղ տարիներուն եւ պատերազմի շրջանին, երբ ամբողջ երկիրը դարձեր էր ահաւոր խառնարան մը:

Անկախ անոր կատարած յեղափոխական բազմատեսակ աշխատանքներէն, ա՛ն, որպէս հասարակական գործիչ, մնայուն եւ կեդրոնական տեղ մ՚ունի Սալմաստի պատմութեան մէջ: Սամսոնը ոչ միայն հայ գիւղացու համար արժէք մ՚էր, այլ եւ շրջակայ պարսիկներուն համար ալ, որոնք սովոր էին անոր վրայ նայիլ որպէս մէկու մը, որուն կրնային դիմել նեղ պարագաներուն:

Մասնաւորապէս վերջին տարիներուն, Սամսոնը այնպիսի դիրք մ՚ունէր, որ եկող գացող պարսիկ դատաւորները կամայ թէ ակամայ պէտք է որ հաշուի առնէին զայն: Բնականօրէն, պարսկական յեղափոխական շարժման ժամանակ, երբ Դաշնակցութիւ-

նը իրերու բերումով, սահմանադրականներու հետ կողք կողքի ասպարդ իջաւ, Սամսոնը որպէս Դաշնակցութեան ներկայացուցիչ, սքանչելի կռուողներու խմբով մը հրապարակ իջած, յեղափոխական շարժման տիրական դէմքերէն մէկը դարձաւ:

Եկրին մէջ, հայ ժողովուրդը հպարտութեամբ առլցուն, Սերոբ փաշա, Անդրանիկ փաշա, Արամ փաշա, Ռուբէն փաշա կոչած էր իր հարազատ մարտիկները եւ գործիչները, անկարող ուրիշ ձեւով մը յարգելու իր յեղափոխական ղեկավարները: Սալմաստի հայ եւ պարսիկ ժողովուրդի համար ալ, ինքնաբերաբար, Սամսոնը դարձեր էր Սամսոն խան: Ինչ խօսք որ տիտղոսները ինքնին անարժէք բաներ են, բայց երբ փոխանակ վերէն գալու, կուգան վարէն, ժողովուրդէն, որը շատ սուր հոտառութիւն մը ունի լաւը ճոկելու վատէն, այդ պարագային միայն այդ տիտղոսները արժէք մը կը ստանան, եւ աւելի բան մը կը նշանակեն, քան սովորաբար:

Ճիշդ է որ ոչ մէկ յեղափոխական գործիչ, լինի Դաշնակցական թէ այլ կուսակցութեան պատկանող, այնքա՛ն երկար չէ մնացած Սալմաստի շրջանին մէջ, որքան Սամսոնը: Բայց անոր վայելած հեղինակութիւնը բացատրել տարիներու երկարութեամբ՝ շիտակ չէ: Անշուշտ այդ հանգամանքն ալ որոշ դեր մը կատարած է, ինչպէս եւ Դաշնակցութեան ներկայացուցիչ լինելու պարագան, բայց ատոնցմէ դուրս Սամսոնի մէջ բան մը կար, որ ուրիշները չունէին, կամ եթէ ունէին ալ, շատ քիչ չափով, այդ այն էր, որ Սամսոնը՝ Սալմաստ գալով՝ չէր մնացեր «դըրսեցի» գործիչ մը, այլ դարձեր էր բառի լաւագոյն իմաստով սալմաստեցի մը, ամբողջովին նուիրուած այդ շրջանի ժողովուրդի շահերուն:

* * *

Քանի մ'օր մնացի Սալմաստ, Սամսոնի մօտ: Այնքան էի ջըղայնացեր, որ ամբողջ գիշերներ կը լուսցնէի առանց քնանալու: Սամսոնն ալ տեսաւ, որ հայս հայ չէ: Մտածեցինք, որ Կովկաս անցնիմ քիչ մը կազդուրուելու: Այդպէս ալ ըրի: Թաւրիզով անցայ Թիֆլիս:

Կատարեալ ջլախտաւոր էի դարձած: Երիտասարդ տղայ մ'էի Պարսկաստան գալուս: Առանց նախօրօք պէտք եղած փորձառութեան, մեծ շրջան մը ինկած էի, ծանր, պատասխանատու գործ



1906–ԻՆ ՍԱԼՄԱՍՏ ԳՏՆՈՒՈՂ ՅԱՅՏՆԻ ԶԻՆՈՒՈՐՆԵՐ

Ձախէն աջ, նստողները·— Սարբազ Խեչօ, Մեօ, Ջուլումաք, Մոկացի Գրիգոր
կանգնողներ·— Մշեցի Ասլան, Հանի Լեւոն եւ տեղացի երեք զինուորներ:

մը ղեկավարելու համար: Ու բնականաբար ինքզինքս ամբողջովին մաշեր էի, ջղերս թուլցեր, եռանդս խորտակուեր էր: Երբ Թիֆլիս հասայ, պարզապէս անկենդան փալաս մ'էի, առանց ոգեւորութեան, առանց բան մը ընելու ցանկութեան:

Օր մը Յովնան Դաւթեանը, Տիկին Հորթանսի հետ Տիլիպուջուր չիշլիկ ուտելու տարած էին զիս: Հոն Յովնանը մօտէն տեսաւ իմ վիճակը, երբ ես նստած ակամայ ամբողջ մարմնով կը ցնցուէի: Խօսեր էր ընկերներուն հետ: Եւ օր մ'ալ Իշխանը ըսաւ ինձ, թէ լաւ կը լինի, որ Հանքային Ջրերը երթամ հանգստանալու, ուր կը գտնուէր Սաթենիկը:

## ԻՇԽԱՆՈՒՀԻ ՍԱԹԵՆԻԿ ԱՐՂՈՒԹԵԱՆ

Բազմաթիւ հայ ճամբորդներու հետ առանց նեղութեան կը հասնիմ Միներալնի Վօտ, եսէնթուկի սիրուն քաղաքը, երեկոյեան մթնով: Բաւական դժուարութիւն կը քաշեմ, ռուսերէն չգիտնալուս պատճառով, մինչեւ որ կը գտնամ իշխանուհի Սաթենիկի բնակած տունը:

Իշխանի նամակը կը յանձնեմ Սաթենիկին, որ ջերմագին ընդունելութիւն մը կ'ընէ ինձ: Առաջին օրէն իսկ, ես անոր հանդէպ շատ մօտ, հարազատ զգացում մը կ'ունենամ: Քոյր չեմ ունեցեր, ու իսկական մեծ քոյր մը եղաւ Սաթենիկը ինծի համար, մինչեւ վերջը:

Սակայն այդ պատճառ մը չէր, որ յաջորդ օրը իսկ ինձ չտանէր Թիֆլիսեցի բժ. Օհանջանեանի մօտ, համակրելի մարդ մը, որ շատ ուշադիր վերաբերմունք մը ունեցաւ ինծի հանդէպ:

Ինչպէս գիտէ արդէն ընթերցողը, ես բացարձակապէս ջղային աւերակ մ'էի դարձած, բաւական դժուարին խնդիր մ'էր, ֆիզիքապէս զիս վերակենդանացնելը, եւ այդ ծանր աշխատանքին լծուեցաւ բարի բժիշկս, որ հազիւ հայերէն կրնար խօսիլ:

Ձեզ ձանձրացնելու համբերատար ընթերցողը իմ բժշկութեան մանրամասնութիւններով, միայն այսքանը կ'ուզեմ ըսել որ, առտուն կանուխ ոտքի վրայ էի, մինչեւ իրիկուն, երբ բժշկըւելէ յոգնած սենեակս կը քաշուէի... հանգստանալու համար: Թերեւս այս քիչ մը չափազանցութիւն թուի ոմանց, երկու խօսքով նկարագրեմ իմ ամենօրեայ կեանքս:

Նախաճաշէն վերջ, կը վազէի բժիշկին մօտ, որ մշիակ

սրսկէ. անկէ կ'երթայի ինչ որ հաստատութիւն մը, ուր հրշէջներու թուլումպայով, մերկ մարմինս այնքան ուժեղ կերպով կը ցնցուղէին, որ ծաղիկ հիւանդութեան բռնուածի մը նման ամբողջ մարմինս կը զարդարուէր կարմիր բիծերով: Հազիւ ատկէ ազատած, պէտք է երթայի Ցօմէր 4 աղբիւրի մօտ, որոշ աստիճան տաքութեամբ կէս բաժակ հանքային ջուր մը խմելու, այն ալ կաթիլ կաթիլ, որ իսկապէս տառապանք մ'էր: Ատկէ ալ կը վազէի ինչ որ մասաժեստի մօտ, որ ամբողջ մարմինս կը ջարդոտէր, որպէս թէ ամրացնելու համար զայն: Արդէն կէս օր կը լինէր, ճաշէն վերջն ալ ըստ ընդունուած սովորութեան, մէկ ժամ կը հանգստանայինք, վերջէն Կիսլավօցք երթալու համար, ուր Նարզանի բաղնիք կը ստանայի: Այդ քաղաքէն վերադարձիս, պէտք էր նորէն Ցօմէր 4 աղբիւրի մօտ երթալ, այդ անհամ ջուրը խմելու:

Կարծեմ այսքան աշխատանք, քաջառողջ մարդ մ'ալ կրնար յոգնեցնել, ուր մնաց գիս:

Այս բժշկութեան մէջ ամենահետաքրքիրը Ցօմէր 4 աղբիւրն էր: Ես արդէն ոսկոր ու կաշի էի մնացեր, բայց ամէն անգամ այդ աղբիւրի մօտ երթալուս, կը հանդիպէի տակառային փորերով մարդերու, որ այդ միեւնոյն ջուրէն կը խմէին... նիհարնալու համար: Եթէ բժիշկս այնքան բարի մարդ մը չլինէր, բաւական հիմք պիտի ունենայի կասկածելու անոր մտադրութեան մասին: Թէեւ ինքս ալ պարսկական բժիշկ մը, բայց այն ժամանակ ներչնչման օրէնքի մասին գաղափար չունէի, չէի գիտեր թէ այդ ջուրը հեքիմ Լօխմանի հալերու նման, համատարած յատկութիւն մը ունէին, նայած թէ ինչ հաւատքով կը խմէիր, այնպէս ալ արդիւնք կուտար:

Սաթենիկին մօտ երկու ամիս մնացի, բայց այն ժամանակ ես հեռաւոր գաղափարն իսկ չունէի թէ՝ ան մեր յեղափոխական շարժման վեթերաններէն էր, անցեալ ունեցող Դաշնակցական գործիչ մը: Վերջէն, Թիֆլիս վերադառնալուս, պարզուեցաւ ինձ համար Սաթենիկի դէմքն ու արժանիքը:

Ծանօթանանք այդ վեթերան գործիչի կեանքին, որը Դաշնակցութեան սկզբնական օրերուն, ամենաաչքի զարնող գործիչներէն մէկը եղած է:

Մեր յեղափոխական պատմութիւնը, երբ կ'արձանագրէ բազմաթիւ հերոսական դրուագներ չորս տասնեակ տարիներու

ընթացքին կատարուած, աւելի քան ժլատ յիշատակութիւն մը ունի կանացի սեռի նկատմամբ: Անշուշտ որ, այս հանգամանքը պարզ պատահականութեան մը հետեւանք չէ, եւ ոչ ալ թոյլատրելի է այն եզրակացութեան յանգիլ, որ իգական սեռը կրաւորական դեր մը խաղացած է մեր ժողովրդի կեանքի ամենակենսական հարցին հանդէպ:

Գործնական կեանքի մէջ սակայն, մեծ թիւ մը կը կազմեն այն կիներն ու օրիորդները, որոնք մեր յեղափոխութեան սկզբնական շրջանէն սկսեալ, մինչեւ այժմ աքթիւ մասնակցութիւն մը ունեցեր են եւ ունին յեղափոխական աշխատանքներու մէջ: Ճիշդ է, ընդհանրապէս համեստ մասնակցութիւն մը, եթէ կ'ուզէք, օժանդակի գործակցութիւն մը, բայց որը անհրաժեշտ բաժին մ'է, լրացուցիչ մաս մը յեղափոխական գործնական աշխատանքին:

Կովկաս, Պարսկաստան թէ Երկիր՝ յեղափոխական աշխատանքին զմայլելի անձնուիրութեամբ լծուած էին բազմաթիւ կիներ, որոնց զոհաբերութեան պատրաստակամութիւնը այրերէն ոչնչով պակաս չէր: Իսկ եթէ կիներու անունը կապուած չէ եղեր յայտնի դէպքերու հետ, բացի մէկ երկու բացառութիւններէ, մեղաւորը հոդ այն դժոխային պայմաններն են, որոնց մէջ եւ որոնցմով շրջապատուած աշխատեր են մեր սկզբնական շրջանի «առաքեալ»ները, վերջէն ալ մեր զինակիր ու հայդուկային խմբերը:

Այդ դժոխային պայմաններէն զատ, կայ նաեւ այն պարագան, որ մեր յեղափոխութեան պատմութիւնը շատ պակասաւոր ու թերի կերպով ծանօթ է հասարակութեան, այն ալ հատ ու կտոր յուշերով միայն, որոնց մէջ ընդհանրապէս դէպքերու պարզ յիշատակութիւն մը կը գտնանք, տեսակ մը կմախք, առանց հոգիի, միս ու արիւնի:

Բայց եւ այնպէս մենք ունեցեր ենք — եթէ ոչ բազմաթիւ — կանացի այնպիսի փայլուն դէմքեր, որոնք ամենայն իրաւամբ մեր յեղափոխական Պանթէոնի չքնաղ դէմքերու շարքին մէջ, իրենց պատուաւոր տեղն ունին:

Այդ ռազմական կիներու առաջին շարքին կը կանգնի հին օրերու Ծաղիկը, թէ՛ որպէս ամենահիներէն եւ թէ՛ որպէս ամենէն պատասխանատու դերակատարներէն մէկը, (ոչնչով՝ երկրորդական դերի մէջ) սկզբնական այն շրջանին, երբ մեր նորածին յե-

ղափոխութիւնը խարխափելով իր մանկական առաջի քայլերը կ'առնէր։

Ութսունական թուականներու վերջերը, Թիֆլիսի մէջ Մատինեաններու տունը մտաւորական եւ յեղափոխական օճախի հանգամանքն ունէր։ Հոն կը հաւաքուէին այն ժամանակի յառաջադէմ երիտասարդները, հասարակական գործիչները, Կովկաս աքսորուած ռուս յեղափոխականները, եւ Հայ մտաւորականներու այն հոյլը, որոնք հետզհետէ թեքուելով դէպի ազգային կեանքը, կը հիմնէին Հայ Յեղափոխականներու Դաշնակցութիւնը։

Մայր Մատինեանը եւ իր երեք զաւակները՝ Սաթենիկ, Նատալիա ու Նիկոլ, ամբողջովին նուիրուած էին այդ շարժման։ Դեռ դպրոցական աշակերտուհի մը, Սաթենիկ յափշտակութեամբ կը հետեւէր իրենց տունը հիմք առած Դաշնակցութեան սկզբնական քայլերուն։

Իր խիզախ ու ջերմ բնաւորութեամբ, Սաթենիկի համար պարզ էր, որ այլեւս իրեն համար միակ ճամբայ մը կը մնար հետեւելու, եւ այդ՝ յեղափոխականի փշոտ ու վտանգաւոր ուղին էր, ուրկէ պէտք է անցնէին բոլոր անոնք, որոնց համար ազգ ու հայրենիք բառերը իսկական արժէք մը ունէին։

Ու այդպէս, դեռ 1892 թուականին, ստուար խումբի մը հետ, որուն մէջ կային Յովնանը, Դումանը, Իշխանը (Երուանդ-Դաշօ), Թորոսը, Սաքօն ու շարք մը ուրիշ նախակարապետներ Հայ յեղափոխութեան, Սաթենիկ կը մեկնի Թաւրիզ (Պարսկաստան) որպէս ուսուցչուհի, միակ ասպարէզը, ուր նորահաս օրիորդ մը սովորաբար կրնար օգտակար լինել իր ազգին։

Եթէ ուրիշներ կրնային բաւականանալ ուսուցչական աշխատանքով, օգտակար լինելու գործին, Սաթենիկի փոթորկային բնաւորութեան համար սակայն, այդ ասպարէզը աւելի քան նեղ էր։ Ուսուցչութիւնը պարզապէս քօղ մ'էր վարագուրելու համար իր իսկական աշխատանքը։ Բնաւորութեամբ վճռական ու անվախ, յամառ ու անսպառ եռանդով զինուած՝ Սաթենիկը շուտով կը դառնայ Պարսկաստանի յեղափոխական գործունէութեան կարկառուն եւ կեդրոնական դէմքերէն մէկը։

Ամէն տեղ էր ան, ուր կենդանի գործը կը պահանջէր։ Թաւրիզի կանանց եւ աշակերտական խմբերու հոգին էր, զէնքի փոխադրող էր Սալմաստ։ Խոյ էր, Դերիկի վանքն էր, Ղարս էր,

անվերջ անդադրում չարժման մէջ։

1894 Ապրիլ ամսին էր։ Դերեկի վանքը պաշարուած էր հինգ հարիւր քիւրտերու կողմէ։ 17 յեղափոխականներ՝ դիրքերը մտած՝ օրհասական կռիւ կը մղէին։ Հոն էր նաեւ Սաթենիկը։ Վանքի կիները գլուխը հաւաքած՝ ան կը մաքրէր ժանգոտած փամփուշտները, դիրքէ դիրք կ՚երթար, ասոր ժպիտ մը, անոր խրախուսական երկու խօսք ըսելու։ Պարզ կռիւ մը չէր այդ՝ Սաթենիկի համար, այլ իր երազներու իրականացումը, իր ուխտին սրբազան հարսնիքը։



ԻՇԽԱՆ ՅՈՎՍԷՓ ԵՒ ԻՇԽԱՆՈՒՀԻ ՍԱԹԵՆԻԿ ԱՐՂՈՒԹԵԱՆ

Քիւրտերը, կորագլուխ, կը նահանջեն՝ վանքի տաւարի մէկ մասը հետերնին քշելով։ Հարկաւոր էր բողոքել պարսիկ կառավարութեան։ Սաթենիկն է որ ներկայանալով Սալմաստի դատաւորին, ուժգնօրէն կը բողոքէ քիւրտերու կատարած վայրագութիւններու դէմ։

Սաթենիկի մէջ տղամարդու առնական կորովը, եւ կանացի քնքշութիւնը հաւասար կերպով կը միախառնուէին։ Հիւանդ ընկեր մը անկէ աւելի խնամոտ ձեռքերու պէտք չունէր, անդրադէտ հայդուկ մը, անկէ աւելի սրտցաւ ուսուցչուհի մը չէր կրնար ունենալ։

Ղեկավար ընկեր մ՚էր Սաթենիկը։ Իր խօսքը ահագին կշիռ ունէր։ Թէեւ գործելու լայն ասպարէզ կար Սալմաստի շրջանին

մէջ, բայց ան դժգոհ էր․ դժգոհ, որ կին էր ծնած, որ չէր կըրնար խմբերու հետ Երկիր անցնիլ, անոնց Թափառումներուն եւ կռիւներուն մասնակցիլ։ Ուստի ընկերներու հաւանութեամբ կ՚որոշէ օրինական կերպով անցնիլ Երկիր, պատմական Վասպուրական աշխարհը։

Խոյեցի կնոջ շորերով ծպտուած, ան Թէեւ կը յաջողի անցագիր ստանալ, բայց դժբախտաբար կարաւանը երկու շաբաթ կ՚ուշանայ։ Մինչ այդ Խոյի Թրքական քօնսիւլը իր մասին կ՚իմանայ, որով եւ Սաթենիկի Վան հասնելու հաւանականութիւնը կը դառնայ խիստ հարցական։

Սակայն, այս պատճառ մը չէ, որ Սաթենիկը յուսահատի։ Եթէ չեղաւ Վանը, Թող ըլլայ Կարինը։ Այդ ժամանակ, Թաթուլը (Արամ Արամեան) կը պատրաստուէր Երկիր անցնիլ։ Սաթենիկ կ՚անցնի Կովկաս, կը ներկայանայ Ղարսի նահանգապետին վիզա ստանալու։ Կառավարութիւնը, հոտը առած, կը մերժէ կտրուկ կերպով։ Սաթենիկ նորէն չի յուսահատիր, կ՚առաջարկէ Թաթուլի հետ փախստական՝ Երկիր մտնել,— բան մը, որ անշուշտ ունէր շատ մը անպատեհութիւններ։ Ղարսի Հ․ Յ․ Դաշնակցութեան մարմինը ստիպուած՝ կը մերժէ Սաթենիկի խնդիրքը ու ան նորէն կը վերադառնայ Պարսկաստան, որ եռուզեռի մէջ էր, Խանասորի արշաւանքի պատրաստութեամբ։

Ու Սաթենիկը իր ամբողջ էութեամբ կը խրուի գործի մէջ։ Դժբախտաբար, Պարսկաստանի ղեկավար մարմինը, արշաւանքի շուրջ պառակտուած էր։ Մէկ մասը կ՚ուզէր մեծ խումբով մը անցնիլ Երկրի խորքը, մինչեւ Տարօն․ իսկ միւս մասը, Նիկոլի ղեկավարութեամբ, կը պնդէր անպայման հպատակիլ Հ․ Յ․ Դ․ Բիւրոյի որոշման եւ ձեռնարկել Խանասորի արշաւանքը։

Այդ պայքարը, որ շատ արիւն պղտորեց, եւ ամիսներու ուշացման պատճառ եղաւ, գլխաւորապէս երկու ղեկավարներ ունէր՝ Դումանը եւ Սաթենիկը։ Երկուքն ալ անզիջող, կրքոտ ու յամառ։ Պայքարը չվերջացաւ, մինչեւ որ Բիւրոյի ներկայացուցիչ Շահրիկեանը, Սալմաստ գալով, կուսակցութեան տեսակէտը պարտադրեց հակա—արշաւանքեաններուն։

Նիկոլի տեսակէտը այսպիսով յաղթանակեց, բայց անձնապէս ան, որ ամենաջերմ ու կատաղի պաշտպանն էր արշաւանքին ու ամենաարժանաւորը, պարտուեցաւ։ Զինուորկան մարմնի ընտրութիւններուն, Վարդանի ու մանաւանդ Սաթենիկի ընդ-

ղեկավարութեան շնորհիւ, Նիկոլը ընտրուեցաւ պարզ յիտնապետ մը, թէեւ իր խորհուրդներով ու կուռի ժամանակ ցուցադրած հըմտութեամբ, իրական ղեկավարի դերը կատարեց։

Այսպէս է։ Մեծ մարդիկ ունին եւ մեծ թերութիւններ, որոնցմէ բոլորովին ազատ չէր նաեւ Սաթենիկը։

Արշաւանքէն վերջ, Երուանդը (Իշխանը) կը ձերբակալուի եւ ատեն մը Պարսկաստանի զարհուրելի բանտերուն մէջ տառապելէ վերջ, կը յանձնուի ռուս կառավարութեան, որ զայն հինգ տարով կ'աքսորէ Արխանկէլի սառուցեալ շրջանը։

Սաթենիկ, առանց տատամսելու, կը հետեւի իր սիրած երիտասարդին։ Եւ աքսորի մէջ երկու հայ յեղափոխական աչքառու գործիչները կ'ամուսնանան։

Իշխանուհի Սաթենիկը, այնուհետեւ երեխայով ու ընտանեկան հոգսերով ծանրաբեռնուած, թէեւ կենդանի հետաքրքրութեամբ կը հետեւի մեր պայքարի աստիճանական զարգացման, բայց հեռուէն դիտողի մը համեստ դերով կը բաւականանայ, մինչեւ կամաւորական շարժումը։

Իշխանը կը նշանակուի 4–5–րդ միացեալ գունդերու հրամանատար։ Ով որ մօտէն վերահասու եղեր է այդ աշխատանքներուն, գիտէ որ, գունդի նախապատրաստական աշխատանքներու մղիչ ոգին Սաթենիկն էր։ Թէկուզ երկրորդական չնչին հարցերու մասին Սաթենիկը իր միտքը պէտք էր յայտնէր։ Իրականին մէջ, գունդը երկու իրար լրացուցիչ ղեկավարներ ունէր՝ Սաթենիկը ու Իշխանը։

Բայց եւ այնպէս զարմանալի կերպով այդ կինը հպարտ համեստութիւն մը ունէր։ Հազիւ կը պատահէր որ Պարսկաստանի իր գործունէութեան մասին ակնարկ մը ընէր, թէկուզ մտերիմներու շրջանակի մէջ։

Հայաստանի Հանրապետութեան շրջանին, Իշխանը նշանակուեցաւ Պարսկաստանի դեսպան։ Միասին անցան սահմանը, պարսկական արքունիքին մէջ ներկայացնելու համար հայկական նորաստեղծ կառավարութիւնը։

Հանրապետութեան անկումէն վերջ, հազարաւորներու նըման, անոնք ալ՝ Իշխանն ու Սաթենիկը իրենց մէկ հատիկ աղջըկան Արփիկի հետ, ձեռք առին անհայրենիք գաղթականի տառապալից ճամբան։

Քանի մը տարի առաջ, երկարատեւ հիւանդութենէ մը վերջ

մեռաւ Իշխան Յովսէփ Արղութեանը, յեղափոխական Տաչօն, Երուանդը, մեր յեղափոխական պատմութեան չքեղ մարտիկներէն մէկը։

Մինակութեան մէջ, թեւաթափ արծիւի մը նման, հետզհետէ թառամեցաւ եւ Դաշնակցութեան Ծաղիկը, որը որպէս իգական սեռի ներկայացուցիչ մեր պատմութեան մէջ եզակի դիրք մը ունի, իր գունաւոր ապրումներով, իր անհանդարտ ու եռանդուն գործունէութեամբ։

Հողը թեթեւ գայ վրադ, սիրելի Սաթենիկ։

Օգոստոսի վերջերն էր արդէն, երբ օր մըն ալ Իշխանուհու հետ միասին մեկնեցանք Վլադիկաւկազ, ռազմավիրական ճամբայով Թիֆլիս երթալու համար։

Ամառանոց եկող բազմաթիւ հայ ընտանիքներ կը մեկնէին արդէն, դէպի Պաքու, Թիֆլիս, Երեւան եւ այլ քաղաքներ։ Պեատիգորսկը դարձած էր Դաշնակցութեան ռազմակայաններէն մէկը. ամէն գացողի կտոր մը «ապրանք» կը տրուէր տանելու Բագու կամ Թիֆլիս, ու ամէնքը փութկոտ պատրաստակամութիւն կը ցուցադրէին գործին օժանդակելու։ Մարդիկ, որոնք ինքզինքնին հայ չէին համարեր, կամ վաղուց մոռցեր էին իրենց հայ լինելն անգամ, այդ նեղ օրերուն, երբ ամբողջ Կովկասը թատերաբեմ էր դարձած հայ-թրքական կռիւներուն, կարծես նոր յիշելով իրենց ծնունդը, կուգային ինքնաբերաբար օգնելու ինչով որ կրնային։ Բնորոշ է պաշտօնաթող կեներալի մը դիմումը։ Ինչ խօսք որ այդ մարդը բառ մը իսկ հայերէն չէր գիտեր, ամբողջ կեանքը անցուցեր էր Ռուսաստանի մէջ, ռուս ժողովուրդով շրջապատուած։ Հանքային Ջրերէն Կովկաս մեկնելու առթիւ, պարտք էր համարած, անձամբ դիմելու Դաշնակցութեան ներկայացուցիչին, իր պատրաստակամութիւնը յայտնելով, օգնելու ինչով որ կրնայ, քանի որ ինք բարձրաստիճան զինուորական մը լինելով, խուզարկուելու կասկածէ ազատ էր։

Հանքային Ջրերու շրջանի Դաշնակցութեան ղեկավարը Ստեփան Տէր Մկրտիչեանն էր այն ժամանակ, հայրենասէր Ագուլեցի մը, որ մինչ այդ Դաշնակցական ծանօթ դէմք մըն էր եւ որ վերջէն, տխուր սայթաքումի մը պատճառով, անփառունակ վախճան մը ունեցաւ, բոլորէն հեռացած ու բոլորէն լքուած։

Վլադիկաւկազ իջանք Յ. քահանայ Սաուկեանի տունը։ Այս ալ մեր հիներէն էր, փորձուած, կորովի, խելօք մարդ մը, որ

ժամանակցեր էր Խանասորի արշաւանքի պատրաստութեան եւ կռուին :



ՏԷՐ ՅԱԿՈԲ ՔԱՀԱՆԱՅ ՍԱՌԻԿԵԱՆ

Սաթենիկի հետ գործակից ընկեր եղած էր դեռ Պարսկաստանէն, հին օրերու ընկերներ, երբ այնքա՜ն քիչ էին ընկերները, եւ յեղափոխական նըւիրուածները : Իմ վըրաս ուժեղ ու բանգէտ մարդու տպաւորութիւն գործեց Հայր Սառիկեանը :

Հիւսիսային Կովկասի մեր ամենագործունեայ ընկերներէն էր այդ քահանան, միաժամանակ եռանդուն հասարակական արժէքաւոր գործիչ մը ; Թէեւ Ֆարաջայով :

Ըսենք, այն ժամանակ դեռ կուսակցական բիւրեղացումը չէր հասած իր բիւրեղացած վիճակին, ու ներողամիտ վերաբերմունք մը կար դեռ հոգեւորականներու հանդէպ, որոնց կը թոյլատրուէր աղօթել, եւ երբեմն ապրիլ հայ ժողովուրդի ցաւերով : Ի հարկէ, այդ երկայնամիտ ներողամտութիւնը երկար չշարունակուեցաւ · շրջան մը եկաւ, երբ ազգի անունով խօսիլը մենաշնորհ դարձաւ միայն որոշ դասակարգի մարդոց համար, որոնք անպայման պէտք է ունենային կոշտացած ձեռքեր, կամ եթէ ձեռքերնին շատ ճերմակ եւ քնքուշ էր, պէտք էր որ հոլովէին աշխատաւոր բառը, իր ամէն ձեւին մէջ :

Վլատիկաւկազէն մեզի միացաւ Բագուի ռուսական վարժա-

րանի ուսուցիչներէն Ստեփան Ստեփանեանը։ Աս ալ ձախ երիտասարդ Դաշնակցականներէն էր։ Բարեբախտաբար, կենդանի գործը սրբեր տարեր էր բոլոր ֆրազներն ու ձախլիկութիւնները, ու գործի լծուած էին թեթեւ կարմրածներէն մինչեւ կաս-կարմիր բժիշկ Աթաբէկեանը։ Կարծեմ, տեղին է յիշել, թէ այդ օրերուն Վահան Տէրեանն ու Պօղոս Մակինցեանն ալ, որպէս Դաշնակցական պրոպականդիստներ, գիւղէ գիւղ կը շրջէին պողի հաւաքող տէրտէրներու նման, վերջէն, իրենց հայհոյած Դաշնակցութեան փառքը երգելով։ Հին, բարի ժամանակներ, երբ գէթ բանի մը պէտք կուգային ի ծնէ, «մեծ» մարդիկն ալ։

* * *

Սաթենիկի հետ ես առաջին կառքով մեկնեցայ։ Երկրորդով կուգար Ստեփանեանը, բեռնաւորուած «ապրանքով»։

Ռազմավիրական ճամբան, ամբողջ Ռուսաստանի մէջ ու թերեւս ամբողջ երկրագնդի վրայ իր նմանը չունի։ Անդնդախոր ձորերու ծայրերը քերելով, սարերու կատան ի վեր մագլցելով, երկարաւուն ժապաւէնի մը նման երկարած է այդ ճամբան, Կովկասեան լեռնաշղթայի լայնքին։

Երկրորդ օրն էր, կարծեմ, դէմ յանդիման կանգնեցինք լեռնաշղթայի ծերունի հսկային՝ Կազբէկին, որ բարձր ու ցած լեռներով շրջապատուած, աւագ նահապետի նման, պահակ էր կանգնած Կովկասին։ Աւելի բարձր չէ Մասիսէն, թէեւ, կարծեմ, աւելի բարձր է ճարոնական Ֆուճիէն, բայց չունի անոնց շնորհքը, գեղեցկութիւնը, ու ոչ ալ անոնց անթերի կոնը։ Լայնամէջք նստած է Կազբէկը սարերու լաբիւրինդոսի մը չալակին, անոնցմէ քիչ բարձրութեամբ միայն, իր գագաթը տնկած է երկինքն ի վեր։ Անոր տեսքը, չես գիտեր ինչո՞ւ, աւելի սարսափով կը լեցնէ քեզ. ինչ որ զարգանդ կը զգաս. շատ է խոժոռ ու վայրենի։

Թիֆլիս հասնելուս անմիջապէս գնացի Համոյին (բժ. Օհանջանեան), ինչ որ նախօրօք կարգադրեր էինք Ստեփանեանի հետ։ Գնացի իմացնելու, որ ան կուգայ «ապրանքով», որ մէկը ղրկէ զայն դիմաւորելու համար։

Հայ-թաթարական կռիւներու ընթացքին, Թիֆլիս մտնողները քաղաքի ծայրը խուզարկութեան կ'ենթարկուէին։ Ուստի, պէտք էր մէկը դիմաւորելու երթար Ստեփանեանին, որպէսզի օգնէր, եթէ բան մը պատահէր։

Դժբախտաբար, ազատ մարդ չկար: Համօն երկու օրիորդներ դրաւ հետս, որ երթանք ու քաղաքի ծայրը սպասենք օննիբուսի գալուն:

Այդ երկու օրիորդներն ալ Դաշնակցական յայտնի աղջիկներ էին, շատ գործունեայ ու նուիրուած: Օր. Մաճկալն եւ Սաղաթէլեանն էին, որոնք, վերջէն, «անջատողական» շարժման միացան, մինչեւ որ ամբողջ խմբակին հետ ռուս սոցիալիստ-յեղափոխական կուսակցութեան մէջ հալուեցան:

Գիշերուան մինչեւ ժամը 2-ը սպասեցինք. ոչ եկող, ոչ գնացող: Անշուշտ դժբախտութիւն մը պատահեր էր Ստեփանեանին: Խուզարկուած ու ձերբակալուած լինելու է մտածեցինք: Ու ըսե՞մ, թէ ընկերոջ մասին այնքան ալ չէինք մտածեր, որքան հետը բերած փամփուշտի պաշարի մասին:

Օրիորդները գնացին իրենց տները, ես ալ վերադարձայ հիւրանոցս:

Մոմը վառեցի, ու տեսնեմ մէկը, անկողնիս պառկած, կը խռմփացնէ, դէմքը դէպի պատը դարձուցած: Նախ կարծեցի, թէ սխալ սենեակ եմ մտած, բայց տեսայ, որ իմ նիհար պայուսակս մահճակալի կողքին էր: Քնացողին մօտեցայ, եւ ո՞վ լինի որ հաւնիք, մեր Ստեփանեանն էր: Մինչդեռ մենք քաղաքի ծայրը զինքը կը սպասէինք մինչեւ առտուան ժամը երկուքը, դուն մի ըսեր, ան ինձմէ քիչ վերջը հասեր էր Թիֆլիս, ու հիւրանոցներու մէջ սենեակ չգտնելով եւ իմ անունս «Դվորցովի» հիւրանոցի պատին վրայ կարդալով, շիտակ ելեր էր սենեակս եւ առօք փառօք պառկեր էր անկողնիս մէջ՝ մեծահոգաբար, ընդարձակ տախտակամածը ինծի բաժին հանելով:

Զորս դու պատուիրեցեր մէկ հատ հասցուցի քամակին:

— Տօ՛, շան որդի, ամբողջ 7 ժամ քեզի ենք սպասեր, Էնֆիէճեանի զաւօտի կողքին:

— Հա, տօ, էդ դո՞ւ ես Մալխաս, է՛նպէս քնատ եմ որ...

— Հապա ապրա՞նքը...

— Մահճակալի տակն է: Տօ՛, այնպէս կուրեող բան մը պատահեցաւ ճանապարհին որ...

Ու պատմեց.

— «Հասանք քաղաք: Էնֆիէջեանի զաւօդէն (գործարան) քիչ անդին, ուր պահակները կը կանգնին, մեր օննիբուսը կեցուցին: Երկու ռուս սպաներ էին ընկերներս, ռուս կին մը, պարսիկ մը

ու ես։ Պահակ սպան հրամայեց դուրս գալ։ Ես կակարդով (պետական ծառայութեան նշանով) գլխարկս դրած էի, որպէս պետական պաշտօնեայ։ Սպան հարեւանցի մեզ նայեց, ու կասկածելով պարսիկին վրայ, խուզարկեց զայն, առանց բան մը գըտնելու։ Այդ րոպէին ես կ՚օգնէի ռուս կնոջը կառքը բարձրանալու։ Սպան հարցուց պարսիկին, թէ ո՞րն է իր չեմէդանը (պայուսակը), թշուառականն ալ իմս ցոյց տուաւ։

«Երկու զինուորներ վեր բարձրացան եւ կ՚աշխատէին իմ ծանր պայուսակս վար առնել, երբ ես գլխի ընկնելով, վախը սիրտս բռնած, պոռացի, թէ սուտ կ՚ըսէ այդ չանորդին. պայուսակը իմս է, ամբողջովին գրքերով լեցուն։ Այն ժամանակ կառապանը ցոյց տուաւ պարսիկի պայուսակը, բայց մինչ այդ, խեղճ պարսիկը մօտեցաւ ինձ աղաչելով.

«— Աղա, գլխուդ դառնամ, մի քանի մանր մունր բաներ պահած եմ. թո՛ղ քո իրեղէններդ նային, ի՞նչ կը լինի որ. մեծ բարիք կ՚ընես ինձ։

«Խեղճ պարսիկը եթէ գիտնար, թէ իմ պայուսակիս մէջ ալ ի՛նչ մանր մունր բաներ կային... բայց մտքէն իսկ չէր անցներ, որ արհեստակիցներ էինք երկուքս ալ։

«Երբ պարսիկի պայուսակը վար առին, բերնէ բերան լեցուն գտան ատրճանակներով ու փամփուշտներով։ Ես ալ, որպէս թէ տեսածէս զայթակղած, ըսի պահակ սպային.

«— Եկուր ու հաւատք ընծայէ մարդկանց. Երեւանցի վաճառական եմ,— կ՚ըսէր։

«Զինուորները երկու բռունցք հասցուցին պարսիկի վզակոթին ու ձերբակալելով տարին պահակատուն, իսկ մենք ազատ համարձակ որպէս վստահելի քաղաքացիներ մեր ճամբան շարունակեցինք, փառք Ալլահին»։

Ինչ որ է, համով բան էր պատահածը, ու մեր Ստեփանեանը աժան պրծած, այնպէս որ ազնուաբար թողի, որ անկողինս բաժնէ ինծի հետ այդ գիշերուան համար։

Յաջորդ օրը մեկնեցաւ Բագու։ Այլեւս իրար չհանդիպեցանք։ Վերջէն ինչպէս լսեցի, պատերազմի ժամանակ, երբ Թուրքերը մտան Պաքու, մեր Ստեփանեանը անկարող փախչելու, կը սպաննուի։ Շատ համակրելի երիտասարդ մ՚էր, զարգացած եւ խօսելու մեծ ընդունակութեան տէր։

# ԴԷՊԻ ԿԱՂԶՈՒԱՆ

Վահանը (Կոմսը) Ալեքսանդրապոլ էր։ Հոն գնացի։ Ըսաւ, որ միասին պիտի երթանք Կաղզուան՝ նոր գիծ ուսումնասիրելու համար Բասնոցի վրայով դէպի Ալի բէկի շրջանը, ուրկէ ծովով հեշտ էր «ապրանք» Վան հասցնել։

Միասին գնացինք Ղարս։

Ըսել, թէ գնացինք Ղարս, ու անմիջապէս չյայտնել, թէ գացինք այցելութեան եւ Հայոց Թագաւորին, պիտի նմանէր Հռոմ երթալ առանց Պապը տեսնելու։

Իմ ազնիւ ընթերցողներուս ընկերվարական նուրբ ջիղերը չըլլայ որ շաֆ ըլլան։ Դաշնակցութի՞ւն ու թագաւո՞ր... Չէ՛, այն ժամանակ մէկ հատ ալ չէր, երկու հատ ունէինք... Երկու թագաւոր անոր համար, որ չըսուի, թէ դարեր տառապելէ վերջ անմիաբանութեան երեսէն, հայ ժողովուրդը խելքի եկած, միացաւ մէկ թագաւորի արքայական մականին տակ։

Մէկը, մեր աննման Սեւ Քարեցի Սաքօն էր, հայ-թաթարական կռիւներու ընթացքին, Ղազախի եւ շրջանի ղեկավարը, որ այնքան հմտօրէն կրցաւ սանձահարած պահել այդ շրջանի կատաղի թրքութիւնը, մէկէ աւելի անգամներ, իր ծանր թաթի ազդեցութեամբ խելքի բերելով թշնամին։ Եւ հակառակ այդ իրողութեան, թուրքերն էին, որ թագաւորական աստիճանի բարձրացուցին մեր «ընկեր» Սաքօն, նորէն թուրքերն էին, որ իրենց գնահատումին մէջ աւելի անվերապահ, այդ սքանչելի մարդու եւ ռազմիկի անունին կպցուցին «բատիշահ» բառը, անկարող իրենց սքանչացումը ուրիշ ձեւով արտայայտելու։ Անշուշտ որ ղոչախ կռուող մը, աղա պիտի լինի, կամ բէկ, իսկ մէկը, որ բուռ մը քաջերով կրնայ կանգնիլ տասնապատիկ թշնամիի դէմ, փոթորկային արագութեամբ երեւնալով ամէն տեղ, որ կրնայ հարսանիք երթալու նման ուրախ, լայն կուրծքը դուրս ցցած, ուսէն հրացանի հետ անբաժանելի չունկուրը քաշ տուած երգելով կռուի երթալ, որ թէեւ, կռուի ժամանակ կատաղի վագր մ՚էր, բայց խաղաղութեան ժամանակ իսկական բարեկամ մը, անշուշտ որ ան «բատիշահ» մ՚էր, այսինքն բացառիկ մեծ տիպ մը, իսկական ղոչախ մարդ մը, բէկէն ալ աւելի մեծ, այսինքն բատիշահ։ Ու ատոր համար ալ թուրքերը, առանց քաշուելու, բատիշահ կը

կանչէին մեր Սաքօն, առանց մտահոգուելու սակայն, որ Թիֆլիս ընկած ինչ որ մարդիկ, կրնային զիրենք «տգէտ», «անկուլտուրական», «հօրդայ» մակդիրներով կանչել:



ՍԵՒ ՔԱՐԵՑԻ ՍԱՔՕ

Եթէ Ղախազի Թուրքերը ըզգացեր էին Սաքոյի ծանր Թաթը, բայց եւ կը ճանչնային, այդ պարզունակ դրկիցի սրտի մեծութիւնը, մտքի լայնախոհութիւնը: Կը կռուէին անոր դէմ, բայց եւ պատկառանք եւ սէր ունէին անոր հանդէպ:

Օր մը, Սաքօն, Արմէն Գարօն, երրորդի մը հետ, որու անունը մոռցեր եմ, Տփլիճանէն մեկնեցան դէպի Սեւան:

Դեռ Սեւան չհասած, Թաթարական գիւղի մը մօտ, չէնքի մը առջեւ կը տեսնեն խումբ մը զինուած Թաթար գիւղացիներ, որոնք անշուշտ բարի նըպատակի մը համար չէին հաւաքուեր: Սաքօն առանց այլեւայլի, կառքը կը կեցնէ, ու վար իջնելով կը մօտենայ Թուրքերուն:

Թուրքերը երբ կը ճանչնան Սաքօ «բաթիչահ»ը, անկեղծ ուրախութեամբ կը շրջապատեն զայն, մինչ Գարօն ու ընկերը բաւական անհանգիստ վիճակի մէջ, զէնքը ձեռքերնուն պատրաստ, կը սպասեն եղեր, որ ահա կռիւը կը սկսի:

Սաքօն, լայն դէմքին վրայ, այն մանկունակ ժպիտովը, որ այնքան գրաւիչ եւ առինքնող էր, կը մօտենայ ամէն մէկուն, հալ էհվալ հարցնելու, անոնց հետ ունեցած կռիւներէն հիքիաթներ պատմելու, գովելու անոնց կտրիճութիւնը, եւ ինքը, որպէս մարմնացած համերաշխութիւն, ցոյց տալու թէ, որքա՛ն աննպատակ եւ կործանարար է, երկու դրկից ժողովուրդներու մէջ անմիտ արիւնահեղութիւնը:

— Շէյթանըն էվը եըխըլսըն,— գլուխները թափահարելով,

կը պատասխանեն Թուրքերը։

Այսպէս պարզ, մեծահոգի, անվախ ու լայնասիրտ հերոս մէ՛ր, Սաքօն, Թաթարներու Սաքօ «բաոիչահ»ը։

Գանք Ղարսի Թաղաւորութեան։

Այս Ղարսի Թագաւորութիւնը — որ որեւէ կապ չունէր նախկին Հայկական Թագաւորութեան հետ — սկսեր էր Քրիստոսի 1905 Թուականին, համեստագործ Պլօյով։ Պլօ՛ Թագաւոր։

Սարսափելու կարիք չկայ սակայն, ինչ որ ալ լինի, մեր Դաշնակցական Թագաւորական տները, ինչպէս կը տեսնէ գայթակղած ընթերցողս, շատ համեստ խաւերէն էին դուրս եկած. մէկը՝ Սեւ Քարեցի լայնասիրտ գիւղացի մը, միւսն ալ՝ Ղարսեցի համեստագործ մը, բայց եւ այնպէս Թագաւոր։

Ու Վահանի հետ, գնացինք Պլօ Թագաւորին մօտ։

Թերեւս, սիրելի ընթերցողս կը սպասէ, որ ես Թագաւորական պալատ մը նկարագրեմ, չքեղօրէն զարդարուած պալատականներ, դրանիկներ, նախարարներ, բորդֆէյլով եւ կամ առանց բորդֆէյլի, բայց միշտ դատարկութիւններ, եւն. եւն... Հակառակ ցանկութեանս, կը ցաւիմ որ յուսախաբ պիտի ընեմ ընթերցողս։

Ընդունելութիւնը տեղի կ'ունենար Պլօյի փոքրիկ խանութին մէջ, որուն չորս պատերը, զարդարուած էին ձիու կաշեկազմ Թամբերով, սանձերով ու այն բոլոր իրեղէններով, որոնք անհրաժեշտ են՝ նժոյգէ մը սկսած մինչեւ հեզահամբոյր աւանակ մը զարդարելու համար։ Ու ասոնց բոլորին մէջ, Պլօ Թագաւորը, քրանաթոր ծռած կաշիի մը վրայ, զոր կը ձեւէր։

Լայն, ծխծղուն ու մանուանդ գրաւող դէմք մը, պատկառազդու փոր մը, կենդանի, եռանդուն մարդ մը, իսկական հայ քըրիստոնեայ մը։ Ահա Դաշնակցական Պլօ Թագաւորը։

Ձէ, նոյնիսկ Կ. Կոմիտէի անդամ չէ Պլօն, բայց ամէն ինչ է ան։ Հայդուկը անոր կը դիմէ։ Նորեկ ընկեր մը անոր խորհուրդը կը հարցնէ։ «Գործ» մը կայ կատարելիք, անոր միջոցով եւ գիտութեամբ կը կատարուի։ Պլօն «գործադիր մարմին» է կուսակցութեան։ Ան՝ մե՛ծ, Պլօ՛ Թագաւորը։

Ամէն շրջան ալ ունեցեր է իր Պլօն։ Բաթումը իր անխուսափելի Ագարիկն ունէր, Թիֆլիսը՝ Պօղոսիկը, Երեւանը՝ իր Քեթեհօնը։

Անոնք առանց բորթֆէյլի նախարարներ էին, այն տարբե-
րութեամբ միայն, որ իրենք միշտ կային, կը մնային, իսկ մարմ-
նի անդամները երբեմն չէին ալ ընտրուեր:

Անոնք կուսակցական ընկերներու, դէպքերու, կռիւներու, տեռորներու, համայնապարփակ էնսիքլոպեդիաներ էին. որքա՜ն մարդ կը ճանչնային, եւ որքա՜ն գործերու միջամուխ եղած էին:

Պլօն խորհուրդ տուաւ, որ Դուրբախը մեզ հետ վերցնենք, որպէս Կաղզուանի շրջանի ծանօթ անձնաւորութիւն: Ի հարկէ այդպէս ալ ըրինք:

Իրիկունը գնացինք Դուրբախի մօտ: Աս ալ շատ հետաքրքրական Դաշնակցական զինուոր մըն էր, հարուստ անցեալով: Դաշնակցական պարզ զինուոր մը, որ սակայն իսկական Դաշնակցութիւնն է: Գործնական մարդ, որու համար բոլոր ծրագրային փոփոխութիւնները, տարամուտ բառերով ծանրաբեռնուած ֆրազները, արժէք մը չունէին, ու ինք, եւ ոչ իսկ գլուխը կը յոգնեցնէր անոնցմով: Դաշնակցական էր բնազդով: Դաշնակցութեան մէջ էր որ կը գտնէր ազգի շահերու պաշտպանութիւնը: Դեռ աւելին. անոր համար Դաշնակցութիւնը, հայ ժողովուրդի այն մասն էր, որ ինքնաբերաբար լծուած էր ազգաշինութեան ծանր ու պատասխանատու գործին: Եւ բնական էր, որ Դուրբախները գործի մէջ պիտի լինէին:

Դաշնակցական զինուորներու պատմութեան մէջ Դուրբախն ու Դաշնակցական Թէչօն իրենց առանձին տեղն ունին: Տեղն է ըսել, թէ մեր յեղափոխական պատմութեան մէջ անտեսուած կէտ մը կայ. այդ՝ Դաշնակցական զինուորի պատմութիւնն է:

Շատ բազմերանգ է այդ զինուորութիւնը: Ամէն դաս իր ներկայացուցիչը ունեցեր է անոր մէջ: Ամէն երկրամաս՝ իր մարդը, հեռաւոր Ամերիկայէն սկսած մինչեւ Հայաստանի ամենախուլ անկիւնները:

Շատ անգամ Դաշնակցական այդ զինուորներու եւ մտաւորականութեան միջեւ չէ եղած զուգահեռ գիծ մը, գաղափարական ներդաշնակութիւն մը: Մինչ մտաւորականները ընկերվարութեամբ կը խանդավառուէին՝ Կէմի տակ ղարաբաղցի Թէչօն «կեցցէ Հայաստան» կը պոռար, մահամերձ ինկած: Բայց եւ այնպէս զարմանալի ներդաշնակութիւն մը կար անոնց բոլորի միջեւ, երբ հարցը կը ստանար զուտ ազգային գոյն: Հոդ էր, որ

Դաշնակցական ամբողջութիւնը, գիտակցօրէն թէ բնազդօրէն նոյնը կը մտածէր, նոյն տեսակէտը կը բաժնէր:

Այդ օրերուն ու մանաւանդ վերջէն, մեր շարքերը կը մեղադրուէին սոցիալիստ–յեղափոխականներու եւ սոցիալ–դեմոկրատներու կողմէ որպէս անգիտակից մասսա, որ դասակարգային կռուի այբն ու բենը չի գիտեր, որ գիտակից սոցիալիստ չէ:



ԴՈՒՐԳԱԽ

Այս ճիշդ էր այն չափով, որ սոցիալիստական պրոշիւրներու հեղեղ մը չէր ողողած Դաշնակցականներու գրպանները· որ շատ էր թիւը գաւառական գործիչ Դաշնակցականներու, որոնք Էնգելսի ոչ անունը լսած էին եւ ոչ ալ Մարքսի, չէին ալ գիտեր, թէ Կաուցկին ազգային հարցի մասին ինչպէս էր արտայայտուած, ինչ որ նամակի մը մէջ… Բայց բան մը կար, որ մեր հակառակորդները,— աւա՜ղ ղեկավարներ առանց հետեւորդներու,— չէին կրնար անտեսել, այդ այն հանգամանքն է, որ այդ մասսան, առնական ժխտով մը կուրծք տուաւ ռուսական հզօր կայսրութեան դէմ, երբ եկեղեցական կալուածներու գրաւման խնդիրը մէջտեղ ելաւ, կամ զարմանալի տոկունութեամբ, կանգ չառնելով մեծամեծ զոհողութիւններու առջեւ, այդ նոյն մասսան ասպարէզ իջաւ, ու փառքով ալ վարեց հայ–թաթարական կռիւները, համատարած աւերածութեան մէջէն:

Բայց դեռ աւելին ալ կայ: Երբ սահմանի միւս կողմէն, 904–905 թուականներուն, հաւա՜ր փրթաւ, այդ «անգիտակից» մասսայէն, հարիւրաւորներ ձգած տուն ու տեղ, գործ ու հանգիստ կեանք, վազեցին դէպի սահման, օգնութեան հասնելու կռուող եղբայրներուն, ծաղիկ կեանքերնին մատաղ ընելու Հայրենիքի համար:

Այս այլասիրական շքեղ պոռթկումը ցուցադրող երիտասարդութիւնը, եթէ չէր կրնար հոլովել սոցիալիզմը, եթէ չէր կըր–

նար կապկել շառաչուն բառակոյտերով ծանրաբեռնուած սոցիալիստ ճառախօսները, բայց բան մը կրնար ըսել, որ շատ շատեր այդ «գիտակիցներէն» չէին կրնար, անոնք կրնային, այլասերաբար, գիտակցօրէն մեռնիլ հեռաւոր եղբայրներու, թշուառ հայրենիքի մը համար:

Իսկ այդ կարծեմ «յաւելեալ արժէք, Մարքս, Էնգելս, ութ ժամեայ բանուորական օր», ըսելէ աւելի բան մը կ'արժէ:

Զարմանալի անհեթեթութեամբ կուսակցութեան մը առնական կեցուածքը նման պարագաներու մէջ, ամբաստանուեցաւ մեր հայ ախպարիկներուն ու վրացի շովէն սոցիալիստներուն կողմէ, իբրեւ շովինիզմ: Ըստ անոնց մեր կուսակցութիւնը պէտք էր ձեռքերը ծալած նստէր, երբ հայ եկեղեցական կալուածները գրաւուեցան, կամ պէտք էր բիւզանդական վէճերով մտքերը մարզէր, երբ թաթարները, քաջալերուած ցարական կառավարութենէն, հրով ու սրով մաքրել կ'աշխատէին հայութիւնը Կովկասի մէջ:

Բայց այլանդակութիւնը այսքան չէր միայն: Աւելին ալ կար. մեր Դաշնակցական մտաւորական կոչուածները հոգի ու միտք կը հատցնէին ապացուցանելու համար, թէ Դաշնակցութեան ղեկավարութիւնը այդ գործերուն մէջ, պարտադրանքի հետեւանք էր, անխուսափելի անհրաժեշտութիւն մը, որ ի հարկէ, իրենք ալ պիտի նախընտրէին, դասակարգային կռուի նըւիրուիլ, բայց պարագաները...

Եթէ Դաշնակցութիւնը, եկեղեցական կալուածներու գրաւման եւ հայ-թաթարական ընդհարումներու ղեկավարութիւնը միայն կատարած լինէր, իր ամբողջ քառասուն տարիներու ընթացքին, այդքանն իսկ պիտի բաւէր իր գոյութիւնը արդարացընելու համար: Բայց այս մասին վերջէն: Քիչ մը անժամանակ ոգեւորութիւնը զիս ստիպեց շեղիլ իմ պատմութենէս: Դառնանք անոր կրկին:

* * *

Ըսի, որ Դաշնակցութեան պատմութեան մէջ Դաշնակցական զինուորը առանձին տեղ մը ունի, եւ այդ տեղը կամ դիրքը, ամենաբարձրն է կուսակցութեան մէջ: Դաշնակցական զինուորը, ամբողջութեամբ վեր առած, աւելի է զոհած, աւելի է նուի-

րած, աւելի է աշխատած ու հարազատ է կուսակցութեան մէջ, քան միւս բոլոր տարրերը միասին: Երբ կուսակցական կենդանի գործ է եղած, Դաշնակցութեան մէջ տիրող տրամադրութիւնը զինուորականն է եղած միշտ, թօն տուողը կուսակցութեան՝ զէնքի մտաւորականութիւն է եղած: Իսկ երբ համեմատական խաղաղ շրջան մ'է անցուցած կուսակցութիւնը, կամ անցողական շրջան մը, թո՛ղ ներուի ինծի ըսել, թէ պարապութիւնը, խօսելացաւը, որու միքրոպը ռուսներէն ներմուծուած է հայ մտաւորականութեան մէջ, համաճարակ հիւանդութեան ձեւով երեւան է եկած. այդ ժամանակ իշխողը եղած է նորաձեւութեան մարմաջը, ֆրազներու բաբելոնը, հետեւաբար քաբինէթի մտաւորականը:

Այդ փորձանքները քիչ մը շատ էին Բագուի մէջ, քիչ մ'ալ Թիֆլիսի մէջ:

Բարեբախտաբար այդ փորձանքին հոտն իսկ չկար հայ գաւառներու մէջ, ուր ամէն մարդ իր դարդովը կ'ապրէր՝ առանց Մարքսի կամ Կաուցկու օձիքէն քաշելու:

Բայց դառնանք մեր պատմութեան:

Յաջորդ օրը, Դուրպախի ընկերակցութեամբ, կառքով Կաղըզուան գացինք, ուր իջանք ինչ որ «կոմիտէի» մօտ:

Իր հարկէ Վահանն էր խօսողը, կարգադրողը: Իրիկուան քանի մը մարդիկ հաւաքուեցան: Վահանը կը խօսէր անոնց, աւելի ճիշդ է ըսել, կը փափսար մէկ աւոր, մէկ ալ ուրիշի մը ականջին. կարգադրութիւններ կ'ընէր:

Ես յոգնած էի, քնեցի:

Միւս օրը ելանք երեքով, մէկ ալ մեր տանտէրը, ձիերը նըստանք՝ սահմանը երթալու համար: Կէսօրին հասանք սահմանի պինդ մօտը, բարձր սարի մը կողերուն հաստատուած քրտական կօն մը: Սիրալիր հիւրասիրութիւն մը ըրին մեզի, որպէս թէ ես բարձրաստիճան ռուս պաշտօնեայ մ'եմ, որ պտոյտի եմ ելած այդ կողմերը... Չեմ գիտեր, թէ այս սուտը ինչո՞ւ գլտորեցինք: Բայց աւելի թօաֆը այն էր, որ Դուրպախը ինծի հետ խօսած ատեն, որպէս թէ ֆրանսերէն կը խօսէր եւ ինչպէ՛ս բերանը կը ծռմռէր... խեղճ ֆրանսերէն լեզու... Տէր Աստուած, ան ի՜նչ ձայներ կը հանէր: Չէ, հերոսութիւն էր հարկաւոր ռուս մնալու համար, իսկ ես ի ծնէ հերոս չեմ. եափունճին գլուխս քաշած,

այնպէս ծիծաղ մը սկսայ, որ մաղ մնաց աչքերս դուրս իյնային: Չէ՛, շատ բան մոռցեր եմ այդ օրերէն, բայց Դուրպալի ֆրանսերէնը՝ երբե՛ք:

* * *

Ոտքով բարձրացանք սահմանը, որ լեռնաշղթայի կատարներով կ'անցնէր: Հոն դեռ հետքերը կան ճամբայի մը, որ հռովմէացիք էին շինած: Մեր առաջնորդը յայտնեց, որ արդէն Թրքական հողն ենք:

Մեր Վահանը, ռազմունակ զօրավարի մը նման, սփինքսեան խորհրդաւորութեամբ Բասենի դաշտը կը քննէր, որ հեռուն լայն փռուած էր մեր առջին: Մեր չորս կողմը անթառամ ծաղիկներ լեցուն էին, ես ալ սկսայ ծաղիկ հաւաքել:

Մէկ ալ տեսնեմ, որ սրարշաւ դէպի մեզ կ'արշաւէին երեք սահմանապահ ռուս ղազախներ: Ըհը՛մ... Մտածեցի, որ մեր ապուրը եփեցաւ: Չէի գիտեր, որ մեր առաջնորդը զինուած է: Հազիւ թէ ղազախները մեզ հասան վայրի պոռչտուկներով, մէկ ալ տեսնեմ, որ յանկարծակի կակղեցան զառնուկներու նման, ի տես շիշ մը քոնեակի, որ մեր առաջնորդը յաղթական վեր էր բարձրացուցեր:

«Բանից դուրս եկաւ որ»... ըսենք, հէչ բան մ'ալ դուրս չեկաւ, այլ մեր քոնեակը ներս մտաւ ղազախներու փորը, որոնք քաղցր զրոյց ընելով մեր առաջնորդին հետ, ձգեցին, որ Վահանը իր ուսումնասիրութիւնը վերջացնէ, ես ալ՝ իմ անթառամ ծաղիկներու փունջը:

Չեմ գիտեր ո՞վ շատ վաստկեցաւ, Վահանը թէ ես: Երբ Թիֆլիս վերադարձանք, ես այդ ծաղիկները անգին մասունքի պէս բաժնեցի մեր ընկեր-ընկերուհիներուն... «Հայաստանից եմ բերել», ու բնական է, որ համեստօրէն չիկնէի...

Կարծեմ Վահանը շատ կ'ուզէր ծաղիկներուս բաժնեկից լինել...

# Ա Ն Ի

«Անի քաղաք նստեր կուլայ.
Չը կայ ըսող՝ մի՛ լա, մի՛ լա.
Կ'ըսեն քիչ է, թող մնայ լայ»:

Դպրոցական երեխայ դեռ, երբ Բագրատունեաց Թագաւորութեան պատմութիւնը կը կարդայի, իմ մանկական երեւակայութիւնս բոցավառուած էր հազար ու մէկ եկեղեցիներով ու հոյակապ պալատներով զարդարուն, Անի քաղաքով: Ու դիտէի, որ այդ սքանչելի մայրաքաղաքի աւերակները, կենդանի վկաներ անցեալի փառաց օրերուն, դեռ կիսաքանդ կը մնան Ախուրեանի կուշտին, հարիւրաւոր տարիներ դիմադրելով քանդող ձեռքերու, եւ ժամանակի աւերիչ ազդեցութեան դէմ:

Անին՝ իմ մանկական հոգուն մէջ, սրբազան խորան մ'էր, սրբութիւն սրբոց մը, խանդավառ պաշտամունքի առարկայ: Թերեւս այն օրերուն, կը կարծէի իսկ, թէ անցեալ փառքի եւ մեծութեան օրերէն մնացած այդ աւերակներուն վրայ, դեռ սգաւոր նստած, սեւեր հագած կին մը աջ ձեռքը ծնօտին, կ'ողբայ Անին, Հայաստանը, ու չկայ կարեկից սիրտ մը, որ մօտենայ ու ըսէ անոր,— հերիք է այլեւս, «մի՛ լա, մի՛ լա»...

Անասելի երազի մը նման քաղցր էր մտածելն իսկ, այն օրերուն, որ կրնայ պատահիլ որ, օր մը կրնայի Անիին ուխտի երթալ, ծնկաչոք մօտենալ անցեալը մարմնացնող ողբացող կնոջ, երկիւղածութեամբ համբուրել ձեռքերն ու ոտքերը, սրտագին փարիլ անոր եւ ըսել, «մի՛ լա, մի՛ լա»:

Երջանիկ մանկութեան, թեւաւոր երազներ:

Ժընէվէն երբ ճամբաս դարձաւ դէպի արեւելք, հիմնովին փոխելով կեանքիս ընթացքը, հին մանկական երազը նոր յոյսով թեւաւոր, պայծառ կերպով սկսաւ շողալ իմ աչքերուս: Մասիսը, Արաքսը, Անին, ահա այն երեք առինքնող մեծութիւնները, որոնց այնքան խանդավառ կերպով երկրպագելու կ'երթայի:

Տեսեր էի փառապանծ Մասիսը, տեսեր էի եւ մայր Արաքսը, որ աւա՜ղ, այնքան տխուր տպաւորութիւն էր ձգեր վրաս. իսկ Անի՞ն, չէ՛, չէի տեսեր, հեռուէն հեռու, մութ զանգուածի մը նման աչքիս զարկեր էր Անիի պարիսպները միայն: Ի՞նչ արժէք

մ՚էր Անին ինձ համար, մի՞թէ միայն աւերակ քաղաք մը, անցեալ մեծութեան մէկ բեկո՞րը։ Թերեւս ի զուր փորձեմ, հոգեկան կապով բացատրել, այնքան որ դժուար ու անորոշ է այն։ Իր բոլոր պատմական եւ գեղարուեստական արժէքովը միասին, Անին կարծես սիմպոլ մ՚էր անցեալի բոլոր աւերակներուն, որոնք ծածկեր էին Հայաստան աշխարհը։ Կրօնական ջերմեռանդութեամբ, կ՚ակնկալէի ուխտի երթալ անոր, տեսնել եւ շօշափել անցեալի այդ կոթողը, համբուրել սրբատաշ քարերէ կերտուած վեհափառ եկեղեցիներու դռները, եւ եթէ կ՚ուզէք, նստիլ քարի կտորի մը վրայ, ու հոնդուր հոնդուր լալ, գիտակցելով որ մանկութեանս երեւակայած սեւազգեստ կինը, լալէն աչքերը ցամքած, անօգնական եւ անյոյս, դարեր սպասելէն վերջ, ինքն ալ քարացած, խառնուեր էր մեծ աւերակներու կոյտին։

Սակայն մինչեւ այդ ժամանակ, հնարաւորութիւն չէի ունեցեր ուխտս կատարելու։

Կաղզուանէն Ալեքսանդրապոլ վերադառնալնուս, Վահանի հետ, միացանք մեծ խմբի մը, որ Անի կ՚երթար պտոյտի։

Երկաթուղիով կը հասնինք Անի կայարանը, չոր անապատային տեղ մը, քարքարոտ եւ բարկ արեւէն խանձուած շրջապատով։

Եզան սայլի ճամբայ մը բռնած, երկաթուղագծին գրեթէ ուղղանկիւն մը կազմած, կը սկսինք առաջանալ, դէպի Ախուրեան։ Մօտ ժամ ու կէս կը տեւէ այդ ճամբան, ինչ խօսք որ առաջապահներուն մէջ եմ, անհամբերութենէս ինքզինքս կրծելով։ Թեթեւ բարձրութենէ մը վերջ, ահա անզգալի վայրէջք մը, ու մենք քրտնաթոր, կանգ կ՚առնենք Ախուրեանի բարձրադիր ափին, հայկական գիւղի մը մօտ։

Հանդիպակաց ափին, լայնօրէն փռուեր է Անին։ Ձորէն վար կը վազենք դէպի Ախուրեանի ափը։

Թոյլ տուր սիրելի՛ ընթերցող, որ քեզ առաջնորդեմ դէպի այդ նուիրական աւերակները, որոնք գիտեմ, քեզ համար ալ, այնքան սրբազան նշխարներ են, որոնց լքուած վիճակը քու սիրտդ ալ է մորմոքեր ու լացուցեր։

Զգո՛յշ ընթերցող, փոքրիկ, երկարաւուն նաւակը, այնքան է հին եւ խարխլած, որ եթէ ուժեղ կերպով ցատկես, յատակը փուլ կուգայ, կամաց մը տեղաւորուէ յետակողմը, ահա գիւղացին երկար ձողով մը առաջ կը շարժէ զայն, դէպի միւս ափը։

Հազիւ ձորի միւս կողմը անցած, կը հանդիպինք չորս կողմէ թափթփած քարերու կոյտի, գրեթէ ամէն տեղ, գետի ափէն մինչեւ ձորի կատարը, որ զգալի շեղութեամբ կը բարձրանայ: Ախուրեան գետը, դարերու ընթացքին իր հունը փորելով, դաշտէն առնուազն եօթանասուն ոտքի մը չափ խորացեր է եւ ստեղ-



ԱՆԻԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻՆ ՀԱՐԱՒ ԱՐԵՒԵԼՔԷՆ ԴԻՏՈՒԱԾ

ծեր բնական ձորի մը մէջ, կրկնակի ձոր մը, շատ աւելի շեղ կողերով:

Թափթփած քարերու մէջէն դժուարութեամբ կը բարձրանանք, մինչեւ կը հասնինք լայնանիստ աշտարակի մը քանդուած պատերուն, որմէ քիչ մը դէպի աջ, կը գտնուին, քաղաքի ստորերկրեայ անցքերը: Աշտարակի փլուած պատի մը պատռուածքի մէջէն, կը մտնենք Անի քաղաքը, մեր մեծ Հայրերու թողուցած այդ շքեղ մայրաքաղաքը, որ իր աւերակ վիճակին մէջ իսկ, այնքան ուժգնօրէն կը պատմէ Հայի անցեալ պատմութիւնը եւ քա-

ղաքակրթութեան աստիճանը:

Հազիւ քանի մը քայլ յառաջացած, բարձրութեան մը վրայ կը հանդիպինք նախապատմական, կիկլոպեան կոչուած պարիսպի հետքերուն, որը ամենայն հաւանականութեամբ, Անիէն, դարեր առաջ գոյութիւն ունէր: Կիկլոպեան պարիսպը, որուն Հայաստանի մէջ շատ մը տեղեր կը հանդիպինք, կը բաղկանայ հսկայ ժայռերէ, որոնք հեռուներէն բերուած, ուղղակի իրար վրայ դրուած են շուրջանակի, այն նախապատմական դարերուն, երբ քար տաշելու գործիքներ եւ շաղախի մասին, բնիկները գաղափար չունէին: Այդ միեւնոյն կազմուածքը ունի, եւ Վասպուրականի Հայոց Ձորի Հայկայ Բերդ կոչուած կիկլոպեան պարիսպը:

Մեր աջ կողմը կը մնայ, միաշար լայնանիստ պարիսպը, ու մուտքի գլխաւոր դռները:

Անզգալի զառիվեր մ՚ալ բարձրանալով, ինքզինքնիս կը գտնանք բուն քաղաքի մէջ...

Չորս կողմ թափթփած քարեր, կիսակործան պատեր, բարձր հողակոյտեր գրեթէ ամէն կողմ: Հարկաւոր է բարձրանալ այդ հողակոյտերէն մէկուն վրայ, ընդհանուր պատկերը տեսնելու համար:

Ինչպէս առաջնորդեմ քեզ իմ սիրելի՛ ընթերցող, ո՞ր մէկ կիսակործան տաճարի խորանին առջեւ արտասուենք մեր անցեալ փառքը...

Ուղիղ մեր դիմաց, մեծատաղանդ Տրդատ ճարտարապետի ձեռքէն կարծես նոր դուրս ելած, երկու հարիւր քայլ հեռուն կը կանգնի՝ սրբատաշ քարերով, Անիի մայր տաճարը, մէկը Անիի գեղեցկագոյն շէնքերէն, որը գրեթէ անաղարտ մնացեր է, բացի գմբեթէն, որ կործանուած է արդէն:

Այդ սքանչելի եկեղեցին, անհնարին յուզումով կը լեցնէ դիտողի մը հոգին, ոչ միայն իր պատմական արժէքովը, այլ հոյակապ ճարտարապետական ոճովը, որով բացառիկ տեղ մը կը գրաւէ մեր եկեղեցիներուն մէջ: Աւելի պարզ, աւելի վսեմ ամբողջութիւն մը, հազիւ թէ կարելի լինի երեւակայել: Այն կարծես եկեղեցի մը չէ, այլ գեղեցկութեան գաղափարը մարմնաւորող, տաճար մը սրբազան:

Ներքնամասովը թէեւ աւելի քան պարզ, բայց արտաքնապէս, դռներու, պատուհաններու եւ կամարակալներու բոլորտի-



ԱՆԻԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻԻ ԽՈՐԱՆԸ

քը, նուրբ քանդակներով զարդարուած է։

Եկուր սիրելի՛ ընթերցող, երթանք դէպի մայր տաճարը, համբուրենք նրբաքանդակ դրան կողերը, ներս մտնենք, երկիւղածօրէն ծնրադրենք բարձրակամար խորանին առջեւ, ու մեր նոր աղօթքը ընենք, անցեալի եւ ապագայի խոհերու մէջ խորասուզուած։

Այս եկեղեցիին մէջ օծուեր է 1042 թուականին Բագրատունի թագաւորներէն, Գագիկ Երրորդ, երիտասարդ կորովի թագաւորը, որ դժբախտաբար գահ կը բարձրանար ատեն մը, երբ թէ ներքին եւ թէ արտաքին թշնամիները քայքայեր էին Բագրատունեաց հարստութեան հիմքերը։ Կրօնակից յոյներն ալ փոխանակ զօրավիգ կանգնելու հայերուն, չորս անգամ ահագին բանակներով, կ՛արշաւէին Հայաստան, որպէս թէ, իրենց ժառանգութեան տիրանալու համար։

Յունաց Միքայէլ կայսրը, հարիւր հազարնոց բանակով մը պաշարեց Անին 1041 թուականին, ու կը սպառնար քար ու քանդ ընել քաղաքը, երբ Պահլաւունի Վահրամ սպարապետը միայն երեսուն հազար զօրքով, յանկարծակի դուրս խոյացաւ քաղաքէն, կատաղօրէն ինկաւ յունական բանկին վրայ, ու աւելի քան քսան հազար զօրք կոտորեց, ու թշնամին փախուց Հայաստանի սահմաններէն։

Բայց վերջի օրհասական կռիւներն էին ատոնք, վերջապէս Գագիկ Երրորդը, աւելի ճարահատ քան խաբուելով, գնաց Կոստանդնուպոլիս, ու հոն խաբէութեամբ վար դրուեցաւ, ու այդպիսով վերջ գտաւ, Բագրատունեաց թագաւորութիւնը։

Այս ճարտարապետական հրաշալիք մայր եկեղեցին, թէեւ Սմբատ թագաւորի օրով սկսաւ շինուիլ, մեծատաղանդ Տրդատ ճարտարապետի ձեռքով, բայց վերջացաւ Գագիկ առաջինի օրով, անոր Կատրամիտէ թագուհիի ծախքով եւ ջանքերով։

Գագիկ Առաջինի շինել տուածն է եւ Սուրբ Գրիգոր Լուսաւորչի զմայլելի եկեղեցին, որ մեծապէս վնասուած է սակայն։

Միեւնոյն Տրդատ ճարտարապետի ձեռակերտ, այս զոյգ եկեղեցիները, իրենց ճարտարապետական ոճով ու յատակագծով իրար շատ նման են, միայն Սուրբ Գրիգոր Լուսաւորիչը աւելի փոքր է, ու արտաքին քանդակներն ու զարդերը, նուազ աչքի զարնող։

Անի քաղաքը շինուած է հարթութեան մը վրայ, որ պարա-



Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻՆ, ԱՐԵՒՄՈՒՏՔԷՆ ԴԻՏՈՒԱԾ

նոցով մը կը մխանայ Շիրակի դաշտին: Երկու կողմէն եզերուած Ախուրեան եւ Ալաճա գետերով, այդ եռանկիւնի հողամասը հետըզհետէ նեղնալով կը վերջանայ երկու գետերու միացած տեղը:

Այդ եռանկիւնի սուր գագաթը, քաղաքի մակերեսէն, յանկարծակի կը բարձրանայ վեր մինչեւ երեք հարիւր ոտք, կազմելով բնական ամրութիւն մը, երեք կողմէն զահավիժօրէն կախուած կողերով, որու վրայ շինուած է պատմական, անառիկ միջնաբերդն ու Թագաւորական պալատը: Զարմանալի կերպով հողամէն ինչ քարուքանդ վիճակ մը ստացեր է, հազիւ մէկ երկու մատուռներ փլատակներու մէջէն կիսաքանդ դուրս կը ցցուէին, բայց Թագաւորական պալատի հիմքերուն հետքերն իսկ անհետ սրբուեր են:

Ամբողջ քաղաքը, գրեթէ շրջապատուած է պարիսպներով, երկու ձորերու ուղղութեամբ, բացի փոքր տարածութենէ մը, որ միջնաբերդի արեւելեան կողմը կ՚իյնայ, եւ պատսպարուած է ուղղաձիգ ժայռերու բնական ամրութիւնով:

Իսկ եռանկիւնի լայնանիստ խարիսխը, որ պարանոցի մը նման կը կապուի Շիրակի ընդարձակ դաշտին, ամրացուած է երկշարք պարիսպներով Ախուրեանէն մինչեւ Ծաղկաձոր եւ բազմաթիւ բոլորակ աշտարակներով: Պարիսպի առջեւ լայն եւ խոր քարաշէն փոս մը կ՚երկարի, պաշարման ժամանակ ջրով լեցընելու համար: Այս կրկնակ պարիսպները, որոնց դռները իրար դէմ դիմաց չէն գտնուիր, որպէսզի թշնամին մէկէն ներս խուժած ժամանակ, միջոց տայ պաշտպանուողներուն նոր դիմադրութիւն մը կազմակերպել, երկրորդ պարիսպը պատուար ունենալով, շինուեցան Սմբատ Երկրորդի օրով, որ բացի այդ պարիսպներէն, քաղաքը զարդարեց բազմաթիւ շէնքերով, պալատներով, եկեղեցիներով: Դեռ մինչեւ վերջերս, այդ պարիսպներուն վըրայ 11 դռներու հետքերը կը մնային, իսկ թէ այդ դռներու թիւը ո՞րքան էր առաջ, դժուար է ըսել:

Պալատի մը հետքերը կը գտնուի, Անի քաղաքի հիւսիս արեւմտեան ծայրը, պարիսպի պինդ մօտիկը: Այդ պալատի ամենատպաւորիչ եւ գեղեցիկ մասը մուտքի դուռն է, երբեմն մոզայիքներով զարդարուած: Մայր տաճարէն քիչ արեւմուտք կ՚իյնայ, արաբական ջամին եւ ութնանկիւնաւոր բարձր մինարէն: Ջամիի ներքնակողմը, հինգ հաստաբերձ սիւներու վրայ կը բարձրանայ կամարաւոր տանիքը:



ԱՆԻԻ ՊԱՐԻՍՊՆԵՐԸ ԵՒ ԿԱՄԱՐԱԿԱՊ ԱՆՑՔԸ, ԴՐՍԷՆ ԴԻՏՈՒԱԾ

Կը բարձրանանք մինարէի ներքին ոլորապտոյտ սանդուխով, դէպի գագաթը, ու ահա ամբողջ Անին կը պարզուի մեր աչքին առջեւ:

Բացի քանի մը շէնքերէ, որոնք կանգուն մնացեր են, եւ կամ կիսաքանդ վիճակի մէջ, մնացեալ ամբողջ հարթութիւնը ծածկըւած է քարակոյտերով, եւ հողածածկ թումբերով, որոնք ապահովաբար քաղաքի բնակիչներուն բնակարանները, արհեստանոցները եւ վաճառատեղիներն էին ժամանակին:

Պարսպապատ Անիի տարածութիւնը, հազիւ չորս քիլոմեթր լինելով, մարդ կը դժուարի երեւակայել թէ, ինչպէս այդ քաղաքը, որ ունէր հազար եւ մէկ եկեղեցիներ, բազմաթիւ պալատներ, եւ հարիւր հազարէ աւելի բնակչութիւն մը, կրնար այդքան նեղ տարածութեան մը վրայ պարփակել զանոնք:

Հանելուկը կը պարզուի սակայն, երբ կ'այցելենք Ծաղկոցաձորի, Ալաճա ձորի, Ախուրեան ձորի, բազմաթիւ ընդարձակ քարայրները, որոնք յարմարեցուած էին բնակութեան համար: Հասարակ (չինական) ժողովուրդը ամբողջութեամբ, նոյնպէս եւ բազմաթիւ ազատանիներ այդ քարայրներուն մէջ կ'ապրէին, որոնք ամէն տեսակէտով, նախընտրելի էին բնակութեան համար:

Սիրելի՛ ընթերցող, հնագէտ մը չէի եւ ոչ ալ պատմաբան մը, ուխտաւոր մ'էի, որ կ'երթար նախնիքներէն մնացած այդ սրբազան նշխարհը տեսնելու: Պատմեցի ինչ որ տեսայ Անիի մէջ, թերեւս պակասաւոր կերպով, որը յուսամ պիտի ներուի ինծի, երբ նկատի առնուի, որ իմ այցելութենէս 26 տարիներ վերջը գրիչս ձեռք կ'առնեմ, Անիի մասին խօսելու համար:

Ամբողջ օրը թափառելէ վերջ, երեկոյեան կողմ, կը հաւաքուինք Մայր տաճարի մէջ: Մեզ հետ է, սիրելի Մաշթոց վարդապետը, որ կը սկսի երեկոյեան ժամասացութեան, մենք ալ տխրացութիւն կ'ընենք այն խորանին առջեւ, ուր դարեր առաջ, Գագիկ Երրորդը, թագաւոր օծուեցաւ Գետադարձ Պետրոս կաթողիկոսի ձեռքով...

Անին, անդին յիշատակներու թանգարան մ'է սիրելի ընթերցող, հայ անցեալ փառքի, բայց մանաւանդ հայկական քաղաքակրթութեան աննման կոթող մը, որ այսօր նորէն գերութեան տակ կը հեծէ: Մեր հոգու խորքին մէջ, ան պէտք է մնայ սրբազան եւ լուսաւոր փարոս մը. մենք երբեք, եւ ոչ ալ գալոց սերունդը պիտի մոռնանք Անի քաղաքը, որ նստեր կուլայ, ու մեր



ԱՆԻԻ ՄԶԿԻԹԸ ԵՒ ՄԻՆԱՐԷՆ

ճիգն ու աշխատանքը պիտի կեդրոնացնենք, որ օր մը, կարողանանք լսել անոր «մի՛ լա, մի՛ լա»:

Անի քաղաքը, Թէկուզ աւերակ ու գերութեան մէջ, սիմպոլն է անցեալին, ու առաջնորդող փարոսը ապագային:

Երեկոյեան կողմ մեկնեցանք Անիէն, տխուր, բայց եւ նոր երազներով ոգեւորուած: Այդ երազը ամէն հայու տան մէջ, պլպլացող կանթեղի նման, պէտք է վառ մնայ յաւիտեան:

## ՊԱԹՈՒՄ

Թիֆլիս վերադարձեր էինք: Օր մ'ալ Իշխանը լսաւ, թէ Պաթում պիտի երթամ: Մինչ այդ Պաթում կը մնար պոլսեցի Սուրէն անունով երիտասարդ մը, որպէս «ազատ ընկեր»: Կեդրոնական Կոմիտէի բոլոր անդամները, ծանրաբեռնուած անձնական գործերով, անկարող էին կուսակցական աշխատանքները տանիլ· մէկը պէտք էր բոլորովին ազատ, որ հետեւէր որոշումներու իրագործման, կապ պահէր խմբերու հետ եւ քիչ մըն ալ ճառ խօսէր բանուորներուն, այսինքն՝ քչիկ մը սոցիալիստ պէտք էր լինէր, կարենալ գլուխ ելնելու, վրացի ու ռուս յեղափոխականներու հետ, որոնք եթէ գործ մը չէին կրնար ընել, բայց այնքա՛ն պլպլան լեզու ունէին...

Անկասկած, իմ սիրելի ընթերցողս ալ կը զգայ, որ այդ իմ գործս չէր: Բայց «ազատ» մարդ չկար, ու ես պարտաւորուած գնացի: Գնացի, եւ երկու շաբաթ չանցած՝ իմ հիւանդութիւնը վերադարձաւ կրկին, կարծես շատ ցանկալի հիւր մը լինէր, որուն կարօտը կը քաշէի: Ա՛լ կարգին ջլախտաւոր էի դարձեր: Վերադարձայ Թիֆլիս, բոլորովին անպէտքացած գործի համար:

Հոս, միջանկեալ պատմեմ, թէ ինչպէս առաջին անգամ հանդիպեցայ «ուսանող» Գէորգին, կամ կուսակցական անունով Թըռուցիկին: Լսեմ անմիջապէս, որ գրեթէ բոլորն ալ յեղափոխական գործիչներէն, կեղծ անուն մը ունէին՝ օրինակ, Փայլակ, Կայծակ, Երկաթ, Ուխտաւոր, Ղարիպ եւայլն, եւայլն: Բայց ոչ մէկուն անունը այնպէս չէր յարմարած իրեն, ինչպէս Գէորգի անունը: Կարծես նոր կարուած զգեստ մը լինէր, ճիշդ վրան ձեւուած:

Թռուցի՛կ... Պարապ խօսք չէ Թռուցիկ անուն կրելը, մեր

Գէորգը իր էութեան մէջ ինչ որ Թռուցիկային բան մը ունէր, երեխաներու բաց ձգած Թռուցիկի մը նման, որ սակայն Թելով գետնին կապուած չէ, այլ իր էութեամբը միշտ Թռուցիկ վիճակի մէջ կը սաւառնի բարձրերը միս մինակ, միշտ օդին մէջ, առանց այս սեւաւոր հողին վրայ ոտք դնելու:

Թռուցիկը քէն էր ըրեր երկրէն, ու օդն էր ելեր որպէս... ամառանոց: Հոն ալ մնաց մինչեւ վերջը: Ծիտակը Պարսկաստան ալ գնաց, վերադարձին պարսկական զօրավարի վերարկու մը հագին:


ԹՌՈՒՑԻԿ, ԿՐԵՏԱՑԻ, ԱՄԻՐԵԱՆ

Ոմանք ըսին, թէ իր աստիճանին համապատասխան վերարկու մ'էր այդ. ուրիշները ի հարկէ, չարամիտները կը փսփսային, թէ Թիֆլիսի «Սալդատսկի բազարի» հնավաճառներէն է գնուած: Ծիտակը, ես թէեւ սկզբունքով ձեռնպահութեան հակառակ եմ, բայց թող ներուի ինծի, որ այս շատ ծանրակշիռ հարցին մէջ, կամքէս անկախ պատճառներով ձեռնպահ մնամ:

Եւ յետոյ ի՞նչ նշանակութիւն ունի, թէ վերարկու մը որտեղէ՞ն եկեր է, Գէորգը վերջին անգամ Պարսկաստանէն էր եկեր, ուր Քեռիի օգնականներէն էր եղած, եւ վերարկուն ալ զարմանալի կերպով, կը սազէր անոր բարձր հասակին:

Թռուցիկը, երբեմն շատ բարձր թռչելուն համար մահկանացուներու աչքէն կը կորսուէր, յանկարծ մէջտեղ ելնելու համար: Մէկ ալ զինքը տեսայ Նորք գիւղը, Վարդանի խումբի պատրաս-

տութեան ժամանակ, պատմական վերարկուն միշտ ուսերուն, գլուխը բարձր, քիթը հովին տուած:

Մեր Գէորգն ալ շատ հիներէն էր․ դեռ 97 թուականին, հազիւ նկատելի աղուամազով մը սեւցած վերին շուրթը, ան փորձ հայդուկներու կողքին, Խանասորի արշաւանքի կռուին մէջ, իր պատուաւոր բաժինը ունեցաւ, որպէս պատանի զինուոր:

Լաւ տղայ մ'էր, ընկեր մը, որուն ինչ ուզելը չէիր հասկնար սակայն, դժգոհ էր ինչէ՞ն, ինչո՞ւ համար: Մա՛ղ ... մա՛ղ կը տառապէր հիւծախտ հիւանդութենէ մը, որուն միքրոպը չէ գտնուած դեռ, ու որմէ վարակուողներուն թիւը առա՛ջ շատ աւելի էր քան մենք հիմա կը կարծենք:

Կարծեմ, Թուցիկը այդ հիւանդութեամբ ծնած էր, ըստ իմ դիագնոզին: Այդ՝ մեծամասնութեան անմեղ հիւանդութիւնն էր, որ ոչ ոքին չի վնասեր, բացի հիւանդէն: Բայց նորէն մեծ չխօսինք․ ո՞վ էր որ հիւանդութիւն մը չունէր այս հիւանդագին շրջանին:

Դեռ Գերմանիա երթալէն առաջ — ուս ալ մտադրութիւն մ'էր միայն ուսանելու, ուրկէ ալ մնաց անունը՝ Ուսանող Գէորգ — կարծեմ խմբապետ Միհրանի ղեկավարութեամբ, խմբով փորձեցին անցնիլ Տաճկաստան: Օլթիէն ելնելով, սահմանի անտառներուն մէջ ճամբան կորսնցուցին, օրերով թափառելէ վերջ վերադարձան յետ:

Հայաստանի անկախութեան շրջանին չեմ յիշեր, թէ Թուցիկը Հայաստան եկա՞ւ... Եւ սակայն, ի՜նչ լաւ պիտի սազէր տեսնել զինքը հայկական զօրապետի վերարկուով ալ... Ամէնքս մուրազներուս հասանք, իսկ ան ուշացած արագիլի նման, բացը մնաց: Խեղճ Գէորգ:

Ուսանող Գէորգին, Թուցիկին առաջին անգամ Պաթումի հանդիպեցայ:

Քանի մը ընկերներով կ'երթանք զինքը տեսնելու ծովափեայ «Պէլ-Վիւ» հիւրանոցի սենեակներէն մէկուն մէջ: Թուցիկ երկնցած էր մահճակալի վրայ, աչքերը առաստաղին, գրեթէ անկենդան, անշարժ, կարծես գամուած ըլլար: Հազիւ թէ կը խօսէր, եւ սաստիկ ընկճուած կը զգար: Պաթումի ընկերները վատ տրամադրուած էին անոր հանդէպ․ ես ալ պակաս չէի մնացեր:

Ժընեւէն, բաւական մը զէնք տուած էին իրեն, որ Բաթում բերէ: Երբ զմելի մ'իսկ դժուար էր փախցնել մաքսատունէն, այդ

զէնքերու կապոցը, որ յամենայն դէպս, Գէորգը իր տաբատի գրպանին մէկ անկիւնը պահելու անկարող էր, փորձանք էր դարձեր իր գլխուն: Ու գիտնալով, որ աւելի եւս մեծ փորձանք պիտի բերէ նորէն «իր գլխուն», երբ ռուսական մաքսատան մէջ ձերբակալուի, խոհեմութիւն, ըսենք արթնամտութիւն էր ունեցեր այդ գլխացաւանքէն հրաժարիլ, զանոնք Տրապիզոնի առջեւ ծովը թափելով: Այդ արարքին համար, չորս կողմէն զինքը կը մեղադրէին:

Քիչ մը լռակեաց, ինքն իր մէջ ամփոփուած մէկն էր Թռուցիկը, բայց այն համոզմունքը ունէր, թէ զինքը չեն կրնար գնահատել· այսպէս ալ մնաց մինչեւ վերջը: Ի՞նչ եղաւ, չեմ գիտեր, մեր Ուսանող Գէորգը, Թռուցիկը:

* * *

Թիֆլիս հասնելուս երկար մտածեցի· ճիշդը, ցանկութիւն ունէի, զոհաբերութեան պատրաստակամութիւն ալ կար մէջս գործին ծառայելու, բայց իմ նիհար ու բեկուող մարմինս հակառակի պէս շատ փխրուն, չէր դիմանար այդ շատ չարքաշ կեանքի պահանջներուն:

Մտածեցի, որ ի զուր է շարունակել փորձելը: Բժիշկներն ալ յայտնեցին, որ երկարատեւ անպայման հանգստի պէտք ունիմ: Չէ, նորէն բուժարան մը երթալու սիրտ չունէի: Մտածեցի որ լաւագոյնը պիտի լինի Ամերիկա երթալ, մօրս ու եղբայրներուս մօտ:

Առանց ինքզինքս խնայելու, կրցածիս չափ աշխատեր էի ու, եթէ չէի մեռած եւ «Դրօշակ»ի մէջ ալ նկարս տպուելով չէի հերոսացած, ճշմարիտ, որ յանցանքը իմս չէր:

Ընկերներուս յայտնեցի իմ ցանկութիւնը, որոնք իմ վիճակս տեսնելով համաձայնեցան: Յանձնարարեցին Ժընեւով անցնիլ, նամակներ տանելու, ու բերանացի զեկուցում մը տալու հոն գտնուողներուն:

Պաթումէն շոգենաւ առի:

Մօտ 15 օրէն, առտու շատ կանուխ հասայ Ժընեւ:

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆ

Կայարանէն անձապարեցի «Դրօշակ»ի խմբագրատունը:

Հին չէնքէն փոխադրուած էին: Փոքր վիլլա մըն էր նորը, սիրուն պարտէզով մը շրջապատուած:

Զանգը կը զարնեմ: Դուռը կը բանայ մէկը, որ կը թուի թէ պառաւ կին մ'է, տղամարդու հագուստով: Կարծեմ, անձապարանքիս մէջ, առանց բարեւելու, վեր կը վազեմ ընկերները տեսնելու: Ոչ ոք չկայ:

Ընդունարանէն կ'անցնիմ խորհրդասենեակը, որ աշխատութեան սենեակն է Բիւրոյի, տեղ մը, ուր ընդհանրապէս հիւրերը չեն մտներ: Սեղանին վրայ Պարսկաստանէն ղրկուած նամակ մը կը տեսնեմ, ու իմ ուղարկածս արխիւը, որ դեռ չէ բացուած: Չեմ գիտեր ինչո՞ւ, նամակը կը կարդամ կամ աւելի ճիշդ է ըսել, կը փորձեմ կարդալ:

— Ան չէ ամա, այստեղ Քէլ-Ալլին պա՞ղը կարծեցիր...

Ցանկարծակիի կուգամ: Դուռը բացողն է, որ ետեւէս եկեր եւ ստուերի նման հետեւեր է ինծի: Ու հիմակ, ձեռքը մէջքին, նայուածքով մը, որ հեղնական բան մը ունի, վերէն վար կը չափէ զիս:

Ա՞ս ինչացու է, կը մտածեմ... Կարծեմ քիչ մ'ալ կը շփոթիմ:

— Հարցնելը ամօթ չըլլայ, հրամանքդ ո՞վ կ'ուզես...

Չէ, աս մարդը ինծի ձեռք է առեր, կը մտածեմ. քիչ մ'ալ պզտիկ կը զգամ, որ չէնք չնորհք վերաբերմունք մը չեմ ունեցեր հետը: Կ'երեւի, մեղքս քաւելու համար շատ քաղաքավար կը հարցնեմ.

— Ընկերներէն ոչ ոք չկա՞յ. ժամը քանի՞ն կուգան որ...

— Ընկերներդ ո՞վ կ'ըլլան կոր որ...

Տէր Աստուած, այս պառաւը հետս խաղի՞ ելած է: Ու երեսն ի վեր կը պոռամ, որ ես Պարսկաստանէն կուգամ եւ անունս Մալխաս է: Կարծեմ, անմեղուկ հայհոյանք մ'ալ բերնէս կը փախի:

— Ծօ ախպար, մարդու պէս անունդ չի տայի՞ր,— ու ծպտըւած պառաւը ձեռքը կ'երկնցնէ ինծի՝ աւելցնելով.—

— Ինծի Տիար Անտոն կ'ըսեն:

Աւելի քան պերճախօս: Զգացումով ձեռքը կը սեղմեմ:

Ընթերցողս, կարծեմ, գլխի ինկաւ, որ ես զայն ծպտուած պատաւ կոչելով, զոհ էի դարձած արտաքին խաբուսիկ երեւոյթներու: Իրողութիւնը այն էր, որ բնութիւնը գէշ կատակ մը խաղացեր էր Տիար Անտոնի ծնունդի ժամանակ, զինքը ստեղծելով երկու սեռէն դուրս, չէզոք գետնի վրայ: Ճիշդ այնպէս, ինչպէս Ջալալ-Օղլիի շրջանը, որ ոչ Հայաստանի մաս էր, ոչ ալ Վրաստանի, այլ չէզոք գօտի մը, կնքահայրութեամբ անգլիական զինուորական միսսիայի, որ շատ հեռուներէ եկած էր իր փոքրիկ զինակցին, Հայաստանին օգնելու՝ շրջապատելով զայն ... չէզոք գօտիներով:



ՏԻԱՐ ԱՆՏՈՆ ԳՈՉ

Մենք գոնէ շնորհակալութեան բուռն զգացումներ չունէինք մեր «մեծ դաշնակցի» հանդէպ: Չեմ գիտեր, թէ Տիար Անտոնը ի՞նչ ձեւով կը վերցնէր այդ անհամ կատակը, որ իր գլխուն խաղցըւեր էր, ծնունդէն իսկ երկու սեռէ դուրս, չէզոքացուելով: Բայց գիտեմ, որ ապացուցանելու համար մանկավարժական այն տեսակէտը, թէ ստացական կարողութիւնը աւելի զօրաւոր է, քան բնածինը, իր ամբողջ կեանքին մէջ երբեք չէզոք հողի վրայ ոտք չկոխեց, ան ամբողջ կեանք մը ապրեցաւ, ու մեռաւ Դաշնակցական մը:

Կարնեցի էր: Երկար ժամանակ մնաց Պուլկարիա, ուր գործօն մասնակցութիւն մը ունէր կազմակերպական գործերուն մէջ, ու աքթիւ դեր մը Սուլթան Համիտի մահափորձի պատրաստութեան ժամանակ: Վերջէն անցաւ Ժընէվ ու մնաց խմբագրատան մէջ, աշխատեցաւ սրտցան հոգատարութեամբ ու մեռաւ հոն խոր ծերութեան մէջ:

Տանք յարգանքը հին վաստակաւորին, եւ թո՛ղ մարդկային տկարութիւնները չ՚աղօտեն մեր գնահատութեան չափը:

Հողը թեթեւ քու վրադ, Տիար Անտոն Գօչ:

* * *

Առաջին եկողը Խաչատուրն էր, Ակնունին։ Իմ ճամբորդութեան ընթացքին էր տեղի ունեցեր ռուսական մեծ յեղափոխութիւնը եւ հրատարակուեր ցարական յայտնի մանիֆեստը, որով կը ստեղծուէր պետական Դումա (Խորհրդարան) եւ ուրիշ կարգ մը բարենորոգումներ կը մտցուէին։ Սաստիկ ոգեւորուած էր Խաչատուրը, կը նախատեսէր մօտ ժամանակուայ ընթացքին, «Դրօշակ»ը Կովկասի մէջ հրատարակել ու դեռ շատ ուրիշ խանդավառող հեռանկարներ։ Իմ հասցէիս ալ քանի մը քարեր նետեց, որ այսպիսի ժամանակ Ամերիկա երթալու մասին կը մտածեմ։



ՄԱՐ (Մ. ՏԷՐ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ)

Քիչ վերջը եկան Միքայէլն (Վարանդեանը) ու Մարը։

Առաջին անգամն էր, որ ես կը հանդիպէի Մարին։ Ան նոր էր եկեր Ժընեվ, եօթը երկար տարիներ Մարաշի մէջ, շըղթայակապ բանտարկուած մընալէն վերջը։

Մարը, Ադօյի կրտսեր եղբայրը, գործիչներու այն շարքին կը պատկանի, որոնք հազիւ կոկոնի մը նման բացուած, յանկարծ կը խամրին։

Դեռ երիտասարդ, ան ալ ուխտաձներէն մէկը, եկեր էր խանդավառ զգացումներով, ծառայելու դժուարին գործի մը, որուն անունն էր յեղափոխութիւն։

Պուլկարացիի մը անցագրով, ան կ՚անցնի Կիլիկիայի շրջանը գործելու։ Հազիւ քանի մը ամիս անցած սակայն, կը ձերբակալուի մատնութեան մը հետեւանքով եւ կը բանտարկուի։ Անկէ վերջը կը սկսի անոր մարտիրոսութիւնը։

Դատարանը, թէեւ փաստ որ գործ ունի հայ յեղափոխականի մը հետ, բայց չէր կրնար հաստատել անոր ինքնութիւնը, իսկ

Մարը, ուրանալով հայ լինելը, ամբողջ եօթը տարի կը մնայ այդ բանտին մէջ, անկարող բառ մը հայերէն արտասանելու, մինչեւ որ պուլկար կառավարութեան պահանջներուն վրայ, վերջապէս ազատ կ'արձակուի ու կ'անցնի Ժընէվ։

Երկարատեւ բանտարկութիւնը, զրկանքները, քնի մէջ իսկ հայերէն չխօսելու սարսափը, բանտի քարէ սալայատակի վրայ եօթը տարիներ պառկիլը, հոգեպէս եւ ֆիզիքապէս ամբողջովին քայքայեր էին զայն։ Երիտասարդ ծերունի մ'էր ան, երբ հանդիպեցայ իրեն։ Վերջէն անցաւ Պոլիս, սահմանադրութեան շրջանին, եւ ապա Կովկաս, ուր կը գտնուի այժմ։

* * *

Վարանդեանին, ինչպէս կը յիշէ ընթերցողս, հանդիպեր էի դեռ 903 Թուականին, առաջին անգամ Ժընէվ գալուս։ Դժուար է անոր դիմագիծը տալ, քանի մը սուղ տողերու մէջ։

Դաշնակցական ուսանող մ'էր Եւրոպա, երբ Քրիստափորը հանդիպելով անոր, եւ գնահատելով անոր ունեցած պատրաստութիւնը, հետզհետէ առաջ կը քաշէ զայն, մինչեւ որ կը կապէ «Դրօշակ»ի խմբագրութեան հետ։ Երկար տարիներ, Միքայէլը կը մնայ «Դրօշակ»ի խմբագիրներէն մէկը, եւ հետզհետէ լոյս կ'ընծայէ «Կովկասեան Վանդէեան», «Դաշնակցութիւնը եւ իր Հակառակորդները», «Հոսանքներ», «Հայկական Վերածնունդը», «Հայկական Շարժման Նախապատմութիւնը» երկու հատոր, «Փիլիսոփայ Սոցիօլոգ», «Բողոքը Նորագոյն Պատմութեան մէջ», «Ս. Զաւարեան»*) եւ կարգ մը ուրիշ գրքեր եւ հարիւրաւոր յօդուածներ, Դաշնակցական թերթերու մէջ սփռուած։ Ամենաշատ արտադրող տեսաբան–հրապարակագիրն է Դաշնակցութեան, ու մինչեւ այժմ, նախանձելի յարատեւութեմբ մը, ծերունազարդ Վարանդեանը անսպառ եռանդով մը կ'աշխատի, նորանոր հատորներով օժտել իր արդէն պատկառելի գրական հարստութիւնը։

Անկասկած որ անոր հրատարակութիւնները, մանաւանդ սկզբնական շրջանին, խանդավառ ընդունելութիւն մը կը գտնային արտասահման (մասնաւորապէս Ամերիկայի մէջ), եւ մեծապէս կը նպաստէին Դաշնակցական մասսայի, Դաշնակցական

*) Այս աշխատութիւնը, որ աւելի քան անյաջող փորձ մ'է, Սիմոնի դիմագիծը ներկայացնող, ոչինչով չարդարացներ, Վարանդեանի գրական համբաւը։

դաստիարակութեանը։ Բայց այդ հրատարակութիւնները, հազիւ թէ Երկիր կ՚անցնէին, իսկ Կովկասի մէջ, անոնց արժէքը չէր համապատասխաներ, արտասահմանի մէջ անոնց ձեռք բերած համբաւին, ու այդ շատ հասկնալի պատճառով։

Վարանդեանը՝ բառի խսկական առումով, Դաշնակցութեան անվիճելի տեսաբանը չէր, եւ եթէ անոր գործերը, աւելի քան օգտակար կրնային լինել մասսայի համար, բայց քիչ թէ շատ զարգացած և մանաւանդ օտար լեզու մը գիտցողին համար, անոնց թերացումը, նոր բան մը չէր աւելցներ, արդէն ունեցածնուն վրայ։ Ու ատոր համար ալ, Վարանդեանը Դաշնակցական մասսայի սիրելի գրողը եղաւ եւ այդ, մասնաւորապէս իր ոդեւոր լեզուի եւ թեւաւոր ոճի շնորհիւ։



ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆ

Գաղափարի եւ խորութեան տեսակէտով, անոր գրիչը կարծես չհասաւ այն բարձրութեան, որ ենթադրել կուտար սկզբնական տարիներու իր աշխատանքները։

Թափը կոտրեր էր անոր մէջ, սկզբնական ոգեւոր տարիներուն յաջորդեր էր կայուն վիճակ մը, եւ այդ, շատ հասկնալի պատճառով։

Ատոր մէջ որոշ դեր կատարեր էր, եւրոպական փրոփականտի ծանր գործը, որ վերջին, գրեթէ Վարանդեանի ուսերուն էր ծանրացած ամբողջովին, կասեցնելով անոր ինքնազարգացման ընթացքը։

Վարանդեանի գործունէութեան մէջ, պակաս արժէքաւոր տեղ չի բռներ եւրոպական փրոփականտին մատուցած իր ծառայութիւնը։ Բժիշկ Լոռիս Մելիքեանէ վերջ, կարծեմ 904–905–էն սկսեալ, երբ վերոյիշեալը զանազան պատճառներով մեկուսացաւ, հետզհետէ Վարանդեանի վրայ ծանրացաւ այդ աշխատութիւնը։

Եւրոպական փրոփականտի գործն ալ, քիչ մը շատ գերագնահատուեցաւ Վարանդեանի կողմէ, որ անոր կուտար աւելի մեծ նշանակութիւն, քան ինչ այն կ՚արժէր իրականապէս:

Զարմանալիօրէն աշխատունակ եւ արտադրող, Վարանդեանը կը մնայ մինչեւ այսօր, Դաշնակցութեան լաւագոյն մտաւորականներէն եւ տեսաբաններէն մէկը:

* * *

Դառնանք մեր պատմութեան շարունակութեան:

Տոպրակս պարպեցի, կովկասեան վերջին անցուդարձերու մասին տեղեկութիւններ տուի, նոյնպէս եւ Իշխանի նամակը:

Անդրանիկը Բեռն էր գնացեր այդ ժամանակ: Նամակ մը գրեցի իրեն, որ եկեր եմ ու շուտով պիտի երթամ Ամերիկա, որ ջղերս քայքայուած են, որ ալ գործին օգտակար չեմ կրնար ըլլալ այս վիճակով: Մէկ երկու օրէն հեռագիր մը ստացայ իրմէ, որով կ՚առաջարկէր անմիջապէս իր քովը երթալ, մանաւանդ որ Բեռնի ուսանողներն ալ ինչ որ երեկոյթ ունէին, ուր պիտի դասախօսէր յայտնի գերմանացի կին գրող, Էլլզէ Ֆռապան:

Բեռն հասնելուս, ուսանողները տարին զիս ինչ որ հռչակաւոր պրոֆեսորի մօտ, որ մասնագէտ էր ջղային հիւանդութիւններու: Ծերուկը զիս լաւ մը տնտղեց եւ հեղինակաւոր ձայնով մը յայտնեց, թէ 4–5 ամիս կատարեալ հանգիստ մը բաւական է զիս կազդուրելու... եթէ միայն կարողանամ եզի նման ապրիլ: Բացատրութեան այս ձեւը, ճիշդ է որ, շատ բանաստեղծական չէր, բայց ինծի համար շատ օգտակար եղաւ. եւ ես հետեւեցայ կէտ առ կէտ կատարելով անոր պատուէրները: Ոչ կը կարդայի, ոչ կը գրէի, ժողովի չէի երթար, տեսակ մը բուսական կեանքով կ՚ապրէի:

Անշուշտ ատոնք չէի կրնար կատարել Ժընէվ մնալով, ուր փորձութեան պատճառներ շատ կային. տեղափոխուեցայ Լօզան:

Լօզանի բարձունքները, սքանչելի տեսարանով սենեակ մը վարձեց Սիմոն Յակոբեանը: Ուրախ տղաքներ շատ կային եւ ուսանողուհիներ, որոնց հետ ժամանակս կ՚անցնէի, ի հարկէ հետեւելով եւ պրոֆեսորիս պատուէրներուն:

3–4 ամիսէն կատարելապէս կազդուրուած էի:

Չմոռնամ ըսել, թէ Բեռնի ուսանողական երեկոյթը շատ յաջող անցաւ: Սրահը լեփ լեցուն էր հայ ուսանող–ուսանողուհինե-

րով։ Կային քանի մը տեղացիներ ալ ու ճաղատ, փայլուն գլուխներով ծանրախոհ մարդիկ, որոնք համալսարանի պրոֆեսորներ էին։ Էլիզէ Ֆռապան հայկական հարցի մասին սքանչելի ճառ մը կարդաց, որ մօտ երկու ժամ տեւեց. ունկնդիրներու մեծամասնութիւնը արթուն էր, կային եւ լողներ։ Կովկասեան չիչլիկ ալ կար։ Երեկոյթի ամբողջ տեւողութեանը ես քնած էի։ Ջղային հիւանդ էի, ատոր համար։

Տիկին Դասախոսուհին իր ճառը վերջացնելուն՝ ջերմապէս գնահատուեցաւ ծափահարութիւններով, երախտապարտ հայ ուսանողութեան կողմէ. ես ալ քնէս արթնցայ. իսկ Անդրանիկը, կ՚երեւի հրացաններու ժխորին վարժուած ըլլալով, դեռ կը քընանար։

Յիշեմ, որ այդ ժամանակ Լօզան կ՚ուսանէր, ըսել կ՚ուզեմ կ՚ապրէր Սիամանթօն։ Կարծեմ աւելորդ է ըսել, թէ քանի մը օր չանցած՝ իրարու հետ կռուեցանք, քէն ըրինք իրարու, յետոյ հաշտուելու պայմանով։ Ու այսպէս պարբերաբար, մինչեւ վերջը՝ մէկ հարաւի քամին կը փչէր, մէկ ալ յանկարծ հիւսիսի քամին, սաստիկ ցուրտ ու սառնամանիք։ Պըռ՜ռ՜ռ՜...

* * *

Մարտին թէ Ապրիլին Ժընէվ դացի նորէն։ Ալ բոլորովին կազդուրուած, կամ այնպէս կը թուէր ինծի, որոշած էի յետ վերադառնալ դէպի Կովկաս։ Դեռ կը ծիծաղէի ալ իմ վրաս, որ պահ մը ուզեր էի Ամերիկա մեկնիլ։

Օր մըն ալ Խաչատուրը ըսաւ, թէ փոխանակ Կովկաս մեկնելու պէտք է երթամ Եգիպտոս, ուր ներքին կուսակցական պառակտում մը, անհրաժեշտ էր դարձուցած դրսի ընկերոջ մը ներկայութիւնը։ Ըսի, որ ոչ մէկ կերպով չեմ համաձայնիր հոն երթալ (կուսակցական կեանքիս մէջ միակ մերժումս էր այս), որ ես պէտք է Կովկասով Երկիր երթամ, ինչու համար որ արդէն ճամբայ ելած էի 1903-ին։

Այդ ատենները Նիկոլ Աղբալեանը Ժընէվ էր, որպէս ազատ ունկնդիր համալսարանի։ Ան համաձայնեցաւ Եգիպտոս երթալ, ես ալ Յունաստան, ուրկէ ինձ յանձնարարուած գործը լրացընելէ վերջ, պիտի անցնէի Կովկաս։

Ժընէվէն մեկնելուս՝ տղաքը պատուիրեցին, որ Մարսիլիայի մեր պահեստէն հետս... զէնք տանիմ Բաթում։

— Ի հարկէ, ի հարկէ,— պատասխանեցի։

Շատ էի երիտասարդ ու բնականաբար մոռացկոտ, կարծես Թռուցիկի պատմութիւնը գոյութիւն չունենար, որը ոչ հին ազգաց պատմութիւն էր ու ոչ ալ միջին դարու, այլ ժամանակակից։ Եւ սակայն մոռցեր էի։

Այնպէս որ, Մարսէյլ հասնելուս, երբ մեր ներկայացուցիչը տեսայ, ըսի որ հետս զէնք ալ պէտք է տանիմ։ Այս փորձուած մարդն ալ ըսաւ, թէ, «ես այնպէս սնտուկ մը շինել տամ, որ սատանան ալ չգտնայ զայն»։ Իսկապէս որ սատանան ալ չէր կրնար գտնալ։

Երկու խօսք այս ներկայացուցիչի մասին։

Վրդանէս Ղազարեան էր անունը, որը հակառակ սմսարութիւն ընելուն, պարկեշտ համբաւ մ’ունէր Մարսէյլի մէջ։ Բարի, անձնուէր եւ նուիրուած մարդ մէ’ր։ Մասնաւորապէս 904–906 թուականներուն շատ օգտակար եղաւ մեր գործին, անշահախնդրաբար աշխատելով։ Այս բարի մարդը, որու ջերմ հիւրասիրութիւնն ալ վայելած եմ, իր ընտանեկան յարկին տակ, իմ գրածներուս մէջ, որպէս թէ իրեն հանդէպ աննպաստ տողեր կարդալով, սաստիկ վրդովուեր էր։ Անշուշտ այդ վրդովումը անտեղի էր· իսկ եթէ իմ գրիչս, կը սիրէ քիչ մը հեգնութիւնը ու քաշքըշուքը, ունի այն արդարացումը, որ տեղը գալուն, գիս ալ չի խնայեր, ուր մնաց ուրիշները։

Նաւային սնտուկ մը շինել տուաւ, հազիւ երկու ոտք բարձրութեամբ։ Առանց չափազանցութեան, մէկ ոտքէն աւելին էր սնտուկի որպէս թէ թագստոցը, ուր տեղաւորած էինք 10 մաուզէր ատրճանակ, իրենց կոթերով, ու մօտ 2,000 փամփուշտ։ Սնտուկի ազատ մասը դնելու բան չունէի։ Եւ մեր Ղազարեանը, աժան ներքին հագուստներ գնեց, պարապը լեցնելու համար։

Սնտուկը, թէեւ բաւականին խորութիւն ունէր արտաքուստ, բայց երբ բացուէր, հազիւ թէ ողորմելի թզաչափ մը խորութիւն կը ցուցադրէր... ճիշդ որ սատանան չէր կրնար գտնել պահուած զէնքերը, բայց խաշած հաւ մը, անշուշտ կրնար։ Ի տես սքանչելի թագստոց սնտուկին, մտմտուքը գիս առաւ։ Բայց ճամբորդութիւնը ու հասնելիք տեղիս հեռաւորութիւնը, քիչ մը մխամտցուց գիս, կամ ըսենք շատ ալ չմտածեցի։ Վերջապէս, մտածելով ալ բան մը շահելիք չունէի, ինչ կը լինէր կը լինէր։

Իմ յաջող բախտիս յանձնարարելով ինքզինքս, շոգենաւ նըս-

տայ: Անտէր սնտուկս ալ, որ սաստիկ ծանր էր, իմ սենեակս փոխադրել տուի, որպէսզի, ամէն րոպէ աչքիս առջեւ գտնուելով, տրամադրութիւնս խարապ ընէ:

Եթէ թուրիստի մը ճամբորդական նկարագրութիւնը լինէր գրածս, ինչ խօսք որ երկար կանգ պիտի առնէի Նափոլիի հրաշագեղ ծոցի եւ կամ այս ու այն եկեղեցիի մէջ գտնուած հռչակաւոր նկարի մը վրայ, եթէ նոյնիսկ ոչինչ հասկնայի անոնցմէ:

Երկու օրերու շատ կարճ ժամանակին մէջ եղայ քչիկ մը ամէն տեղ եւ չմոռցայ այցելել Պոմպէյը:

Բայց ամենէն ուշադրաւը ինծ համար Վեսուվն էր: Ծերունի հսկան գիշերները արիւն կը փսխէր, ցերեկները թանձր ծուխով քօղարկուած:

Այդ երկու օրերը այնքա՜ն հետաքրքիր անցան, որ գրեթէ մոռցեր էի իմ անիծեալ սնտուկը:

Ես Յունաստան պիտի մնայի, ըստ Ժընեվի ընկերներու կարծիքին, հազիւ 15 օր: Չեմ կրնար ինքզինքիս հաշիւ տալ, թէ մինչ այդ ինչպէ՞ս չմտածեցի ես, չմտածեցին նաեւ ընկերներս, որ Յունաստան դուրս գալու համար մաքսատան նման բանէ մը դուրս պիտի ելնէի անհրաժեշտաբար: Ու ի՞նչ մեղքս պահեմ, մինչեւ Փիրէ հասնելս, այս հարցը երբեք իմ մտքէս ալ չէր անցեր:

Տաք ու պաղ քրտինք կոխեց, երբ շոգենաւը կանգ առաւ Փիրէի առջեւ: Հիմակ ի՞նչ ընելու էի: Եթէ զէնքերը բռնուէին, նոր բարդութիւններ առաջ պիտի գային. առանց այդ ալ յոյն կառավարութեան հետ գլխացաւանք ունեցեր էին մեր ընկերները, եւ ես ալ որպէս թէ այդ գործը լիկվիտացիա ընելու համար կ'երթայի հոն, ու ահա նոր գլխացաւանք մըն ալ ես ինքս էի բանալու:

Բոլոր ճամբորդները մեկնած էին արդէն, իսկ ես, թանկագին բանի մը պէս, սնտուկիս կողքին կանգնած, որոշում չէի կրնար տալ: Երանի հեռագրած լինէի Յունաստանի ընկերներուն իմ գալս, բան մը, որ ինչ ինչ պատճառներով չէի ուզած ընել:

Մէկ ալ նաւավար մը մօտեցաւ ինծի, Խայեղչի Լեւոնն էր, որ որսկան շան մը հոտառութիւնն ունէր: Աւելորդ է ըսել, թէ Դաշնակցական ընկեր մ'էր եւ գործօն մաս ունեցեր էր Յունաստանի գործերուն մէջ, Իզմիրի ու Պոլսի ցոյցերու պատրաստու-

թեան ժամանակ։ Եւ առանց այլեւայլի հայերէն սկսաւ խօսիլ հետս։

— Փիրէ դուրս պիտի գա՞ս, չէ՞։

— Այո՛, կմկմացի,— Սարհատը կը ճանչնա՞ս...

Արդէն տխրական շեշտով մը, «ընկե՛ր երթա՛նք» ըսաւ։ Ես ընկեր բառը ընդհանրապէս քիչ մը չեմ սիրեր լսել, ու երբեք ալ չեմ ըսեր ուրիշին, բայց այս անգամ «ընկեր»ը անօրինակ քաղցրութիւն մը ունէր, կարծես սրտիս վրայէն լեռ մը գլորտեցաւ։

Յայտնեցի, որ սնտուկս պէտք չէ որ բացուի մաքսատան մէջ։ Քիչ ըսածէս, Լեւոնը շատ հասկցաւ, ու երբ յայտնեցի, որ սնտուկիս անմիջական պէտք մ'ալ չունիմ, այնպէս մը կարգադրեց, որ սնտուկս առանց քննելու պահեցին մաքսատան մէջ, իսկ ես իրեն հետ դուրս ելայ քաղաք։

Անմիջապէս մեկնեցայ Աթէնք։ Սարհատի հասցէն ունէի։ Պզտիկ երեխայ մը քանի մը սեւ փողի փոխարէն զիս տարաւ մինչեւ անոր կեցած տունը։ Աղքատիկ տուն մ'էր, շատ պարզ, բայց մաքուր սենեակներով։ Ծանօթացանք։ Ներկայացուցի Բիւրոյի նամակը, որով կը լիազօրէին զիս Յունաստանի գործերը լիկվիտացիայի ենթարկել։ Սարհատը ոչ մէկ առարկութիւն ըրաւ. ըսաւ, թէ ինքը ուրախութեամբ կ'ենթարկուի ըլլալիք կարգադրութիւններուն։

* * *

Երկու խօսք Սարհատի մասին։

Բարձրահասակ, թիկնեղ երիտասարդ մըն էր, գրաւիչ դէմքով։ Ծնած էր 18... չեմ գիտեր քանի՞ն... Այս պարագան, պարտք կը համարեմ շեշտել, որովհետեւ եթէ Հռոմի ժամանակ ապրած լինէր, անկասկած յայտնի ծովահէն մը կը լինէր, իսկ եթէ տասնեւեօթերորդ դարուն՝ ափրիկեան գերեվաճառ մը։

Երկակենցաղ մարդ մ'էր, որ ջուրի ու ցամաքի վրայ իր տանը պէս ինքզինքը կը զգար. արկածասէր մը, որու համար անկարելի բան չկար։ Ու թերեւս ճիշդ ատոր համար կը մտածէր բաներ, որոնք ուրիշներու համար անկարելիութիւններ էին։ Սերտօրէն կապուած էր մահափորձի ու Իզմիրի գործերուն հետ, նոյնպէս եւ Կիլիկիայի։

Քիչ մը աշխարհիկ մարդ էր, վարպետ մաքսանենգ, աներկիւղ յեղափոխական, փանթաստիկ ծրագիրներ երազող, ու պէտք եղած ժամանակ ալ իրագործող։ Հայ էր, Թուրք էր, յոյն

էր, նայած թէ որտե՞ղ կը գտնուէր, եւ որը լինելը ձեռնտու էր իրեն: Զարմանալի կերպով, միշտ ձէթի պէս ջրի երեսը կը մընար, որքան ալ նեղ պարագաներու մէջ գտնուելու լինէր:

Շատ ժողովրդական մարդ մը Յունաստանի մէջ, նախարարներէն սկսեալ, մինչեւ պալատական տիկիններու բարեկամութիւնը շահած էր, եւ անոնց հետ ֆիլիրթ կ'ընէր: Այս, ի հարկէ, պատճառ մը չէր, որ Փիրէի ծակ ու ծուկերուն մէջ անծանօթ մը լինէր:

Հոգեկան հարազատութիւն մը ունէր մաքսանենգներու հետ, ինքն ալ մէկը այդ բալիքարիներէն: Նաւավարները անուններով գիտէր: Փիրէի գինետուն — որջերուն մէջ բարեկամներ ունէր, եւ վարժ հոտառութիւն մը՝ մարդիկ ճանչնալու: Տեսակ մը Շէրլօք–Հոլմս, որ եւ յեղափոխական էր, այսինքն՝ Դաշնակցական:

Այս կը շեշտեմ ոչ թէ կուսակցական ինքնասիրութենէ ազդըւած, այլ անոր համար, որ Սարհատ եւ նման տիպերը, ամէն բանէ աւելի «էֆշըն»ի հաւատացողներ են, իրենք իսկ իրենց հոգեկան կառուցուածքով, լրացուցիչ մաս մը կը կազմեն անոր: Օրինակի համար, ամէն բան կարելի է երեւակայել, բայց որեւէ մէկը, զայն ճանչցողներէն, կրնա՞յ երեւակայել, Ռամկավարներու շարքերուն մէջ Սարհատը... անշուշտ ոչ. ու այս ոչ թէ անոր համար որ ան շատ լաւ մարդ մ'էր կամ Դաշնակցութիւնը միակ յեղափոխական կուսակցութիւնը, այլ որովհետեւ նման կենդանի տիպերը, կրնային ապրիլ միմիայն գործօն մարմնի մը մէջ, ինչպիսին էր Դաշնակցութիւնը:

Պատերազմի ընթացքին յանկարծ Թիֆլիս եկաւ: Աւելորդ է ըսել, նոր ծրագրով մը, որը թէեւ ըստ երեւոյթին ֆանթաստիկ, բայց կը հաւատամ, որ եթէ ռուս զինուորական շտաբը համաձայնած լինէր, կրնար յաջողցնել: Առաջարկութիւնը ոչ աւելի, ոչ պակաս, «Գէօբէն» զրահաւորը պայթեցնել էր: Պատրաստեր էր գործնական ծրագիր մը:

Երկու բառով բացատրեմ Սարհատի ծրագիրը: Գէօբէն և Պրեսլաւ զրահաւորներուն հրամանատարը, Ղալաթիայէն, յոյն վաճառականէ մը կը ստանար, մեքենաներու համար գործածած թանրձ իւղը, մեծ տակառներով: Սարհատը նկատած էր, որ գրեթէ ամէն օր, 4–5 տակառ իւղ մեծ մավունաներու բեռցըւած, կը տարուէր դէպի այդ զրահաւորները: Սարհատը ինքն իր հաշւոյն սկսեր էր հետապնդել: Վաճառատան մէջ, մշտական կեր-

պով 6–7 համալներ կը մնային, իսկ գիշերները եւ կիրակի օրերը, միեւնոյն համալը կը մնար վաճառատան մէջ, որպէս պահապան: Կը ծանօթանայ, ու աստիճանաբար կը բարեկամանայ անոր հետ: Այդքանը արդէն բաւական էր Սարհատի համար, որ կազմէր իր ծրագիրը: Յոյն պահապանը, ինչպէս կ'երեւի կոնծել կը սիրէ եղեր, Սարհատն ալ տրամադիր հետը քէյֆ ընելու:



ՍԱՐՀԱՏ (Յ. ՅԱԿՈԲԵԱՆ)

Սարհատը կը ծրագրէ, կիրակի օր մը, պահապանը հարբեցնելէ վերջ, իւղի տակառներէն մէկուն մէջ լեցնել մէլէնէթ, դժոխային մեքենայով մը միասին, որ տակառի որեւէ մասի փրցըւելով, պիտի պայթեցնէր մէլէնիթը: Եւ որովհետեւ, Սարհատը ուսումնասիրած էր տակառները տանելու գործողութիւնը մանրամասնօրէն, գիտէր որ մավունայէն տակառները բարձրացուելով, ուղղակի կ'իջեցուէր գրահաւորի ներքնակողմը, ամենայն հաւանականութեամբ, կեդրոնական մեքենաներու քով պահեստ մը, ուր տակառը կը քանդուէր: Սարհատը վստահ էր, որ եթէ շոգենաւը չպայթէր իսկ, կենսական մեքենականութիւնը գրահաւորին, այնպիսի չափերով պիտի վնասուէր, որ այլեւս անգործածելի պիտի դառնար ան:

Այս Սարհատի ծրագիրներէն մէկն էր, տեղը գալուն կը խօսիմ եւ ուրիշներու մասին: Հնարագէտ, յանդուգն, եւ գործնական միտք մ'ունէր ան, նման դաւադրական գործեր ղեկավարելու համար:

Ռուս պետական Դումայի անդամ Պապաջանեանին յայտնեցի այդ ծրագրի մասին, ի հարկէ Սարհատի համաձայնութեամբ, որ փոխարքային դիմում կատարէ՝ այդ գործը յաջողցնելու համար:

Չեմ գիտեր, թէ Պապաջանեանը հարկաւոր դիմումը կատարե՞ց։ Բայց գործը ընթացք չստացաւ։

Ընկերական, ափոքր երիտասարդ մ'էր Սարհատ ու վերին աստիճանի ընկերասէր։ Ռուս յեղափոխական դպրոցի տիպը չէր, խստակրօն հասկցողութիւններով, որոնք ոչ ուտել ունին, ոչ հագնուիլ, այլ միայն գաղափարական ճգնաւորութիւն եւ ճառախօսութիւն։ Մեր Սարհատը կը սիրէր ուտել, խմել, հագուիլ, լաւ ժամանակ ունենալ, տեղը եկած ժամանակ ալ, կանգ չէր առներ ոեւէ վտանգի առջեւ։ Ան ինծի կը յիշեցնէր Մակեդոնացի յեղափոխականները, որոնք յեղափոխական գործունէութենէ վերջ, երբ արտասահման կ'անցնէին, հազարներ կը ծախսէին լաւ հիւրանոցներու մէջ, զեխ կեանք մը անցնելով։ Մինչդեռ մերոնք, Երկիր թէ արտասահման, ճգնաւորի կեանք կ'անցնէին, սէնթի վրայ դողալով, ու հայ հասարակութիւնն ալ, փառք սահածողին, խոշորացոյցով կը գիտէր անոնց ապրելակերպը, հաւկիթի մէջ մազ փնտռելով։

Սարհատը, Սափոյի, Քրիսի ու Թորգոմի հետ, կուսակցութենէն հեռացուեցաւ կարծեմ 1907-ի Ընդհ. Ժողովէն վերջ։

Տեղը չէ այդ վճիռի մասին խօսիլ։ Բաւական է ըսել, թէ Սափօն, Երեւան գումարուած 9-րդ Ընդհ. Ժողովի որոշումով, կուսակցութեան մէջ նորէն մտած համարուեցաւ, թէեւ ինքը աքթիւ դեր մը չխաղաց անկէ ետք, իսկ Սարհատը պատերազմէն վերջ, Պոլսոյ մէջ նորէն գործի գլուխ էր կանգնած։

Ժընեւի ընկերներու՝ գլխ Յունաստան ղրկելնուն պատճառը հետեւեալն էր երկու խօսքով։ Աթէնքի մէջ, օր մը յանկարծակի, մեր ընկերները ձերբակալուած եւ բանտարկուած էին։ Ես կ'երթայի այդ գործը հաշուեյարդարի ենթարկելու։ Հոս խօսքը տանք Սարհատին, որ իր անպաճոյճ ու քիչ մը կոպիտ ձեւով պատմէ եղելութիւնը, որ ամբողջ Յունաստանը տակն ու վրայ էր ըրած։

* * *

«Ընդհանուր Ժողովի որոշումով, եթէ Սուլթանի մահափորձը, անյաջողութեան հանդիպէր, կամ չտար սպասուած արդիւնքը, ութ օր վերջ Իզմիրը մահափորձին արձագանգ պիտի տար, հետեւեալ կերպով։

«Ես ընկերներով, պիտի գրաւէի Ֆրանսական հիւպատոսարանը, իբրեւ բանակցութեան կեդրոն։

«Նախապատրաստական աշխատանքները եւ ծրագիրը շատ լաւ պատրաստուած էր: Առաջին օրը կառավարական պալատը եւ Տէք–Բիւքլիւքը պէտք է օդը ելնէին: Մաքսատունը եւ երկաթուղու կայարանները, Այտընի եւ Մաղնիսայի, երկրորդ օրը պիտի պայթեցուէին: Երրորդ օրը, օդային կազի տիփօն, չորրորդ օրը երկաթուղիի երկու կամուրջները, եւ այսպէս 8–10 օր շարունակաբար, որեւէ կէտի վրայ դէպք մը պիտի պատահէր: Այս բոլոր նախօրօք նշանակուած վայրերը, ելեքտրական ժամացոյցներով, ելեքտրական թելերով եւ պայթուցիկներով կազմ ու պատրաստ վիճակի մէջ էին:

«Սուլթանի մահափորձէն քանի մը օր վերջը, Թուրք ոստիկանութիւնը, Քրեստի Լիօնէյէն ձեռք կ'անցնէ, Իզմիրի կոմիտէի գործօն անդամներէն, Գէորգ Յարէթեանի անունը, որով կը հասկնայ թէ՝ այդ անձը Պոլսոյ մահափորձի հետ կապ ունի: Իզմիրի ոստիկանութիւնը, ոտքի կ'ելնէ Գէորգը ձերբակալելու համար, եւ բնականաբար կ'երթան Իփլիքճեանի վաճառատունը, ուր կը ծառայէր մեր ընկերը: Բայց փոխանակ բուն Գէորգը ձերբակալելու, որ հոն չէր, կը ձերբակալեն ուրիշ Գէորգ մը: Այս Գէորգը, երբ ոստիկանատուն կը տանին, հոն կը բացատրէ որ ինք փնտռուած Գէորգը չէ, որ յանձն կ'առնէ զայն ցուցնել, բայց որովհետեւ բնակած տունը չի գիտեր եղեր, միեւնոյն ճամբուն վրայ, Քաֆէ Աֆթարա կ'երթայ կը նստի ոստիկաններով, որպէսզի մեր ընկեր Գէորգը անցնելուն, ոստիկաններուն մատնանշէ զայն:

«Մեր տղաքներէն մէկը (անունը դժբախտաբար մոռցեր եմ), իբրեւ կօշիկ ներկող, սրճարանը կը գտնուէր այդ պահուն, եւ փոլիսներու ներկայութենէն կասկածելով, կը մօտենայ անոնց եւ կը սկսի փոլիսի մը կօշիկները ներկել, ուշադիր հետեւելով անոնց խօսակցութեան: Անոնց կցկտուր խօսակցութենէն կը հասկնայ, որ Յարէթեանը կը փնտռուի:

«Ոստիկանները, բաւական ժամանակ հոդ սպասելէ վերջ, կ'ելնեն եւ հոս հոն հարցնելով կը գտնան Գէորգի տունը: Բայց պատուհանները եւ դուռը գոց լինելուն, կը հարցնեն դրացիներուն Գէորգի մասին, անոնք ալ կ'ըսեն թէ Գէորգենք գիւղ են գնացեր, Քօրտէլիօ: Ոստիկանները կ'որոշեն հոն երթալ, մեր կօշիկ ներկող ընկերը, որ հետեւէր էր ոստիկաններուն, երբ բոլորովին վստահ կը լինի, որ անոնք մեկնեցան Քօրտէլիօ, մեր

ընկերներուն լուր կուտայ Յաբեթեանի փնտռուելու մասին:

«Ընկերները կը հաւաքուին (այդ տունը ռումբերու մեծ Թաղըստոց մ'էր), հոն եղած պայթուցիկները, ռումբերը եւ զանազան գործիքներ ուրիշ տեղ մը կը փոխադրեն, եւ գործը ապահովելէ ետք, իրենք կը ցրուին: Փոխադրութեան ժամանակ սակայն, Գէորգի որսի հրացանն ալ կը փոխադրեն այդ նոր Թաղստոցը: Գէորգի հետ դեռ հոն մնացող ընկեր մը, հրացանը ձեռքը առնելով, կ'ըսէ որ քանի որ դու պիտի մեկնիս, հրացանը ինծի ձըգէ: Մէկ ալ հրացանը, որ լեցուած էր, կը պայթի եւ Գէորգը կը վիրաւորուի աջ թեւի տակէն:

«Որպէսզի Թաղստոցը չվտանգուի, Գէորգը վէրքի բերանը բռնած, անմիջապէս տունէն դուրս կ'ելնէ, հիւանդանոց կ'երթայ, վէրքը լուալ կուտայ եւ անկէ ալ Բուլիթա կոչուած Թաղը, իմ բարեկամներէս յոյն Քօնթրապանտխտին տունը կ'երթայ, որու կնքահայրն էի ես:

«Դուռ դրկից հրացանի ձայնը լսած, ոստիկանութիւնն ալ արդէն որսկան շան նման ոտքի վրայ, ականջները սրած, կը շրջապատէ տունը, դուռը կը բանան, ու ամէն բան երեւան կ'ելնէ: Ատով գործը արդէն կը վտանգուի: Երբ տղաք կը համոզուին որ գործը ձախողեցաւ, մէկիկ մէկիկ կ'երթան Քրօմիթաքիսին տունը կը հաւաքուին, եւ որը, այդ գիշեր իսկ ցամաքի ճամբով, զանոնք կը տանի դէպի Սամոս կղզին:

«Ես այդ միջոցին, հայ-թաթարական ընդհարումներու ժամանակ, Արեւմտեան Բիւրոյի կարգադրութեամբ, Կովկաս գնացեր էի զէնք տանելով հետս, հաշուեր էի, որ ես ժամանակին կը լինեմ, ինձ յանձնուած պաշտօնիս գլուխը:

«Պաթումէն նաւ նստայ, Իզմիր հասնելուս նկատեցի որ քաղաքին մէջ տարօրինակ վիճակ մը կայ, միեւնոյն քաղաքը չէ· քարափի վրայ հեծեալ զօրքեր կը պտտին: Յոյն մակուկավար մը ինձ մօտեցաւ եւ յունարէն հարցուց թէ՝ դուրս պիտի ելնե՞մ, — այո՛, անշուշտ ըսի, եւ տեսնելով որ նաւու բոլորտիքը ոստիկանական մասնաւոր հսկողութիւն մը չկայ, բացի սովորաբար եղածէն, մտածեցի թէ, եթէ ոստիկանութիւնը իմ Իզմիր գալուս մասին հեռաւոր կասկած մը իսկ ունենար, անպայման նաւուն բոլորտիքը, մեծ իրարանցում մը պիտի տիրէր:

«Թէեւ ոչինչ չէի գիտեր պատահարէն, բայց սեւ կասկած մը սիրտս սկսաւ ուտել, մակուկավարիս հետ խօսքի բռնուեցայ.

մարդուկը համոզուած որ ես յոյն եմ, ինձ պատմեց ամբողջ եղելութիւնը, թէ սրիկայ հայերը, Այա Ֆօթինի եկեղեցին (յունական) օդը պիտի հանէին, յոյն թաղերը պիտի այրէին, եւն. եւն.: Ես ի հարկէ անտարբեր երեւոյթով մը մտիկ ըրի, եւ որոշեցի անպատճառ դուրս ելնել քաղաք: Այդպէս ալ ըրի: Մակուկավարիս հետ, գնացինք սրճարան մը, սուրճ եւ նարկիլէ մը քաշեցի, անկէ ալ գնացի Բունթա, իմ բարեկամ յոյն Քօնթրապանտիստին տունը:

«Բարեկամիս կինը, զիս տեսնելուն, վազեց քովս,— ամա՛ն ֆումպարէ (կնքահայր), անմիջապէս քաղաքէն հեռացիր, ամուսինս բոլոր ընկերներդ Սամոս փոխադրեց:

«Ուրեմն ամէն ինչ փճացեր էր, եւ իմ Իզմիր մնալս, բոլորովին աւելորդ: Յունական նաւ մը առի, եւ մեկնեցայ դէպի Փիրէ: Նաւուն վրայ ճամբորդները հազար ու մէկ ձեւով կը խօսէին Իզմիրի դէպքի մասին, բայց նորութիւն էր ինծի համար, երբ անոնք կը պատմէին թէ՝ Յունաստանի մէջ ալ հայերը, նոյն դաւադրութիւնը կազմակերպեր էին, Աթէնքը կործանելու համար:

«Նաւը երեկոյեան կողմ Փիրէ հասաւ, կը կարծէի որ դուրս ելլելս պէս, ոստիկանութիւնը զիս անմիջապէս պիտի ձերբակալէ, բայց տօր հակառակը պատահեցաւ, առանց նեղութեան դուրս ելայ: Յարմար դատեցի այդ գիշեր Փիրէ մնալ, մինչեւ որ անցուդարձին ծանօթանայի: Առաջին հանդիպած պանդոկէն ներս մտայ, պանդոկապետը անմիջապէս անցագիրս հարցուց: Ես որպէս թէ զարմացած հրցուցի՝ թէ ինչ կար, միթէ՞ օրէնքը փոխուեր է, մարդը բացատրեց, որ հայերը եւ պուլկարները միացած, որոշեր են Թագաւորի պալատը եւ ուրիշ վայրեր օդը հանել, եւ ոստիկանութիւնը այդ պատճառով նոր եկողներու ինքնութիւնը կ'ուզէ գիտնալ:

«Անցագիրս տուի պանդոկապետին, եւ ես ճաշելու համար դուրս ելայ: Ամառ ժամանակ էր, սրճարանները եւ հրապարակը բազմութեամբ լեցուն էին, եւ խօսակցութեան առարկան գրեթէ ամէն տեղ, հայերու եւ պուլկարներու դաւադրութեան մասին էր, որոնք Աթէնքը օդը պիտի հանեն եղեր: Թէ ինչո՞ւ, հայերը Աթէնքը օդը պիտի հանէին, կամ ի՞նչ շահ ունէին տօր մէջ, անշուշտ ոչ ոք չէր անդրադառնար այս հանգամանքին:

«Թէեւ ես ամէն րոպէ ձերբակալուելու հաւանականութեան տակ էի, ինծի հետաքրքրողը սակայն, բռնելիք ընթացքս էր:

Լուրջ հարց մը կար առջեւս դրուած, որմէ չէի կրնար խուսափիլ: Սեւ ձեռք մը, անանուն քրովոքասիոնով մը, մուր էր քսեր հայերու ճակտին, մեր յունո-հայկական բարեկամութիւնը թըշնամութեան վերածելու համար: Ամբողջ գիշերը մտածելով անցուցի, առանց վայրկեան մը քնանալ կարենալու, բայց վճռական որոշման մը եկած էի:

«Առտու կանուխ, կողմնակի ճամբայով Աթէնք ելայ, հոն գտնուող ընկերներէն որեւէ մէկուն հանդիպելու մտադրութեամբ: Բայց ոչ ոքի չհանդիպեցայ, որովհետեւ Աթէնք եղող բոլոր հայերը, առանց բացառութեան, նոյնիսկ քահանան, ձերբակալուած եւ բանտարկուած էին:

«Մեր զինավաճառի, Մալգեմիօթիսի խանութի քովէն անցայ գլխամամբ. մեր բարեկամը զիս տեսնելուն, գունաթափուած, վախով մօտեցաւ ինծի,— Ժագօպ, (անունս Ժան Ժագօպ էր), հոս վայրկեան մ'ալ մի մնար, անմիջապէս մեկնէ ի սէր Աստուծոյ, գործը շատ ծանր հանգամանք առեր է: Պոլսէն Քեամիլ փաշայի տղան (նոյն ժամանակ եպարքոս) Սայիտ փաշան, Սուլթանի կողմէ հոս ուղարկուած է, եթէ քեզ ձերբակալեն, անշուշտ Բալամիտիա (Կիյօթինի վայր) պիտի տանին, ինչ կ'ուզես ըրէ, բայց անմիջապէս փախիր, գլուխդ ազատէ:

«Այն ժամանակ, ես ամերիկեան քաղաքացի էի. մտածեցի մէկ հիւպատոսին երթալ: Հիւպատոսը իմ լաւ բարեկամս էր, անմիջապէս քովը մտայ:— Հլօ՛, Մսթըր Յակոբեան, առեւտրական գործերդ ինչպէ՞ս են, հարցուց:

«— Պարոն հիւպատոս, ես հիմա քեզ ուրիշ գործի մը համար տեսնել եկայ, պատասխանեցի անոր. գիտէք, որ յոյն ոստիկանութիւնը, Ժան Ժագօպ անունով մէկը կը փնտռէ. այդ Ժան-Ժագօպ կոչուած մարդը ես ինքս եմ, կը մտածեմ ոստիկանութեան ներկայանալ, եւ ինքզինքս ծանօթացնել, եկայ քեզմէ խորհուրդ հարցնելու:

«Հիւպատոսը քիչ մը զարմացած, ինծի նայեցաւ, եւ ըսաւ, որ զիս անմիջապէս շոգենաւ պիտի դնէ, Ամերիկա ճամբելու համար: Պատասխանեցի իրեն որ, եթէ Ամերիկա երթալ ուզէի, առանց իր օժանդակութեան ալ կրնայի երթալ: Ըսի իրեն, որ այս Աթէնքը օդը հանելու վատ զրպարտութեան խնդիրը կ'ուզէի մաքրել, եւ ատոր համար ալ, եկեր էի իրեն խորհուրդ հարցնելու:

«Հիւպատոսը ըսաւ, որ դժբախտաբար ինք բան մը չի կրնար ընել, այդ խնդիրը քաղաքական լինելուն, դեսպանին կը վերաբերի, որ բացակայ է: Կուտ պայ ըսի եւ դուրս ելայ քովէն:

«Փողոց ելնելուս քանի մը յունարէն թերթեր գնեցի, տեսայ որ ռումբերու, դժոխային մեքենայի, ելեքտրական թելերու պատկերներով զարդարուած էին բոլորն ալ, եւ շատ մը վայրերու նկարներ, որոնք որպէս թէ՝ Հայերու եւ պուլկարներու կողմէ օդը պիտի հանուէին: Յայտնի էր որ մեր դէմ մեծ բրովաճասիոն մը տեղի կ'ունենար, Սուլթանի հնչուն ոսկիներու ուժովը:

«Սուլթանը, Սայիդ փաշան ճամբեր էր, խոստանալով Լարիսայի երկաթուղին, Սելանիկի երկաթուղիին միացնելու փէրմանը անմիջապէս ստորագրել, եթէ յոյն կառավարութիւնը զիս եւ ընկերներս Թրքական կառավարութեան յանձնէր: Մասնաւորապէս զիս կ'ուզէին, Քրէտէ Լիօնէյի թղթերու քննութեամբ, իմ անունս ալ երեւան էր եկած եւ ատով յայտնի դարձած, որ Սուլթանի մահափորձի մէջ, ես կարեւոր մասնակցութիւն ունեցեր եմ:

«Այլեւս ոչինչ կը մնար ընել, բայց ներկայանալ ոստիկանապետին, եւ բացատրել խնդրին իսկութիւնը:

«Վճռեցի ու անմիջապէս կառք մը վերցնելով, քշել տուի ուղղակի ոստիկանատուն:

«Ոստիկանատուն մտնելուս, նկատեցի որ բոլորն ալ Հայպուլկարական դաւադրութեան մասին կը խօսէին: Ոստիկանի մը ըսի, որ ոստիկանապետը կ'ուզեմ տեսնել, անմիջապէս զիս ներկայացուցին անոր: Բարեւելէն վերջ, հարցուց թէ ո՞վ եմ, եւ ի՞նչ կ'ուզեմ: Ըսի որ, ձեր փնտռած Ժան Ժագոպը ես եմ, պատահած դէպքերու մասին եկեր եմ բացատրութիւն տալու: Ոստիկանապետը զարմացած՝ թիկնաթոռի վրայ իյնալով, ապշած զիս կը դիտէր: Երկար բարակ խօսեցայ հետը, ըսի, որ մենք հիւրընկալ Յունաստանի հետ ոչ մէկ խնդիր ունինք, այլ զայն նկատելով ազատ երկիր մը, այստեղէն զէնք ձեռք կը բերենք եւ Անատոլու կ'ուղարկենք, որ Թրքական նոր կոտորածի մը պահուն, հայ ժողովուրդը կարողանայ ինքնապաշտպանութեան դիմել: Մենք հայերս, ըսի, անկարելի է որ Յունաստանի դէմ դաւադրութիւն լարենք, ես ինքս 96-ի Թուրք ու Հելլէն պատերազմի ժամանակ, հելլէնական բանակին հետ կռուեր եմ, ինչպէս եւ չորս մը ուրիշ հայեր: Իսկ Սուլթան Համիտի դէմ եղած մահափորձը,

յեղափոխական-քաղաքական ափդ մ'է եւ պէտք է յոյներու կողմէ գնահատուի, եւ ոչ թէ բոլոր Յունաստան գտնուած հայերը ձերբակալուին եւ բանտերը լեցուին, ինչպէս ըրեր էք։

«Այս ուղղութեամբ բաւական երկար խօսելէ վերջ, ոստիկանապետը հրամայեց, որ ինձ սենեակ մը յատկացնեն, ու ինքը աճապարանքով մեկնեցաւ։

«Երկրորդ օրը, ոստիկանապետը ինձ նորէն կանչեց, եւ 1896 թուականի յունո-թրքական պատերազմի ժամանակ, ո՞ր կողմերը գտնուած լինելս ուզեց իմանալ։ Տուած հարցումներուն բաւարար պատասխան ստանալով, ինծի ըսաւ,— գիտէք պարոն Ժագոպ, ես ալ յեղափոխական անցեալ մ'ունեցեր եմ, ես ալ Մակեդոնիայի մէջ, գլխուս վրայ, թապլայով ձուկ ծախեր եմ, պէտք է գիտնաս որ կեանքի մէջ ամենասեւ օրերը, այս օրերն են։ Վերջէն գիս յանձնեց դատական հարցաքննիչին, ու ինքը մեկնեցաւ։

«Երկրորդ օրը, յունական թերթերու մէջ, ոստիկանապետի կողմէ յայտարարութիւն մը հրատարակուեցաւ, թէ՝ Տոքթոր Ժան Ժագոպի յանձնուելովը, եւ անոր տուած բացատրութիւններովը, ամբողջ խնդիրը երեւան ելած է։ Հայերը ոչ պուլկարներուն հետ միացած են, եւ ոչ ալ մեր երկրի դէմ որեւէ դաւադրութիւն սարքած են։ Հայերը մեր երկրէն զէնք կը գնեն եւ իրենց հայրենակիցներուն կ'ուղարկեն, որպէսզի կոտորածի մը միջոցին կարողանան ինքզինքնին պաշտպանել։ Տոքթոր Ժան Ժագոպը խանդավառ հելլէնօֆիլ մըն է, շատ լաւ յունարէն կը խօսի, եւ 96 թուականին, մեր բանակին հետ, մեր հայրենիքի համար կռուեր է եւն. եւն.։

«Ոստիկանապետի այս յայտարարութեան վրայ, ժողովուրդի միտքը բաւականին խաղաղեցաւ, այլեւս առաջուան գրգռութիւնը չմնաց։

«Տաս օր վերջը, քահանան եւ քանի չափ հայեր, բանտէն արձակուեցան, ես եւ ուրիշ չորս ընկերներ, Սողոմոն Տարմանեան, Լեւոն Շալճեան, Յակոբ Դաքմաճեան եւ ուրիշ Լեւոն մը, որու ազգանունը մոռցեր եմ, բանտը մնացինք։

«Հոս պիտի խոստովանինք որ, փաստերը եւ դէպքերը այնպէս դասաւորուած էին, որ յոյն կառավարութիւնը մասամբ մը իրաւունք ունէր կասկածելու։ Երբ ես մեկնեցայ Կովկաս, զէնք փոխադրելու համար, Լեւոնին խստիւ պատուիրած էի, որ զէնք

չբռնցնեն, որովհետեւ իմացած էի որ Թրքական հիւպատոսը, մեր գործունէութեան հոտը առած, լրջօրէն մեր շարժումներուն կը հետեւէր: Հարկաւոր էր ժամանակ մը դադար տալ մեր գործունէութեան: Բայց Լեւոնը, չանսալով իմ ըրած կարգադրութեան, զէնք ղրկելու կը ձեռնարկէ եւ դժբախտաբար Թուրք հիւպատոսի պահանջով, յոյն ոստիկանութիւնը զէնքերը կը բռնէ: Ճիշդ այն ժամանակ, Աթէնքէն ալ չորս վալիզ մէլէնիթ կ'իջեցնեն Փիրէ, զէնքերու հետ, Իզմիր ճամբելու համար: Սողոմոնը երբ մէլէնիթի վալիզներով Փիրէ կ'իջնէ, լուր կը ստանայ որ, զէնքերը բռնուած են, եւ հարկաւոր է, վալիզները ետ տանիլ: Անկարող ետ տանելու սակայն, Սողոմոնը կը մտածէ, Կրետացի հայու մը ածուխի տփոյի մէջ պահել, առժամեայ կերպով, վալիզները: Այդպէս ալ կ'ընէ:

«Ծովեզերքի հսկիչ մաքսատան դետերը, կը նկատեն վալիզներու տփոն տարուիլը, եւ կարծելով թէ՝ մաքսէ փախցըւած սիկարէթի թղթեր են, ոստիկաններու հետ կը կոխեն ածուխի տփոն, եւ գրաւելով վալիզները, կը տանին Փիրէի ոստիկանատունը: Հոն կը բանան եւ մէջտեղը կ'ելնէ մէլէնիթը:

«Յունաստանի մէջ մէլէնիթ չեն պատրաստեր, եթէ խնդիրը տինամիթի վրայ լինէր, խնդիրը կը հեշտանար այն ժամանակ, հետեւաբար ոստիկանութիւնը այն եզրակացութեան կը յանգի, որ այդ սարսափելի պայթուցիկը, քօնթրապանտ դրսէն Յունաստան է բերուած, անշուշտ Յունաստանի մէջ գործածուելու համար: Ասոր վրայ աւելցուցած եւ այն հանգամանքը, որ Փիրէի մէջ զէնքերու եւ մէլէնիթի բռնուելէն վերջ, երբ ոստիկանութիւնը կը սկսի Աթէնքի մէջ ալ հայերու տները խուզարկել, եւ շատ մը տեղեր պահուած այդ պայթուցիկը մէջտեղ կուգայ, ինչպէս նաեւ Հայոց եկեղեցիէն 10 վալիզ լեցուն մէլէնիթ, խորանի տակ պահուած, ոստիկանութիւնը կը համոզուի, որ Յունաստանի դէմ սարքուած դաւադրութիւն մը երեւան բերած է: Պակաս դեր չէր կատարեր եւ այն հանգամանքը, որ իմ անունս կ'աղաւաղուի չեմ գիտեր ինչպէս, փոխանակ Ժակոլի, կը դառնայ Ժադոֆ, ուրեմն Պուլկար մը:

«Հարցաքննութեան ժամանակ, ես փաստացի կերպով հաստատեցի, որ այդ մէլէնիթը օրինական կարգով, մաքսատունէն անցուցած էի, թէեւ որպէս փիլօքսերայի դէմ գործածուելիք, դեղի անուան տակ: Մաքսատունն ալ իր կարգին, հաստատեց

թէ, մէլէնիթի դէմ օրինական արգելք մը գոյութիւն չունէր օրէնքով:

«Օր մը, հարցաքննութեան պահուն տեսայ, որ Սայիտ փաշան, հարցաքննիչի կողքին նստած, թելադրութիւններ կ՚ընէ հարցաքննիչին: Բնական է որ սարսափելի բարկանայի:

«— Պ. հարցաքննիչ, ըսի իրեն, եթէ ես Թուրքիոյ մէջ հարցաքննուելու փափաք ունենայի, ուղղակի Պոլիս կ՚երթայի, ապա Յունաստան գալու պէտք չունէի: Կ՚երեւի դուք մոռցեր էք, ձեր նախնիքներու քաշած տառապանքը Թուրքերու ձեռքէն, որ մեծ պատիւ չի բերեր ձեր յիշողութեան: Պէտք է գիտնաք սակայն, որ ես ամերիկեան ազատ քաղաքացի մ՚եմ, եւ եթէ այդ պարոնի թելադրանքով, պիտի շարունակէք ձեր հարցաքննութիւնը, որ կապ չունի Յունաստանի դէպքերու հետ, այլ կը վերաբերի Սուլթանի մահափորձին, իմ քօնսիւլիս լուր պիտի տամ, միաժամանակ կը յայտնեմ, որ բողոքելով ձեր դէմ՝ այլեւս ձեզ պիտի չպատասխանեմ, մինչեւ որ այդ պարոնը չհեռանայ ձեր քովէն: Այդպէս ալ եղաւ:

«Համիտի ներկայացուցիչ Սայիտ փաշան, Յունաստանի նախարարապետ Ռալլիի հետ գաղտնօրէն համաձայնութեան եկեր էր, որ զիս դաւադրութեամբ մը Պոլիս ճամբեն: Բայց որպէսզի յոյն ժողովուրդը չբողոքէ կատարուած անիրաւութեան դէմ, որ Յունաստանի պետական օրէնքներու դէմ էր, որոշած էին, որ երբ թէ զիս պիտի աքսորէին Եգիպտոս, Թրքական շոգենաւ մը դնելով, որ փոխանակ Աղեքսանդրիա երթալու, պիտի երթար ուղղակի Պոլիս: Ես այս անցուդարձերուն տեղեակ էի իմ բարեկամներուս միջոցով: Բայց իմ ամերիկեան քաղաքացի լինելս, այս ծրագիրն ալ ջուրը ձգեց:

«Վերջապէս մեր հարցաքննութիւնը վերջացաւ, եւ մեզ փոխադրեցին Բալլիա Սթրանթայի բանտը: Այլեւս բերանս բացի, եւ բանտէն նախարարապետ Ռալլիի եւ Սայիտ փաշայի դէմ սկսայ թերթերու մէջ յայտարարութիւններ ընել, եւ մերկացնել անոնց խաղերը:

«Իմ այս յայտարարութիւնները, ինչպէս նաեւ «Ասթիցա» թերթի ուժեղ խմբագրականները ի պաշտպանութիւն մեզ, առաջ բերին յոյն ժողովուրդի մէջ շատ բարեացակամ տրամադրութիւն մը: Ամբողջ Յունաստանը յուզող խնդիրը, մեր դատավարութիւնն էր: Սայիտ փաշան շատ մը յոյն թերթեր կաշառած էր,

որոնք ստորնաբար սարսափելի բրօվաճասիոն մը լարեցին մեր դէմ: «Ակրիբօլ» անլուրջ թերթը, Փիրէէն մինչեւ Աթէնք երկարող ելեքտրական թելերու եւ ռումբերու նկարներ կը հրատարակէր, իր էջերուն մէջ, որոնք իր երեւակայութեան մէջ միայն, գոյութիւն ունէին:



ՍԱՐՀԱՏ ԻՐ ԲԱՆՏԱՐԿՈՒԱԾ ԸՆԿԵՐՆԵՐՈՎ
Ձախէն, կանգնողները· Բոցառիսի թոռը՝ Լեւոն, Քօփինեօթիս, Ղուկատաճիս:
Նստողները·— Լեւոն, Սարհատ, Սողոմոն, Յակոբ:

«Մենք շատ աշխատեցանք, որ մեր դատավարութիւնը Աթէնքի մէջ տեղի ունենայ, բայց մեր բոլոր ջանքերը անօգուտ անցան: Կառավարութիւնը որոշեց մեզ Լամիա տեղափոխել, դատը հոն տեսնելու համար: Ձիս եւ չորս ընկերներս շղթայակապ, Լամիայի բանտը փոխադրեցին:

«Սակայն այս ժամանակ, յոյն ժողովուրդի մեծամասնութիւնը, այս խնդրի իսկական փաստերուն ծանօթացած, սկսաւ

լարուիլ կառավարութեան դէմ։ Բազմաթիւ մտաւորականներ եւ պետական ազդեցիկ անձնաւորութիւններ, Լամիայի երդուեալ դատաւորներուն գրած, եւ պահանջած էին մեր ազատ արձակումը, մեր դատապարտութիւնը սեւ արատ մը համարելով Յունաստանի, ազատ ժողովուրդի ճակտին։ «Մակեդոնիա» թերթն ալ, շատ ուժեղ խմբագրականով մը, «Հինգ հայ մարտիրոսներ» վերնագրով, մեր ազատ արձակուիլը կը պահանջէր, ինչպէս եւ «Ասթիյա» թերթը։

«Մենք երկու փաստաբաններ ունէինք, Ղուկատաքիս, եւ Քոսթանթինօ Քոֆինեօթիս, բայց պէտք տեսնուեցաւ, մէկ հատ ալ Լամիացի փաստաբան վերցնել։

«Լամիա հասած օրս, երեկոյեան զիս տարին բանտապետի սենեակը, ուր սեղան մը շտկուած էր ըմպելիքներով եւ զանազան ուտելիքներով։ Քիչ վերջը, անծանօթ երիտասարդ մը եկաւ, որուն հետ միասին ճաշեցինք։ Այդ երիտասարդը ռոմանացի (վալախ) յեղափոխական մ'էր, Լամիա հաստատուած, լսելով մեր պատմութիւնը ինձ հետ կ'ուզէր ծանօթանալ։ Տարիներ վերջը, այդ երիտասարդին Պոլիս, Թոքաթլեանի մէջ հանդիպեցայ, հոն մանրամասնաբար պատմեց ինձ, որ Յունաստան գտնուած ժամանակ հակառակ յոյն կառավարութեան, վալախները կազմակերպելով զբաղած էր։ Անշուշտ պէտք եղած հիւրասիրութիւնը ցոյց տուի այդ երիտասարդին, որ տարիներ առաջ շղթայակապ հայ յեղափոխականի մը, յարգանք ցոյց տալու չէր գլացած։

«Մեր դատավարութիւնը երեք օր տեւեց։ Դատախազը, մեր գործունէութիւնը եւ մեզ կ'աշխատէր ներկայացնել որպէս անիշխանականներ։ Իսկ փակման ճառին մէջ, ըսաւ, որ Պանք Օթոմանի գրաւման ժամանակ, ինքը Պոլիս կը գտնուի եղեր, եւ աչքովը տեսեր է, թէ ինչպէս հայերու նետած ռումբերէն, Թուրք զօրքերու արիւնը գետի պէս կը հոսի եղեր, եւ պահանջեց մեր դատապարտութիւնը եւ խստագոյն պատիժներ։

«Մեր փաստաբաններն ալ շատ լաւ ճառեր խօսեցան։

«Ես դատախազին պատասխանելով ըսի որ,— եթէ դուք, Պանքայի դէպքի ժամանակ, փոխանակ Կալաթայէն անցնելու, անցնէիք Խասգեղէն, պիտի տեսնէիք թէ ինչպէ՛ս անմեղ հայեր, տղամարդ, կին եւ երեխայ, սուինահար կը լինէին զօրքերու կողմէ, թէ ինչպէ՛ս Թուրք խուժանը եաթաղաններով, հազարաւոր հայեր կը սպաննէր — եւ վերջացուցի, խօսքս դատախազին

ուղղելով, ես վստահ եմ որ եթէ ձեր մօտ նստած չլինէր Թրքական հիւպատոսը, դուք նման մտքեր պիտի չարտայայտէիք հոս, որովհետեւ, ինչ որ ներկայիս մենք կ'ապրինք, դժոխք Թուրքիայի մէջ, ձեր պապերը հարիւրաւոր տարիներ ապրեցան եւ ազատեցաք այդ ատելի Թրքական տիրապետութենէն, երբ Յունաստանը կրկին անկախ եղաւ:

«Առաջի դատավարութեամբ, մեր երեք ընկերները ազատ արձակուեցան, վերջին դատավարութեամբ ալ, մենք երկուքս ազատ ձգուեցանք, հարիւրաւոր ամբոխի խելագար ցոյցերու մէջ: Ահագին բազմութեամբ շրջապատուած, մեզ տարին քաղաքի պռասըրիճ, ուր ցոյցերը շարունակուեցաւ մինչեւ ուշ ատեն: Ամէն մարդ կը դրկէր, ձեռք կը թօթուէր մեզ հետ, զիթօ Յունաստան, զիթօ Հայաստան գոռալով»:

* * *

Մինչեւ իմ Աթէնք հասնիլս, ընկերներէն շատեր մեկնած էին արդէն Եգիպտոս: Միւսներուն ալ, ճամբու ծախս տալով, ուղարկեցինք: Մնացինք ես ու Սարհատը:

Անշուշտ որ դատավարութիւնը, եւ անոր հետեւանքով առաջացած աղմուկն ու Սարհատի ձեռք բերած մեծ ժողովրդականութիւնը, որոշ չափով արդելիչ հանգամանք մը ունէին, անոր ազատ գործունէութեանը Յունաստանի մէջ, բայց այն հանգամանքը, որ ան մօտէն ծանօթ էր, նաւավարներէն եւ մաքսանենգներէն սկսեալ, մինչեւ պետական ամենաբարձր պաշտօնեաներուն եւ նախարարներուն, որ Յունաստանի գործերը վարելու համար ունէր ահագին փորձառութիւն, եւ իր բնական հակումը դաւադրական գործերը յաջողութեամբ գլուխ բերելու եւ ասոնցմէ ամենակարեւորը, որ Յունաստանը, որպէս խարիսխ, անհրաժեշտութիւն մ'էր Պոլիս, Իզմիր եւ Կիլիկիա մեր ապագայ գործունէութեան համար, երկար նամակով մը Արեւմտեան Բիւրոյին, շեշտելով այս հանգամանքներուն վրայ, բոլորովին անկախաբար Սարհատէն, որուն ոչինչ ըսած էի, առաջարկեցի, որ անոնք իրենց որոշումը վերաքննութեան ենթարկեն, եւ համաձայնին որ Սարհատը մնայ Յունաստան:

Ակնունին, խիստ նամակով մը պատասխաներ էր ինձ, պահանջելով գործադրել Բիւրոյի որոշումները, միաժամանակ հեգնելով զիս, որ շատ ազդուած էի նախարարներու հետ Սարհատի

ունեցած բարեկամութենէն, կարծես թէ ինքը գիշեր ցերեկ, նախարարներու հետ կ'ելնէր կը նստէր...

Արեւմտեան Բիւրօն ճիշդը ըսած, առանց գործի էութեան մանրամասն ծանօթ լինելու, լարուած էր Սարհատի դէմ: Կարծես ան լինէր մեղաւորը ապրանքներու բռնուելուն, մինչդեռ ընթերցողը իր կարգին տեսաւ որ Սարհատի Աթէնք գալէն առաջ, ամէն ինչ կատարուեր էր, եւ ոչ թէ միայն ընկերները, այլ եւ բոլոր հայերը, նոյն իսկ քահանան ձերբակալուած էին:

Դժգոհութեան մեծ պատճառ մ'ալ բանտարկութեան եւ դատավարութեան առթիւ եղած մեծ ծախսն էր: Այս կէտը, ըստ երեւոյթին հիմնաւոր էր, դէթ հեռուն գտնուող Արեւմտեան Բիւրոյի անդամներուն համար, որոնք դժբախտաբար հանգամանօրէն ծանօթ չէին մանրամասնութիւններուն:

Աթէնք գալէս վերջը միայն, տեղին վրայ երբ պատմութեան ծանօթացայ, այդ շռայլ ծախսի առարկութիւնն ալ, մեծապէս չափազանցուած գտայ: Ասով չեմ ուզեր ըսել, որ ծախսերու մէջ, Սարհատ ու ընկերները պէտք եղած Դաշնակցական ժուժկալութեամբ առաջնորդուած էին: Կաշառքը քիչ մը շատ առատ կերպով, ձեռքէ ձեռք փոխանցուեր էր, լինի պետական պաշտօնեաներուն, լինի թերթերուն...

Ասով հանդերձ, եղած ծախսերը ոչ թէ պիտի վերագրել միայն ընկերները ազատելու, այլ, որ եւ գլխաւորն է, Յունաստանի մէջ մեր դիրքը նախկին բարեկամական վիճակին մէջ պահելուն: Եթէ Սարհատը չյանձնուէր, եթէ պայքարը աւելի լայն միջոցներով չտարուէր, անկասկած որ մեր տղաքներէն մէկ քանին կը դատապարտուէին, բայց նամանաւանդ յոյն ժողովուրդի բարեացակամ վերաբերմունքը կը փոխուէր թշնամականի:

Այն ժամանակ, երբ պաշտօնական Յունաստանը, մեր ընկերները կ'ամբաստանէր որպէս անիշխանականներ, որոնք թագաւորական պալատն ու Աթէնքը որպէս թէ օդը պիտի հանէին, բոլորովին իրազեկ էր իրողութեանը, գիտեր որ այդպիսի նպատակ մը չունէինք, բայց այդ նպաստաւոր առիթ մ'էր կառավարութեան համար, Թուրքիոյ հետ որոշ խնդիրներու շուրջ համաձայնութեան գալու, ինչպիսին էր Սելանիկի եւ Լարիսայի երկաթուղիներու միացման հարցը: Սակայն, եթէ կառավարութիւնը իրազեկ էր խնդրի ներքին սստուին, մեր տղոց դատապարտութիւնը, յոյն ժողովուրդին պիտի հասցնէր այն եզրակացութեան,

որ կառավարական կեղծ ամբաստանութիւնները ճշմարիտ էին, եւ հիմնականօրէն պիտի փոխուէր անոնց բարի տրամադրութիւնները:

Ահա այս հանգամանքը ի նկատի առնելով է որ, եղած ծախսերը, թէեւ քիչ մը առատաձեռնօրէն կատարուած, եւ տեղին էին, եւ կենսականօրէն անհրաժեշտ, ապագային Յունաստանի մէջ կարենալ աշխատելու համար:

Ասով հանդերձ, ես պարտաւոր էի գործել Արեւմտեան Բիւրոյի ցուցմունքներով:

Գրաւուած Մէլէնիքի պաշարը յոյն կառավարութիւնը որոշեց փճացնել, բայց մեր զէնքի պահեստին ձեռք չզարկաւ: Կիլկիսյի համար եւս բաւական մը հրացան ու փամփուշտ ունէինք: Սարհատի հետ որոշեցինք, որ իրենց տեղը մնան:

Բոլոր հաշիւները քննելէ վերջ, Սարհատն ալ մեկնեցաւ Եգիպտոս:

* * *

Միջադէպ մը պատմեմ հոս, որ իմ ժամանակս պատահեցաւ Փիրէայի մէջ:

Հակազդելու համար բուլղար յեղափոխականներու գործունէութեան, յոյներն ալ այդ ժամանակները չեթաներ կ'ուղարկէին Մակեդոնիա: Թուրքերը մատի արանքով կը նայէին եղածին, իրենց համար շահաւոր համարելով, իրենց լուծին ենթակայ երկու քրիստոնեայ ազգերու կատաղի կռիւը, զիրար բնաջնջելու: Յոյն կամաւորները մեծ մասամբ կուգային կղզիներէն, ու մասնաւորապէս Կրետէէն:

Անգամ մ'ալ, յունական շոգենաւով, բաւականաչափ կամաւորներ եկած էին Կրետէէն իրենց յայտնի խմբապետին հետ, որը ծերունի առոյգ քահանայ մ'էր, մասնակցած Կրետէի ապստամբական բազմաթիւ կռիւներուն:

Կամաւորներէն մէկը, հետը բաւականաչափ նարինջ բերած էր: Մաքսատան պաշտօնեան — անոնք գրեթէ միեւնոյն տեղացիներ էին եւ բաւական մեծ գաղութ մը ունէին Փիրէայի մէջ — կը պահանջէ օրինական մաքսը: Ի հարկէ, կրետացի կամաւորը չի համաձայնիր տալ, առարկելով, որ վաճառքի համար չէ բերած: Պաշտօնեան կը բարկանայ, կրետացին կը յամառի: Խօսքէն կռիւ մը կը ծագի, եւ կամաւորը, դանակը քաշելով, կը վիրաւորէ պաշտօնեան: Վիրաւորի բարեկամները վրայ կը հասնին,

կը հասնին եւ կրետացիին ընկերները, եւ «կաթիլ մը մեղրէն» կը ծագի ընդհանուր պատերազմ մը: Այսինքն՝ ըսել կ՚ուզեմ, թէ կրետացիները կրետական թաղը կը քաշուին, որ բլուրի փէշին շինուած էր, իսկ միւսներն ալ իրենց թաղը, մինչեւ ատամները զինուած:

Փիրէան պատերազմական վիճակ մ՚ունէր, խաղաղ բնակչութիւնը ահաբեկուած, իսկ կառավարութիւնը, տէր Աստուած, կառավարութիւն չկար որ... Ան մէջտեղէն անհետացեր էր մօտ 48 ժամ, ազատ ասպարէզ թողլով լարուած կրքերուն: Աթէնք տակնուվրայ էր եղեր: Քաֆէները լեցուն էին փոլիթիքոներով: Ըսենք՝ Աթէնքի ամբողջ բնակչութիւնը կամ պաշտօնեայ էր այն ժամանակները, կամ կուսակցական կողմ, կամ այս ու այն նախարարի մարդ, իսկ բոլորը մէկանց հայրենասէր փոլիթիքոներ, որոնցմէ ամէն մէկը, հայրենիքի փրկութեան ուղիղ ճամբան, միայն իրենը կը համարէր: Ու ինչպէս ալ անվերջ կը վիճէին. չեմ կարծեր, թէ ռուսներուն անցնէին, բայց անոնցմէ ալ շատ վար չէին մնար:

Քօֆինեօթիսն ու Սարհատը սենեակս եկան: Ես արդէն եղելութեան ծանօթ էի: Յոյն փաստաբանը կը հայհոյէր իր կառավարութեան, որ ձեռքերը ծալած, հանդիսատեսի դերի մէջ կը մնար եղբայրասպան կռուին հանդէպ: Կ՚առաջարկէր, որ երթայինք Փիրէա տեսնելու, թէ ի՞նչ կ՚անցնի կը դառնայ եւ թէ արդեօք չէ՞նք կրնար օգնել ոեւէ կերպով:

Կառքով հասանք Փիրէա: Երբ մօտեցանք կրետական թաղին, զինուած պահակներ մեր ճամբան կտրեցին: Ընկերներս յայտնեցին, որ ես անգլիական «Թայմզ» լրագրի թղթակիցն եմ: Ես ալ, "O yes, o yes" ըսի: Այսքանը կարծեմ բաւական էր իմ բարձր դիրքս ապացուցանելու: Ու ազատ ճամբայ տուին մեզ: Իրենցմէ մէկը սակայն մեզ ընկերացաւ մինչեւ իրենց զինուորական կեդրոնը:

Պզտիկ տուն մ՚էր, տան առջեւ զինուած երիտասարդներ, որոնք իմանալով իմ թղթակցի հանգամանքս, ներս թողուցին մեզ:

Ալեխառն մազ մօրուքով, փամփուշտակալները մէջքին ու կրծքին, զայրացած դէմքով ծալապատիկ նստած էր կրետացի տէրտէրը, կամաւորներու գլխաւորը:

Քօֆինեօթիսը այժմ արդէն զիս ներկայացուց իմ իսկական հանգամանքովս, իբր հայ յեղափոխական մը: Ծերուկ տէրտէ-

ըր, ջերմագին ողջունեց զիս:

Իսկապէս տխուր պատկեր մ'էր, հին մարտիկ մը, որ իր կորիւններով եկած էր հայրենիքի համար կռուելու եւ Փիրճայի մէջ իսկ եղբայրասպան կռուի ականատես կը լինէր:

Բաւական երկար մնացինք քովը: Քօֆինիօթիսը իր պերճախօսութիւնը թափեց. մենք ալ խօսեցանք հաշտարար լեզուով:

Յաջորդ օրը միայն կառավարութիւնը մէջտեղ ելաւ, կարգ ու կանոն հաստատելու քաղաքին մէջ: Այդ ուշացած երեւումը յիշեցուց ինծի, 96 Թուականի Թրքական կառավարութեան լրբենի յայտարարութիւնը՝ Ասայիշը պեր քեմալ տըր»:

* * *

Աւելի քան մէկ ամիս մնացի Աթէնքի մէջ: Ամէն օր կը բարձրանայի Ակրիբոլիս, եւ Պարթէնոնի սիւներուն առջեւ նըստած, կ'երազէի անցեալըն: Սիրտս կը ճմլուէր, այդ աւերակներու վրայ նստած, վերյիշելով մեր անցեալը, մեր պատմութիւնը, մեր Անին...., որ հեռաւոր Ասիոյ մէկ անկիւնը ինկած, իր ըսքանչելի աւերակներով, մոռացութեան էր մատնուած նոյնիսկ իր հարազատներէն: Տարեկան քանի՞ հոգի կ'այցելէին այդ նըւիրական նշխարներուն... մինչդեռ արար աշխարհ, երկրպագելու կուգար, Աթէնքին:

Աթէնքը, որպէս կեդրոն արուեստներու եւ գիտութիւններու, դարեր շարունակ, աշխարհի մտաւորական կեդրոնն էր հանդիսացեր, բնական է որ, մեր նախահայրերն ալ, դէպի լուսաւորութեան կեդրոնը դիմէին, դեռ չորրորդ դարէն սկսած: Սուրբ Սահակի եւ Սուրբ Մեսրոպի աշակերտներէն շատեր, հոն ճամբուեցան, իրենց կրթութիւնը կատարելագործելու համար: Ատոնց մէջ անուանի էր Դաւիթ Անյաղթ փիլիսոփան:

Աթէնքի հայ աշակերտութեան մէջ սակայն, աննախընթաց հռչակով պսակուած է, ըստ Եւնաբիոսի, Պարոյր Հայկազը կամ Պրոյերեսիոս ճարտասանը, որուն ի պատիւ Հռովմ արձան մը կանգնեց, հետեւեալ մակագրութեամբ, Թագաւոր ճարտասանութեան:

Դժբախտաբար իմ Աթէնք եղած ժամանակս, ազգային թանգարանը գոց լինելուն, նորոգութեան պատճառով, չկրցայ տեսնել, թէեւ գրեթէ բոլոր յիշատակելի աւերակները այցելեցի:

Յունաստանը որքան ալ որ սիրուն երկիր էր ու թափառող

հոգիի մը համար անվերջ հետաքրքիր, սակայն, ես թուրիստի մը անհոգ կեանքը չունէի, եւ ոչ ալ աշխարհ տեսնելու եկած էի: Ուստի Մեսաժըրի շոգենաւի երկրորդ կարգի տոմսակ մը գնեցի, Պաթում երթալու համար:

Ապա սնտո՞ւկը, պիտի հարցնէ սիրելի ընթերցողս...

Մոռցեր էի անոր գոյութիւնը: Կեանքն ու շրջապատը շատ հետաքրքիր էր Աթէնքի մէջ, չէի անդրադարձեր անոր գոյութեան... Ի՛նչ լաւ բան պիտի լինէր սակայն, եթէ ոեւէ թիւրիմացութեամբ այդ անտէր սնտուկը կորսուէր, բայց կորսուելուն մէջ, ես մեղք չունենայի:

Կ՚ըսեն՝ անօթին երազին մէջ գաթա կը տեսնէ: Մաքսատան պաշտօնեան թանկագին սնտուկս բերաւ, ու ես ալ ստիպուած՝ նուէր մը կոխեցի ափին մէջ: Բայց չիտակը՝ տուած նուէրիս կրկինը կուտայի, եթէ յայտնէր թէ՝ սնտուկը կորսուած է:

Աթէնքէն նախօրօք գրած էի Պաթում Ս. Բ.-ին, թէ գալու եմ Մեսաժըրի շոգենաւով, թէ հետս սնտուկի մէջ պահուած զէնք կը բերեմ, եւ թէ իրենք մտածեն զայն դուրս բերելու ճամբայ մը գտնելու մասին: Իմ ըսելիքս, մինչեւ ռուսական մաքսատունը հասցնելը պիտի լինէր որպէս թէ:

Ու ճամբայ ելանք: Մինչեւ Պոլիս շատ լաւ անցաւ, ուրախ ընկերութիւն կար շոգենաւին մէջ: Զանազան վայրեր ու նոր դէմքեր: Ասոնք բոլորը լաւ, բայց ամէն սենեակ մտնել ելնելուս՝ չարաբաստիկ սնտուկը քէֆս տակնուվրայ կ՚ընէր: Ազատում չկար ձեռքէն: Ու կը մտածէի խեղճ Թռուցիկի մասին: Ան ալ ինծի պէս, ո՞վ գիտէ, ինչե՛ր էր քաշեր, մինչեւ որ հերոսաբար նետեր էր զանոնք Պոսֆորի գիրկը... պահ տալու համար: Ու խայտառակութիւնը այն էր, որ կը զգայի թէ նման քայլ մը առնելու քաջութիւնը չեմ ունենալու: Հանաք մասխարկութիւն չէ. ինքս այնքա՛ն աւել պակաս խօսեր էի, խեղճ Թռուցիկի հասցէին... Միտքս ակամայ կ՚երթար անցեալ դէպքի մը. խե՛ղճ Տիգրան Խարբութլեան, Կոուելի դէպքի առթիւ, որքան խիստ էի եղած անոր նկատմամբ: Ու կարծես ճակատագիրս, զիս հեգնելու համար, անոր պատահած խաղը իմ գլխուս ալ խաղացեր էր, նոյն ձորին մէջ, եւ հիմակ ալ աս զէնքի պատմութիւնը, որ կրկնութիւնն էր Թռուցիկի պատմութեան:

Շոգենաւը երկու օր մնաց Պոլսոյ առջեւ: Թրքական լրտեսները; կ՚երեւի Աթէնքէն հետեւած, ինձ հանգիստ չէին տար,

կ'առաջարկէին դուրս գալ քաղաքը պտտելու, որպէս թէ իմ մազիս իսկ ձեռք զարնող պիտի չլինէր: Այնքան համը փախուցին, որ ստիպուած դիմեցի ճեփթընին, որ բոլորն ալ վռնտեց ու նաւաստի մը պահակ դրաւ սանդուխի գլխուն:

## ԴԷՊԻ ՊԱԹՈՒՄ

Սեւ ծովն ենք մտած: Բաւական ուժեղ ալեկոծութիւն կայ: Ըսենք՝ այդ ալեկոծութիւնը բաղդատմամբ իմ հոգու ալեկոծութեան, խաղալիք մ'էր միայն:

Շոգենաւը Պոլսէն, կ'երեւի իսկական ասիական բնոյթ հագնելու համար Սեւ ծովու շրջագայութեան շրջանին, խայֆէնի մ'ալ վերցուցեր էր հետը, իր փոքրիկ տնակովը միասին:

Ծերուկ յայն մ'էր խայֆէնին, ու ի՜նչ երջանկութիւն, Տրապիզոնցի: Վերջապէս կը մտածեմ, տեղացի մը ըլլալն ալ երբեմն կ'ունենայ իր օգուտները:

Ծերուկի դէմքը ծանօթ կուգայ ինծի: Անշուշտ մեր ընտանիքը կը ճանչնայ: Այս մտածումն ալ թէեւ կ'ոգեւորէ զիս, բայց աւելին չեմ կրնար երեւակայել:

Կ'աճապարեմ առաջին օրէն իսկ գլխաւոր յաճախորդը դառնալ իր համով խահիֆէին, որը թէեւ 1 ղրուշ կ'արժէր, բայց ես, ամէն անգամուն 5 ղրուշնոց մը կը դնէի ափին մէջ, աղավարի առատաձեռնութեամբ: Ու այդպէս օրը 4–5 անգամ, նոյնիսկ այն ատեն, երբ սուրճ խմելու բնաւ ախորժակ չունէի:

Այդ ծերուկը աչքիս, յուսոյ աստղի պէս բան մը երեւցաւ, բայց թէ ի՞նչ կրնայի յուսալ, չիտակը չէի գիտեր:

Շոգենաւը իր կարգին ճամբան կը շարունակէր: Ես ալ սուրճի բաժակները կը դատարկէի՝ գրպանս թեթեւցնելով: Յոյնը ցացկեկ իսկեմպլին տուեր էր, որ նստիմ: Հասկնալի է, որ առանձնաշնորհեալ դիրք մը գրաւեր էի իր մօտ: Հանաք մասխարկութիւն չէր խօմ, ամէն անգամ բաժակ մը սուրճի փոխարէն 5 ղրուշ ստանալը...

Ինչպէ՛ս չէ, կը ճանչնար մերոնց, անուններով գիտէր քեռիներս, պապս... Զեղուն զգացումներ... քիչ մնաց, որ խնամիական կապ ալ երեւար գար, եթէ օրթոտոքս եկեղեցին այնքան անզիջող եղած չլինէր: Բարի մարդուկը ոգեւորուած կը խօսէր

պապիս մասին։ «Է՜, աղա մարդ էր, աղա»… Կ՚երեւի, կ՚ուզէր չեշտել, թէ ես ալ հինդական ղրուշ վճարելով սուրճի բաժակին, աղայութեան դժուարակոխ սանդուխէն սկսեր էի մագլցիլ, դէպի վեր։

Վերջապէս ծննդավայրիս, Տրապիզոնի առջեւ ենք, առտու շատ կանուխ, ուր մեր Թուլցիկը, այնքան ողբերգական ապրումներ ունեցաւ… Բայց ինչո՞ւ յիշել պատմութիւնը, միթէ իմ ցաւս ինծի չի բաւե՞ր…

Կօշիկներս մաշեցան արդէն նաւու տախտակամածին վրայ՝ վեր վար չափելէն։ Խենթենալը բան մը չէ։ Իմ պատահարներով ծանր կեանքիս ամենածանր օրերն եղան այդ քանի մը հոգէառ օրերը։ Երբեմն ինքզինքս կը մխիթարէի այն յոյսով, թէ Պաթումի ընկերները ի հարկէ միջոցներ ձեռք կ՚առնեն, ոչ թէ իմ, այլ զէնքերու սիրոյն, առանց փորձանքի դուրս բերելու տարածներս, բայց չեմ գիտեր ինչո՞ւ, այդ կարճատեւ լաւատեսութեան կը յաջորդէր յոռետեսութիւնը, եւ փորձանքի մը հանդիպելու հաւանականութիւնը, գրեթէ կատարուած իրողութեան մը նման, կը ճնշէր զիս։

Ցոյս դնել մեր Մարսիլիայի ներկայացուցիչի պատրաստած գաղտնարանի վրայ, միամտութիւն պիտի լինէր։ Իսկական աւանակ մը միայն չէր նկատելու սնտուկի տարօրինակութիւնը, իսկ ռուս պաշտօնեաները, գիտցողները կը վկայեն որ, քիչ մը խման, քիչ մը անփոյթ, քիչ մը շուշորթ, շատկեկ մ՚ալ կաշառակեր, բայց չէնք շնորհք մարդու պէս երկու ոտքի վրայ կը քալեն, թէեւ օրօրուելով, եթէ վօտկան շատ է փախեր։

Կը մտածէի. զէնքը եթէ բռնուի ի՞նչ պիտի ըսեմ, որքա՞ն պատիժ պիտի տան. եթէ նոյնիսկ երկու տարի լինի, ես բանտային կեանքի կը դիմանա՞մ… Ու սրտանց կը հայհոյէի Ժընէվի ընկերներուն, որ այս բարի խորհուրդը յղացան, եւ ինծի, որ յիմարաբար համաձայնեցայ…

Իրիկուան կողմ շոգենաւը խարիսխը վեր կը քաշէ. սիրտս կարծես մամուլի մէջ է։

Իմ լաւ բարեկամ խայֆէճիին հետ, ուշ ատեն, գլուխ գլխի, նստեր ենք իր խցիկին մէջ։ Հազիւ թէ կայծեր մնացեր են կրակարանին մէջ։ Կ՚ըսեմ, որ սուրճ մը եւս պատրաստէ։

— Սիրելիս,— կ՚ըսեմ ծերուկին ողոքող ձայնով մը,— մենք հայրենակիցներ ենք, բարեկամներ, ղարիպութեան մէջ իրար

պիտի օգնենք։ Պզտիկ նեղութիւն մը եթէ տալու ըլլամ քեզի, կը կատարե՞ս։ Շիտակը գիտեմ, որ կը կատարես…

Ծերուկի ճմրտկուած դէմքին վրայ հարցական նշան մը նը-կարուեցաւ։ Մէկ ունքը վեր փախաւ, շրթները սեղմուեցան. Թէ-եւ բան չպատասխանեց, բայց պատասխանը պարզ էր…

Ես որպէս թէ չհասկցայ, ըսի, որ փոքրիկ, շատ փոքրիկ գրպանի ատրճանակ մը ունիմ…

Իմ անգին բարեկամս, չձգեց որ վերջացնէի։

Որոտ ու կայծակ, անձրեւ ու կարկուտ, ձիւնաթոփորիկ եւ հիւսիսային քամի, մէկ խօսքով, զրօ աստիճան, երբ կ՚ըսեն թէ ջուրը կը սառի։

Ֆրանսական ընկերութիւնը խիստ պատուէր է տուած եղեր իր ծառայողներուն, նոյնիսկ գրչահատ մը առանց մաքսէն անց-նելու դուրս չհանել…

— Անկարելիութիւն է — եզրակացուց ծերուկը — բարեկամ էինք, նորէն բարեկամ մնանք, բայց կը խնդրեմ ոչ մէկ խօսք ատրճանակի մասին։

Վա՜յ ինձ, վա՜յ ինձ, վա՜յ ինձ, քիչ կը մնայ որ կրակարանի մոխիրը ցանեմ գլխուս… Սրտանց կ՚ողբամ սուրճի համար վճա-րած դրամներս։ Ճիշդ է, որ քիչ մը աղայական մեծահոգութեան չի վայլեր այս արտայայտութիւնս, բայց տէր Աստուած, ո՞վ ըսաւ թէ ես աղայութիւն խաղալու էի ելեր, ի վնաս գրպանիս։

Բայց եւ այնպէս չյուսահատեցայ։ Կ՚ըսեն ծովը ինկողը օձին կը փարի… Ծերուկը կարգին մարդ էր, համ էլ հայրենակից, այնպէս որ անոր պոչէն պինդ մը բռնելս թո՛ղ ոչ ոքի տարօրինակ չ՚երեւի։

Լեզուիս ազատ ասպարէզ տուի, հայրենակցութիւնը զօրաւոր օղակ չինեցի մեզ իրար կապող, մեր ունեցած ծանօթութեան ջեր-մութիւնը՝ անհերքելի փաստ, պապիս աղայութիւնն ալ՝ գրա-ւական, որ եթէ ինծի օգնելու ըլլի, եւն. եւն. եւն.։

Սրտմաշուկ խօսակցութենէ մը վերջ, վերջապէս, ի սէր մեր հայրենակցութեան ու ինծի հանդէպ չտածած բուռն բարեկա-մութեան, ատոր վրայ բարդուած եւ աղա պապիս յիշատակը, յոյնը համաձայնեցաւ ութը րուբլիի փոխարէն իմ փոքրիկ ա-տրճանակս մաքսէն անցնել։

— Ժամանակը ուշ է, դէ գնա բեր, ես ալ պիտի գոցեմ խա-նութը,— ըսաւ։

Բայց ես տեղէս շարժուողը չէի, եւ վերջապէս փոքրիկ ատըրճանակ ալ գոյութիւն չունէր որ ... Բայց կծիկի թելը քակուեր էր յուսատու կերպով:

Առաջաբանով մը, մեր երկուքիս քրիստոնեայ լինելու հանգամանքն ալ շեշտելով, ըսի, որ եղած չեղածը երեք մաւզեր ատըրճանակ է, քիչ մ՚ալ փամփուշտ:

Հարկ եղաւ նախօրօք անցած դժուարին փուլերէն անցնիլ կրկին. խեղճ պապս նորէն գերեզմանէն դուրս հանեցի, Տրապիզոնի թուղն ու խամսին ալ յիշեցի, որ ինչպէս սովորական է ըսել, տաքուկ մթնոլորտ մը առաջ բերաւ: Վերջապէս քսան ռուբլիով համաձայնեցանք:

— Ուշ է, դէ գնա բեր:

Որպէս թէ երթալու պէս ըրի, աւելի լաւ տեղաւորուելով աթոռիս վրայ: Անցած օր է հիմա, բայց ըսեմ, թէ քրտինքը մէջքէս ի վար կ՚ակօսէր — այս արտայայտութիւնն ալ գրական փախաւ, որուն համար խոնարհաբար ներողութիւն կը խնդրեմ ընթերցողէս:

Գիշերը կը յառաջանար, ինչպէս նաեւ շոգենաւը... դէպի Պաթում: Քիչ մը չոր, քիչ մ՚ալ ջղայնացած ըսի, թէ շիտակը 10 մաւզեր էր, երկու հազարի չափ ալ փամփուշտ, թէ իրեն 30 ռուբլի պիտի վճարեմ ապահով դուրս հանելուն համար:

Ծանր բեռէ մը ազատուեցայ: Վերջապէս կատակերգութիւնը կը վերջանար:

Իմ յոյն բարեկամս, առանց այլեւայլի ըսաւ, թէ ինքը ընտանիքի տէր է ու չի կրնար կտոր մը հացէն զրկուիլ: Եւ բացէ ի բաց մերժեց ու առաջարկեց, որ դուրս ելնեմ, քանի որ արդէն ժամանակը անցած է, ինքն ալ պիտի քնելու երթայ:

Բայց դու ըսէ, սիրելի ընթերցող, ինտո՞ր դուրս ելլէի...

Նորէն քաղաքականութիւնը ձեռք առինք: Բայց այս անգամ իմ փաստերը ձայն բարբառոյ յանապատի մնացին... «Արդեօք մեր հինգ ղրուշները անդա՞րձ կորան»,— կը մտածէի, տխրագին:

— Հա այս անգամ, Տրապիզոն, սիրուն թոնիկներդ տեսա՞ր:

Մարդը ապշած երեսիս նայեցաւ.

— Հա, տեսայ, ի՞նչ կայ որ...

— Հէչ, բան չկայ, ըսի, աղուորիկ թոնիկներուդ կը ցաւիմ:

— Կը ցաւի՞ս մի, ի՞նչ կայ ցաւելու որ...

— Շիտակը ըսեմ քեզի, հայրենակիցս, գիտես որ բարեկամ ենք, քու լաւութեանը համար կ՚ըսեմ ասիկա. բայց Կոմիտէն որ ղրկէ այս պատմութիւնը, դժուար թէ քեզի ձգէ որ ողջ դուրս գաս Պաթումէն:

Ու սգաւոր դէմքով մը իրեն նայեցայ:

Անհնարին կատաղութիւն մը բռնեց մարդուն: Դժուար թէ տեսած ըլլայի մարդկային դէմքի վրայ անզօր կատաղութեան նըման արտայայտութիւն մը: Ու օրհնեալ բերանը բացաւ, Հայր Աստուած, Որդին Աստուած, Հոգին Սուրբ Աստուած իրար խառնըւեցան, Մարիամ Աստուածածնին ալ չխնայեց, սուրբերու օխտը պորտը իրար անցուց: Այնպիսի բանաստեղծական հայհոյանքներու տոպրակ մը բացաւ, որուն քով աղջկան մը պէս կըրնար չիկնիլ ռուսական երեք յարկանի հայհոյանքի բառարանը: Ճոխ բաժին մ՚ալ ինծի հանեց հարկաւ: Խեղճ պապս ալ նորէն գերեզմանէն դուրս ինկաւ, աւա՜ղ, այս անգամ չըսուելիք ածականներով.... զարդարուած:

Քրիստոնէական համբերութեամբ զինուած, հեզօրէն տարի այս բոլորը. «Տէր թող դոցա»... Չէ՞ որ վերջին յուսահատ վարագոյրը կը խաղայի:

Քաղցր ձայնով մը ըսի, որ քանի դեռ տաքութիւն կայ մոխիրի մէջ երկու սուրճ եփէ ու բարեկամաբար խմենք:

Կարծես աչքերով զիս պիտի ուտէր: Կամաւ ջուրը թափեց մոխիրի վրայ: Եւ սակայն ականջ դրաւ բանականութեան ձայնին:

Լաւ գիտէր Պաթումը: Գիտէր եւ Կոմիտէ ըսուածին արժէքն ու արարքները: Ճար չունէր: Բարկութենէն դողալով, առանց ինծի նայելու ըսաւ, որ բերեմ այդ փորձանքները:

Մէկ ժամ չանցած՝ սնտուկիս մաւզերները ու փամփուշտները փոխադրեցի անոր սենեակը ու ես գնացի սենեակս քնելու:

Աթէնքէն ելնելէս ի վեր, առաջին գիշերն էր որ ես խաղաղ ու հանգիստ քնացայ, ու կոշմար երազներ ընդոստ չարթնցուցին զիս:

Առտու շատ կանուխ Պաթումի առջեւ էինք արդէն: Շոգենաւը ծանր մօտեցաւ քարափին: Ճամբորդները դիմաւորողներու բազմութիւն մը, ու անոնց մէջ աչքի կը զարնէր Դաշնակցութեան սպայակոյտը:

Ի՞նչ գեղեցիկ բան է եղեր Բաթում հասնիլը:

Սակայն, զարմանալին այն էր, որ երբ վերէն անունները տալով ձայն կուտայի իրենց, ոչ մէկը ինծի չէր պատասխաներ, կարծես թէ խռոված լինէին հետս: Շիտակը զարմացեր էի, բարեւ մը, ժպիտ մ՚իսկ չկար դէմքերնուն:

Երկար սանդուխով մը հաղորդակցութեան կապ մը ստեղծըւեցաւ նաւու եւ քարափի միջեւ: Ամենէն առաջ ժանդարմները ներս մտան, որսկան շուներու պէս, խուզարկու աչքերով ճամբորդները տնտղելով: Եկան եւ մաքսատան պաշտօնեաները: Գըլխաւորը անմիջմէ նստաւ սանդուխի գլուխը եւ, դուրս ելնող ճամբորդներու իրեղէնները նայելէ վերջ, թոյլ կուտար անոնց քաղաք իջնելու:

Երուանդը, որպէս չոգենաւային ընկերութեան մարդ, վեր բարձրացած էր ժանդարմներու հետ միասին: Ուրախ ուրախ մօտեցայ անոր, բայց զարմացայ, երբ որպէս թէ ինձ բոլորովին անծանօթ մը՝ անտարբեր քովէս անցաւ, կամաց մը փսփսալով՝ «Հետս մի՛ խօսիր»:

Արդէն կարդին ջլոթած մնացեր էի. անշուշտ ասոնք խենթեցեր էին: Երուանդը, մինչեւ նաւուն գլուխը երթալէն վերջ, նոյն կամաց քայլերով անցաւ մօտէս.

— Սնտուկդ ձգէ, ու անմիջապէս դուրս եկուր,— ըսաւ ու անցաւ:

— Տօ, եղբայր, բան չկայ որ...

Բայց Երուանդը հեռացեր էր արդէն, շատ խորհրդաւոր կերպով:

«Անշուշտ թիւրիմացութիւն մը կայ», մտածեցի եւ ալ առանց սպասելու մօտեցայ սնտուկիս, որ խուզարկել տամ:

Բացի սնտուկը: Պաշտօնեան լաւ մը քրքրեց. տեսաւ որ տեղ մը քանդուած է, բայց խելքը բանի մը չհասաւ: Սնտուկը վար տուին երկու հայ մշակները, որոնք մեր ընկերներէն էին եւ սաստիկ կ՚աճապարէին մէկ մը սնտուկը դուրս նետելու: Ես ձեռքի թեթեւ պայուսակովս վար իջայ: Մէկ իջնալս գիտցայ. գրեթէ թռցուցին զիս փայթոնի մը վրայ, եւ կառապանը քշեց:

— Տօ՛ սպասէ՛, տեսնեմ սնտուկս ո՞րտեղ է:

— Ոչինչ, ոչինչ, սնտուկդ ետքէն կուգայ:

Ու կառապանը մտրակեց ձիերը:

Հազիւ հիւրանոց հասած էի, երբ տղաքը սենեակս լեցուե-

ցան, հիմակ արդէն ուրախ ու զուարթ: Գրկախառնումներ, համբոյրներ՝ դաշնակցավարի...

— Տղաք, սնտուկս ի՞նչ եղաւ:

— Անհոգ եղիր, հիմա արդէն մեր պահեստն է:

— Պահե՞ստը մի...

Ու խնդալէն մարեցայ:

Վերջապէս պարզուեցաւ խնդիրը: Իմ Աթէնքէն գրած նամակս ժամանակին ստացեր էին, գիտէին, որ զէնքը սնտուկին մէջ պահուած է: Մօտեցեր էին մաքսատան այն պաշտօնեային, որ այդ օրը պիտի խուզարկէր իրեղէնները եւ, որոշ կաշառքի մը փոխարէն, գործը կարգադրեր էին: Բայց Թարսի պէս, նախորդ գիշերը այդ պաշտօնեան, քէլպի մէջ քիչ մը շատ կոնծած լինելով, առտուն չէր կրցեր տեղէն ելնել (սովորական բան մը ռուս չինովնիկներու առօրեայ կեանքին մէջ) ու անոր փոխարէն եկեր էր իր ընկերը, որուն հետ մերոնք համաձայնութիւն մը չունէին սակայն: Ընկերները յանկարծակիի կուգան եւ կ՚որոշեն որ ես դուրս գամ առանց սնտուկի, ու եթէ կարենան, իրենք վերջէն բան մը կը կարգադրեն սնտուկի վերաբերմամբ:

Ատոր համար ալ, երբ տեսան, որ սնտուկը խուզարկուեցաւ ու բան մ՚ալ չպատահեցաւ, այդ վերագրելով սնտուկի գաղտնարանի սքանչելի շինուածքին, ազատ շունչ մը քաշեր էին ու հազիւ թէ մշակները սնտուկը վար առած աճապարանքով մը, որ պատիւ կը բերէր Պաթումի մեր ընկերներու ճարպիկութեան — սնտուկը փախցուցեր էին: Ու այդ հանգամանքը հպարտութեամբ մը կը մատնանշէին:

Երբ յայտնեցի իրենց թէ՝ սնտուկը դատարկ է ու զէնքերը յանձնուած ղայփէճիին, կարծես սառ ջուր լեցուցի գլխներուն: Ինչ որ է: Զէնքերը այդ գիշեր իսկ ստացանք: Բայց խիղճս կը տանջէր այն ծանր ապրումներուն համար, որ ակամայ պատճառեր էի մեր յոյն բարեկամին: Խնդրեցի Երուանդէն, որ ինձ մօտ ճաշի հրաւիրէ զինքը:

Երուանդը երբ կ՚առաջարկէ որ գայ ՊԷլ Վիւ հիւրանոցը ինձ հետ ճաշելու, իմ ղայփէճի բարեկամս հայհոյանքի տոպրակը մաքուր մը կը թոթվէ եւ, առանց նոյն իսկ քաղաքավարական շնորհակալութիւն մը յայտնելու, կռնակը կը դարձնէ ու կ՚երթայ:

Երկու օր միայն մնացի Բաթում, եւ մեկնեցայ Թիֆլիս:

# ԹԻՖԼԻՍ

Հասայ Թիֆլիս։ Նախկին Թիֆլիսը չէր տեսածս, այլ նոր մը։

Եղա՞ծ էք գարնան անտառի մը մէջ, երբ անսպասելի կերպով ուժգին փոթորիկ մը կը փրթի. հաստաբուն ծառեր, եղէգի նման ճկուն, իրար չալակ կ՚ելնեն վայելով. լայնաթեւ ճիւղեր, գլխահար, օդը կը մտրակեն. անտառը հազար բերան կ՚ելնէ, ու հազար բերնէ կ՚արձակէ մունչիւն մը, աղաղակ մը, վայիւն մը. անտառը կը տնքայ, կուլայ, կ՚ոռնայ, կը կատղի։ Ամէն ինչ իրար կը խառնուի. դարեւոր կաղնիներ, արմատախիլ եղած՝ հեռուները կը քշուին. կոտրուած ճիւղեր օդին մէջ կը պարեն։ Ու կը թուի, թէ աշխարհի վերջը եկած է, վերջին դատաստանի օրը։

Անշուշտ Պաթումն ալ էր փոխուած, այդ համեստ, փոքրիկ քաղաքը, որ չես գիտեր թէ ի՞նչպէս կ՚ապրէր։ Հոն սրճարաններու սովորական կեանքը մեծ յառաջդիմութիւն էր գործեր, առտուընէ մինչեւ իրիկուն լեփ-լեցուն էին անոնք անգործ բանուորներով, երազող ինտելիգենտներով, որոնք միեւնոյն նիւթը կը հոլովէին, փոլիթիկոսներու յատուկ ծանրութեամբ, թրքական ղայֆէն ֆշրտացնելով։

Բայց ինչ որ տեսայ Թիֆլիս, անօրինակ, անանուն բան մ՚էր։

Թերեւս աւելորդ չլինի, քանի մը խօսքով ներկայացնել նախկին Թիֆլիսը, որ ինքնայատուկ տեղ մ՚ունէր ամբողջ Կովկասի մէջ։ Այդ երբեմնի վրաց թագաւորութեան շիրին մայրաքաղաքը, որ վերջի հարիւրամեակին Հայաստանի մայրաքաղաքի կերպարանք ստացեր էր, եւ քաղաք մ՚էր, եւ մայրաքաղաք, եւ Կովկասի հոգեկան ամրոցը, եւ հիւսիսէն եկող փոխարքաներու աթոռանիստը, Կովկասի մտաւորականութեան միջնաբերդը, Կախեթի գինիի եւ չիշլիկի անմրցելի ճէֆարանը, կինտոներու միակ բնակավայրը, կրթական հաստատութիւններու կեդրոնավայրը, հիւսիսէն եկող աղջիկներու պազարը, ազգամիջեան պայքարի մրցարանը։

Վրացի, թաթար, ռուս եւ գերակշռող հայութիւն, ահա անոր սեփական տեղական դիմագիծը, եթէ այս ազգերու խառնուրդէն հնարաւոր էր ինքնուրոյն դիմագիծ ունենալը։ Վրացերէն կը խօսուէր գրեթէ ամէն տեղ, հայերէն երբեմն կը լսուէր, ռուսերէնը կը տիրապետէր, եւ սակայն այս տարբեր լեզուները, իրար դէմ սուր կը քաշէին, ատելութեամբ գինուած։

Թաղերու կազմուածքով ալ, բաբելոնեան աշտարակ մ'էր այդ եզակի քաղաքը, որ կարծես զանազան քաղաքներու հաւաքածոյ մը լինէր: Հալաբարը, Կուրի միւս կողմը բարձրութեան վրայ թառած, գերազանցօրէն գաւառը կը ներկայացնէր, իր համեստ աշխատաւորներով, խանութպաններով, տեսակ մը Երեւան, փոխանակ Մասիսի, Սուրբ Դաւթի սարը ունենալով դիմացը: Շէյթան պազարը, մասնաւորապէս Հին Նախիջեւանէն ապլապրուած էր, իր արեւելեան ղայֆեխանաներով, մանր կրպակներով եւ իրար շալակ բարձրացած շէնքերով, որոնք կարծես թէ փոքր հովէ մ'իսկ պիտի փլէին, եւ սակայն կը դիմանային բնութեան եւ մարդոց բոլոր փոթորիկներուն: Սալտատկի պազարը, իր ձկնավաճառներով ու անհատնում մանր կրպակներով, Պոլսոյ Սամաթիան եւ Պիթ Պազարը կը յիշեցնէր կենդանի կերպով· փոխարքայի Պալատը, Փառաց Տաճարը, իր սոխի նմանող գմբէթով, Կալավինսկի լայն պողոտան, հայոց Արթիսթիքական թատրոնը, պետական օփերան, Թիֆլիսի միջուկը կը կազմէին, կուլտուրական շրջանը: Սոլոլակը, հայ ճարպացած մեծատուններու թաղն էր, շքեղ տներով, մաքուր փողոցներով, եւ արիստոքրատիկ բնակիչներով, որոնք դեռ հազիւ թէ երկու տասնեակ տարիներէ ի վեր Ղազախի գիւղերէն եկեր եւ հարստութիւն դիզեր էին Թիֆլիսի մէջ, որոնց չարխները դեռ կարգին չորցած չէին, բայց որոնք անպատճառ ռուսերէն կը խօսէին, եթէ նոյնիսկ աղճատուած ռուսերէն:

Եթէ միայն այսքանը լինէր Թիֆլիսի ունեցածը, ընթերցողիս ծանօթացնելու նեղութիւնն իսկ յանձն չէի առներ· ամէն քաղաք ալ, քիչ թէ շատ, համեմատական չափով մը նոյն պատկերը ունի, բայց ինչ որ Թիֆլիսը բացառիկ քաղաք մը կը դարձնէր, որուն արժէ ծանօթանալ, այդ Երեւանեան Հրապարակն էր, որը աշխարհագրական իմաստով քաղաքի կեդրոնն էր, քաղաքային դումայի առջեւ լայնօրէն փռուած, իսկ բարոյական իմաստով՝ Թիֆլիսի բազկերակը, կրթ. կաճառը, հանդիպարանը, մրցարանը, վիճարանը, մէկ խօսքով մտաւորական պօրսան:

Երեւակայել Թիֆլիսը առանց Երեւանեան Հրապարակի, պիտի նմանէր Մոսկուան առանց եկեղեցիի տեսնել:

Այս Հրապարակը իր մասնաւոր կեանքն ունէր:

Ընդհանրապէս երեկոյեան կողմը, ժամը 4էն վերջ, Թիֆլիսի մտաւորականութիւնը առագաստները հովին տուած, կէս օր-

ուան պայմանադրական մրափէ վերջ, մէկ Երեւանեան հրապարակը պիտի իջնէր օրուան նորութիւնները լսելու, բարեկամի մը հանդիպելու, իր արժէքաւոր կարծիքը յայտնելու, հասարակական խնդրի մը մասին եւ կամ Թամամշովի քարվանսարայի անկիւնի ֆէլպելայէն, Գանձակի Թարմ միրգ գնելու համար:

Այս զարմանալի հրապարակը ոչ թէ միայն Թիֆլիսի, այլ եւ



ԹԻՖԼԻՍԻ ԿԻՆՏՕՆԵՐՈՒ ՏԻՊԵՐ

ամբողջ Կովկասի կեդրոնական ժամադրավայրն էր, հոդ իրար կը հանդիպէին գաւառներէն արձակուրդով եկող վարժապետները, Անդրկասպեան կամ Հիւսիսային Կովկաս Թափառող դերասանները, տարիներով իրար հետք կորսնցուցած ուսանող ընկերները, բանաստեղծութեան նիհար հատոր մը հրատարակելու համար եկող բանաստեղծները:

Հոն կարելի էր հանդպիլ, առանց պաշտօնական ձեւականու-

թեան, հանրածանօթ գրագէտին, հասարակական գործիչին, նըշանաւոր մանկավարժին, փիւթերիզմի ծանօթ բանաստեղծին, որ գրպանը լեցուցած իր գոհար բանաստեղծութիւններով, այնքան պատրաստակամ էր իր գլուխ գործոցները կարդալու, որոնք կէտերէ, ստորակէտներէ եւ բացագանչական նշաններէ բաղկացած էին: Այդ հրապարակի մայթին վրայ կը հանդիպէիր պահպանողական վաճառականի ազատամիտ գործակատարին, մազը կորած օրիորդին, որ տարիներէ ի վեր շարունակելու պիտի երթար, եւ բազմաթիւ նոր աւարտած կիմնազիստներու, որոնք իրենց ուսանող. նոր գլխարկը կը պտտցնէին մայթերուն վրայ:

Այդ փոքր տարածութեան վրայ հաւաքուած մեծ բազմութեան մէջ, որ հազիւ կրնար շարժիլ, անհոգ ու սրամիտ կատակներ շռայլելով կ'անցնէր Թիֆլիսի հարազատ կինտօն, բարեձեւ, ճապուկ մէջքը արծաթէ լայն քամարով սեղմած, փայտէ խոշոր ափսէ մը հաւասարակշռած գլխուն, որուն մէջ նայած ժամանակին, բրդաձեւ կը բարձրանար Գանձակի կեռասը, կամ Պաթումի առաջին թարմ վարունգը...

— Հէ՞յ, նազա՛թ, նազա՛թ...

— Ագա Վասօ՛, քանի՞ է ֆունտը...

— Ագա ջան, չընի՛ կոտր ես ինկեր, գին ինչի՞ կը հարցնես որ...

Երեւանեան հրապարակի մայթերուն վրայ կը սկսէր Ներսիսեան վարժարանի հոգաբարձական պայքարը. պահպանողական եւ ազատական կուսակցութիւնները, հոդ կը վիճէին իրար հետ. մանկավարժական նոր ուղղութիւն մը հոդ սանկցիա կը ստանար. մեծ վ-ի եւ փոքր ւ-ի անարիւն ճակատամարտը հոդ տեղի կ'ունենար, հակամարտ բանակներու կողմէ:

Զգոյ անթելի կեդրոնական կայանն էր այդ հրապարակը. հոն արտայայտուած կարծիք մը, լուր մը, ամենակարճ ժամանակի մէջ շրջան կ'ընէր ամբողջ քաղաքին մէջ: Հեռաւոր գաւառներէ եկած լուրերը՝ սուտ կամ ղորդ, այդ տեղէն բրօդֆեստ կը լինէին. «Կարկուտը Էջմիածնի շրջանի այգիները փճացուցեր է. — Նախիջեւանի գաւառը, Արաքսի պարսկական ափէն խուժող մարախներու պատճառով, մեծ վտանգի տակ կը գտնուի. — Նոր-Պայազիտ անասուններու տարափոխիկ հիւանդութիւնը մեծ համեմատութիւն է ստացեր, չինուկի հնացած լինելուն պատճառով»:

Այդ հրապարակէն անբաժանելի մարդիկ, որոնք օրուան մէկ մասը պայմանադրական կերպով հոդ պիտի անցնէին անպատճառ, կը լսէին նորութիւնները լարուած ուշադրութեամբ, երկարած դէմքերով, ճիշդ այն մտահոգ արտայայտութեամբ, ինչ իրենց վերաբերեալ խիստ կենսական լուր մը:

Կը լսէին ու ծանր ու մեծ կարծիք կը յայտնէին, ցուցմունքներ կ՚ընէին այնպիսի սրտցաւ վերաբերմունքով մը, որ անծանօթ մը պիտի փորձուէր հաւատալու, թէ ատոնցմէ ամէն մէկը անշուշտ այգի մ՚ունէր Էջմիածին, բամպակի արտեր Նախիջեւան եւ կաթնատնտեսական հաստատութիւն մը Նոր–Պայազիտի մէջ ... Ի հարկէ ատոնցմէ եւ ոչ մէկը, բայց այդ պատճառ մը չէր, որ սիրտ հատցնէին բաներով, որոնք իրենց հետ ոչ մէկ առնչութիւն ունէին: Այս հոգեկան վիճակը առաջ կուգար այդ հրապարակի ինքնայատուկ մթնոլորտէն, որ բացառիկ էր ամբողջ Կովկասի մէջ:

Այսպիսի բացառիկ քաղաք մ՚էր Թիֆլիսը, երբ ես վերջին անգամ մեկնեցայ այն տեղէն դէպի արտասահման: Իսկ վերադարձիս, ինչպէս ըսի նախօրօք, ամէն ինչ փոխուեր էր, նոյնիսկ Պաթումը, որ փոխուելու այնքան քիչ բան ունէր...

## ՅԵՂԱՓՈԽՈՒԱԾ ԹԻՖԼԻՍԸ

Բայց Թիֆլիսը, շքեղ մայրաքաղաքը Կովկասի, ուղղակի եռացող կաթսայ մ՚էր: Զէ, երկրաշարժ տեղի չէր ունեցեր, ո՛չ ալ ընդհանուր աղէտ մը պատահած էր. ոչ մարախ երեւցեր էր պարսկական սահմանին վրայ եւ ոչ ալ դդմանման կարկուտ տեղացեր էր: Նոյն իսկ հայ–թաթարական կռիւներն ալ կորսնցուցեր էին իրենց սրութիւնը ու դարձեր էին ռութին անհրաժեշտութիւններ առօրեայ կեանքին մէջ:

Եղածը պարզապէս «Ռուսական մեծ յեղափոխութիւն» ըսուած տռամայի մէկ նոր վարագոյրի բացումն էր, որուն դեռ շատ ուրիշներ ալ պիտի յաջորդէին: Ու, ինչպէս կ՚երեւի, դեռ վերջին վարագոյրին ալ ականատես լինելու բախտաւորութենէն զրկուած, ապագայի յոյսով կ՚ապրինք:

Եկեր էր սպասուած Մեծ Յեղափոխութիւնը: Յեղափոխական հսկայ ալիքը Ռուսաստանի կեդրոնէն թեւ էր առած ու հազիւ

տկար կոհակներ հասած էին մինչեւ Կովկաս։ Բայց այդքանն ալ բաւական էր փոթորկելու Կովկասը, որը փոթորկուելու մասնաւոր տրամադրութիւն մ'ունէր, եթէ նոյնիսկ այդ փոթորիկի անունը լինէր հայ-թաթարական կռիւներ, որ ոչինչ ունէր յեղափոխական։ Եւ կովկասեան երեք եղբայրակից ազգերը, ամէն մէկը իր հասկցած կերպով, ելեր էր «յեղափոխութիւն» խաղալու։

Մինչ այդ՝ ստորերկրեայ թագնուած ուժերը հիմքէն ցնցեր էին հսկայ սարը, որ ցարական միապետութիւն կը կոչուէր, ու հրաբուխի խառնարանը լայնօրէն բացուած՝ եռացած լաւա կը ժայթքէր բերնէն։ Թագստոցներէն լոյս աշխարհ էին ինկած յեղափոխական կուսակցութիւնները, եւ կառավարութիւնն էր որ համեստօրէն թագստոցն էր մտած, մանուկներու աչք-կապուկ խաղը խաղալով։ Վերջապէս բացուեր էր յեղափոխական երկիցս օրհնեալ բերանը. կարծեմ այս աւելորդ էր շեշտել. միթինկներ, ճառեր, մտաւորականներու յատուկ ժողովներ, ցոյցեր, անողորմ քննադատութիւններ «Հայրախնամ» կառավարութեան հասցէին, ցասման միթինկներ տրուած «շնորհ»ի անբաւականութեան դէմ, աշխատաւորական միթինկներ, բացօթեայ միթինկներ, գոցօդեայ միթինկներ, կանանց միթինկներ, ուսանողական միթինկներ, Մուշտայիտի միթինկներ, Հաւլաբարի միթինկներ։ Ասոնք մէկ շնչով գրեցի, սիրելի ընթերցող, ներէ որ քիչ մը շունչ առնեմ։

* * *

Օրը նոր, լուրը նոր, տրամադրութիւնները նոր։ Առտուն կանուխ ելնողը առաջարկ մը ունէր գրպանը։ Ամէն կուսակցութիւն նոր պահանջ մը գրպանին մէջ, շատ անգամ նախկինը խաչաձեւող։

Գործի վրայ էին կուսակցութիւնները, աշխատաւոր դասակարգը առաջնորդելու համար խաղաղ նաւահանգիստը, որ այնքա՜ն մօտ կ'երեւար ու այնքան հրաշալի։ Ու ասոնք բոլորը կ'ըլլային միաժամանակ ամենակատաղի պայքարով մը կուսակցութիւններով միջեւ, իրար վարկաբեկելու, իրար միս ծամելու, ու ատով աշխատաւոր զանգուածը կրթելու համար։

Իսկական թշնամին մոռցուեր էր։ Կառավարութիւնը մէկ կողմ քաշուած, զիրենք կը դիտէր սադայելական քմծիծաղով մը։



ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՄԻԹԻՆԿԸ — ՆԻԿՈԼԱՅԵՒՍԿԻԻ ՀՐԱՊԱՐԱԿԻՆ ՄԷՋ

Կուսակցութիւնները իրար ջանին էին ինկած՝ գերիշխանութիւն ձեռք բերելու համար մասսայի վրայ, որու ազատութեան համար սակայն կը պայքարէին:

Կարմիր մտքերու, մարտական ծրագիրներու, նոր առաջարկութիւններու կատարեալ Բաբելոն մը... Ընդհանուր ազատամբութեան պահանջ, Մետեխը գրաւելու առաջարկ, ընդհանուր գործադուլ: Ասոնց բոլորին մէջ, հազարաւոր ամբոխի դէմքին նետուած Դեւի որոտացող ձայնը՝ «կախել լապտերի ծայրէն փոխարքայի զինուորական խորհրդականը»... հուռա՛... հուռռա՛... հուռռա՛... Կեցցէ՛ Սոցիալ Դեմոկրատ կուսակցութիւնը, կեցցէ՛ Սոցիալիստ Յեղափոխական կուսակցութիւնը, կեցցէ՛ Դաշնակցութիւնը...

Տէրտէր, վարժապետ, խանութպան, ուսանող եղբայրացեր էին ամբոխին... Յեղափոխական Ինտելիգենցները կապալով վերցուցեր էին Երեւանեան հրապարակը, ուրկէ պրոտէստ կը լինէր օրուան սուտ ու շիտակ լուրերը, նոր լուրերու ծարաւի հասարակութեան համար, որու գերագրգռուած ջղերու համար, զգայացունց լուրերը, հանգստացուցիչ թանիֆի ազդեցութիւն կ'ընէին:

«Մոսկուան բռնկեր էր... Ռոստովի մէջ արիւնահեղ կռիւներ տեղի կ'ունենային.... Ընդհանուր գործադուլը Ս. Փեթերսբուրկէն մինչեւ Վլատիվաստոք հասեր էր...»: Այդ լուրերով ալեկոծ Երեւանեան հրապարակի մայթերու վրայ, կինոները ամէն օրուան նման գլխի ափիշներով, Թուրչուցու վարունգ կը ծախէին...

Սոց.-Դեմոկրատներ, Սոցիալիստ-Յեղափոխականներ, վրացի Ֆեդերալիստներ, Սոցիալ-դեմոկրատներու պոչին փակած Հնչակեան մնացորդներ, Հայ Յեղափոխական Դաշնակցութիւն, այս բոլորը մէկանց ու մէկ բան կը խօսէին, կը վիճէին, իրար կը քննադատէին, հաստատ որոշած թիզ մը իսկ տեղի չտալ, ամէն գնով իրար չհասկնալ, որ մեծ առաքինութիւն մը կը համարուէր այդ օրերուն:

— Տօ՛ ախպէր, էն հեռուն, ժայռի ծէրին երեւցածը ի՞նչ է:

— Ինչ պիտի լինի, անշուշտ արծիւ մ'է...

— Չէ՛, այծ է...

— Չէ՛, արծիւ է...

Ու արծիւը թեւերը բացած՝ վեր կը թռչի:

— Ջրսի՞, որ արծիւ է:

— Արծի՞ւ, ոչ. տօ՛, թռչի էլ այծ է...

Ու այսպէս յեղափոխական կուսակցութիւնները, գիշերը ցերեկին խառնելով, կը վիճէին իրար հետ, ամէն գնով իրար չհասկնալու համար: Վիճաբանական աստղանիշ մրցանակը ընդհանրապէս վրացի Սոցիալ–Դեմոկրատները կը շահէին, որովհետեւ անոնք միշտ պատրաստուած կ'ըլլային եւ երկար շարք մ'ունէին իրաւ ու սուտ վկաներու, որոնք միշտ պատրաստ էին անոնց ըսածները հաստատել:

Քաւ լիցի, միտք ալ չեմ ունեցեր վկաներու անկեղծութիւնը հոս խնդրոյ առարկայ ընել. ըսելիքս այն էր, որ վրացիները հիանալի կը ճառէին՝ բանակ մը օտար բառեր գործածելով, եւ, նեղը մնացածնուն պէս, որպէս անառարկելի ապացոյց Կարլ Մարքսէն, Էնգէլսէն, Կաուցկիէն ու իրենց պապ Պլեխանովէն մէջբերումներ կ'ընէին:

Այն երջանիկ օրերուն՝ խեղճ Դաշնակցութիւնը բաւական բոպիկ կը զգար ինքզինքը այդ նոր ասպարէզին մէջ... Թէեւ վրաց Սոցիալ–Դեմոկրատները, հիւսիսի իրենց ընկերներուն ցուցնելու համար, իրենց յեղափոխական դեմքերամենքը եւ մարտունակութիւնը, կը ծրագրէին Մետեխի բանտը գրաւել, որ քիչ մը բարձր պատեր ունենալուն համար, Մարքսի պաամա դալիպ փոր–միւլներով չէր կարելի գրաւել, եւ ոչ ալ իրենց սքանչելի ճառերը օգուտ մը կրնային ընել զինուորներու սուիններուն դէմ, եւ ըստիպուած Դաշնակցութեան ռազմական ուժին կ'ապաւինէին այդ ամրոցը, կովկասեան Բասթիյլը գրաւելու համար, բայց այդ պատճառ մը չէր, որ վերէն չնայէին Դաշնակցութեան վրայ միթինկներու մէջ...

— Իմ ապրանքս լաւն է:

— Աշխատաւոր ժողովուրդ, չհաւատաս ատոր ըսածին. փտած ապրանք է, հրդեհէ փախցուցած:

— Մենք ուղղափառ սոցիալիստներ ենք:

— Մենք ալ սոցիալիստներ ենք արդէն...

— Դուք սոցիալիստներ չէք: Ո՞ւր է ձեր ծրագիրը...

— Մեր ծրագրի նախաբանին մէջ, անոր շարադրողները սքօղեալ կերպով սոցիալիզմի հիմը դրած են...

— Չէ, դուք ազգայնականներ էք, շովէններ... դուք ինչ որ Հայաստանի անկախութիւն կը հետապնդէք...

— Ի՞նչ, ազգայնակա՞ն, երբ հայ ժողովուրդի 90%-ը աշխատաւոր գիւղացիութիւն է։

Այդպէս էր, որ Դաշնակցութիւնը ռուսական յեղափոխութեան երկունքով բռնուած՝ ծնաւ «Հայ աշխատաւորութիւն» կամ «Հայ աշխատաւոր ժողովուրդ», հիմա արդէն պատմական դարձած փրազը, որ տեսակ մը փրկութեան խարիսխ եղաւ բոլոր անոնց համար, որոնք ժողովներու մէջ քրտնելու վատ սովորութիւնն ունէին։ Թէեւ այդ նոր գիւտով, հայ ժողովուրդը մնաց նորէն այն, ինչ որ էր, ու բանով մ՚ալ չփոխուեցաւ։

«Հայ աշխատաւորութիւն» կամ «հայ աշխատաւոր ժողովուրդ» դարձուածքին գիւտը ընողին անունը դժբախտաբար անյայտ մնաց, եւ օրացոյցի մէջ չանցաւ, բայց այդ՝ պատճառ մը չէ, որ մենք մոռնանք երախտապարտ մնալ անոր։

Այս դարձուածքը այնքա՜ն ընդհանրացաւ, որ անկարելի էր միթինկի մը մէջ Դաշնակցական մը լսել՝ առանց 100 անգամ «հայ աշխատաւորութիւն» եւ «հայ աշխատաւոր ժողովուրդ» դարձուածքը լսելու։ Մէկ խօսքով ըսենք, թէ Դաշնակցութեան «Հայր Մեր»ը դարձաւ ան։

Թերեւս միամիտ ընթերցողս զարմանայ, որ այսքան երկար կանգ առի «հայ աշխատաւոր ժողովուրդ» դարձուածքին վրայ։ Բայց այդ պարզ նախադասութիւնը նոր մտայնութեան մը չարժակէտը դարձաւ. շատ բան փոխուեցաւ եթէ ոչ իրական կեանքի, գէթ Դաշնակցական մտաւորականներու մտածողութեան մէջ։

Բայց միայն այդքան, ու ոչ աւելին։ Նորէն ջուրը իր ճամբով գնաց, ու Դաշնակցութիւնն ալ այն ուղիով, զոր գծած էր ազգային շահերու երկաթեայ անհրաժեշտութիւնը։ Դեղեւումներ տեղի ունեցան անկասկած, բայց երբեք ուղեգծի պարտադութիւն։ Այս անոր համար, որ Դաշնակցութիւնը երբեք չառաջնորդուեցաւ վերէն, խումբ մը մտաւորականներէ, այլ միշտ վարէն, ժողովուրդէն, եթէ կ՚ուզէք ըսենք «աշխատաւոր հայ ժողովուրդէն»։

* * *

Ասպարէզէն իսպառ հեռացան «ազգ», «հայրենիք», «ազգային շահ» դարձուածքները։ Երբ բանուորական ութժամեայ օր, կամ «բանուորներ, բոլոր երկիրներու միացէք»ի նման համաշխարհային լօզունգներ հրապարակ կուգային, հասկնալի է, որ

ազգն ու ազգայինը համեստօրէն փալթօնին կոճկէին ու մութ անկիւնները քաշուէին:

«Ընկեր» համեստ բառն ալ, որ մինչ այդ, իսկական իմաստ մ'ունէր, յեղափոխութեան բռնկման հետ, հրապարակ իջաւ միթինկներու սրահներու մէջ եւ ինչպէս կ'ըսեն, ժողովրդականացաւ, ու, հրաշիւք իմն, ամէնքը իրար «ընկեր» եղան, Գիւտ քահանայէն սկսած մինչեւ Սոցիալ-Դեմոկրատ Մենշեւիկ Արամայիս Երզնկեանը, որ Ծերեթելիի, Ժորդանիայի, Գիգեչկորիի խորթ աղբերացուն էր անոնց փոքրի օրերուն, մինչեւ որ հետըհետէ հասած խնձորի նման կարմրելով, երբ իր ընկերները օտարութեան ճամբան ձեռք կ'առնէին, ինքն ալ խոհեմաբար, նոր փարախ մը կ'ընտրէր իրեն համար, բաւական էր որ պաշտօն մը ապահովուէր իրեն:

Քրիստոսը չարչարեցին, հայ ժողովուրդը շատ չարչարուած ժողովուրդ մ'է, բայց ոչ ոք այնքան չէ չարչարուած որքան այդ «ընկեր» բառը, որուն քաշածը Աստուած դուշմանիս ալ չցուցնէ: Բանը մինչեւ այնտեղ հասաւ, որ վրացի մը Թիֆլիսի քաղաքային դումայի միթինկին մէջ նախագահի երեսն ի վեր պոռաց·

— Ընկեր նախագահ, Ձեր ըրածը սրիկայութիւն է:

Ճիշդ այդպէս՝ սրիկայութիւն է:

Բարձրապատիւ Սօլօլակն ալ, հայ ճարպացած ազնուաշուքներու միջնաբերդը, որ դեռ քանի մը ամիս առաջ, Դաշնակցութեան ուժի հմայքի պաշտպանութեանց միայն ապաւիներ էր՝ իր թանկագին գոյութիւնը պահելու համար, յանկարծակի յեղափոխականօրէն խմորուած, անառակ կնկայ պէս, պատուհանէ պատուհան փլիրթ կ'ընէր Սոցիալ-Դեմոկրատներու հետ, իր «գիտակից» քուէները կեդրոնացնելով անոնց թեկնածուի վրայ, որպէսզի պետական Դումայ երթալով ... իրենց դասակարգային շահերը պաշտպանէ:

Զարմանալին այն էր, որ ոչ ոքի մտքէն չէր անցներ նոյն իսկ զարմանալ այդքան զարմանահրաշ զարմանալիքներու վրայ: Հըրապարակը այնքան էր ողողուած իրար գերազանցող զարմանալիքներով, որ անոնք սովորական բաներ էին դարձած: Սօլօլա՛կ ու Սոցիալ-Դեմոկրատ կուսակցութիւն, որքա՜ն յուզիչ ներդաշնակութիւն... Կարծեմ այսքանը բաւական էր պատկերը ցայտուն կերպով դուրս բերելու համար: Եւ սակայն այս ամբողջը չէր:

Բոլոր կուսակցութիւնները անխտիր իրենց շարքերը յեղափոխականօրէն կրթելու համար, խօսքը բաւական չհամարելով, թերթ եւ բրօշիւր ալ հրատարակելու հիւանդութեամբ բռնուեցան: Այս ալ խօսելացաւի նման յոյժ վարակիչ հիւանդութիւն մ'է, որու բուն կեդրոնը Ռուսաստան կը գտնուի, ինչպէս որ խօլերայինը՝ Հնդկաստան:

Ես երբեք միտք ալ չեմ ունեցեր այդ օրերու Կովկասը ընդհանուր կերպով ներկայացնել: Լաւ է քաշուինք մեր պատեանին մէջ, եւ գրենք Դաշնակցութեան մասին, որ եռման ու զեռման գագաթնակէտին էր հասած:

Հեւ ի հեւ իրար յաջորդեցին «Յառաջ Գրադարան»ի հիւծախտաւոր բրօշիւրները, կարծեմ թուով 36 «Շտեմարան պիտանի ու անպիտանի գիտելեաց», հարստացնելով մեր գրականութեան այն ճիւղը, որ հասարակագիտական կը կոչուի,— բան մը, որ առաջ գրեթէ չունէինք, եւ պէտք ալ չէր տեսնուեր ատոր...

Այդ հրատարակութիւններով, Դաշնակցութիւնը կուզար բարձրացնելու իր շարքերու մտաւոր մակարդակը, գիտակցութեան բերելու «հայ աշխատաւորութիւնը», իր անտանելի դրութեան, հօլսէյլ մկրտելով զայն սոցիալիզմի աւազանին մէջ, ինչպէս ատեն մը երանելին Գրիգոր Լուսաւորիչ, որ սրով ու թրով հայ ժողովուրդը դէպի գետը կը քշէր, Քրիստոսի անունով մկրտելու համար,— բան մը, որ մինչեւ մեր օրերն իսկ չիրականացաւ, հակառակ որ 1600 տարիներու երկար շարան մը ունինք ետեւնիս...

Ըսել չեմ ուզեր, թէ Դաշնակցութեան սոցիալիստական մկրտութիւնն ալ նոյն բախտին արժանացաւ: Քաւ լիցի:

Ճիշդ է, որ «Յառաջ Գրադարան»ի ամբողջ գրականութիւնը,— որմէ բան մ'ալ չէր հասկնար «աշխատաւոր հայ ժողովուրդ»ի 99%-ը,— հոս ու հոն արտասանուած պերճախօս ճառերն ալ վրան բարդած, մազաչափ օգուտ չունեցան Բաշ-Աբարանի կամ Նոր Բայազէդի քսենեֆոնեան հայ շինականի տնտեսական դրութիւնը բարելաւելու համար. ճիշդ է, որ այդ աշխարհէ կտրուած շրջաններու համար բթիրի պատրաստութեան նոր ձեւ մը շատ աւելի օգտակար կրնար լինիլ, բայց եւ անառարկելի ճշմարտութիւն մ'է, որ այդ բրօշիւրներու հրատարակութեամբ, աշխատաւոր գրաշարներու գործ հայթայթուեցաւ, Դաշնակցութեան պիւտճէն ծանրացաւ, եւ սակաւահողութենէ

տառապող հայ ժողովուրդը իմացաւ, թէ Պ. Լավրովը ի՞նչ կարծիք ունէր հողային հարցի մասին, կամ թէ ի՞նչ պէտք է հասկընալ «հաց, լոյս, ազատութիւն» ըսելով, որ ինքը չունէր…

Անշուշտ ասոնք բաներ են, որոնք արժէ որ գիտնայ ժողովուրդ մը, եթէ նոյնիսկ, միայն գրքերու մէջ կարդալով:

Ի լրումն ամենայնի, հրատարակուեցաւ եւ Լաֆարկի «Իրաւունք ծուլանալու» արժէքաւոր բրօշիւրը, որը շատ խրթին գրուած լինելուն համար, ամէն կարդացող իր ուզած կերպովը հասկցաւ, եւ աշխատեցաւ կեանքի մէջ իրագործել: Այս գիրքը իր գերազանց օգտակարութիւնը սփռեց մասնաւորաբար գործարաններու մէջ, ինչպէս Բաթումի Մանդաշովի գործարանի բանուորութեան, որոնք առանց աշխատելու, չաբաթական ստանալու գաղափարը յղացան, մինչեւ որ այդ գործարանը փակուելով, փոխադրուեցաւ Եգիպտոս, գործաւորները դուրս նետելով փողոց, որ առանց աշխատանքի ապրելու նոր ձեւ մը ստեղծեն իրենց համար: Դեռ խել մը ուրիշ շինարար բրօշիւրներ ալ, որոնք անկասկած մեծ զարկ տուին թմրած մտքերու զարթնումին, միաժամանակ առատ ատաղձ ընձեռելով մեր նորելուկ պրոպագանդիստներուն՝ Շիրակի եւ Աբարանի գիւղերուն մէջ յեղափոխական–սոցիալական պրոպագանդ մղելու:

Արդար լինելու համար, ըսենք անմիջապէս, որ մեր նոր ինտելիգենտ պրոպագանդիստներու կողքին ունէինք նաեւ մեր հին ձեւի շրջիկները, որոնց կարկառուն դէմքերէն մէկն էր Աշուղ Ֆարհատը, որը Ղարսի գիւղերու մէջ, ախոռի սաքիւն բազմած, գլխուն հաւաքած գիւղացիներ, կ'երգէր ֆեդայական գիւցազներգութենէն կտորներ·

Սիմոն Զաւարեանը, վա՜յ լէ՜… վա՜յ լէ՜…
Սասնոյ լեռներում, վա՜յ լօ՜… վա՜յ լօ՜…

Ճիշդ է, որ Սիմոնը Մուշ չէր գնացած այդ ժամանակ, ո՛ւր մնաց Սասուն: Բայց եւ այնպէս այդ պրոպագանդը աւելի հասկընալի, եթէ կ'ուզէք աւելի շինարար էր մեր ժողովուրդի համար: Գէթ այն առաւելութիւնը ունէր, որ եղանակը ժողովրդական էր, երգի ոգին ժողովուրդի հոգուն հարազատ, եւ եթէ նախադասութիւնները երբեմն անկապակից, բայց մաքուր հայեվար էին: Մինչդեռ մեր ինտելիգենտ պրոպագանդիստներուն ձեռքը տըրուած բրօշիւրներու տրցակը, իրենք այդ խեղճ պրոպագանդիստ–

ներն ալ շիտկէ շիտակ չէին հասկնար, մինչեւ որ Մարտիրոս Յարութիւնեանը, թէ՛ անոնց ու թէ ինքզինքին օգտակար լինելու մտահոգութեամբ, գրքոյկ մը հրատարակեց «Հայերէնի մէջ գործածուած օտար բառերու բառարան» անունով: Ասով անմոռանալի ծառայութիւն մը մատոյց Մարտիրոսը, պարզելով այդ բրոշիւրներու մէջ սպրդած 90% օտար բառերու ճշգրիտ իմաստը, հաւատացած, որ մնացեալ 10% հայերէն բառերու մօտաւոր իմաստին անշուշտ որ ծանօթ կը լինին պրոպագանդիստները:

* * *

Կովկասեան թոհուբոհի մէջ Հայ Յեղ. Դաշնակցութեան «նախագիծ»ը, երկնքէն իջած մանանայի նման եկաւ թեւ ու թիկունք տալու Բագուայ, Թիֆլիսի մէջ ու քիչ մըն ալ ամէն տեղ ելած նորահաս Դաշնակցական երիտասարդութեան, որուն համար մինչ այդ կուսակցութեան գործունէութեան սահմանը նեղ կուգար, մանաւորապէս յեղափոխութենէն վերջը:

Կովկասեան գործունէութեան նոր ասպարէզ մը կը բացուէր: Այս ճշմարիտ էր մանաւորապէս Բագուի համար,— մասամբ ալ Թիֆլիսի — ուր մինչ այդ գործաւորական շարքերուն դեռ Րաֆֆիի գործերը, կամ «Դրօշակ»ի ընթերցումը, որպէս պրոպագանդ կը հրամցուէր:

Մեր դժբախտ իրականութեան անխուսափելի հետեւանքն էր, այդ իրար խաչաձեւող գործունէութեան բազմապիսութիւնը: Այդ տարբերութիւնները միեւնոյն կուսակցութեան մէջ, բխած միեւնոյն կուսակցութեան ծրագրէն, Դաշնակցութեան ծընունդի օրէն իսկ գոյութիւն ունեցեր էին,— բան մը, որմէ խուսափիլ անկարելի էր: Ու այդ պատճառ մըն էր միւս կուսակցութիւններուն համար, որ նայած տեղին ու պարագաներուն՝ մեզ բնորոշէին, որպէս իսկական սոցիալիստներ, պարզ լիպերալներ, ազգային յեղափոխականներ, նոյն իսկ Թունդ շովէններ:

Ամենէն ծիծաղելին այն էր, որ շովէն լինելու ամբաստանութիւնը կուգար վրացի սոցիալիստներէն, որոնք ամէն պարագայի, լինի անոնց անունը Ստալին, Ժորդանիա թէ Ծերեթելի, կան ու կը մնան ի ծնէ շովէններ: Այս՝ ձրի ամբաստանութիւն չէ: Խօսքով, ճառերով, մանաւանդ միտինգներու մէջ, անոնք գրեթէ միշտ դափնեպսակը կը վերցնէին համաշխարհային սոցիալիզմի առաջապահները լինելու պատուին, բայց, աւա՜ղ, Վրաստանի

անկախութեան շրջանին, գործնականապէս ցոյց տուին իրենց իսկական գոյնը, իւրայատուկ վրացական սոցիալիզմը, որ թէեւ Սոցիալ Դեմոկրատ ընդհանուր փարախին կը պատկանէր, բայց գերազանցօրէն ճկուն, նոյն ֆիրմայի ցուցատախտակով, կեղծուած քօնեակի նման, կրնար աջ ծռիլ, որքան որ ղեկավարները ցանկանային, եւ կամ որքան որ իրենց ազգային, ըսել կ՚ուզեմ իրենց աշխատաւորութեան շահերը պահանջէր… Որքա՜ն մեծ էր տարբերութիւնը խօսքի եւ գործի մէջ:

Սոցիալ-Դեմոկրատ վրացիները, ինքզինքնին պսակած օրթոտոքս սոցիալիստի դափնեպսակով, երբ խօսքէն գործի անցան, ուժեղ ազգային քաղաքականութիւն մը վարեցին անշեղ կերպով, մինչ, այդ ժամանակ, մեր շովէն համարուած Դաշնակցական ընկերները, ճղակոտոր կ՚ըլլային ցոյց տալու լայն, ոչ-չեշտուած ազգային ու կուսակցական գործունէութիւն մը, Հայաստանի դռները լայն բանալով սոցիալիստ-դեմոկրատներու, սոցիալիստ-յեղափոխականներու, ժողովրդական կուսակցութեան, ու բոլշեւիկներու առջեւ:

Դաշնակցական «տիրապետութեան» ամենաուժեղ շրջանին իսկ, Մայիսի մէկը կը տօնէինք՝ առաջնութիւնը միւսներուն տալով: Ու մենք չքերթի պոչն էինք կազմած միայն, ու ան ալ շատ անփառունակ կերպով: Չէ՞ որ լայնամտութիւն պէտք էր ցուցաբերէինք, մե՛նք, համաշխարհային սոցիալիզմի առաջապահներս՝ հեռաւոր Ասիոյ մէջ:

Բայց անցնինք: Կ՚անդրադառնանք այս հարցին, երբ կարգը կուգայ խօսելու մեր անկախութեան շրջանի մասին:

«Նախագիծ»ը ամենէն շատ օգտագործուեցաւ միթինգային գործունէութեան մէջ: Ան տեսակ մը սանդուխի մատ էր, որ մենք ալ վեր բարձրանայինք դէպի սոցիալիստական փարախը, որուն անդամ պիտի դառնայինք քիչ ժամանակէն:

Զարմանալի է հայ կեանքը իր յարափոփոխ, տեղի ու օրուայ պահանջներով: Մինչդեռ Բագուի Դաշնակցականները, որոնք դեռ երէկ էր որ վար էին դրած զէնքը, դասակարգային պայքարի չեփորը կը հնչեցնէին՝ ճգնելով այդ հողին վրայ ամբողջ հայ գործաւորութիւնը իրենց կապած պահել, անդին, աւերող հայ-թաթարական կռիւները անարգել կը շարունակուէին Դաշնակցական խմբապետներու ղեկավարութեամբ: Թիֆլիսի մէջ, մերոնք համառուսական սոցիալական ու քաղաքական նոր պահանջ-

ներու մասին կը վիճաբանէին միւս կուսակցութիւններու հետ, իսկ անդին, Դաշնակցական գործիչները, Սարգիսն ու Վահանը, հոյակապ ծրագիր մը կը պատրաստէին Հին Նախիջեւանի Թաթարական պազարը եւ Թաղերը հիմնայատակ կործանելու, բնակչութիւնը ոչնչացնելու, ի փոխարինութիւն Նախիջեւանի հայկական կոտորածին: Երեւանը, հայ-թաթարական շրջանին, Դումանի խիստ զսպիչ գործունէութենէն վերջ, նոր քամիներով տարուած, նորերու ձեռքը անցած կուսակցական ղեկավարութիւնը, ներքին ռեֆորմներով, հոգաբարձական ընտրութիւններով ու շատկեկ մ՚ալ սոցիալիստական ֆրազաբանութիւններով կ՚արտայայտէր իր գործունէութիւնը, իսկ անդին, Դաշնակցական գործիչներու խումբեր, տենդային ոգեւորութեամբ, Երկիր զէնք ու ռազմամթերք մտցնելով կը զբաղէին:

Ու այսպէս, գրեթէ ամէն շրջան իր տեղական բնոյթագիծը կուտար կուսակցական գործունէութեան:

Ո՞րն էր ուղիղը, անհրաժեշտը այս իրար խաչաձեւող գործունէութիւններէն: Եթէ պիտի պատասխանենք, ապա ուրեմն կ՚ըսենք, թէ ոչ մէկը առանձին առնուած, բայց բոլորը մէկանց, որպէս մէկ ամբողջութիւն:

Այդ այդպէս էր եղած անկախ մեր կամեցողութենէն: Հայ տարրի ցրուածութիւնը ամբողջ Կովկասի մէջ, զանազան շրջաններու իրարմէ ունեցած տնտեսական, կուլտուրական տարբերութիւնը, մեր դրկիցներու պէսպիսութիւնը, ու անոնց հետապընդած ազգային ձգտումները կը ստիպէին Դաշնակցական մարմիններուն սեփական ուղեգծեր ունենալու, տարբեր մօտաւոր նպատակներ հետապնդելու, որոնք շատ անգամ շրջանէ շրջան կը տարբերէին եւ կը հակասէին Դաշնակցութեան գրուած ծրագրին, առանց հակասելու սակայն Դաշնակցութեան անգիր ըմբռնողութեան, որ այնքան զօրաւոր էր մեր մէջ: Անկարելի պիտի լինէր արդիւնաբերական քաղաքի մը մէջ, ինչպիսին էր Բագուն, եւ Նոր-Բայազիտի շրջանին մէջ Դաշնակցական մարմիններու գործունէութիւնը մէկ յայտարարի բերել:

Զարմանալին ու, իմ կարծիքով, կենսունակ բնոյթագիծը Դաշնակցութեան անով էր առողջ, որ կարողացաւ իր դրօշին տակ պահել գրեթէ ամբողջ կովկասեան հայաբնակ շրջանները՝ տուն տալով, ղեկավարելով ամբողջ հայութիւնը:

Գիտեմ, որ շատերու համար իմ այս բնորոշումս Դաշնակցա-

կան գործունէութեան արտաքոյ պիտի թուի· բայց ես այս հարցին պիտի անդրադառնամ կրկին ըստ իմ կարողութեան ու ըմբռնման, բնութագծելու Դաշնակցութիւնը այնպէս, ինչպէս որ կար, ու ոչ թէ այնպէս ինչպէս որ թերեւս շատերը կ'ուզէին որ լինէր...

* * *

Բագուի եւ Թիֆլիսի օրինակէն վարակուած էին քիչ ու շատ գաւառական քաղաքներն ալ:

Սոցիալիզմի հաշիշը ընդհանուր գինովութիւն մը առաջ էր բերած, ու ամէն շրջան հեւ ի հեւ սոցիալական բարենորոգումներու էր ձեռնարկած:

Բարենորոգչական շարժումը ամենէն առաջ սկսաւ կուսակցութեան ներսէն· հրապարակ նետուեցաւ նոր բառ մը, որ մինչ այդ առձեռն բառարանին մէջ աննշան տեղ մը կը գրաւէր, շատ անմեղուկ իմաստով մը: Այդ նոր բառը «բիւրեղացում»ն էր, որ թէեւ ինքնին անմեղ, բայց երբ կուգայ «կուսակցական» բառէն վերջ, կը ստանայ ծանրակշիռ ու խորախորհուրդ իմաստ մը... անշուշտ տեսականօրէն, մինչդեռ գործնականին մէջ կը մնայ այն, ինչպէս որ էր առաջ, օճառի պղպջակ մը, որ թեթեւ հպումէ մը իսկ կը ցնդի:

Այդ բիւրեղացման պայքարը լայն փրօբթով մը առաջ տարուեցաւ, մինչեւ իսկ Թիֆլիսի քեսաճիները, դասակարգային գիտակցութեան եկած, կազմակերպուեցան, բայց Դաշնակցութիւնը, կուսակցական «բիւրեղացում»էն վերջն ալ, մնաց նոյնը, տարածուն կուսակցութիւն մը, որու փէշերը չես գիտեր մինչեւ ո՞ւր կ'երկարէին· յեղափոխական կուսակցութիւն մը, որ ժողովուրդէն առաջնորդուած՝ ղեկավարեց ժողովրդական պայքարը ցարական կառավարութեան դէմ, եկեղեցական կալուածներու գրաւման առթիւ· մարտական մարմին մը, որ կուռ կազմակերպութեան շնորհիւ, պատուով դուրս բերաւ մեր ժողովուրդը հայ-թաթարական կռիւներէն· կազմակերպութիւն մը, որ շարքային համեստ թիւով մը, ծանր, օրհասական օրերուն կը լայնանար ու կ'ընդգրկէր ամբողջ հայ ժողովուրդը, ու ամէն հայ՝ քիչէն շատէն Դաշնակցական կը զգար ինքզինք:

Կարգ մը մտաւորականներու բոլոր ճիգը, մասնաւորաբար ռուսական մեծ յեղափոխութենէն վերջը, դէպի «ձախ» թեքելու

կուսակցութիւնը, ոչ մէկ ժամանակ իրական ու տեւական հող ունեցաւ իր ոտքերուն տակ:

Տաճկահայ դատ, Կովկասի ազգամիջեան հակամարտութիւններ, դասակարգային կռիւ, ռուսական յեղափոխութիւն, պարսկական յեղափոխութիւն, բազմաթիւ ու երանգաւոր ճակատներ, ու մէկ կուսակցութիւն:



ՀԱՃԻ ԳԷԻՕ

Եւ ինչո՞ւ զարմանալ, որ ՀԱՅ Յեղափոխական Դաշնակցութիւնը, կուսակցական բիւրեղացման բովէն ալ անցած, մնաց այն՝ ինչ որ էր, այսինքն՝ գերազանցօրէն ազգային կուսակցութիւն մը, եթէ նոյնիսկ Երկրորդ Ինթէռնասիոնալի անդամ, որու հանդէսներուն մէջ նոյնքան ոգեւորուած կերպով, երբեմն «Կարկուտ Տեղաց»էն վերջ, «Ինթէռնասիոնալ»ը կ'երգըւէր:

Այդ խանդավառ ու գալոց դրախտային օրերու հեռանկարով ոգեւոր օրերուն, կը գումարուէր Մրգաստանի (Երեւան) Հ. Յ. Դաշնակցութեան Կեդր. Կոմիտէութեան Պատգամաւորական Ժողովը: Ի՛նչ խօսք որ Նոր-Բայազէտէն, Բաշ-Աբարանէն եկած պատգամաւորներն իսկ սոցիալիստօրէն կը ճառէին, ըսել կ'ուզեմ թէ բոլորն ալ կարմիր ծիրանի ձգած էին ուսերնուն, եթէ նոյնիսկ շատերու ծիրանիի տակէն, տիրացուական շապիկի փէշերը կ'երեւային:

Այդ օրերու ընդհանուր կարգախօսն էր սոցիալիզմը, բնականաբար ամէն մարդ, մանաւանդ կուսակցականները, գունաթափ

թէ կաս կարմիր, սոցիալիստ էին, ուրիշ կերպ չէր կարող լինել,
ամօթ ալ էր: Ով որ մինչ այդ դժբախտութիւն ունեցեր էր «տը-
գէտ» մնալու, այսինքն՝ սոցիալիզմի էութեան մասին բան չէր
գիտեր, հապճեպով «Յառաջ Գրադարանի» նիհար բրօշիւրներու
դուռը ափ կ՚առնէր, իր մտաւոր պաշարը լրացնելու եւ նոր սոր-
վածէն բաժին հանելու համար, իրմէ տգէտներուն:

Մարդիկ լուրջ եւ երկիւղած դէմքով կը խօսէին Մարքսի
«Կապիտալ»ի մասին, հոգ չէ թէ ոչ կարդացած եւ ոչ ալ տեսած՝
սոցիալիստական Յայսմաւուրքը, որ դարձեր էր անառարկելի ու
անսխալական սրբութիւն սրբոց մը: Կը խոստովանիմ իմ տգի-
տութիւնը, այդ գիրքը կարդալու մեղքը չեմ գործած, թէեւ տե-
սած եմ Եւրոպայի մէջ, ուսանողի մը սեղանին վրայ, որ էջ-
միածնէն ճամբուած էր .. աստուածաբանութիւն ուսանելու, եւ
աւարտած էր դասընթացքը... որպէս սոցիալիստ:

Յարաճուն կատաղութեամբ մը այս կարմիրութեան հիւան-
դութիւնը,— որ, ոչ մէկ կապ ունի ջրծաղիկի հետ — փոխանցը-
ւեր էր տղամարդոցմէն նաեւ գեղեցիկ սեռին... որոնք կանանց
ազատագրութեան մասին կը ճառէին, կարմիր դրօշակի հովանիին
տակ:

Սակայն, վերադառնանք Մրգաստանի Պատգամաւորական
Ժողովին , ուր, ինչպէս ամէն անգամ որ պատմական ծանր
վայրկեաններ կ՚ապրուէին, անպատճառ հրաշք մը տեղի կ՚ունե-
նար: Գիտեմ, այս հրաշք բառը ինքնին հնութիւն կը հոտի ու
թերահաւատները ներողամիտ ժպիտ մը ունին դէմքերուն իմ այս
բացատրութեան հանդէպ:

Մրգաստանի այդ Ժողովին մէջ, հնօրեայ փորձուած յեղա-
փոխականներու, համալսարանական բարձր մտաւորականներու
կողքին դուրս եկաւ, ինչպէս սովորական է ըսել, խոնարհ խաւե-
րէն, անյայտ մը, պերճախօս լեզուով, յանդուգն իր մտքով, որ
սոցիալիստ ծնած էր առանց գիտնալու, եւ սոցիալիստական
բարդ հարցերը զարմանալի հեշտութեամբ կը լուծէր իր ոգեւո-
րիչ ճառերով որոնք առանց սրբագրուելու կ՚իւրացուէին ուն-
կնդիրներէն: Պատգամաւորներն ու ունկնդիր հասարակութիւ-
նը ուղղակի յափշտակութեամբ կը լսէին այդ նոր Բեբելը, այդ
նոր Պարոյր Հայկազնը, որու արձանը աւա՜ղ ժամանակ չունե-
ցանք կանգնելու: Ոչ համալսարան, ոչ գիմնազիա եւ ոչ իսկ
տարրական դպրոց էր տեսած ան: Ըսենք կարճ, որ ան գրել կար-

դալ չէր գիտեր, բայց այդ ի հարկէ պատճառ մը չէր, որ երէկուան մշեցի զինուորը յանկարծակի չլեցուէր հոգին սուրբի շնորհքով, Քրիստոսի առաքեալներուն նման, որոնք թէեւ հասարակ ձկնորսներ ու հազիւ թէ իրենց մտքերը արտայայտելու կարող, մէկէն սկսան զանազան ազգերու լեզուներով բարբառիլ, երբ նոյնիսկ այդ ազգերու գոյութիւնն իսկ կ'անգիտանային:

Ինչո՞ւ չէ, սիրելի ընթերցող, ի՞նչ զօրաւոր պատճառ կը գտնես, որ նման հրաշք մը Հրէաստանի մէջ կատարուի եւ Հայաստանի մէջ՝ ո՛չ. ան ալ ա՛յն Հայաստանին, ուր Աստուած ցանկապատով մը դրախտը զետեղեց, եւ ուր Մասիսի գագաթին դեռ մինչեւ այսօր ալ կը մնայ Նոյեան Տապանը, թէեւ ձիւնի տակ ծածկուած:

Չէ ես կը հաւատամ բոլոր եղած ու լինելիք հրաշքներուն, մշեցի զինուոր Հաճի Գեւօի ժողովրդական սոցիալիստ տրիբուն մը լինելէն մինչեւ եղբայր Տիւրկէրեանի (բոլշեւիկ) համեստ ոչնչութեան ներքին գործոց կոմիսար լինելը:

Ինչ կայ զարմանալու որ, դէթ Հաճի Գեւոն ժողովուրդի մարդ, ժողովուրդի մէջ ապրած, հայ ժողովուրդի համար կուրծք էր տուած թշնամիի դէմ, եթէ նոյն իսկ այդ ժողովին իր արտասանած սոցիալիստական ճառերը, քիչ մը շատ ջրալի էին... Տիւրկէրեանները այդքան մ'ալ շնորհք չունէին սակայն:

Սովորական է ըսել, թէ հրաշքներու դարը անցած է: Այս՝ մտաբոպիկ մարդոց կարծիքն է, որոնք կոյր ծնած լինելով, արեւի գոյութիւնը կ'ուրանան: Բայց արեւը կա՛յ, կայ եւ դրախտային Խորհրդային Հայաստանը, ուր «պիտի»ական ժրաջան վերաշինութեամբ մը երկիրը կերպարանափոխուեր է: Ու ըստ հաւաստիացման Խորհրդային թերթերու, եթէ Քսէնոֆոնը նորէն բարեհաճի Հայաստանէն անցնիլ, այլեւս այդ երկիրը չպիտի ճանչնայ:

Բայց եթէ իմ թերահաւատ ընթերցողս, չհամոզուի, հրաշքներու գոյութեան, ես մեր մօտաւոր անցեալէն քանի մը օրինակներ պիտի բերեմ, ապացուցանելու, որ իրօք հրաշք գոյութիւն ունի, որքան ալ որ այդ բառը կրօնական բնաւորութիւն մ'ունի, եւ ատոր հաւատալը, յետադիմութեան հաւասար համարուի:

* * *

Վերցնենք 1903 պատմական թուականը: Ռուսական տիրա-

պետութեան ընձեռած համեմատական խաղաղ ռէժիմի շնորհիւ, տնտեսական բարգաւաճ վիճակի մը հասած, աշխատունակ կովկասահայը, փէշերը լայն փռած, հանգիստ կը խորդար: Ղարաբաղի լեռնաշխարհը դէպի Բագու կը հոսէր. Արարատեան դաշտը դէպի Թիֆլիս: Ղազախեցին, իր մուճակները չալկած, Հիւսիսային Կովկաս էր հասեր, իսկ Ջօկը՝ մինչեւ Ռուսաստանի հեռաւոր անկիւնները — Մոսկուա, Պետրոգրատ, Հաշտարխան: Հայ փարթամ մեծահարուստներ՝ գրեթէ ամէն քաղաքի մէջ, իսկ Կովկասը կը սռնքար հայ հարուստներու ճանկերուն տակ, մինչ վրացին սնանկութեան դուռն էր հասած, իսկ թաթարը՝ անզօր մըրցելու, կատաղութեամբ ատամներ կը կրճտացնէր: Գիմնազիոնները լեփ լեցուն էին հայ աշակերտներով. ամէն աշնան կարաւան մը ուսանողութիւն կ'ուղեւորուէր դէպի Մոսկուա, Խարկով, Կազան, Օտեսա, Կիեւ: Ռուսաստանը մինչեւ հայ խոհանոցն էր արշաւեր՝ «ըշչի, պօրճ, քաթլեթ», թէեւ Երեւանի քիւֆթէն Երեւանցու սեղանի զարդն էր դեռ, պօղպաշը՝ Ալեքսանդրապոլցու, խաշը՝ Գանձակեցու:

Ղազախեցի մեծահարուստը, որու մուճակները դեռ չէին չորցեր, ռուսախօս էր, խանութի գործակատարը՝ ռուսախօս. ընտանիքը՝ ռուսախօս: Բագուն, Թիֆլիսը կորսուելու ճամբու վրայ էին: Ալեքսանդրապոլի սալին (պարտէզին) մէջ, ճռուողող զոյգերը ռուսախօս էին, նոր սերունդը՝ ռուսախօս, հին սերունդը՝ ռուսամոլ, ապագայ սերունդը՝ ռուս...

Ռուսական կուլտուրան (մշակոյթ) արճիճի նման ծանրացեր էր հայ մտքի վրայ: Պուշկին, Լերմոնտով, Դոստոեւսկի, Տուրգենեվ, Տոլստոյ ու ասոնց դէմ մենամարտի էին ելած Թումանեան, Պերճ Պռօշեանց, Աբովեան, Աղաեան: Լեհաստանի գաղութի վերջին օրերը կ'ապրէր հայութիւնը Արարատեան դաշտին մէջ, ու այդ՝ առանց ցնցումի, առանց ջղաձգութիւններու:

Հայ կարաւանը, ֆէօչով– պարխաճով, ճամբայ էր ելեր դէպի ոտարացում, եւ ոչինչ կրնար կասեցնել անոր ընթացքը...

Հայ օրօրոցին վրայ՝ ռուսական ՃԷՃՃին, ու հայ երեխան մըշիկ մշիկ կը խոմբացնէր ռուսական քայլերգը:

Ու այդպէս օտարացման կարաւանը իր ճամբան կը կտրէր:

Անամպ երկինք, զուլալ երկնակամար, եւ ահա, յանկարծակի մեծադղորդ ճայթիւն մը, ահեղ փոթորիկ մը: Ի՞նչ պատահեցաւ տակայն: Գրեթէ ոչինչ: Եկեղեցական կալուածներու գը-

բաւման ուֆագ մը, եւ երեխան ընդոստ կ՚արթննայ, քիթը կը սրբէ, ու ոտքով ձեռքով կը սկսի բողոքի նշաններ ցոյց տալ:

Քօթօթի ու փիղի առակը: Սկզբնական ցոյցերը ժողովուրդը ինքնաբերաբար կը սկսի. Դաշնակցութիւնը ընդդիմութիւնը կը կազմակերպէ: Շարժումը կը ծաւալի քաղաքներէն մինչեւ հեռաւոր հայ գիւղերը:

— Տօ՛, հէր օրհնած, չասե՞ս հայ ենք եղե՛լ...

Ռուսասիրութեան մակընթացութեան կը յաջորդէ տեղատուութիւնը, դէպի հին ազգային սահմանները: Օրհնուի յիշատակդ, խելագար իշխան Գոլիցին:

Այս մէկ, արի խոստովանէ սիրելի ընթերցողս, որ այս յանկարծական զարթնումը երեխային, հրաշքի համազօր է:

* * *

Ուրիշ սահմանորոշ թուական մը 1905–ն է:

Բագու՝ հայկական կոտորած, Նախիջեւան՝ հայկական կոտորած: Թաթարը, կառավարութեան թոյլատու բարեացակամութեան կրթնած, սիրած գործին է ձեռնարկեր: Հայէն հարստութեամբ ուռճացած, հայէն բարգաւաճ, պէտք է արիւն առնել: Ու թաթարը, փափախը ծուռ, ինքնաբաւական, պեխերը կ՚ոլորէ, ձեռքը՝ արիւնոտ ղանչալին: Պէտք է հայը սրբել Կովկասէն, եթէ ոչ սրբել, գէթ տկարացնել: Եւ զինավարժ թաթարութիւնը ոտքի կ՚ելնէ յանկարծակի, երբ մերոնք սոցիալիզմի դրախտի երազներով կ՚օրօրուէին:

Հայր վարպետ թիւֆեաճտար, վարժ արշինի, հայը՝ ժրաջան երկրագործ, ընդունակ չնցնելու, այս անակնկալ աղէտի առջեւ, ձեռքը ծոցին խեղճացած, փրկութեան ապաւէն մը կը փնտռէ: Կառավարութիւնը անբարեացակամ, դրդիչ թաթարութեան. վրացին, միակ դրկից քրիստոնեայ հարեւանը, բերկրանքով առլցուն, չէզոք ու արդար դատաւորի կեղծ դերին մէջ: Ոչ մէկ ելք, եւ ոչ մէկ օգնութեան աղբիւր:

Բագուի արիւնը դեռ չչորցած՝ կատաղի խոյանքով հրապարակ կը նետուի Հ. Յ. Դաշնակցութիւնը, մարտական կոչով մը, որ եզակի է մեր պատմութեան մէջ, եւ կուրծք կուտայ կատաղի հորդային. տիրաբար հրամայելով անոր, «ԿԱՆԳ ԱՌ»:

Հոս արդէն խօսողը եւ գործողը, «բիւրեղացած» կամ «ոչ-բիւրեղացած» Դաշնակցութիւնը չէ, եւ ոչ ալ եկեղեցական կալ-

ուածներու ժամանակ էր։ Հիմա արդէն ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆՆ է, այսինքն՝ հայ ժողովուրդը, անոր կամքը, անոր Առնականութիւնը, անոր ներքին Ուժը եւ Կորովը։ Հաւաքական ու համատարած, երբ անջրպետ չի մնար. բոլորը՝ բուրժուան, եկեղեցականը, մանր խանութպանը, գիւղացին, աշխատաւորը, ամբողջութեան անբաժանելի մասը կը կազմեն, ու ամբողջութիւնը կ՚արտայայտուի Հ. Յ. Դաշնակցութեամբ։ Հոս արդէն սոցիալիզմը կ՚եթերանայ, ու տակը կը մնայ ամրակուռ կրանիթեայ հիմքը, ամբողջական ազգը, իր շատ թեթեւ շերտաւորուած դասակարգային տարբերութիւնով։

Այդ է պատճառ, հոգեբանական հիմքը այն երեւոյթին, որ Դաշնակցութիւնը, թանկագին զոհերու գնով, պաշտպանեց Սոլոլակը, խորթացած, հայ բուրժուազիայի միջնաբերդը, հայ-թաթարական կռիւներու ընթացքին։

Ու քանի հայ կեանքը, քաղաքական դէպքերու աշխարհագրական դիրքի, հարեւաններու հակոտնեայ շահերու պատճառով վտանգուած է, բնաջնջման Դամոկլեան սուրը անոր գլխին կախուած է—որ պարբերաբար կ՚արտայայտուի,— հայ ազգը ինքնաբերաբար եղած է ու պէտք է մնայ մէկ անբաժանելի ամբողջութիւն՝ գոյութեան կռուի հրամայական պահանջովը, որը անտեսել ոչ ոք չի կրնար, եւս առաւել Հայ Յեղափոխական Դաշնակցութիւնը։ Ու որքան ատեն որ այս քաղաքական պայմանները կը մնան նոյնը, ոչ մէկ վարդապետութիւն, սոցիալիզմ թէ համայնավարութիւն, չի կրնար (ինչպէս չէ կրցած) ծառայել հայ ժողովուրդի իրական ու կենսական շահերուն։

Ու այդ է պատճառը, որ Դաշնակցութիւնը ուժ մըն է եղած, պատկառելի մեծութիւն մը, երբ որեւէ կերպով ազգային ընդհանուր շահերն են վտանգուած, ու այդ շահերու պաշտպանութեան անունով Դաշնակցութիւնը հրապարակ իջած։

Արդարեւ, Դաշնակցութիւնը, պատմական ծանր պատասխանատու վայրկեաններուն, հարազատ արտայայտիչն է եղած միշտ հայ ժողովուրդին, անոր մտածողութիւնը, ցանկութիւնը, կամքը, ֆիզիքական ուժն է մարմնացուցած իր մէջ։

Կարծեմ այս երկրորդ հրաշքը պէտք է համարել, երբ ոչ ոք կրնար երեւակայել իսկ, որ հայութիւնը հայ-թաթարական ընդհարումներէն, կրնար յաղթական դուրս գալ։

Բայց կարծեմ ես շատ շեղուեցայ իմ նիւթէն. վերադառնանք անոր։

Հայ-թարական կռիւները հետզհետէ վարակեցին ամբողջ Կովկասը: Խելագարբ անմիտ կռիւ մը, որ անհաշուելի նիւթական աւերածութիւն առաջացուց չէն Կովկասի մէջ և այնքան մարդկային զոհեր խլեց: Եւ սակայն, հայ-թաթարական կռիւը, իր բոլոր բացասական հետեւանքներով, ունեցաւ այն դրական արդիւնքը, որ հայը, երէկուան մէջքը ծռած գիւղացին, թէ տեազկեահի վրայ կքած արհեստաւորն ու խանութպանը, ուղղեցին իրենց մէջքերը, ճակատ ցուցուցին: Եւ թաթարը, ստացած խիստ դասէն ազդուած, ակամայ հաշուի առաւ հայը, որ առաջ ոչինչ էր:

Բարձրացաւ առնական ոգին, դիմադրական կարողութիւնը կովկասահայի: Թաթարը չէր մինակ, որ զէնք կրնար գործածել, գրոհ տալ, թալանել ու սպաննել, հայն ալ կրնար:

Ու այս պարագան, որ բարոյախօսներու ու կեանքէ կտրուած երազատեսներու համար կրնայ բացասական, յետադիմական երեւոյթ մը համարուիլ, որոշ արժէք տուաւ հայուն, անոր դիրքը ամրացուց Կովկասի մէջ, չեշտեց անոր գոյութեան անվիճելիութիւնը եւ արժէքը այդ երկրի մէջ, եւ վճռականութիւնը ապրելու, եթէ նոյնիսկ հարեւանները չ'ուզեն որ ինքը ապրի:

Ճիշդ է, հայ-թաթարական կռիւը ղեկավարեց Դաշնակցութիւնը իր զինուորական խմբապետներով — Նիկոլ, Վարդան, Մուրատ, Սեւ-Քարեցի Սաքօ, Արմէն-Գարօ, Սէյտօ, Սեպուհ, Համազասպ, Քեռի, Կայծակ-Առաքել, Դաշնակցական Խէչօ, Աբամայիս, Դուրպախ, եւն. եւն., բայց առաւել եւս մեծ ճշմարտութիւն մ'է, որ, այդ կռիւը, որ թաթարներու համար ահագին վնասներով ու պարտութեամբ վերջացաւ, հայ ժողովուրդի հաւաքական աշխատանքի, զոհաբերութեան շնորհիւ միայն յաջողութեամբ վերջացաւ: Այդ կռիւներուն Կովկաս, Հիւսիսային Կովկաս, եւ Ռուսաստանի հեռաւոր հայ գաղութներն ալ իրենց օժանդակութեան բաժինը բերին:

Հետեւանքը հայ-թաթարական կռիւներուն այն էր, որ հայը ճանչցուեցաւ իր դրկիցներէն ոչ միայն մաճկալի ու արշինի ժողովուրդ, այլ եւ զէնքի:

Այս՝ նորահաս գիտակցութիւն մըն էր, զոր չունէր հայ ժողովուրդը 1905 թուականէն առաջ:

Հայ գիւղացին ալ, փափախը ծուռ, ղանջալը մէջքին կախ, Երեւանի պազարն իջաւ:

Այս ահագին թռիչք մ'էր: Թերեւս ոմանք ակնկարկեն, թէ



Գանձակի ոստիկանական թուրք պրիստաւը, կ'երդուընցնէ

այս՝ Թուխ մ'էր դէպի յետ: Ընելիք չունիմ, թերեւս ճիշդ է այդ· բայց եւ ճիշդ է այն, որ երբ ստիպուած ես ապրիլ ղանջալաւոր–ներու մէջ, տարրական խոհեմութիւնը կը պահանջէ որ ինքդ ալ ղանջալ ունենաս մէջքիդ:

Անգամ մը Նախիջեւանցի պարսիկ քելպելայի մը հետ կառքով կ'անցնէինք հայկական գիւղի մը մէջէն: Գիւղի երեխաները, փայտէ հրացաններով զինուած, պատերազմ կը խաղային: Քել–պելան, մօրուքը շփելով, մտահոգ դէմքով մը ինձ դարձաւ·

— Աշխարհքը կարծես ծուեր է:

— Այո՛, ըսի, աշխարհը շտկուեր է:

Քելպելան, որ մինչ այդ շատ հաճելի խօսակից մ'էր, կառքի մէկ անկիւնը քաշուած, այլեւս բերանը չբացաւ, մինչեւ Երեւան:

* * *

Դառնանք մէկ ուրիշ բախտորոշ Թուականի մը, 1914–ի մեծ պատերազմին: Պատերազմը եւ պատերազմի ընթացքին հայ ժո–



հաւաքուած թաթար ամբոխը հայերը կոտորելու։

զովուրդի անօրինակ աղէտը ծանօթ են արդէն։ Արեւմտեան ճակատի վրայ աւետաբեր զինադադարը չեփորուեցաւ — զէնքե՛րը վար։ Կօշմարէ մը արթնցածի նման, կռուող կողմերը, համատարած սուգի մէջ, լծուեցան տենդագին թափով վերաշինութեան աշխատանքի։

Գլխաւոր պատերազմիկներն էին անոնք, որոնք՝ իրենց չուկայի հաշիւներու համար՝ անօրինակ աղէտի մը մէջ նետեր էին ամբողջ աշխարհը։ Ու սակայն զինադադար։

Իսկ Հայաստա՞նը։ Թնդանօթները դեռ կը գոռային, արիւնը կը հոսէր, ու կարծես վերջ պիտի չունենար այդ կռիւը։

Դեռ 1915 թուականին, Կովկաս եւ մասնաւորապէս կովկասեան Հայաստան լեցուեր էր Ալաշկերտի ու Վասպուրականի գաղթականութեամբ։ Աղքատ երկիրը անկարող էր ապրեցնելու այդ բազմութիւնը։ Իրար ետեւէ կ'իյնային Երզնկան, Էրզրումը, Սարիղամիշը։ Ձխէնկէլին Պաթումին նուաճ կը դարձնէր Կարսը։ Կ'իյնայ Ալէքսանդրապոլը, ժողովուրդը դիւահար կը փախչի, ալ

ինչպէս կրնայ եւ ուր որ կրնայ, միայն հեռուն, շատ հեռուն:

Կովկասահայն ալ իր բնիկ երկրին մէջ կը դառնայ գաղթական, ձգած տուն ու տեղ, ամբողջ տնտեսութիւնը, երեխաները շալկած, մէկ երկու կտոր չուլ ու չաբուլթ շալակին, թշնամի բանակէն կրնկակոխ կը փախչի: Ո՞ւր, Տէր Աստուա՛ծ, այդ ալ չգիտեր: Միայն հեռու Թուրքէն, եւ որքան կարող է:

Կարսէն եւ շրջանի գիւղերէն մազապուրծ պրծողները Ալէքսանդրապոլ կ՚իյնան: Հազիւ թէ շունչ մը քաշած, գարնան հեղեղի նման գաղթականութիւնը անկէ ալ կը հոսի դէպի Բաշ-Աբարան ու Սարտարապատի շրջանը: Հոն ալ դեռ հանգիստ չըրած՝ աւելի նօսրացած թիւերով, նոյն խօլական վազքով կ՚անցնին էջմիածնայ շրջանը...

Թրքական բանակը կը յառաջանայ երկաթէ կրունկներով, արիւնը կը հոսի, եաթաղանը կը գործէ:

Հարիւր հազարներու հասնող գաղթական ժողովուրդը կը խտանայ ափ մը հողի վրայ, Երեւանէն մինչեւ Սեւան, ուր դեռ թշնամին ոտք չէր կոխած: Ոչ ապաստարան, ոչ սնունդ: Բծաւոր թիֆը տասնեակ հազարներով կը խլէ: Գիւղերը, քաղաքը լեցուեր են անտուն անտէր որբերով. կը մուրան, եթէ տուող ըլլի. գլխահակ, երերուն ոտքերով ման կուգան, ու յետոյ կը մեռնին՝ ուրտեղ որ պատահի:

Տասնեակ մը սայլեր, անվերջ դիակներ կը կրեն դէպի եղբայրական փոսերը, որոնք կարծես կշտում չունին, երախնին բացած, ամբողջ հայ ժողովուրդը պիտի կլլեն:

Թշնամին դրսէն՝ դէպի կեդրոնը կ՚արշաւէ անարգել: Թըշնամին ներսէն՝ կոնակէն կը հարուածէ հայ բանակն ու ժողովուրդը...

Ամէն յոյս կորած է, ահա վերջին վարագոյրը վար պիտի իջնայ, Հայաստանի գերեզմանին վրայ: Հայաստանն ու հայ ժողովուրդի պատմութիւնը վերջացաւ...

Անհնարին յուսահատութեան մէջէն սակայն, յանկարծակի կը փայլակէ Ղարաքիլիսէն, Բաշ-Աբարանը, Սարդարապատը:

Լայն բացէք վարագոյրը: Ողջո՛յն հայ պետութեան, հայ բանակին, հայկական պարլամենտին: Հայաստանը՝ անկախ: Ո՞վ էր երազած:

Ընկոյզի կեղեւի մը մէջ ամփոփուող Հայաստանը քաղաքական հեղնանք մըն է հայ ժողովուրդի երեսին նետուած:

Զանցնիր շատ երկար, նոր թէեւ կ'առնէ պզտիկ, արհամարհելի կորիզը, որ հետզհետէ կը մեծնայ եւ որուն սահմանները թշնամիի տեղատուութեամբ կը հասնին մինչեւ 1914–ի շրջանները:

Երկիրը, անհնարին աղէտէն արթնցած, հետզհետէ ինքզինքը կը գտնայ: Կեանքը կը շարժի, գիւղը աւերակներու մէջէն ոտքի կ'ելլէ: Բաղերու մէջ կը հնչէ նորէն ուրախ երգը այգեպանին·

Երեւան բաղ եմ առել,
Ճիկեարս տաղ եմ արել...

Հայ չարքաշ գիւղացին կ'ակօսէ երկիրը· աշխատաւորի արդար քրտինքը կ'ոռոգէ հայրենի խոպանացած արտերը: Օրհնեա՛լ ժողովուրդ:

Արի, ինձ հետ խոստովանէ, սիրելի ընթերցող, որ ապրող սերունդը իսկապէս որ մէկէ աւելի հրաշքներու ականատես եղաւ:

* * *

Ակամայ շեղեցանք մեր նիւթէն, դառնանք անոր կրկին· վերադառնանք Կովկասի դրութեան, ռուսական մեծ յեղափոխութեան շրջանին:

«Նախագիծը», դժբախտաբար, երկու նոր ճակատներ ստեղծեց կուսակցութեան մէջ, երբ ոչ ոք կը սպասէր ատոր: Առաջինը «Անջատական» անունով ծանօթ է, իսկ երկրորդը՝ Միհրանական:

Այս երկու հակադիր շարժումները, թէեւ միաժամանակ առաջացած, տրամագծօրէն իրար հակոտնեայ գաղափարներու պաշտպանութեան համար ծնան: Կը թուէր, թէ «Նախագծի» որդեգրումով այլեւս ոչ մէկ հիմնական պատճառ կը մնար, խումբ մը Դաշնակցական մտաւորականներուն՝ մայր կուսակցութենէ անջատուելու: Բայց փաստը այն է, որ անոնք հեռացան, երբ կուսակցութիւնը սոցիալիզմը որդեգրեց, որպէս առաջնորդող վարդապետութիւն:

Դժբախտ բան մ'էր այդ անջատումը: Խումբ մը մաքուր, նուիրուած երիտասարդներ, բժ. Լ. Աթաբէգեանի ղեկավարութեամբ, դուրս կուգային կուսակցութենէն, Հ. Յ. Դաշնակցութեան գործունէութեան ասպարէզը բաւականաչափ լայն չգտնելով իրենց եռանդին, դուրս կուգային աղանդաւորական նեղմիտ անհամբերողութեամբ, տեսական հարցերու շուրջը հաշտութեան եզր մը անհնարին գտնելով:

Այդ անջատման մէջ, ողբալին այդ մտայնութիւնն էր, որ կ'անտեսուէր դեռ շատ թարմ երէկը, երբ ոչ թէ յաւելեալ շահու հարց կար լուծելիք, այլ յաւելեալ արեան, երբ հայ ժողովուրդի գոյութեան խնդիրն էր դրուած հրապարակ, երբ դժբախտ անհըրաժեշտութիւնը զիներ էր ամբողջ հայ ժողովուրդը պայքարի մը, որու մէջ անջատուածներն ալ իրենց անառարկելի բաժին մասնակցութիւնը ունեցեր էին: Տարուած ռուսական մեծ յեղափոխութեան գինովութենէն, անոնք դուրս կուգային կուսակցութենէն, որպէս զտարիւն սոցիալիստներ, աշխատաւորական կըռուին նուիրուելու ամբողջովին:

Եղած անջատումը, թուական արժէքի տեսակէտով վերցուցած, մեծ կորուստ մը չէր, բայց աղքատիկ հայ իրականութեան համար, չօշափելի:

Անջատուածները, ժամանակ մը, սոցիալ–յեղափոխական մեծ կուսակցութեան կովկասեան մարմնին հայկական անջատ հատուածը կազմելէն վերջը, խումբ մը մտաւորականներ, առանց զանգուածի, լուծուեցան այդ կուսակցութեան մէջ, որ իրենց ուժերուն կարիքը չունէր, մինչ հայ իրականութեան մէջ նուիրուած, գործող ուժերու այնքա՜ն մեծ կարիք կար:

* * *

Տեղն է հոս երկու խօսք ըսել անջատուածներու մտաւորական ղեկավար բժ. Լ. Աթաբէգեանի մասին, որ անկասկածօրէն մաքուր, շիտակ ու ժողովուրդի շահերուն նուիրուած գաղափարական երիտասարդ մ'էր:

Ինչպէս սովորական էր կովկասահայերու մէջ, Լ. Աթաբէգեանն ալ բժշկական համալսարանը աւարտեց, որպէս կատաղի սոցիալիստ տեսաբան մը: Արտակարգ յիշողութեամբ զինուած, սուր իմացականութեան տէր եւ պատրաստաբան, ան լաւագոյն վիճաբանողներէն մէկն էր Դաշնակցութեան, տեսակ մը պօլտօկ, որ հանդուցեալ Խաժակի հետ՝ Դաշնակցութեան հօտի պաշտպանութիւնը կ'ապահովէր արտաքին յարձակումներէ:

Գերազանցօրէն ժողովրդասէր ու հայրենասէր այդ երիտասարդը, որ թէ՛ պատրաստուած ու թէ պատրաստակամ՝ անշահախնդիր ծառայելու զանգուածին, զոհ գնաց իր ծայրայեղ լաւատեսութեան, հարեւան ազգերու եղբայրացման դրօշը բարձր բռնած: Ինկաւ Թրքական գնդակներու տարափին տակ, անժա–

մանակ զոհ մը, երբ որպէս հաշտութեան աւետաբեր կ՚երթար թաթարներու մօտ. հաշտութիւն մը, որուն այնքան պէտք ունէին Բագուի մէջ նեղն ինկած թաթարները: Գեղեցիկ, բայց խենթ զոհը բարձր գաղափարականութեան, ծլած ու ծաղկած, Կովկասի աններդաշնակ, հակամարտութիւններով ու ատելութիւններով լեցուն միջավայրին մէջ:

Բժ. Լ. Աթաբէգեանի ու նմաններու անժամանակ կորուստը հայ ժողովուրդի կուլտուրականութեան «մեղքի» տուրքն էր՝ վճարուած անկուլտուրական թաթար հարեւանին:

«Ձեզի համար միշտ վտանգաւոր պիտի լինի, եթէ դուք, հայերդ, յառաջդիմութեան ճամբու մէջ, ձեր հարեւան թաթարութիւնը եւս ձգէք», — այս խօսքերով Բագուցի Աղայեւը կը կշտամբէր, միաժամանակ կը սպառնար հայ պատուիրակներուն, կովկասեան Փոխարքայի պալատին մէջ գումարուած խորհրդակցական ժողովի ժամանակ:

Ու ճիշդ էր այդ. Կովկաս թէ Տաճկաստան միեւնոյն ջաղացքի քարը մեր մէջքէն կախուած, կամ մեզ հետ վեր պիտի քաշէինք զայն եւ կամ անոր հետ միասին պիտի կապուէինք գետնին:

Այս մեր ազգային դժբախտութեան մեծագոյն պատճառն է:

Մոլեռանդ իտէալիստ մ՚էր բժ. Լ. Աթաբէգեանը, որ եթէ կրնար ալ, չէր ուզեր իրականութիւնը տեսնել այնպէս, ինչպէս որ կար, այլ կ՚ուզէր որ կեանքը լինի այնպէս, ինչպէս ինքը կ՚երազէր որ լինի:

Ղարաբաղի Պանթէոնը հարուստ է անձնուրաց հերոսներով, որոնք հայ ժողովուրդի համար նահատակուեցան. բժիշկ Լ. Աթաբէգեանը անոնց լաւագոյններէն մէկն էր:

* * *

Նախագծի հետ սկսաւ եւ Միհրանական կոչուած շարժումը, որու մասին հասարակութեան լայն խաւերու գիտցածը անով կը լրանայ, որ խմբապետ Միհրանը, Դաշնակցութեան դէմ պայքարի ելած, իր գործը աւարտեց մատնութեամբ, ռուս կառավարութեան յայտնի լրտեսը դառնալով:

Սակայն, այս ամբողջ ճշմարտութիւնը չէ:

Այն շրջանին գործող ընկերները, իրենք անձնապէս պայքարի մէջ, տարուած այդ ձախող շարժման դէմ կռուելու անհրաժեշտութեամբ, շատ ալ չէին կրնար անկողմնակալ գնահատա-

կանը տալ այդ շարժման, ճշդորոշել անոր բնութագիծը, զարգացման պատճառները։ Այդ ե՛ւ հասկնալի ե՛ւ բնական էր։

Ու ատոր հետեւանքով, Միհրանական շարժում կոչուածը, կը ներկայանայ որպէս բոլորովին բացասական երեւոյթ մը, ինչ որ ճիշդ չէ։

Երկու տասնեակ տարիներ անցնելէ վերջ, միմիայն յիշողութեան վրայ յենուած, փորձել այդ շարժման էութիւնը փաստացիօրէն պարզաբանել, աւելի քան յաւակնութիւն պիտի լինէր իմ կողմէս։ Ձգելով փաստացի պատմութիւնը Հ. Յ. Դաշնակցութեան ապագայ պատմագրին, ես ընդհանուր գծերով միայն կը մօտենամ խնդրին, ըստ իմ հասկցողութեան պարզելով այն պատճառները, որոնք հնարաւոր դարձուցին նման շարժում մը կուսակցութեան մէջ։

Անկախ այն հանգամանքէն, որ այդ շարժումը կոչուեցաւ Միհրանական, ու Միհրանի անձնաւորութիւնը դարձաւ ղեկավարող դէմք մը, պէտք է խոստովանիլ, որ սկզբնական շրջանին, ան որոշ մտայնութեան մը արտայայտութիւնն էր, պայքարելու միջոց մը, վտանգէ փրկելու համար սրբազան աւանդ մը, որը վտանգուած կը համարուէր ոչ թէ միայն Միհրանէն ու իր քանի մը հետեւորդներէն, այլ եւ շատ մը ուրիշներէ, որոնք սակայն աքթիւ կերպով հրապարակ չեկան, գտնելով պայքարելու միջոցը աննպատակայարմար ու վնասաբեր։

Ըսենք առանց այլեւայլի, որ Դաշնակցութիւնը, իր էութեամբ, իր ծրագրով ու գործունէութեամբ, գերազանցօրէն տաճկահայ դասին նուիրուած յեղափոխական կազմակերպութիւն մը կը համարուէր։ Այդ այդպէս էր եղած տասնեհինգ երկար տարիներէ ի վեր։ Այդ տարիներու ընթացքին, ստեղծուեր էր հայ նորագոյն պատմութիւնը, կամ աւելի ճիշդը պիտի լինէր ըսել, հիմքը դրուած էր նորագոյն պատմութեան, որու շէնքը հետզհետէ կը բարձրանար ազգային մշուշապատ հորիզոնի վրայէն, զօդուած նոր երազներով, նոր ձգտումներով ու հեռանկարներով։ Ազգային վերածնունդը, որ սկսեր էր հոգեկան ու մտաւոր մարզերուն՝ կարծես սեղմուած նեղ սահմաններով, կը հոսէր դէպի քաղաքական նոր հնարաւորութիւնները, ու ատով կը թրծուէր պայքարի ջիղը, հայ ժողովուրդին։ Արշաւանքներ, խմբային կռիւներ, դաւադրական աքթիւ գործունէութիւն, ասոնք բոլորը մէկանց, վերջ կը դնէին անորոշ երազներու, ցան-

կութիւններու: Հայ ժողովուրդը արդէն կը հետապնդէր որոշ ցանկութիւն մը, իտէալ մը:

Հերիսան ունելու համար, երկաթէ դգալներու անհրաժեշտութեան գիտակցութիւնն էր այս. Նոր ճամբայ մը, որ սակայն ուղիղ կը տանէր դէպի գաղափարը, դէպի նպատակը: Նոր սերունդ մը կը յաջորդէր հնին, որ թէեւ կրաւորական էր եղած իր դերով, բայց սերմնացանն էր մեծ գաղափարին, որուն իրականացումը այնքա՜ն ոգեւորութեամբ իր ուսերուն կ'առնէր նոր սերունդի մէկ մասը, հակառակ որ կ'ապրէր Արարատեան դաշտի մէջ իսկ, բայց որու համար, Հայաստանը Բարդողեան լեռնաշղթայի միւս կողմը կը գտնուէր:

Հոն էր ցանկալի «Երկիրը», այնքա՜ն հզօր իր ձգողական կարողութեամբ: Այդ Երկիրն էր երգուած ազգային երգերով, անոր ցաւով տապակուած էր կովկասահայ երիտասարդութիւնը, անոր ազատագրումին էր լծուած լաւագոյն հայ մտաւորականութիւնը, բոլոր զգայուն ու անկեղծ սրտերը, անոր օրհասական կանչին էին պատասխանած սրտագին, ջահիլ ջիւան կտրիճներ: Հո՛ն, սահմանի միւս կողմը գտնուող Երկրի մէջ էին խտացած ազգային յոյսերը, որոնք 70-80 թուականներուն թռիչք էին առած: Հոն պիտի իրականանար ՄԵԾ իտէալը:

Ազգային ցանկութիւններու թռիչքը, ատկէ աւելի մեծ հորիզոն մը չէր ընդգրկեր:

Փաստացիօրէն Հնչակեան ու Դաշնակցական կուսակցութիւնները, իրենց յենարան ունենալով Կովկասը, ամբողջովին տաճկահայ դատին էին նուիրուած: Հայ-թաթարական կռիւները, եկեղեցական կալուածներու գրաւման առթիւ Դաշնակցութեան աչքի գործունէութիւնը Կովկասի մէջ, պարզապէս անցողական շրջան մը պէտք էր համարուէր, եթէ որ անակնկալ կերպով չպայթէր 1905-ի ռուսական յեղափոխութիւնը, ստեղծելով այնպիսի նոր պայմաններ, որոնք հրամայաբար կը ստիպէին վերագնահատումի ենթարկել կուսակցական ծրագիրը, յարմարցնելու համար զայն նոր պահանջներու, ստեղծուած նոր դրութեան:

Ու հարուստ անցեալով յեղափոխական կուսակցութիւն մը, որ մինչ այդ «Կռուեցէք տղերք», «Լուսին չկար», «Կարկուտ տեղաց» էր երգած, ստեղծուած նոր դրութեան, նոր պայմաններու բերումով, պարտաւորուած էր Ինթերնասիոնալի երգը սկսիլ հնչեցնել: Բնականաբար, առանց ներքին ցնցումի, մէկ օրէն միւ-

մը ան չէր կրնար իւրացնել ընկերվարական նախագիծը, որ խորթ էր զանգուածին: Սակաւաթիւ Դաշնակցական մտաւորականներ միայն, խմբանուած ռուսական յեղափոխութեան պոռթկումով ու հնարաւոր ապագայով, համոզուած սոցիալիստներ էին, սըրտագին փարեցան անոր: Ուրիշ խումբ մը Դաշնակցական մտաւորականներ չէզոքացան կուսակցութենէն, գտնելով նոր վարդապետութիւնը վնասակար ազգային իտէալին: Իսկ կար ստուար մեծամասնութիւն մը, որ եղածը անհրաժեշտ տաքտի խնդիր կը համարէր պարզապէս: Մինչդեռ զանգուածը ինքնին անտարբեր էր եղածին, ու Դաշնակցութեան վրայ կը նայէր, ինչպէս սովոր էր տարիներէ ի վեր:

Որ ծրագիրը հիմնական փոփոխման կ'ենթարկուէր, գիտէին գրեթէ ամէնքը: Բայց գործունէութիւնը կը մնար գերազանցօրէն հին, եթէ չհաշուենք Բագուն, ինչպէս մասամբ նաեւ Թիֆլիսն ու Բաթումը:

Միհրանական շարժման երեւան գալը հետեւանք էր այն հիմնական մտածողութեան, որ նախագծով, Դաշնակցութեան գործունէութիւնը կ'ընդգրկէր շատ աւելի լայն ասպարէզ մը, տաճկահայ դատին կը լծորդուէր դասակարգային պայքարը եւ ռուսական քաղաքական յեղափոխութեան մասնակցելու անհրաժեշտութիւնը:

Հայ ժողովուրդը, ու անկէ առաջացած Դաշնակցութիւնը տաճկահայ դատով արդէն անհնարին ծանրութիւն մը շալկած էր: Պարզ էր, որ նոր գործունէութեամբ ստիպուած պիտի լինէր Դաշնակցութիւնը, նոր ոյժեր սպառել, իր անբաւական միջոցները տարածել աւելի ընդարձակ տարածութեան մը վրայ եւ ցըրուել իր ուշադրութիւնը տարբեր ուղղութիւններով:

Կար եւ բարոյական իրաւունքի խնդիր մը. Դաշնակցութիւնը՝ Դաշնակցութիւն էր դարձած տաճկահայ դատով: Սոցիալիզմը ոչինչ կրնար աւելցնել անոր վրան, եթէ չպակսեցնէր եղածէն: Եւ այդ գլխաւորաբար այն պատճառով, որ Դաշնակցութիւնը հրապարակ իջած էր համազգային իտէալի մը իրագործման համար, կոթնած ամբողջ հայ հասարակութեան օժանդակութեան, որոնք այնքան անհրաժեշտ էին:

Այս այսպէս լինելով հանդերձ, Միհրանական շարժման հետեւորդները կ'անտեսէին մէկ հանգամանք մը, սակայն: Անոնք անհեթեթօրէն կը պահանջէին կովկասահայերէն, որ չմտածեն

իրենք իրենց մասին, չհետաքրքրուին իրենց սեփական ապագայով եւ կեանքով, միմիայն տաճկահայ դատը շալակնին առած, նուիրաբերեն անոր ե՛ւ մարդ ե՛ւ դրամ ե՛ւ ռազմամթերք ե՛ւ ամբողջ կեդրոնացած ուշադրութիւն:

Հոս միջանկեալ ըսեմ, որ հակառակ բոլոր սպասումներուն, եւ յոռետես մարգարէութիւններուն, Դաշնակցութիւնը, 1905–էն մինչեւ 1908–ը, ԵՐԿՐԻ համար, աւելի շատ մտաւորական ղեկավարներ հասցուց, աւելի դրամ ճամբեց, աւելի զէնք եւ ռազմամթերք սահմաններէն ներս մտցուց, քան ատկէ առաջ, 25 տարիներու ընթացքին, բոլոր յեղափոխական կուսակցութիւնները միասին առած:

Հիմակ ամփոփենք:

Որ Դաշնակցութիւնը, նոր ստեղծուած պայմաններու շնորհիւ, կովկասեան նախագիծը իւրացնել հարկադրուած էր, անկասկածելի էր: Սակայն, նոյնքան արդարացի էր այդ առթիւ ծագած ոմանց վախը, թէ հազարաւոր զոհերու արիւնով նուիրագործուած սրբազան պայքարը պիտի թուլանայ: Հետեւաբար, տուեալ պայմաններու մէջ, բնական էր, որ խումբ մը մարդիկ նկատէին կովկասեան նախագիծը կործանարար, մինչ այդ կուսակցութեան որդեգրած գաղափարներուն ու գործունէութեան համար եւ ոգի ի բռին հակառակէին անոր:

Այս մտածողութիւնը, թէեւ ինքնին քիչ մը միամիտ, բայց առողջ հիմքեր ունեցող, դարձաւ Միհրանական շարժման սկզբնական ելակէտը: Բայց այդ շարժումը, իր գործունէութեամբ ու հետեւանքներով, ամենազզրելի տեղ մը կը գրաւէ մեր պատմութեան մէջ, շնորհիւ այն հանգամանքի, որ շարժման որպէս թէ ղեկավարը, ողորմելի, աննկարագիր եւ տգէտ ոչնչութիւն մ'էր, գաղափարական պայքարի անընդունակ:

Իր գոյութիւնը իսկ կուսակցութեան մէջ, Մոսուն–Ջօւի արշաւանքէն վերջ, պարզ թիւրիմացութեան մը հետեւանք էր: Մրգաստանի մարմինը, բաւական տուեալներ ունէր զայն արտաքսելու կամ ամենածանր պատիժի ենթարկելու, որ դժբախտաբար անորակելի թուլութեամբ մը, չըրաւ:

Այդ ողորմելի, ֆանֆարոն մարդը, հետզհետէ կորսնցնելով իր հաւասարակշռութիւնը, ատեն մը Համբարձում Առաքելեանի ու «Մշակ»ի հովանաւորութեամբ պայքարելէ վերջը, իջաւ մինչեւ ցարական ժանտարմական լրտեսի սեւ աշխատանքին, կանգ

չառնելով ոչ մէկ սրբութեան առջեւ, դաւաճանելով մինչ այդ իր պաշտած գաղափարները, գործը։ Ու այդպէս, մինչեւ որ Ռոստոմի մօտ, գնացքի մէջ, Դալի Ղազարի անշեղ գնդակը վերջ տուաւ այդ դաւաճանի կեանքին։

Միհրանական շարժումը, իր էութեամբ չնչին, շատ ծանր հետեւանքներ ունեցաւ, վերջէն։

1907–910–ի բէաֆսիոնի ժամանակ, անոր ցանած աղէտաւոր սերմերու հունձքը քաղեց առատօրէն հայ յեղափոխութիւնը, որ ըսել է հայ ժողովուրդը։

* * *

Բաւական երկար կանգ առի ռուսական յեղափոխութեան առաջացուցած ընդհանուր գինովութեան վրայ, որմէ բնականաբար վարակուած էր ընդհանրապէս կովկասահայութիւնը եւ մասնաւորաբար Հ. Յ. Դաշնակցութիւնը։

Բոլոր հիւանդութիւններու նման, այդ հոգեկան ու մտաւոր գինովութիւնն ալ ունեցաւ իր աստիճանական զարգացումը, քրիզի շրջանը եւ... ապաքինումը։ Քրիզի շրջանը պէտք է համարել Էջմիածնայ կեդրոնական ժողովի ժամանակը, երբ ոգեւորութիւնը, արտառոց գաղափարները հասան ծայրայեղ աստիճանի մը, դէլել անցնելով բանականութեան սահմանները։

Ու եղաւ որ, Խրիմեան Հայրիկը, մէկը մեր իրականութեան բնածին դեմոկրատներէն, ժողովրդասէր տէրվիշ մը, որ հայ ժողովուրդի ցաւերուն, տառապանքին, յոյզերուն եւ յոյսերուն երգիչն էր եղած դեռ 70 Թուականներէն սկսեալ, ինքն ալ տարուած նոր հովերէ, Հայրապետական աթոռէն հրաւէր կարդաց ազգին՝ գալ մէկտեղուիլ Էջմիածնայ գմբէթին տակ, հաւաքաբար մտածելու համար ազգային մշակոյթը նոր հունի մը մէջ դնելու մասին այնատեն, երբ յեղափոխութեան շնորհիւ, ակընկալութիւններու եւ սպասումներու նոր հորիզոններ կը ծագէին հայ ժողովուրդի համար։

Ու փոթորկուեցաւ Կովկասը՝ ընտրական պայքարի անսանձ կատաղութեամբ։ Անհետանալու վրայ եղող Մշակական մտաւորականութիւնը, որ դեռ մինչեւ վերջերը հայ կեանքի ղեկավարի դերը կը կատարէր, երկարատեւ քնէ մը արթնցածի պէս սկսաւ նոխազ ճօճել նոր սերունդին, որ ըսել է, Դաշնակցութեան դէմ։ Ամբողջ երեք տասնեակ տարիներ «Մշակ»ը, իր դրօշակակիր

Գրիգոր Արծրունիի բերնով, նոր–խօսքի, նոր–գաղափարի պատգամախօսն էր եղած, կրթած էր սերունդներ, կղերական–պահպանողական միջնաբերդի աւերակներուն վրայ հաստատած էր ժողովրդական–ազատական ազգային նոր շէնքը, որ արդէն տեղի կուտար նոր սերունդի նոր պահանջներուն առջեւ:

Հայրերու եւ որդիներու յաւիտենական կռիւն էր այդ, որուն անխուսափելիօրէն կեանքի ամէն պարագաներու մէջ ալ կը հանդիպինք: Իրականին մէջ «Մշակ»ի ողբերգութիւնը ինծի կը յիշեցնէր հէքեաթական հերոս Քէօռ–Օղլին: Երանելի շրջան մը կար, երբ Քէօռ–Օղլին, հուր հրեղէն նժոյգը նստած, նիզակն ու վահանը ձեռքին, դամասկեան կեռ թուրը կողքին, փափախը ծռած, արար աշխարհին ասպարէզ կը կարդար: Ու մարդկային միտքը երկունքի մէջ, ծնաւ չախմախլի հրացանը, ու անոր ծընունդով մզրախն ու խալխանը, կեռ թուրն ու խանչալը կուռի ասպարէզէն քաշուեցան, նամարտ նորութեան առջեւ տեղի տըւին, եւ անդարձ գնաց Քէօռ–Օղլին իր առասպելական քաջագործութիւններով:

Բոլոր սերունդները, բոլոր գաղափարները անցաւոր են Քէօռ–Օղլուի պէս: Անցաւոր էր նաեւ Մշակականութիւնը, թէեւ կը փորձէր դեռ նիզակ շարժել թուլացած ձեռքով, նոր սերունդի գրոհի դէմ:

Ու հասկնալի է, որ ընտրութիւնները Կովկասի մէջ վերջացան Հ. Յ. Դաշնակցութեան ջախջախիչ յաղթանակով,— բան մը, որուն համար պարծենալու շատ պատճառ չունինք սակայն:

Երբ գիտենք, թէ այդ ժողովը կը գումարուէր 1906 թուին, այլեւս աւելորդ պիտի լինի ըսելը, թէ էջմիածին հաւաքուած պատգամաւորներն ալ 95 առտոկանի սոցիալիստներ էին: Նոյնիսկ Մշակական մէկ քանի պատգամաւորները, որոնք յաջողած էին ընտրուիլ, դաշն ջուրի քաղաքականութեան հետեւելով, քիչէն շատէն «սոցիալիզմ» կը խաղային, թէեւ իրենց սոցիալիզմը քիչ մը շատ ջրալի տեսակէն էր:

* * *

Ան, ով անընդունակ է սրտանց խնդալու, դժուար թէ կեանքը իր ամբողջութեամբ հասկնայ: Իսկ ան, ով ինքն իր վրայ խնդալու արիութիւնը չունի, կը նմանի մարդու մը, որ քիթը վեր, ամպերուն մէջ, աչքերը աստղերուն կը քալէ ու սակայն

ոտքի տակի հողը չի տեսնար:

Դաշնակցութիւնը ապրած է լեցուն գործնական կեանք մը, վերջին երեք տասնամեակներու ընթացքին ան եղած է տիրականօրէն հայ ժողովուրդի, հայ մտքի ղեկավար առաջնորդը թէ՛ օրհասական ծանր վայրկեաններուն, թէ՛ ակնկալութիւններու, յոյսերու խանդավառ օրերուն: Լինելով գերազանցօրէն գործի կուսակցութիւն, ան երբեք յաւակնութիւն չէ ունեցած անսխալական լինելու՝ մեծահոգիօրէն այդ պատիւը ձգելով բոլոր անոնց, որոնք ամբողջ կեանք մը խօսեր են, առանց մատ մատի զարնելու, որ սխալ մը չը գործեն: Այս հասկցողութեամբ է որ, երբ կը խօսիմ Էջմիածնայ կեդրոնական ժողովի մասին, կ'անդրադառնամ Դաշնակցութեան դրական գործունէութեան հետ նաեւ անոր բացասական կարգ մը գործերուն, որոնք անկարելի է առանց ծիծաղելու յիշել:

* * *

Եթէ պիտի խօսինք Էջմիածնայ կեդրոնական ժողովի մասին, ապա ուրեմն առանց այլեւայլի պիտի ըսենք, որ այդ ժողովը, թէեւ տարբեր նպատակի համար կանչուած, բայց իրականին մէջ դարձեր էր առաւելապէս Դաշնակցական մտաւորականութեան համար մրցման ասպարէզ մը, ուր ամէն մէկը կ'աշխատէր իր հունարը ցուցադրել առաւելագոյն չափով: Զափի գիտակցութիւնը բոլորովին կը բացակայէր այն ժողովէն: Ծիծաղելի լինելու աստիճանի էր հասած զտարիւն սոցիալիստ երեւնալու հիւանդագին ձգտումը, մինչեւ այն աստիճան, որ այդ խելօք մտաւորական ներկայացուցիչները շատ լրջօրէն ու բուռն թափով կը վիճէին իրար հետ այն մասին, թէ ինչպէ՞ս պէտք է ընդունիլ ծերունազարդ Կաթողիկոսը, որ զիրենք ժողովի հրաւիրելու ծանր մեղքն էր գործած...

Հազիւ մէկ քանի ողորմելի գիւղեր էին մնացեր Էջմիածնի երբեմնի հարուստ կալուածներէն. ատոնց հասոյթով ալ դէչ աղէկ, կը տապկուէր վանքը, միաժամանակ պահելով Գէորգեան ճեմարանը, որ այնքա՛ն հզօր ազդակ մը դարձած էր լուսաւորութեան, հայ կեանքի մէջ: Այդ քանի մը գիւղերն ալ շատ տեսնելով, կ'ուզէին մեր իմաստուն պատգամաւորները գիւղացի «աշխատաւորութեան» բաժնել զանոնք: Ու ինչ խօսք որ լինելով համաշխարհային սոցիալիզմի առաջապահները խաւարակուռ Ա-

սխալի խորքերուն մէջ եւ միաժամանակ վախնալով, որ չոլէն Ծերեթելի մը կամ Հողմաղաց Երզնկեան մը կրնան զիրենք մեղադրել նեղ ազգայնականութեան մէջ, մեր պատգամաւորները զիրար գերազանցող ճառերով կը պաշտպանէին Թաթար «աշխատաւոր» գիւղացիներու ալ շահերը, որոնք այդ հողերու վրայ, կամ մօտիկ գտնուելով, պէտք էր որ ժառանգէին այդ հողերը, ի փառս համաշխարհային եղբայրութեան:

Այդ երէկն էր· այսօր ալ Հայաստանի մէջ, Համայնավար պօետները, անտեսելով հարիւր հազարաւոր, Թափառական հայ գաղթականութիւնը, ցրուած աշխարհի չորս ծայրերուն, «ի ձայն փողոյ եւ թմբկի» կը յայտարարեն 80,000 Թաթար գաղթականներու տեղաւորումը Հայաստանի մէջ, որը՝ որպէս թէ հողի քըչութենէն տառապելով, իր հարազատ զաւակներու առջեւ պինդ մը փակեր է հայրենի երկրին դռները:

Էջմիածնայ ժողովին, Դաշնակցական ճառախօսներու եւ ներկայի Համայնավարներու միտքերը ըստ էութեան մէկ են: Կայ սակայն այն տարբերութիւնը, որ Դաշնակցական Թունդ սոցիալիստը, երբեմն խօսելացաւէ բռնուած, չուէտական մարզանքի նման, խօսելու մարզանք ալ կը կատարէ առանց սակայն գործնականացնելու իր ծայրայեղ միտքերը, որ կը մնայ օդը արձակուած անվնաս հրթիռ մը, իսկ Համայնավարը միշտ կը գործադրէ բոլոր գեղեցիկ թէ տգեղ յիմարութիւնները, որոնք բերնէն դուրս կ'ելլեն:

Այսպէս ուրեմն, Էջմիածնայ ազգային մեծ ժողովը պարզապէս ճառաբանութեան մրցահանդէս մ'էր, եթէ նոյնիսկ ամբողջ գեղեցիկ ճառերը հազիւ թէ ընկոյզի կեղեւ մը լեցնէին:

Այդ մեծադղորդ ազգային ժողովը, կատարեալ փիասքօ մը պիտի լինէր, եթէ Զաւարեանը չ'արտասանէր դպրոցական հարցի քննութեան առթիւ՝ մէկը իր հոյակապ ճառերէն, որ այնքան խոր տպաւորութիւն մը ձգեց բոլորի վրայ, նոյնիսկ հակառակորդներուն, որոնք այնքան անվերապահ կերպով ընդունեցին զայն:

Դաշնակցութեան այսպէս կոչուած, մտաւորական սպայակոյտը ներկայ էր այդ ժողովին, հիմնադիր Զաւարեանէն սկսած մինչեւ Հիւսիսային Կովկասի երիտասարդ պատգամաւոր գերգերազանց սոցիալիստ, կաս-կարմիր Ռ. Դարբինեանը, որը այդ օրերուն կ'ապրէր, կը շնչէր, կ'երազէր, սոցիալիզմի փառապանծ

յաղթանակը: Թէեւ դեռ նորընծայ մը կուսակցութեան մէջ, զոյգ «Հայրենիք»ներու մեր տաղանդաւոր խմբագրապետը, այն օրերուն սոցիալիզմի երկրպագուներէն եւ մոլեգին հաւատաւորներէն մէկն էր:

Կ'երեւակայեմ սիրելի ընթերցողիս հարցական նայուածքը:

Կաս-կարմիր սոցիալիստ ըսի անոր համար, ի՞նչ կայ զարմանալու որ. չէ՞ որ ժամանակը, պատահարները, արեւը, հիւսիսի խստադոյն քամիները, հետզհետէ վառ գոյները կը խամրեն, արուեստական կարմիրը կ'երթայ ու տակը կը մնայ բնական գոյնը, ճիշդ կանանց շրթունքներու նման, որոնք թուալեթէ վերջ, կեռասի նման կարմիր՝ հետզհետէ սակայն կը գունաթափին...

Բարեբախտաբար Էջմիածնի այդ նշանաւոր ժողովը շուտ վերջացաւ, առանց ժամանակ տալու որ մեր բոլոր հիւնարը մէջտեղ հանէինք, եւ մեր ձախլիկութիւններով բոլորը խնդացնէինք մեր վրայ:

Ըսենք ընդունուած ձեւով որ կացութիւնը փրկեց Էջմիածնայ գաւառապետը: Այդ մարդը ինչպէս կ'երեւի, չունենալով պէտք եղած կրթութիւնը, եւ ոչ ալ հզօր երեւակայութեան տէր, սոցիալիստական քարոզչութիւնը ըմբռնելու, եւ միամտաբար կարծելով թէ ազգային ժողովի մէջ, ամենակարող աստուծու արտօնութեամբ, որպէս պատիժ, լեզուներու խառնակութիւն մը առաջ եկեր էր, Բաբելոնի մէջ կատարուածի նման, աճապարեց ժողովը ցրել, քանի դեռ պատգամաւորները իր հրամանը հասկնալու վիճակի մէջ էին...

Եւ մեր Դաշնակցական պատգամաւորները, որ այնքան հերոսաբար կուրծք կուտային դարեւոր անցեալի մը, եւ կ'ուզէին զայն սոցիալիստօրէն նոր ճամբայով մը քալեցնել, կարծես գիւղական գոմէշի կառք մը լինէր ան, գաւառապետի հրամանը ստանալով սուս ու փուս, խուրճինները շալակած, հեռացան դէպի իրենց տեղերը, աւելորդ անգամ մ'ալ դէմ յանդիման գալով այն ճշմարտութեան թէ՝ մեծաշառաչ փրազներէ աւելի արժէքաւոր է կենդանի թէկուզ համեստ գործը:

* * *

Էջմիածնի կեդրոնական ժողովը տեղի ունեցաւ, երբ Դաշնակցութիւնը կը գտնուէր իր կեանքի գէնիթին վրայ: Անկէ վերջը,

հետզհետէ կարմրութեան թափը կոտրեցաւ, սոցիալիզմը մնաց, բայց hիսթերիան անցաւ։ Մինչ մէկ կողմէն յեղափոխութիւնը կամաց կամաց առագաստները կը հաւաքէր, միւս կողմէն ալ, բէլաքխոնը, որ կարմիր օրերուն պէյամբըթները մտեր էր խոհեմաբար, նորէն լոյս աշխարհ կուգար, «իսկական ռուսներ» կամ ընդունուած ձեւով, «սեւ հարիւրակայիններ» անուան տակ։ Նորէն մէջտեղ եկան խաչ ու խաչվառով թափորները փողոցներու մէջ, ուր յեղափոխական ռազմական երգերու արձագանգը կը հնչէր դեռ։

Ամբողջ Ռուսաստանի մէջ, նահանջի շեփորը կը հնչէր, եւ բնականօրէն Կովկասն ալ խելօքիկ մը կը հանդարտեր բաւական մը «ճաուրսկայա» պարելէն վերջը։

* * *

Թիֆլիս հասնելէս քանի մը օր վերջը, տեղի կ'ունենար, ճիշդը չեմ յիշեր Հ. Յ. Դաշնակցութեան կովկասեան քանի՞երորդ Բարոյական Ժողովը։ Պատգամաւորներ եկած էին Կովկասի գրեթէ ամէն անկիւններէն։ Կը բացակայէր միայն Ալեքսանդրապոլի պատգամաւորը, որ կ'ուշանար։ Այս ուշացման պատճառը այն էր, որ հոն, Ալեքսանդրապոլի մէջ ներքին գժտութիւն էր յառաջացած։ Խմբերը եւ շրջանի մարմինները լարուած էին Կ. Կոմիտէի դէմ եւ վճռականօրէն որոշած, որ գնացող պատգամաւորը անցմէ մէկը պիտի չլինի։ Մէկ այս որոշման յանգած, անոնք կը դժուարանային յարմարագոյն մէկը գտնելու։

Կարծեմ երրորդ նիստին էր, որ Ա. Թ.-ի տանը տեղի կ'ունենար, երբ անսպասելի կերպով ներս մտաւ Աւօն (Աւետիք Իսահակեան), որը ըլլալով Կ. Կոմիտէի անդամ, չէր սպասուեր որ գայ։ Գրեթէ բոլոր պատգամաւորներն ալ յուսախաբ էին եղած, Բայոնական Ժողովին մէջ չգտնելով «Երգեր եւ Վէրքեր»ու տաղանդաւոր բանաստեղծը, որ ժողովներու համ ու հոտ տուողն էր, իր այնքան սրամիտ նկատողութիւններով եւ պատմութիւններով։

Աւոյի գալով՝ ի հարկէ ժողովը պահ մը ընդմիջուեցաւ։ Չորս կողմէն վրայ տուին.

— Հը՞ Աւօ, էս ո՞նց եղաւ...

— Տօ բարիշեցի՞ք...

Աւօն ծանր ու մեծ ճակատեց չորս կողմէն կրկնուող բացա-

գանչութիւններուն լակոնական պատասխանով մը, որ պատիւ կը բերէր Ալեքսանդրապոլին.

— Դէս ինկան, դէն ինկան, ինձնից աւելի խելօքը չկրցան ճարել, ես ալ եկայ...

Եւ Աւօն ընդհանուր ծիծաղի մէջ իր թափուր աթոռը գրաւեց:

Ընդհանրապէս Աւօն ժողովներու մէջ խօսելացաւէ բռնուողներէն չէր, ան գրեթէ լուռ կը մնար... օրակարգի հարցերու նըկատմամբ: Ատկէ դուրս ան Բայոնական ժողովներու զարդն էր. անով քիչ թէ շատ կենդանութիւն կը ստանար ժողովը:



ԱՒԵՏԻՔ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Ինծի կը թուի թէ չեմ սխալիր եթէ ըսեմ թէ՝ Կովկասեան Բայոնական Ժողովները ներքին կուսակցական արժէք մը լինելէ աւելի, իրենց ստեղծած ընկերական մթնոլորտով, մէկտեղուելու եւ իրար մօտէն ծանօթանալու տեսակէտով անհրաժեշտութիւններ էին:

Խնդրե՛մ, յոնքերնիդ վեր մի վերցնէք, թողէք որ միտքս բացատրեմ: Ի՞նչ խօսք, որ միշտ ծանրաբեռնուած, յոյժ կարեւոր հարցերով լեցուն օրակարգ մը կը լինէր սեղանին վրայ: Այդ օրակարգին մէջ կային բազմաթիւ հարցեր, որոնք ամէն Բայոնական Ժողովներու մէջ, անփառունակ մուտք մը կ՚ունենային, հասած տանձի պէս, եւ հարցերու շատութեան պատճառով միշտ կը յետաձգուէին «միւս տարուան», որ երբեք ալ չէր գար:

Կային հարցեր ալ, որոնք օրակարգի պատուաւոր աթոռները կը գրաւէին, միշտ ալ դամբանական բանաձեւով մը կը լուծուէին, յաջորդ տարուան Բայոնական Ժողովին մէջ՝ նորէն յարութիւն առնելու պայմանով:

Այդ անսպառելի հարցերէն գլխաւորը, որուն ծանօթ պէտք է լինի ամէն Դաշնակցական, եթէ նոյն իսկ անդամ եղած է հինգ հոգինոց խումբի մը, շատ խորհրդաւոր անուն մը ունէր, «Ներկայ քաղաքական մոմենտ» ըսուած առեղծուածային հարցն էր

այդ, որ չէր սպասուեր եւ որու էութիւնն ու գրաւած սահմանները դժուար կը ճշդորոշուէին: Այդ հարցի անքննելի քննութեան մէջ է որ կը փայլէին մեր հռետորները, միաժամանակ այդ հարցի մասին խօսելով է որ խօսելու վարժութիւն ձեռք կը բերէին նոր սկսնակները: Այս երկսայրութիւնը անոր համար որ, հարցը լինելով շատ առաձգական, հեշտութեամբ կարելի էր աջ ալ ծռիլ ձախ ալ, առանց ձախողելու վտանգի:

Օրակարգերը ընդհանրապէս երկու դասի հարցեր կը պարունակէին: Առաջին գործնական բնոյթ կրող խնդիրներ, որոնք ոչ շատ ժամանակ կ'առնէին եւ ոչ ալ քուէներով կը լուծուէին: Ինչ որ ալ լինէր ժողովի որոշումը տուեալ հարցի մասին, պատկան մարմինը ըստ իր հայեցողութեան, ընթացք կուտար անոր, շատ անգամ տրամագծօրէն հակառակ Բայոնական Ժողովի որոշումին: Իսկ երկրորդ տեսակի հարցերը անոնք էին, որոնք տեսական բնոյթ կրելով, իրենց էութեամբ իսկ անլուծելի, կը գրաւէին ժողովի սուղ ժամանակը: Այդ հարցերը պրոպագանդային մարզանքի բնոյթ կը կրէին՝ ճոխացնելով անդամներու բառամթերքի պաշարը զանազան իզմերով, որոնք սակայն անմիջականօրէն մեր կեանքի հետ կապ մը չունէին:

Երբ նկատի ունենանք որ այդ Բայոնական Ժողովները տեղի կ'ունենային ցարական ռեժիմի օրով, երբ ոստիկանութիւնը ու ժանդարմական վարչութիւնը որսկան շուներու նման կը հետեւէին յեղափոխականներուն, ապա պիտի չզարմանանք որ, գրեթէ բոլոր ժողովներն ալ կիսատ պռատ վերջ մը կ'ունենային, շատ մը հարցեր ձգելով Բիւրոյի հայեցողութեան:

* * *

Բայոնական ժողովներու մէջ շատ հազուադէպ էր հարցի մը քուէներով լուծուիլը: Ընդհանրապէս բոլորին գոհացնող բանաձեւ մը կը գտնուէր: Շեշտուած իրաւախոհութեան տրամադրութիւն մը կը տիրէր, ու այս գլխաւորաբար այն պատճառով, որ տեսական հարցերու աղանդամոլութենէ զերծ էր Դաշնակցական մտաւորականութիւնը:

Ստորերկրեայ կեանք մը ապրելու դատապարտուած յեղափոխական կուսակցութեան մը համար, անշուշտ շատ դժուար էր կանոնաւոր արձանագրութիւններ պահելը· Թափառական արխիւ մը ունէինք, այս ու այն անկիւնը թխմուած:

Ըսենք հոս, որ մեր ամբողջ յեղափոխական գործունէութեան վրայ ռուսական մտայնութիւնը իր բնորոշ կնիքը դրած էր: Տեսակ մը դերվիշական անհոգութիւն, չաշտկեկ մը թափթփածութիւն, գործը եօլա տանելու սովորութիւն, եկած նամակներուն պատասխանելու անփութութիւն: Ասոնք ռուս յեղափոխականներէ փոխ առնուած յատկութիւններ էին, որոնք անկասկած վատ կ՚անդրադառնային գործի ընթացքի վրայ: Դաշնակցական մարմիններու գործունէութեան մէջ, պաշտօնականութիւնը բացարձակապէս կը բացակայէր, ամէն ինչ, եթէ կ՚ուզէք, քիչ մը շատ ընկերական հողի վրայ դրուած էր, գաւառական կոմիտէէն սկսած մինչեւ Բիւրոյի գործունէութեան մէջ:

Ռայոնական ժողովներու բուն արժէքը կուսակցական դաստիարակութեան տեսակէտով՝ կը կայանար անոր մէջ, որ այդ գաղտնի հաւաքոյթները կը կազմակերպէին, կը թրծէին նոր հասնող երիտասարդները, անոնք, որ վաղուան ղեկավարները պիտի լինէին հասարակական գործունէութեան մէջ: Կը մէկտեղուէին հեռաւոր գաւառներու ներկայացուցիչները՝ իրար լսելու, իրար ճանաչելու, իրար միջոցով ծանօթանալու ընդհանրապէս ամբողջ հայ կեանքի մասնայատուկ պայմաններուն:

Հոն իրենց բարոյական մեծութեամբ կը փայլէին հին եւ պատասխանատու ընկերները. կը փայլէին իրենց անօրինակ համեստութեամբ, ընկերական ջերմ վերաբերմունքով: Սիմոն Զաւարեան մը, Ռոստոմ մը բարոյական մեծութիւններ էին, որոնցմով կրնար պարծիլ որեւէ հասարակութիւն, իսկ մեզ պէս փոքր ազգի մը համար անոնք ոգեւորութեան անսպառ աղբիւրներ էին, մեծութիւններ՝ կուսակցական դաստիարակչական մեծ արժէքով: Անոնց անշահախնդիր նուիրուածութիւնը, որ մինչեւ ինքնամոռացում կը հասնէր, լաւագոյն օրինակն էր նոր կազմակերպուող նկարագիրներու համար, հետեւելու անոնց տուած օրինակին:

* * *

Ընդհանրապէս Ռայոնական Ժողովներու մէջ շատ խօսողները, թէկուզ եւ լաւ խօսողները չէին որ դեր կը կատարէին մեր կուսակցութեան մէջ: Կուսակցական ցենզը խոշոր նշանակութիւն ունէր. նուիրածութիւն, մաքրութիւն, գաղափարականութիւն — ասոնք էին այն արժէքները, որոնցմով կարելի էր միայն բարոյական դիրք մը ստեղծել Դաշնակցութեան մէջ: Ատկէ դուրս ու-

րիչ ոչ մէկ չափանիշ կար, եւ թերեւս այդ էր գլխաւոր պատճառը, որ Դաշնակցութեան ղեկավարները այնքան բարձր մնացին բարոյապէս, որոնց մասին հակառակորդներն իսկ, ստիպուած կը խօսէին անպայման յարգանքով:

Ու ճիշդ ատոր մէջ պէտք է փնտռել գաղտնիքը այն բանի, որ Դաշնակցութիւնը 40 երկար ու վերիվայրումներով լեցուն տարիներ կրցաւ անսասան իր դիրքին վրայ մնալ, մինչ մեր միւս քաղաքական կուսակցութիւնները, երեք տասնեակ տարիներու ընթացքին, այնքա՜ն տխուր պատկեր մը ցուցադրեցին՝ սքանտալներու, գայթակղութիւններու, պառակտումներու, ու ոչ մէկը անոնցմէ չկրցաւ իր գոյութիւնը հիմնաւորել, ազդեցիկ տեւական դիրք մը գրաւելով հայ իրականութեան մէջ:

Պարզ պատահականութեան մը արդիւնքը չէ այն երեւոյթը, որ պաշտօնական Դաշնակցութիւնը այսօր «աքսորուած» լինելով հանդերձ հայրենիքէն, դեռ մինչեւ այսօր, տասը տարիներ վերջըն իսկ, Դաշնակցական մտայնութիւնը Երկրին մէջ ամէն ժամանակէ աւելի կենդանի է, եւ մեծագոյն գործօնը հայ ժողովուրդի կեանքին մէջ:

Այդ անոր համար, որ այդ մտայնութիւնը արհեստականօրէն ներմուծուած չէ ժողովուրդին մէջ, որ անոր անվիճելի տէրը, ինքը հայ ժողովուրդն է, իսկ Դաշնակցութիւնը, կարելի է ըսել անոր պաշտօնական ներկայացուցիչը միայն:

Այս անհերքելի ճշմարտութեան գիտակցութիւնն է պատճառը, որ մեր տնաբոյս բոլշեւիկները այնքա՜ն կատաղի ճակատ մը կազմած են Դաշնակցութեան դէմ· ամէն երեւոյթ բացատրելու համար՝ անոնք կանգ կ՚առնեն Դաշնակցութեան դուռը, իրենց թղթէ նիզակները կոտրտելով Դաշնակցութեան վահանին վրայ, առանց անդրադառնալու սակայն, որ իրենց պայքարը քաղաքական կուսակցութեան մը դէմ չէ, այլ այդ ցուցանիշի տակ ապրող հայ ժողովուրդի:

Բայց դառնանք մեր նիւթին, որմէ դժբախտաբար այնքա՜ն ստէպ կը հեռանանք, ներողամիտ ընթերցողի համբերութիւնը չարաչար գործածելով:

Ինչպէս վերը ըսի, մինչդեռ յայտնի հռետորները, փայլուն իմացականութիւնները դուրսը կը մնային, անդին՝ Գէորգ Ղազարեանը, համեստ ուսուցիչ մը, կամ բժիշկ Տէր Դաւթեանը, ի ծնէ չը խօսկան, (որ նոյնիսկ Կեսարի յայտնի պատգամը՝ «եկի՛,

տեսի՛, յաղթեցի՛»ն չատախօսութիւն կը հարմրէր, գտնելով, որ միայն «յաղթեցի»ով ամբողջ պատգամը լիակատար կերպով կարելի էր արտայայտել) Բիւրոյի անդամ կ՚ընտրուէին, մանաւանդ վերջինը, գրեթէ յաջորդաբար երկար տարիներէ ի վեր:



Բժ. ՅՈՎՍԷՓ ՏԷՐ ԴԱՒԹԵԱՆ

Ի՞նչ էր սոր գաղտնիքը: Արդեօք մարդու սո՞վ կար,— այն ժամանակ, երբ կովկասահայ լաւագոյն մտաւորականութիւնը գրեթէ զանգուածօրէն Դաշնակցութեան դրօշին կը հետեւէր: Ի հարկէ ո՛չ. ոչ մարդու սով կար, ոչ ալ անբացատրելի գաղտնիք մը, այլ այն, որ ընդհանրապէս ընտրութիւններու մէջ դեր կատարողը ոչ թէ այն էր թէ թեկնածու մը ի՞նչ յատկութիւններ ունի ընդհանրապէս, այլ այն, թէ՝ իր ունեցածէն որքա՞նը կը տրամադրէր գործին եւ ի՞նչ բարոյական արժէք կը ներկայացնէր: Դերասանական շարժուձեւեր, ճոճուան ճառեր, երեւնալու ձգտում, ասոնք աննպաստ յատկութիւններ էին, կեղծ դրամի պէս, որ քարին զարնուելուն բութ ձայն կը հանէ, եւ ամենաապահով միջոցը, հետզհետէ դուրս իյնալու կուսակցութեան աչքի չարքերէն:

Սիմոնը, Ռոստոմը, հայր Աբրահամը վեթերաններէն, երկրորդ սերունդի լաւագոյն ներկայացուցիչներէն Համօն (Օհանջանեան), Թորոսը, Թոփչեանը, ինչ խօսք որ, կուսակցական արժէքներ էին եւ անոնց յայտնած կարծիքը տուեալ հարցի մը մասին ծանր կշիռ ունէր, մասնաւորաբար հիներունը, որոնք անբացատրելի բարոյական դիրք մը ունէին մեր մէջ, առաջացած այն խոր յարգանքէն եւ ջերմ սիրոյ զգացումէն, որ ամէն Դաշնակցական անոնց հանդէպ կը զգար: Սակայն, այս չի նշանակեր, թէ անոնց տեսակէտները անվերապահ կերպով կ՚ընդունուէին:

Պատմեմ միջադէպ մը։

1906-ի կարծեմ Ապրիլին, Թիֆլիսի մէջ տեղի կ՚ունենար Կովկասի չեմ գիտեր քանի՞երորդ Բայոնական Ժողովը, որուն աննախընթաց թուով պատգամաւորներ եկած էին գրեթէ ամէն շրջաններէն, մանաւանդ որ շնորհիւ ռուսական յեղափոխութեան, ժողովները գրեթէ ազատ էին։

Սովորական հարցերու երկար շարան մը կար օրակարգի վրայ. ատոնք գրեթէ շաբլօն կրկնութիւնն էին անցած բոլոր Բայոնական Ժողովներու մէջ քննուած հարցերուն։ Այդ հարցերէն շատերու նորութիւնը անոր մէջն էր որ, ամէն հրապարակ գալերնուն, տարբեր հագուստներով զգեստաւորուած, նորութեան խաբկանքը կուտային, առանց երբեք սպառելու, Պէնէլօպէի գործած շալին նման, որ քսան տարուան մէջ չվերջացաւ։ Բայց այդ սովորական հարցերէն դուրս երբեմն չնախատեսուած հարցեր, անամպ երկնքի վրայ պայթող փոթորիկի նման, կ՚ալեկոծէին սովորաբար խաղաղ ժողովներու ընթացքը։

Խումբ մը պատգամաւորներ, բագուցիներու ղեկավարութեամբ, նոր առաջարկութիւն մը բերին, որը իրապէս նորութիւն մը լինելուն՝ անսպասելի փոթորիկի մը պայթելուն պատճառ դարձաւ։

Այդ առաջարկութիւնը իր էութեամբ կը բխէր այն քաղաքական գոյավիճակէն, որու մէջ կ՚ապրէր ամբողջ Ռուսաստանը։ Մեծ Յեղափոխութեան առաջացուցած քաղաքական խոր ցնցումը, ցարական կառավարութեան ժամանակաւոր անզօրութիւնը, հետեւանք ի միջի այլոց եւ ճափոնական պատերազմի եւ անոր հետեւող չարաչար պարտութեան, հոգեբանական հսկայ վերիվայրում մը առաջացուցեր էր ժողովուրդի մէջ ընդհանրապէս, իսկ շատ աւելի ցայտուն կերպով՝ յեղափոխական կուսակցութիւններու մէջ, որոնց գաղտնի գործառնութիւնը, տարիներու ընթացքին, բուռն բնաւորութիւն մը ստացեր էր, եւ հաւանական յաղթանակը հեռաւոր ապագայի մը սահմաններուն մէջ հնարաւոր։

Սակայն, ռուսական մեծ յեղափոխութեամբ, գործունէութեան նոր ուղիներ, հաւանականութիւններու նոր հորիզոններ կը բացուէին, բոլորի, ինչպէս եւ Հ. Յ. Դաշնակցութեան համար։ Եւ բնականաբար Դաշնակցութեան համար վերագնահատում մը անցեալ գործունէութեան անհրաժեշտ ու պարտադրիչ կը դա-

նար, ու նոր ուղեգիծ մը՝ այդ օրերու պահանջներուն համապատասխան :

Բանն այն էր, որ Բագուն, ուր Սոցիալ Դեմոկրատները, Սոցիալ–Յեղափոխականները իրենց հայկական հատուածներով տիրապետող ուժ մը կը ներկայացնէին, անհնարին եռուզեռով ալեկոծուեր էր : Այդ յեղափոխանակ կուսակցութիւնները, օգտուելով կառավարութեան թուլացումէն, անօրինակ ակտիւութեամբ լայն սփռած էին իրենց կազմակերպական ցանցը բանուորութեան, եւ բնականաբար հայ աշխատաւորութեան մէջ, ու այդ ի վնաս Դաշնակցութեան, որը իր ծնունդէն ի վեր հայ աշխատաւորութեան ղեկավարը կը համարուէր : Այդ կուսակցութիւնները, ի մասնաւորի Սոցիալ–Դեմոկրատները, եւ իրենց «ճալանչի փէհլիվան» հայկական հատուածը, իրենք զիրենք համարելով միակ զտարիւն «օրթոտոքս» սոցիալիստները, իրենց ամբողջ թափով ինկեր էին Դաշնակցութեան վրայ, այդ որպէս թէ «ազգայնական» կուսակցութեան, որը աշխատաւոր բանուորներու գիտակցութիւնը միայն կը մթագնէր իր ազգային–շովէն գործունէութեամբ :

Այդ թունաւոր սլաքները սակայն, միայն Սոցիալ–Դեմոկրատներու կողմէ չէ որ կ՚արձակուէին, մեռնող «մշակականներն» ալ միւս ծայրէն, իրենց յարձակումները կ՚ուղղէին Դաշնակցութեան դէմ, աւելի տարուած խանութպանի հոգեբանութեամբ, իրենց հոգեվարքը քիչ մը եւս երկարելու մտահոգութեամբ :

Սոցիալ–Դեմոկրատները մեծապէս շահագործելով իրենց վարդապետութեան պարզութիւնն ու հասկնալիութիւնը բանուորական զանգուածէն, որ իր անմիջական առօրեայ շահերով տարուած էր միայն, անոնք գիտակցօրէն աչք կը գոցէին հայ դժբախտ իրականութեան մասնայատուկ պայմաններու վրայ, չէին ուզեր ոչ տեսնել, ոչ ալ հասկնալ շարք մը երեւոյթներու ծնուցիչ պատճառները : Անոնց շարք մը աժանկեկ քննադատութիւնները, մարքսեան շաբլոն ֆօրմիւլներով կաղապարուած, այնպէս թէ այնպէս որոշ տպաւորութիւն կը գործէին հայ բանուորութեան այն մասին վրայ, որուն քաղաքական ըմբռնողութիւնը իր օրական վաստկելիք կոպէկներէն անդին չէր անցներ : Մեր հակառակորդները որպէս թէ չըմբռնելով այն պատճառները, որոնք Դաշնակցութեան գործունէութեան մէջ երկուութիւն կ՚առաջացնէին, կը գոհանային միայն մատնացոյց ընելով Դաշնակ-

ցութեան բազմաթիւ ճակատներն ու կասկածելի սոցիալիզմը։

Որ երկուութիւն կար, այդ ճշմարիտ էր. հող զարմանալու ոչինչ կար քիչ մը խորհող մարդու համար։ Զարմանալին միայն այն կրնար լինել, որ Դաշնակցութիւնը, լինելով հողեկան զաւակը հայ ժողովուրդին, անտեսեր ազգային հաւաքականութեան սպառնացող վտանգները, ինչ կողմէ ալ որ գալու լինէին անոնք։

Փաստական ճշմարտութիւն մ'էր որ՝ միեւնոյն կոմիտէն, որ պիտի ղեկավարէր բանուորութիւնը, առաջնորդուած անոր դասակարգային շահի պահանջներով, միաժամանակ պարտաւորուած էր մարզել մարտիկներ, ազգամիջեան արիւնոտ կռիւներու համար,— դժբախտ անհրաժեշտութիւն մը, որու պատասխանատուները յամենայն դէպս Դաշնակցութենէն դուրս պէտք էր փնտռել։

Եւ սակայն Սոցիալ–Դեմոկրատները եւ անոնց պոչը կազմող հայկական հատուածը, զարմանալի ներդաշնակութեամբ հայ-թաթարական կռիւներու պատասխանատուութիւնը կը բաժնէին երկու կռւող կողմերու վրայ հաւասարապէս....

Այս անօրինակ լրբութիւնը, որու ուժ տուողներու գլխաւորներն էին վրացի «օրթոտոքս» սոցիալիստները, իր հիմքին մէջ բարթիզանական շահերու հետեւանք էր պարզապէս։

Ինչ խօսք որ, ցանկալի երեւոյթ մ'էր տեսնել բանուոր Իվանը, Մէհմէտն ու Կարապետը, որ միասնաբար պայքար մղէին զիրենք սորկացնողներու դէմ։ Բայց երբ Մէհմէտը Իվանի օժանդակութեամբ կ'աշխատէր Կարապետը ճզմել, ոչ մէկ խելքը գլխին մարդ կարող էր դատապարտել Կարապետը, որ յանուն ինչ որ իզմի ինքն իր վրայ խաչ չէր քաշեր։ Եւ սակայն այսքան պարզ երեւոյթ մը, որ մանուկներու համար իսկ հասկնալի է, մինչեւ այժմ իսկ, մեր հակառակորդներու ձեռքին, որպէս թէ ամենախոշոր կոզէրն է, Դաշնակցութիւնը ջախջախելու համար։ Կը թուի թէ, բթամտութիւնը առանձնայատուկ մենաշնորհն է Սոցիալ–Դեմոկրատներուն, ըլլան անոնք մենշեւիկ թէ բոլշեւիկ եւ ոչ միայն 1905–ին, այլ եւ մեծ պատերազմի ատեն, եւ մինչեւ իսկ այսօր, մեր բոլշեւիկ ախպերներու օրով, որոնք տեղի անտեղի, Դաշնակցութիւնը կը դատապարտեն որպէս ազգամիջեան կռիւներու սկզբնապատճառը։

Բնորոշ օրինակ մը։

* * *

1916–ի վերջերը, երբ ակներեւ դարձաւ, որ պատերազմի երկարաձգումով, կովկասահայ ժողովուրդի ֆիզիքական գոյութիւնն իսկ մեծապէս կասկածելի կը դառնար, Կովկասի ու մասնաւորաբար Երեւանի Թաթարութիւնը աներեւոյթ կեդրոնէ մը տրուած ազդանշանի մը վրայ, տենդագին թափով սկսաւ զինուիլ: Շնորհիւ այն առասպելական գներուն, որով յօժար էին գնելու ամէն տեսակի զէնք, հայ չարչիներ, կասկածելի տականքներ, մինչեւ Սարիղամիշներէն հազար ու մէկ դժուարութեամբ, բեռներով զէնք ու ռազմամթերք կը բերէին Թուրքերուն համար: Պակաս չէր մնար եւ հայ գիւղացին, որու աշխատող ձեռքերը կամ ռուսական բանակի մէջ էին եւ կամ կամաւորական գունդերու, տնտեսական ծանր պայմաններու տակ ընկճուած, տարուած քանի մը րուբլի շահու գաղափարով, տունը ունեցած զէնքը սիրայօժար կը ծախէր իր հարեւան Թուրք գիւղացուն: Այս երեւոյթը այնքան համատարած բնաւորութիւն մը կրեց, որ անտեսել անկարելի էր այլեւս:

Եւ ահա, Երեւանի Առաջնորդ Խորէն եպիսկոպոս Մուրատբէգեանը խորհրդակցական ժողովի հրաւիրեց հասարակութիւնը, ինչպէս նաեւ քաղաքական կուսակցութիւններու ներկայացուցիչները: Ներկայ էին Սոցիալ–Դեմոկրատները, երկու թեւով, Սոցիալիստ Յեղափոխականները, Դաշնակցութիւնը, ինչպէս եւ հասարակութեան լայն խաւերու համակրանքը վայելող, աչքի զարնող անձնաւորութիւններ:

Արամը, Դրօն ու ես գացինք այդ ժողովին, նախօրօք որոշելով մեր դիրքը: Դիտողի դեր պիտի կատարէինք, մինչեւ որ ժողովականները, իրենք ինքնաբերաբար, նման կործանարար երեւոյթի մը դէմ կռուելու համար դիմէին Դաշնակցութեան օժանդակութեանը: Ժողովականները միաբերան կը հաստատէին այն փաստը, որ Թաթարները, հապճեպով կը զինուին, որ Թաթարներու տրամադրութիւնը հանդէպ հայութեան, եթէ ոչ բացարձակ թշնամութեան, գէթ ակնյայտնի անբարեացակամութեան կը թեքուէր: Ռուսական կառավարութենէն վախ մը չունէին Կովկասի Թաթարները, որ իր աւանդական սիլիբիլին կը շարունակէր անոնց նկատմամբ. իսկ Թուրքերէն՝ ռուսերու համար անյաջող պատերազմական ձախողանքէ մը վերջ նոյնպէս սարսափելու պատճառ մը չունէին, եւ անկասկած է որ սրտովին կը ցան–

կայլն անոնց յաղթական առաջացումը դէպի Կովկասի խորքերը։ Այս հապճեպ զինումը Թրքութեան, անկասկած է որ չունէր ինքնապաշտպանութեան հիմքեր։

Շատեր փաստերով մատնանշեցին այն երեւոյթը որ Թաթարներու զինումը կը կատարուէր, գլխաւորապէս հայերու ձեռքով․ ու այն, որ հայը հետզհետէ ինքնայօժար կերպով կը զինաթափուէր յօգուտ Թաթարներու։

Այդ ժողովին մէջ չեշտուեցաւ անհրաժեշտութիւնը կարուկ միջոցներու դիմելու, այդ վտանգաւոր կացութենէն դուրս գալու համար,— բան մը, որ կրնար աւելի քան աղէտաբեր լինել հայութեան համար։ Բնորոշ էր, որ այդ կարծիքներն ու առաջարկութիւնները կուգային չէզոք տարրերէ․ Դաշնակցութեան ներկայացուցիչները գրեթէ չէին արտայայտուեր, կը լսէին պարզապէս։ Եւ երբ արդէն դրական քայլեր առնելու մասին սկըսան արտայայտուիլ ժողովականները, բնականաբար բոլորի հայեացքը դարձաւ դէպի Դաշնակցութիւնը, որը չնորհիւ իր կազմակերպական խիտ ցանցին, վայելած լայն ժողովրդականութեան, այլ եւ իր ընդունակութեան նման պայմաններ դիմագրաւելու, էր եւ կը մնար միակ կազմակերպութիւնը՝ ընդունակ յաջողապէս կասեցնելու զինաթափման նման ահաւոր աղէտ մը։

Ու ահա, բոլշեւիկ Պօղոս Մակինցեանը, իր աղբերացու Աշոտ Յովհաննիսեանի հետ, hիսթերիկ կատաղութեամբ կը յարձակին ժողովականներու վրայ, ամբաստանելով զանոնք, որ նըման ժողովներով տրամադրութիւն կը ստեղծեն հայ-Թաթարական կռիւները վերսկսելու, եւ Դաշնակցութիւնը՝ որ բաւական չհամարելով 905-906-ի հայ-Թաթարական կռիւները, նոր արիւնահեղութիւններ առաջացնելու կը ձգտի։ Եւ սակայն այս երանելիները, եւ ոչ իսկ օրինակով մը աշխատեցան հերքել Թրքութեան զինման ակներեւ փաստը։ Ախր չէ՞ որ իրենք մաքրակրօն սոցիալիստներ, ինչպէ՞ս կրնային ընդունիլ որ դասակարգային կռուէն դուրս, կրնար ազգային կռիւ մ'ալ գոյութիւն ունենալ, ու այդ ճիշդ այն ժամանակ, երբ գերմանացի եւ ֆրանսացի սոցիալիստները, յանուն ազգի եւ հայրենիքի, զիրար կը յօշոտէին այնքան կատաղութեամբ։

Այս եթէ երէկ էր, այսօր ալ պատկերը շատ տարբեր չէ։ Չէ՞ որ ներկայիս ալ, մեր բոլշեւիկ իշխանաւորները թէեւ անխնայ կը զինաթափեն հայ ժողովուրդը, սակայն, նոյնը չեն համար-

ձակիր ընելու Թաթար ազգաբնակչութեան նկատմամբ...

Նորէն ետ դառնանք:

Կ՚ըսէի թէ՝ կոմիտէ մը երբ բանուորութեան դասակարգային շահերը պաշտպանելու կոչուած էր, միաժամանակ եւ ստիպուած էր մարտիկներ պատրաստել ոչ դասակարգային, այլ ազգամիջեան արիւնահեղ կռիւներու համար: Բայց այս բոլորը չէր: Այդ միեւնոյն կոմիտէն պարտաւոր էր նաեւ կազմակերպել ժողովրդական ընդվզումը, եկեղեցական կալուածներու գրաւման առթիւ. պիտի դիմէր հայ ունեւոր դասին դրամական օժանդակութեան՝ համազգային պէտքերը գոհացնելու համար: Երկրի գործունէութեան համար, հարկաւոր էր դրամ, զէնք, ռազմամթերք, գործիչներ ու զինուորական ղեկավարներ. ասոնք նոյնպէս այդ կոմիտէի կատարելիք գործերն էին: Դատական մարմիններ պիտի ստեղծէր, երբ հայը, որպէս ամբողջութիւն, Կալիցինեան օրերուն, օրէնքէ դուրս էր յայտարարուած: Գաղտնի դպրոցներ պիտի հիմնէր, երբ ցարական կառավարութիւնը վանդալական արշաւանք մը սկսեր էր հայ դպրոցի դէմ: Ժողովուրդի ազգային գիտակցութիւնը պիտի հրահրէր, երբ բոլոր տարրերը մէկտեղած էին մեռցնելու համար հայութիւնը, ըլլար ան ցարական կառավարութիւնը իր դրակոնական կարգերով ու ճնշիչ օրէնքներով, ըլլար ան Սոցիալ–Դեմոկրատ ռուս կուսակցութիւնը, որը ոչ այլ ինչ էր, եթէ ոչ միջազգայնութեան շղարշին տակ թաքնուած համայնակուլ ռուսականութիւն:

Դժբախտաբար, Դաշնակցութեան վիճակուած էր պետութեան մէջ պետութիւն խաղալ,— բան մը, որ ոչ ցանկալի էր, ոչ ալ ձեռնտու: Բայց այդ պարտք մ՚էր, որմէ չէր կրնար խուսափիլ Դաշնակցութիւնը, առանց հայ ժողովուրդին դաւաճանելու: Հասկնալի բան է, որ երբ կուսակցութիւն մը ստեղծուած պայմաններու շնորհիւ, ստիպուած է այդքան ճակատներու վրայ աշխատիլ, ենթակայ կը լինի եւ որոշ սայթաքումներու եւ որպէս յեղափոխական եւ որպէս ընկերվարական կուսակցութիւն: Եթէ ատոր մէջ կար քննադատելի պարագայ մը, այդ ալ ոչ թէ Դաշնակցութիւնը պիտի լինէր որպէս կուսակցութիւն, այլ այն պայմանները որոնցմով շրջապատուած՝ Դաշնակցութիւնը դատապարտուած էր աշխատիլ:

Աժան քննադատութեան սիրահար մեր հակառակորդները, գիտակցելով հանդերձ մեր ողբերգական կացութիւնը, թէեւ

մատ մատի չէին զարներ, օգնելու համար հայ ժողովուրդին, բայց եւ այնպէս բերաննին արշինաչափ բացած, տրամադիր ականջները կը խլացնէին իրենց այսպէս կոչուած քննադատութիւններով:

* * *

Պայմանները այսպէս ըլինելով, Բագուի Դաշնակցական մարմնի մէջ հետզհետէ գերակշռող դիրք մը ձեռք բերած էին խումբ մը երիտասարդներ, որոնք համոզուած սոցիալիստ ըլինելով՝ կ՚ուզէին իրենց գործունէութիւնը տանիլ բացառապէս դասակարգային գետնի վրայ: Առանց ժխտելու սակայն տաճկահայ դատը, անոնք կ՚առաջարկէին այդ հարցը ձգել բոլորովին տաճկահայերուն, միաժամանակ ընդունելով որ՝ իրենք պարտաւոր են նիւթապէս եւ բարոյապէս օժանդակել տաճկահայ դատին: Անոնք Կովկասը կ՚առնէին որպէս ամբողջութիւն. կ՚առաջարկէին Դաշնակցական կուսակցութեան գործունէութիւնը բաժնել երկուքի՝ կովկասահայ եւ տաճկահայ:

Ինքնըստինքեան կուսակցական բաժանում մը չէր այդ առաջարկութեան միտքը, այլ երկու հատուածներու անկախ գործունէութիւն, պայմանաւորուած առանձնայատուկ տեղական պայմաններով, միջավայրի ու հետապնդուած նպատակի յարմարութեամբ:

Հոս միջանկեալ կ՚ուզեմ յիշեցնել ընթերցողին, որ այդ ժողովէն մօտաւորապէս քսաներեք տարի վերջն է որ կը գրեմ, յենուած միմիայն յիշողութեանս վրայ. հետեւաբար, տառացի կերպով չէ որ կ՚արձանագրեմ այդ առաջարկութիւնը, այլ կուտամ ընդհանուր միտքը, կամ աւելի ճիշդ, խումբ մը երիտասարդ պատգամաւորներու մտայնութիւնը:

Առանց այլեւայլի պէտք է ըսել, թէ այդ առաջարկութեան մէջ ոչ մէկ յետին միտք կար: Անկեղծօրէն համոզուած էին այդ երիտասարդները, որ իրենց առաջարկութիւնը գործնական սըրբագրութիւն մ՚էր պարզապէս եւ որ այդ միջոցով կուսակցական մեքենան երկուութենէ ձերբազատուած, սահմանի այս ու այն կողմը, աւելի կանոնաւոր, աւելի բեղմնաւոր կերպով պիտի գործէր:

Թերեւս գործնական արժէք մը ունենար այս առաջարկութիւնը, եթէ հայ կեանքը դասաւորուած չըլինէր այնպէս, ինչպէս

որ էր: Նոյնիսկ Կովկասը, լայն բաժանումներով վերցուցած, չէր ներկայացներ նոյնարժէք ամբողջութիւն մը: Եթէ Բագուն, Թիֆլիսը, Պաթումը, դասակարգային գործունէութեան զգալի հող կը ներկայացնէին, բազմահազար բանուորութեամբ, որուն զգալի տոկոսը հայ աշխատաւորութիւնն էր, սակայն անդին, իսկական հայ շրջաններու տնտեսական ու կուլտուրական կեանքը շատ ալ հեռու չէ գացեր նախկին վիճակէն, ռուսական տիրապետութեան հարիւր տարուան շրջանին: Պաշ-Աբարանը, Նոր-Պայազիտը, Դալարագեազն ու Զանգեզուրը, Արարատեան դաշտն ու Շիրակը, ուրիշ խօսքով, կովկասեան Հայաստանը ամբողջովին հազիւ թօթափած պարսկական տիրապետութեան շրջանի գոյավիճակը, դեռ նոր կը թեւակոխէր համեմատական բարգաւաճ վիճակ մը, որը սակայն Պագուի ու Թիֆլիսի համեմատութեամբ, նմանողութեան եզրեր չունէր բոլորովին:

Ճիշդն ըսած, Երեւանն ու Ալեքսանդրապոլը, Էրզրումի ու Վանի հետ համեմատած, շատ ալ աչք ծակող տարբերութիւն մը չունէին: Ուրեմն, այդ շրջաններու մէջ իսկ, Դաշնակցութեան գործունէութիւնը, լայն կերպով վերցուցած, պիտի բնորոշուէր «ազգաշինութեամբ», այդ բառի լաւագոյն առումով,— բան մը, որ ոչինչով չէր խաչաձեւեր տաճկահայ գործունէութեան:

Ասկէ դուրս կար եւ այն վտանգը, որ նման որոշում մը կարող էր հոգեբանական բեկում առաջացնել կուսակցական շարքերու մէջ,— բան մը, որ կրնար համազօր լինել կուսակցական պառակտումի:

Հին, փորձուած ընկերները, եթէ նոյնիսկ տեսականօրէն որոշ չափով իրաւացի կէտեր կը գտնէին երիտասարդներու առաջարկութեան մէջ, բայց եւ խորապէս կ'ըմբռնէին այդ առաջարկութեան տակ թագնուած վտանգը գործին ու կուսակցութեան համար: Այդ էր պատճառը, որ սկիզբէն իսկ ուժգնօրէն հակառակեցան այդ առաջարկին: Հներու հակառակութիւնն իսկ պատճառ դարձաւ աննախընթաց պայքարի մը:

Երիտասարդները աւելի բազմաթիւ էին. եթէ բանը գար քուէարկութեան, անշուշտ որ անոնք պիտի շահէին: Բայց այդ լաւ օրերուն, Դաշնակցութեան մէջ, վեր բարձրացած ձեռքերէ աւելի բան մը հարկաւոր էր տեսակէտ մը անցկացնելու համար: Այդ էր պատճառը, որ երկու կողմերն ալ երկարաշունչ ճառերով զիրար կ'ուզէին համոզել: Մենք պիտի չմոռնանք, որ այդ Ռայոնական

Ժողովը տեղի կ'ունենար ռուսական յեղափոխութեան թարմ շունչի ազդեցութեան տակ: Այս եւ դեռ շատ մը ուրիշ ձախու-թիւններ բնական տուրքն էին, որ Դաշնակցութիւնը պիտի վճա-րէր «ռուսական մեծ յեղափոխութիւն» ըսուածին:

Այդ հարցը երկու նիստի նիւթ եղաւ եւ շատ արխին պղտո-րեց: Այդ երկու նիստերուն նախագահն ալ մեր սիրելի Խաժակն էր, որ որպէս կողմ, անկողմնակալ նախագահ մը չկրցաւ ըլլալ:

Յաջորդ նիստը տեղի պիտի ունենար Միքայէլեան փողոց, Մանասենց տանը: Ես իմ վախկոտ բնաւորութեամբ շատ սարսա-փած էի եղածէն: Ինծի կը թուէր, թէ կուսակցութիւնը արդէն կը քանդուի, ու եթէ ինծի մնար ես ուրախութեամբ կը համա-ձայնէի հակառակորդները կախաղան բարձրացնել: Այս տրա-մադրութիւնը հետեւանք էր որքան իմ պահպանողականութեան, նոյնքան ու թերեւս աւելի իմ խամութեան՝ կուսակցական կեան-քի մէջ: Եւ զոռ տալով գլխուս՝ գիւտ մը ըրի. ու իմ միտքս ո-գեւորուած՝ մօտեցայ Արմէն Գարոյին, որ նոյնպէս շմորած էր:

— Չե՞ս կարծեր, որ վաղուան նիստին եթէ Եուսուֆը բերենք լաւ կը լինի:

— Լաւ կը լինէր, — պատասխանեց Գարօն, — բայց ան ալոց հետ խռոված է, ու ժողովին չի գար:

— Լաւ, — ըսի ու բաժնուեցանք իրարմէ:

Եուսուֆի գիւտը ըրի անոր համար, որ այդ առաջին ժողովի մէջ շատ համով ու անհամ ճառեր խօսուեցան: Դաշնակցութեան ծանր հրետանին ալ առաջ քաշուեցաւ. ըսել կ'ուզեմ՝ հները ի-րենց բոլոր հեղինակութեամբ, փորձառութեամբ, կուսակցական ցենզով, հրապարակ իջան, խօսեցան, պայքարեցան առանց յա-ջողութեան սակայն: Ընդդիմադիրները, զօռ տուած իրենց պլպը-լան լեզուին, նժարը իրենց կողմը կը ծանրացնէին: Ես ալ բնա-կանաբար մտածեցի որ, եթէ բանը լեզուի զօռի վրայ է, ձեր հախէն Եուսուֆը կուգայ: Միաժամանակ ափսոսանքով կը մը-տածէի, որ Վռամեանը հեռաւոր Ամերիկա կը գտնուէր: Կար-ծեմ, աւելորդ է ըսել, թէ այն ժամանակ թէեւ շատ երիտասարդ, բայց հներու կողմն էր իմ համակրանքը:

* * *

Այդ օրերուն, Եուսուֆը Նոր-Բայազիտէն Թիֆլիս էր եկած,

չկրնալով տանիլ այդ շրջանի խստաշունչ կլիման, մէկ ալ որ ընելիք բան մը չունէր հոն: Իր հայրենակիցները կարծելով թէ ռուսական յեղափոխութեան շնորհիւ, ցարական կառավարութիւնը կարճատեւութեան հիւանդութենէն բռնուած է, որպէս գնահատութիւն իրենց մեծարժէք համաքաղաքացու յեղափոխական եւ հասարակական անձնուէր գործունէութեան, առօք փառօք Եուսուֆը Նոր-Պայազիտի քաղաքագլուխ ընտրած էին — եթէ նոյնիսկ Նոր-Պայազիտը քաղաք մը լինելէ շատ հեռու էր — բան մը, որ կատարելապէս իրենց իրաւունքն էր: Կառավարութիւնն ալ, որ թէեւ չափով մը կրնար հանդուրժել մեծ կեդրոններու յեղափոխական մարզանքներուն, բայց սաստիկ կը ջղագրգռուէր, երբ նոյնը փորձէր ծայրագաւառի մը յետ ինկած գաւառը: Հետեւաբար, առանց այլեւայլի բեկանելով եղածը, նոր ընտրութեան հրահանգ կուտար: Այս ալ բան մըն էր, որ կը պատշաճէր ցարական կառավարութեան իրաւունքներուն:

Ի հարկէ, գաւառը սաստիկ վրդոված էր կառավարական անհարկի միջամտութեան դէմ, գտնելով այդ բռնապետական կամայականութիւն եւ անարդարութիւն: Թէեւ ինքնին արդարացի կրնայ չլինիլ ցարական կառավարութենէն աւելի արդար վերաբերում մը սպասելը: Սակայն եւ այնպէս, խոստովանինք հոս, որ այդ ընտրութեան պատճառով ոչ ոք ոստիկանատան մէջ խոշտանգուեցաւ, ոչ ոք բանտի երեսը տեսաւ, ոչ ոք մինչեւ Սիբիրի սառնամանիքները ճամբրդելու հարկադրուեցաւ: Իսկ եթէ ներկայիս, Նոր Բայազիտը փորձուէր յայտնի Դաշնակցական մը ընտրել որեւէ բարձր պաշտօնի, արդեօք ի՞նչ կրնար սպասել կոմունիստական երանելի կառավարութենէն: Կարծեմ մեծ երեւակայութեան կարիք չկայ պատկերելու համար պատահելիքը:

Եուսուֆը, Ֆիզիքապէս բոլորովին քայքայուած, եկեր էր Թիֆլիս եւ վանքի եկեղեցիին մօտիկ, սաստիկ նեղ ու աղքատ փողոցի մը մէջ, ուր տները անհարկի կերպով իրար շալակ բարձրացած էին, երկու սենեակ էր վարձեր: Հոն կ'ապրէր իր քրոջը հետ սաստիկ նեղ պայմաններու մէջ:Նեղ սանդուխը, որ կը տանէր Եուսուֆի յարկաբաժինը, ողբագին կը հեծէր ամէն անգամ, երբ մարդ փորձուէր վեր բարձրանալու: Ես սոէպ կ'երթայի Եուսուֆի մօտ: Նախ որ իր աշակերտն էի եղած Տրապիզոնէն. ապա՝ որ յեղափոխութեան մէջ ալ իր աշակերտ Արտաշէս Դեւանի աշակերտն էի. երկրորդ որ, չարաբաստիկ ամերիկեան

գործունէութեան շրջանին մեր տունը իրեն համար անապատի մէջ ովասիս մըն էր եղած. եւ վերջապէս, կարծեմ իմ վրաս աւելի մեծ համարում մը ունէր, քան որ ես կ'արժէի:

* * *

Միւս առտու կանուխ ըստ սովորութեան ղալմաղալով Եուսուֆեանի մօտ ներս ինկայ: Դեռ բարի լոյս չըսած, մէկ շունչով պատմեցի անոր նախորդ նիստի մէջ տեղի ունեցածը: Եուսուֆը, երեսբացը նստած, անգլիական շալը ուսերուն, արեւի լոգանք կ'առնէր. համբերութեամբ մտիկ ըրաւ զիս, բայց երբ յայտնեցի, որ եկեր եմ զինքը ժողովի տանելու, որպէսզի իր արժէքաւոր խօսքը ըսէ, ան յանկարծակիի եկած՝ բացասաբար շարժեց գլուխը: Խնդիր, աղաչանք օգուտ մը չըրին: Չէ ու չէ, հոն, ժողովի մէջ մարդիկ կային, որոնց չէր ուզեր տեսնել իսկ:

Պարզ էր, չէ՞:

Ես ալ սաստիկ յուզուած, ըսի անոր, թէ իրենք, որ մեր մեծերը պիտի լինին, երբ անձնական մանր մունր խնդիրներով քէն կ'ընեն իրար հետ, ի վնաս գործի, մեզ ուրիշ բան չի մնար ընելիք, եթէ ոչ վերադառնալ նորէն Ամերիկա, ուրկէ իրենց քարոզչութիւնն էր բերած մեզ, մինչեւ հեռաւոր երկիրը: Լեզուիս պակասն ալ լրացուցին աւելի քան պերճախօս արցունքներս, որ այդ օրերուն շարժապատկերի դերասանի ապսպրուած արցունքներու նման, միշտ պատրաստ էին առատօրէն յորդելու:

Խեղճ Եուսուֆը տասը շահի ալ ինքը պարտական մնաց. գըրկեց համբուրեց, աշխատելով զիս հանգստացնել, եւ ըսաւ որ ի հարկէ հետս ժողովի կուգայ: Ու կառք նստելով, առօք փառօք յաղթական զօրականի մը ինքնաբաւականութեամբ զինքը ժողովի տարի: Ընդհանուրի զարմացման մէջ, Եուսուֆին աթոռ մը ճարուեցաւ նստելու, այնքան որ ժողովը բազմամարդ էր, ու մեծամասնութիւնը ճաշարահին մէջ ոտքի էր մնացեր:

Ծանր հրետանին արձակեր էր իր վերջին ռումբը, առանց նպատակակէտին զարնելու: Եւ սնանկացած վաճառականներու նման թափ կուտային ուսերնին, երիտասարդ ընդդիմադիրներու յախուռն յարձակման դիմաց:

Խաժակը վերջին խօսքը տուաւ Եուսուֆին, յայտնելով միաժամանակ, որ խօսողներու արձանագրուած ցանկը վերջացած լինելուն, այլեւս նոր խօսք ուզողներու ձայն պիտի չտայ եւ ուզ-

ղակի պիտի անցնի քուէարկութեան:

Եուսուֆը վերջին յոյսն էր:

Եւ Եուսուֆը ոտքի ելաւ:

Եւ Եուսուֆը խօսեցաւ:

Ու բարով խերով չխօսէր: Տեղս սմքած, ինքնիրենս կ'ըսէի· «Տօ՛, տնաքանդի տղայ Մալխաս, փոխանակ մէկ յօնքը շինելու, երկու աչքն ալ մէկանց հանեցիր»:

Եուսուֆը, որ շատ բարի տրամադրութիւններով եկաւ հետս, յանկարծ կարծես թէ ցուլի մը նման կարմիր շորի շարժումէն գայրացաւ: Արդէն բնաւորութեամբ քիչ մը կրքոտ, շատկեկ մ'ալ զառնացած ընկերներէն, փոխանակ ըստ էութեան հարցի մասին խօսելու, բացաւ բերանը, ալ հինն ու նորը իրար խառնեց, ալ Բիւրոյի հին խնդիր, 97–98 թուականներու պատմութիւն: Բոլորը զարմացած իրար կը նայէին, շատեր չէին հասկընար իսկ, թէ Եուսուֆը ի՞նչ կ'ըսէ:

Սիմոնը (Զաւարեան), որ գլուխը յենած սեղանին, եւ ոչ իսկ բառ մը արտասաներ էր ամբողջ օրը, զայն հանդարտեցնելու համար ըսաւ·

— Լաւ, լաւ, Եուսուֆ, հին զարմանը քամիին մի տար:

Երանի թէ Սիմոնը բերանը չբանար· պենզինով հրդեհ մարելու նման հետեւանք մը ունեցան անոր խօսքերը:

Ջուրն ինկած կատուի պէս կը զգայի ես: Մէկ ալ Գարօն, սենեակի միւս ծայրէն քովս եկաւ եւ կամացուկ մը մուշտի մը զետեղելով կուշտիս՝ ըսաւ·

— Քեզ չըսի՞ որ Եուսուֆը չբերես:

— Ինչպէ՞ս թէ չբերէի:

Ու զարմացած երեսը նայեցայ:

Չէ՛, այն ատեն մտքէս իսկ չէի կրնար անցնել որ տարիներ վերջը մեր Գարօն դիւանագէտ մը պիտի լինէր:

* * *

Խօսք պահանջողներուն Խաժակը այլեւս ձայն չտուաւ, եւ կարծես թէ քուէարկելու կը պատրաստուէր, երբ Սիմոնը, հանդարտ, առաքելական վեհափառութեամբ ոտքի ելաւ, աչքերը առաստաղին, դէմքը տառապած եւ գունաթափ, բայց անհնարին գեղեցկութեամբ փայլուն, խօսեցաւ աւելի քան մէկ ժամ, խոր,

պատկառոտ, ինքնամոռացման հասնող մեռելային լռութեան մէջ։

Տառապանքով երկու օր մտիկ էր ըրած · մտիկ էր ըրած ե՛ւ հներուն ե՛ւ նորերուն, ու սիրտը արինած էր։ Ձայն չէր ուզած, բնականօրէն տեղէն բարձրանալով սկսեր էր խօսիլ։ Ու մի՞թէ կարիք կար խօսք խնդրելու։ Սիմոնը կը խօսէր իր հսկայ բարոյական մեծութեամբը տիրապետող · Սիմոնի բերնով Դաշնակցութեան հոգին ու խղճմտանքը կ՚արտայայտուէր։ Դեռ աւելին, հայ ժողովուրդի հարազատ ձայն էր ան, սրտբաց, խոր հաւատքով, պաշտամունքով առլցուն, որ պէտք էր արտայայտուէր։ Այդ ձայնը պէտք է լսէին բոլորը, ե՛ւ հները ե՛ւ նորերը։ Ու այդ ըմբռնողութիւնը այնքա՛ն բնական էր, որ նոյնիսկ Խաժակը, մէկդի դրած իր սովորական ցինիզմը, պատկառոտ կը հետեւէր անոր խօսքերուն։ Խօսքի ուժէն աւելի, բարոյական անզուգական գեղեցկութեան բացարձակ տիրապետութիւնն էր այդ, որու դիմաց պէտք է լռէին բոլոր հակամարտութիւնները, տեսական տարբերութիւնները։

Սիմոնը կը խօսի · երկիւղածութեամբ լուարուք։

Ու ան, առաջին դարերու հալածական, տառապած առաքեալի մը նման, մէկ ձեռքը յենած սեղանին, աչքերը վեր ամբարձած, շրջապատուած «աշակերտներով», բանին զօրութեամբը գօտեպնդուած, Դաշնակցական վարդապետութեան էութիւնը, իսկական անդիր հոգին կը բացատրէր, խոր, յուզումով թրթռուն ձայնով մը, որ կարծես անցեալէն յետ կ՚արձագանգէր։ Կը խօսէր մարգարէի մը նման, որ անմիջականօրէն իր ունկնդիրներուն չէր որ կը պատգամէր, այլ անոնց վրայով բոլոր հայրենասէր, ազնուական սրտերուն, բոլոր սրտցաւ ժողովրդասէր հոգիներուն, այդ օրուան ու գալիք բոլոր օրերուն համար։

Մարգարէական մեծ շունչով մը, պարզ ու պայծառ, Սիմոն վրդովուած կը ժխտէր արհեստական սահմաններու գոյութիւնը, որոնք չէին հիմնաւորուած ոչ պատմական, ոչ կուլտուրական, ոչ հոգեկան տուեալներով։ Մէկ էր հայ ազգը, անբաժանելի ամբողջութիւն մը, ու անոր ամէն մէկ բռնադատեալ, քաղաքական հատուածը՝ անհրաժեշտութիւն, ամբողջութեան գոյութիւնը պահպանելու համար։ Մէկ հատուածի տկարացումը անխուսափելի կերպով պիտի անդրադառնար միւսի վրայ եւս։ Ըստ երեւոյթին, քաղաքական սահմանագծերը առաջացուցեր էին այդ

հատուածներու մէջ մտաւոր, հոգեկան աններդաշնակութիւն, կենցաղական տարբերութիւններ: Բայց այդ տարբերութիւնները կը չքանային, կը չքանային նաեւ անհարազատ սահմանագծերը, ու մէջտեղ կը մնար ընդհանուր ազգային հիւանդագին գոյավիճակ մը, սայթաքուն մակարդակի վրայ դրուած, որ կը գահավիժէր դէպի կործանում:

Սահմանի այս ու այն կողմը ահաւոր վտանգ մը կը սպառնար, թէեւ իր ձեւերով տարբեր, բայց հետեւանքով նոյնը: Կովկասի մէջ՝ աստիճանական ռուսացում, իսկ անդին՝ տաճկական բռնակալութիւնը, իր ահարկու եաթաղանով: Ու ամէնուն համար նոյն հրամայական անհրաժեշտութիւնը՝ կասեցնել անկման ընթացքը, չեղել ազգային նաւու ղեկը դէպի նաւահանգիստը, դէպի ազգաշինութիւն: Եւ Դաշնակցութեան իսկական առաքելութիւնը ատոր մէջ իսկ կը կայանար:

Սիմոնը իր ճառը վերջացուց հետեւեալ մտքով, որ տաճկահայութիւնն էր հայութեան կորիզը, որ առանց անոր բարոյական արժէքին կովկասահայութիւնը կորած էր, որ տաճկահայ դատը հատուածի մը դատը չէր, որ ան գերազանցօրէն համազգային էր, հետեւաբար անբաժանելի:

Մօտաւորապէս այս էր Սիմոնի ճառի միտքը: Ոչ մէկ ճառ, երբեւիցէ չէ ձգած այնքան խոր, այնքան տեւողական ազդեցութիւն իմ վրաս, որքան այդ մեծ ճառը: Քսան երեք տարիներ անցեր են այդ օրէն: Բայց ես պարզ ու յստակ կը տեսնեմ յիշողութեանս մէջ Սիմոնը, Սինա բարձրացած մարգարէն, որ կը ձըգտէր իր հարազատ ժողովուրդը Աւետեաց երկիրը հասցնել:

Ես այն դժբախտներէն եմ, որ քիչ թէ շատ ծիծաղելի կողմ մը կը գտնեմ միշտ հերոսի մը մէջ, ու խնդուքս թոյլ չի տար, որ իմ մէջս հերոսի մը դէմքը ամբողջանայ: Միշտ բան մը պակաս կը մնայ, կատարեալ ամբողջութիւն մը կազմելու համար:

Միակ մարդը, որմէ պատկառած եմ, որուն հերոսացուցեր եմ հոգուս խորքը մանկութենէս սկսած, այս Սիմոնը եղաւ: Հսկայ մը, որ հայկական միջավայրի նման նեղ ու սահմանափակ ասպարէզի մը մէջ գործեց: Ու ո՞վ զարմանք, մեռաւ աղքատ, ծակոտած կօշիկներով, բայց եւ ամբողջ ազգ մը իր կորուստը ողբաց: Պոլսէն մինչեւ Կովկաս, հայութիւնը որպէս մէկ մարդ գլխարկը վար առաւ պատկառանքով.

— Այսօր հայ ժողովուրդը մարդ մը կորսնցուց:

Ու հայ պատմութեան մէջ քանի՞ մարդ կրնանք գտնել, որու համար միեւնոյն խօսքը կարողանայինք ըսել։

Այնքան խոր էր Սիմոնի ճառի ազդեցութիւնը ընդհանրապէս բոլորի վրայ, որ երբ ան յոգնած, ցրուած հայեացքով, հանդարտ տեղը նստաւ, ոչ ոք նոր ըսելիք մը ունէր այլեւս։ Շշմած տրամադրութիւն մը կար. կարծես քնէ նոր արթնցած, ժողովականները հարցական իրար կը նայէին.

— Հը՞ մեր տղայ, բանը ինչո՞ւմն էր։

— Ախըր Սիմոն, էդ ճառը առաջուց չէ՞ր կարելի ասել։

Ու այդ ալ եղաւ լակոնական դամբանականը նոր առաջարկութեան, որ երկու օր միայն ապրեցաւ պաղ ու տաք ճառերու մէջ ու մահկանացուն կնքեց, առանց հետք մ'իսկ ձգելու։

Հայ-թաթարական կռիւները թէեւ վերջնականապէս չէին դադրած, բայց մեծապէս կորսնցուցած էին իրենց ուժգնութիւնը. տեսակ մը զինադադար էր երկուստեք։

Ընդհանրապէս երբ հայ-թաթարական կռիւներու մասին խօսք կը լինի ու կը չեշտուի այդ կռիւներու բացասական կողմը, գրեթէ ոչ մէկ խօսք կ'ըսուի անոր առաջացուցած շատ դրական հետեւանքներու մասին. բան մը, որ պէտք է վերագրել ազգային ունակութիւն դարձած լալկանութեան։

Ճիշդ է, որ մարդկային կորուստներ ունեցանք, մասնաւորաբար սկզբնական շրջանին, երբ բոլորովին անպատրաստ էր կովկասահայը, եւ չէր կրնար հաշտուիլ այն գաղափարին հետ թէ, հայկական կոտորած մը կրնայ տեղի ունենալ կառավարութեան աչքին տակ։ Ճիշդ է, որ մեծ նիւթական կորուստներու ենթարկուեցանք։ Բայց կասկածէ դուրս է, որ այդ կռիւները, որ մօտ երկու տարի տեւեցին, զարմանալի կերպով ուղղեցին հայու կորացած մէջքը եւ ուժգին թափով մը նպաստեցին ազգային գիտակցութեան արթնցման Կովկասի մէջ։

Կառավարութենէն լքուած, նոյնիսկ անոր անբարեացակամ չէզոքութեան ենթարկուած՝ հայ ժողովուրդը հարկադրուեցաւ այդ անակնկալ վտանգի դէմ կանգնիլ՝ ապաւինելով միմիայն ինքն իր ուժերուն։ Եւ ինքնավստահութեան զարմանալի կերպով մը ան կուրծք տուաւ թշնամիին։ Ցրուած գրեթէ ամբողջ Կովկասի մէջ, առանց ներքին անմիջական կապի մը, հայ-թաթարական կռիւներու ընթացքին, ամբողջ հայութիւնը անխտիր մէկ

միապաղաղ ճակատ կազմեց. երեւոյթ մը, որ շատ քիչ անգամ էր տեղի ունեցած մեր երկարատեւ պատմութեան ընթացքին: Պաթումէն մինչեւ Բագու, Ջաքաթալայէն մինչեւ Երեւան Հայութիւնը սերտ ամբողջութիւն մը կազմեց, բարոյական մեծ ուժ մը, որ որպէս ազգային շաղախ, իրար միացուց ցրուած հատուածները: Ու ատոր շնորհիւ միայն, հայ ժողովուրդը կըրցաւ անխորտակելի ուժ մը դառնալ, յաջողապէս դէմ կանգնելով Թրքութեան կատաղի յարձակումին, որոնք թուական արժէքով աւելի բազմաթիւ էին, աւելի լաւ զինուած, աւելի ընդունակ զէնք գործածելու:

Սակայն, ամէն բանէ աւելի դրական պէտք է համարել այն բարոյական մեծ արժէքը, որ դարերու մեր դրկից Թաթարները հոգեբանօրէն պարտաւորուեցան տալու իրենց երէկի չարչի համարած հայ հարեւանին: Կարծես թէ մէկ օրէն միւսը՝ Կովկասի մէջ նոր արժէք մը աւելցաւ. նոր արժէք մը, որը մեր երկու գլխաւոր դրացիները՝ վրացիներն ու Թաթարները ստիպուած էին այլեւս հաշուի առնել:

Մինչ այդ՝ հայը արժէք մ'էր տնտեսական իմաստով, բայց որպէս ազգային ինքնուրոյն տարր մը, հաւասար հողի վրայ չէր կանգնած իր դրկիցներուն հետ: Լաւագոյն պարագային մենք մէկն ու մէկին անփառունակ պոչը կը կազմէինք, ու այդքան միայն:

Եկեղեցական կալուածներու գրաւման փոթորիկէն վերջը, որ կիսովին ռուսացած հայութեան ազգային զարթօնքի ազդանշանը տուաւ, հայ-թաթարական կռիւները անհրաժեշտ լրացուցիչ միջոցը դարձան հիմնաւորելու ազգային գիտակցութիւնը, արժէքաւորելու զայն գործնականօրէն: Ու իսկապէս, այդ երկու ազդակները մեծապէս յեղաշրջեցին կովկասահայ կեանքը, նոր չափ մը տուին, որ մինչեւ այդ գոյութիւն չունէր, վերադնահատելու հայու արժէքը Կովկասի մէջ:

Բայց կար եւ ուրիշ կարեւոր հանգամանք մը, որ անտես առնել չենք կրնար: Այդ՝ այն սերտ գործակցութիւնն էր, որ բնականաբար առաջ եկաւ տաճկահայ եւ կովկասահայ հատուածներուն միջեւ: Մինչեւ հայ-թաթարական կռիւները, կովկասահայը տաճկահայուն վրայ կը նայէր, որպէս սահմանի միւս կողմը գտնուող իր խեղճ ազգակիցներուն վրայ, որոնց հարկ էր օգ-

նել, որոնց համար պէտք էր գործել, նուիրել ու զոհաբերել: Այս հոգեբանական խնամակալութիւնը առաջ կուգար գլխաւորաբար այն պատճառով, որ մինչ այդ, կովկասահայը լսեր է Հայաստանի փուլումի մասին, կոտորածներու մասին, Թշուառութեան մասին, ու այդքան միայն:



ՀԱՄԱԶԱՍՊ

Հայ — Թաթարական կռիւները եկան այս ոչ ցանկալի ըմբռնողութիւնը հիմնովին փոխելու: Այլեւս միայն մէկ կողմը չէր որ կուտար միշտ, այլ եւ ապարագայի համեմատ կուտար ու կը ստանար, առաջ բերելով հատուածներու բարոյական արժէքի հաւասարեցում:

Ամբողջ հայ — Թաթարական կռիւներու ընթացքին, տաճկահայ խմբապետները, զինուորները, ահագին եւ վճռական դեր կատարեցին: Ղարաբաղը ի զուր չէր որ կ՚երգէր իր «Համազասպը պանծալի», որ Ասկերանի քով խումբ մը կտրիճներով կուրծք կուտար դաշտարնակ Թաթարներու հազարաւոր ամբոխի դէմ, արգիլելով անոնց մուտքը դէպի լեռնային Ղարաբաղ: Դաւալուի շրջանը, աննման Սէյտօն, այդ անօրինակ կռուողը, տեղական ուժերով օրհասական կռիւ կը մղէր Թաթար հորդաներուն դէմ: Նախիջեւանի շրջանի մէջ, Թաթարութեան աւազակաբոյն Ջարայի գրաւման ժամանակ, անմահ Ասլանը, առաջապահներու գլուխը անցած, գրոհ կուտար դէպի Թշնամիի դիրքերը, ուր եւ վաստկեցաւ մարտիրոսութեան անմահ դափնին:

Դիւցազներգական երգ մը դարձաւ վահագնեան հերոս՝ Սեբաստացի Մուրատի կռիւները Լեռնահայաստանի մէջ։ Հոն էին հին փորձառուները մեր հայդուկային կռիւներուն՝ Սեպուհը, Կայծակ Առաքելը, Աւօն, Հաճի Գէւօն, Սորփեցի Գուրգէնը, Ղասապ Արամը, Վարժապետը, Կոտոյի Հաճին, Հասրաթը, ու անվերջ շարան մը խմբապետներու եւ զինուորներու։



ՀԱՍՐԱԹ, ............ ԱՍԼԱՆ ԱՐԱՄ

Ասիկա ոչ միայն տուրք մ'էր տաճկահայերու կողմէ ռուսահայերուն, այլ վերացումը պետական սահմանագծի մը, արհեստականօրէն քաշուած նոյն ժողովուրդի երկու հատուածներուն միջեւ. սահմանագիծ մը, որ չէր զօրեր բաժնուած պահելու հայութիւնը, երբ ահաւոր վտանգ մը կը սպառնար մէկ մասի ֆիզիքական գոյութեանը։

* * *

Այսպէս ուրեմն, երբ հաշուեյարդարի կ'ենթարկենք հայ-թաթարական կռիւները, առանց վայրկեան մ'իսկ տատանուելու, պէտք է ընդունինք, թէ, ի նկատի ունենալով այն բարոյական մեծ արժէքը, որ վաստկեցանք, այն տեղը որ մենք գրաւեցինք Կովկասի մէջ, եւ որ գլխաւորն է, այն հոգեկան փոփոխութիւնը որ առաջացաւ հայ ժողովուրդի մէջ, հակառակ մարդկային ու նիւթական մեր կրած վնասներուն, ՀԱՅ-ԹԱԹԱՐԱԿԱՆ ԿՌԻՒՆԵՐԸ ԻՐԵՆՑ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐՈՎ ՄԵԾԱՊԷՍ ԴՐԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱՇԻՆԱԿԱՆ ԱՐԺԷՔ ՄԸ ԵՂԱՆ։ Գիտեմ, որ իմ այս տեսու-

թինը չի բաժնուիր շատ շատերու կողմէ, որոնք մարդկային զոհերէ ու տասնեակ մը քանդուած գիւղերէ անդին չեն կրնար տեսնել: Փաստ է, որ ռուսական հարիւրամեայ տիրապետութեան ընթացքին մենք աւելի պայծառ, աւելի յուսատու շրջան մը չենք ունեցեր, քան 1903–1906 թուականը, հակառակ որ ծխացող հայկական գիւղեր, այլանդակուած մարդկային դիակներ քիչ մը ամէն տեղ կ'երեւէին: Երբ շատեր աղաղանքը կուտային հայութեան մօտաւոր վախճանին, ի հարկէ սխալմամբ, երբ այդ բանը պէտք էր ընէին աւելի առաջ, Կովկասի մէջ իրօք կուիներու եւ բոցերու մէջէն կը դարբնուէր նոր հայութիւնը, ինքնավստահ առնականութեամբ լեցուն, իր կարողութեանը եւ արժէքին գիտակից:

Առանց պարծենկոտ ինքնագովութեան, այլ պատմականօրէն եւ փաստացիօրէն հիմնաւորած, պէտք է ըսենք համարձակ, որ հայ ազգը առանց ազգային զօդող կապի, կուռ ընդունակութեան, ունեցած ուժերու կեդրոնացնելու միխանիզմի մը, հազիւ թէ կարողանար այդ ահաւոր վտանգը կասեցնել ու դեռ յաղթական ալ դուրս գալ, եթէ գործի գլուխը կանգնած չլինէր Հայ Յեղափոխական Դաշնակցութիւնը:

Ուրիշ տեղ մ'ալ ըսած եմ կարծեմ թէ՝ եթէ միայն այսքանը կատարած լինէր Հ. Յ. Դաշնակցութիւնը, այդքանն իսկ բաւական պիտի լինէր արդարացնելու եւ արժէքաւորելու անոր գոյութեան իրաւունքը:

* * *

Անցնինք այժմ մեր պատմութեան շարունակութեանը:

Վահանին դեռ Ժընեւէն ծանօթ էի: Բայց Պարսկաստանի մէջ մեր հանդիպումը, անկէ վերջ Կովկասի մէջ մեր երկարատեւ ընկերակցութիւնը սերտօրէն մեզ իրարու կապեց: Սարգիսը նոր դէմք մ'էր ինծ համար, թէեւ անոր մասին դեռ Ժընեւէն գիտէի: Իմ խանդավառուող բնաւորութեամբ, ես խորապէս կապուեցայ նաեւ անոր հետ: Այդպիսով կազմեցինք երեք հրացանակիրներու նման սերտ ընկերակցութիւն մը:

Գրեթէ միշտ միասին էինք, ժողովներու մէջ, ու ազատ ժամերուն: Երեքով կը բնակէինք Թիֆլիսի յետ ինկած պանդոկի մը թափուր մէկ սենեակին մէջ, ուր բացի երկաթեայ երեք մահճակալներէ ու փայտէ երկու աթոռներէ ոչինչ կար աչքի զարնող:

Բայց որքա՛ն ուրախ, որքա՛ն երջանիկ էինք մենք։ Թէեւ կէս կուշտ, կէս անօթի, բայց երբ Սարգիսի հնչեղ ծիծաղը կը պոռթկար անզուսպ, ո՞վ էր մտածողը վաղուան մասին։

Որպէս կուսակցական գործիչներ, ի հարկէ, մենք կ'ապրէինք կուսակցական միջոցներով։ Վահանը ու Սարգիսը շատ աւելի զուսպ էին, աւելի խնայող,— բան մը, որ դժբախտաբար չեմ կրնար ըսել իմ մասին։ Մեծ պատրաստակամութեամբ կ'երթայինք ընկերներու կամ բարեկամներու հրաւէրներուն, պատուելով անոնց սեղանը, ինչպէս վայել է սրտագին բարեկամներու,



ՎԱՀԱՆ ՍԱՐԳԻՍ ՄԱԼԽԱՍ

որոնք շատ ալ վստահ չեն վաղուան կանոնաւոր ճաշի մը։

Մեր մէջ ամենէն ռեզերւով Վահանն էր։ Սարգիսն ու ես շատ բարակը չէինք մաներ։ Թարմ երիտասարդներ, ատոր վրայ աւելցուցած յեղափոխական գործիչի հանգամանքը, որոշ գրաւչութիւն մը տուած էին մեզ։ Հաւաքոյթներու երեկոյթներու անխուսափելի զարդն էինք դարձած, ու բնականաբար օրիորդներու եւ տիկիններու սիրելի հիւրերը։

* * *

Այդ ժամանակ էր որ մենք ծանօթացանք Դեւի հետ, կամ աւելի ճիշդը մտերմացանք իրարու այն խանդավառութեամբ, որ յատուկ է երիտասարդական տարիքի:

Մինչեւ այդ ժամանակ Դեւը, իսկական անունով Թադէոս Խաչմանեան, սոցիալիստ–յեղափոխական էր, առաջնակարգ հռետոր մը, որ ընդունակ էր հիպնոսացնելու հասարակութիւնը, կատարել տալ անոր ամէն խելագարութիւն:

Այդ երիտասարդը հազիւ քսան եւ չորս տարեկան կը լինէր: Ունէր սեւ սեւ մազեր, մագաղաթի գոյն դալուկ դէմք մը, որու զարդն էին զարմանալիօրէն կենդանի եւ փայլատակող գիշերի նման սեւ աչքերը:

Այդ վտիտ մարմնով եւ թափթփած արտաքինով մարդը, այդ ժամանակ ամբողջ Թիֆլիսի ամենաժողովրդական հռետորն էր:

Ռուսական յեղափոխութեան որոտումի մէջէն փայլակով մըն էր ծնած եւ մէկ օրէն միւսը դարձած ամբոխի մարդը, անոր կուռքը: Երբ հսկայ բազմութեան մը առաջ կանգնած նիհար թեւերը թափահարելով, բառերու հեղեղ մը դուրս կուտար, ամբոխը մոլեգնած ծովի մը նման կ՚ալեկոծէր: Ի՞նչ կար անկարելի այդ վայրկեաններուն: Ոչինչ: Կեցցէ՛ Դեւը, հուռռա՜ Դեաւս (ռուսերէն դեւ)...

Այս զարմանալի երիտասարդը, որ անսանձ կատաղութիւն մ'ունէր խօսած ժամանակ, անհամեմատ աւելի հեշտութեամբ ռուսերէն կը ճառէր քան հայերէն, թէեւ տաճկահայ մ'էր, բնիկ Սեբաստացի, Մուրատի ազգականներէն: Մանկութեանը եկած Կովկաս, յաջողեր էր մտնել Ներսիսեան վարժարանը, որ աւարտելէն վերջ ձեռք էր առած Ռուսաստանի ճամբան: Թափառաշրջիկ հօպոյի մը նման, առանց գործի... ու դրամի, հազարաւոր մղոններ քալեր էր, կէս կուշտ կէս անօթի: Ներսիսեան վարժարանի մէջ չսովրածը կեանքը ինքն էր սովրեցուցած անոր:

Կողք կողքի մուժիկի հետ, իր աստանդական թափառումներու ժամանակ գիւղէ գիւղ, տեսած ու ապրած էր անոնց կեանքը: Դիտելու մեծ կարողութեամբ օժտուած, անոր միտքը ընդգրկեր էր ամբողջ ողբերգական ապրումները գիւղացու, որ քիչ մը ամէն տեղ ալ միեւնոյնն էր: Մեծ քաղաքներու մէջ, մօտէն էր շփուեր կոշտացած ձեռքերով բանուորներու հետ. ապրեր էր անոնց ցա–

ւը իր կաշիի վրայ զգացածի նման․ շփուեր էր անոնց հետ գործատեղիներու մէջ, տրաքտիր-ներու մէջ, աժանագին հանրակացարաններու մէջ, գինետուներու մէջ, անառականոցներու եւ փողոցներու մէջ․ իջեր էր անոնց հետ մինչեւ փողոցի ցեխը, բարձրանալու համար յեղափոխական առաքեալի դիրքին։

Հասարակ կառապանի մը նման արբենալու ընդունակ, Դեւը զարմանալիօրէն քնքուշ, դիւրազգաց, եւ արթխաթիէ հոգի մ'ունէր։ Անբացատրելի խառնուրդ մ'էր փողոցային Թափառաշրջիկի եւ էսթէթիկ մտաւորականի։ Սուր եւ խայթող գրիչ, կծու ու հեգնող լեզու՝ Դեւը ընկերական շրջանի մէջ զարմանալիօրէն բարի ու հեզ էր։

Դեւը աւելի ռուս էր, քան հայ․ աւելի ծանօթ էր ռուսական կեանքին, ռուս ժողովուրդին, անոր ձգտումներուն, հոգեկան յուզումներուն, անոր գրականութեան։ Եւ բնականաբար իր խառնուածքի բերումով ընտրեր էր ռուս Սոցիալիստ-Յեղափոխական կուսակցութիւնը, որու դրօշի տակ ալ Կովկասի մէջ ասպարէզ իջաւ, ինչպէս եւ ուրիշ շարք մը տաղանդաւոր հայ երիտասարդ մտաւորականներ։

Իր հոգու մէջ տեղատուութիւնը՝ դէպի հայութիւն առաջ եկաւ 1905-ի վերջը, երբ Կովկաս գալով՝ տեսաւ այն եռուզեռը, այն մեծ Թռիչքը, որ կովկասահայութիւնը կատարեր էր շնորհիւ եկեղեցական կալուածներու գրաւման ու հայ-Թաթարական կռիւներուն։ Պակաս դեր չխաղաց նաեւ Դաշնակցական գործիչներու հետ իր ծանօթութիւնը, որ վերջէն փոխուեցաւ ջերմ ընկերական մտերմութեան։

Դաշնակցութեան յարեցաւ Դեւը, եթէ չեմ սխալիր, 1906 Թուականին, դառնալով «Հորիզոն»ի խմբագիրներէն մէկը։ Թէեւ այս որակումը այնքան ալ ուղիղ չէ, ան մտայնութեամբ եւ իր ներքին աշխարհով Սոցիալիստ յեղափոխական մ'էր, որ ուզելով հայ ժողովուրդի մէջ աշխատիլ, Դաշնակցութիւնը ընտրեց որպէս միջոց։

Ընդհանուր ռէաքսիոնի շրջանին որպէս «Հորիզոն»ի Թղթակից Պոլիս գալէն վերջ, նորէն Կովկաս անցաւ, ուր չկրնալով մնալ, քաղաքական հալածանքներու պատճառով, գնաց Պարսկաստան որպէս Թղթակից ռուսական «Պագու» Թերթի։

Պարսկաստանի Թափառումներու շրջանին, հետզհետէ Թոքերը տկարացած էին այնքան, որ երբ վերջին անգամ եկաւ Պո-

լիս, արդէն հալած մաշած ուրուական մ'էր նախկին եռանդոտ Դեւը: Քանի մը շաբաթէն, պլպլացող ճրագի մը նման հատաւ այդ քանքարաւոր երիտասարդը, որ բարեյաջող պայմաններու մէջ, շնորհիւ իր սուր իմացականութեան, կարող էր մեր լաւագոյն գործիչներէն ու մտածողներէն մէկը դառնալ:

Ինչպէս ըսի, մենք երեքս ալ շատ շուտով մտերմացանք Դեւին:

Գրեթէ հասակակից էինք իրարու, ու բնականաբար ելեքտրական դիւրահաղորդ թելերու նման, մենք իրարու կապուեցանք, գործով ու գաղափարներով:

Գաղափար ըսի, ու միտքս բան մը ինկաւ: Կարծեմ այս գաղափարակցի վերագրումը քիչ մը ճիշդ չէ իմ մասին: Ճիշդ է որ Վահանն ու Սարգիսը զարմանալի կերպով նոր հովերով տարուած էին. չորցած սպունգի նման անոնք անյագօրէն կը ծծէին բոլոր այն նորութիւնները, որ այդ խանդավառ օրերուն, հարիւրներով կը բուսնէին աշնան սունկերու նման:

Այդ սունկերէն մէկն ալ «կանանց հաւասարութեան» խնդիրն էր, որ՝ ինչ մեղքս պահեմ՝ մինչեւ այսօր ալ չեմ հասկցեր: Բայց իմ չհասկնալս, անշուշտ պատճառ մը չէր որ գեղեցիկ սեռը տակնուվրայ չլինէր, ու իր ազատագրութեան դրօշակը չպարզէր յեղափոխութեան կարմիր դրօշակին քով:

Ու եղաւ, որ օր մը կանանց մեծ շրջան մը մեզ հրաւիրեց դասախօսելու: Ու կարծեմ Վահանի գիւտն էր, որ այդ օրը որոշեցինք Դեւը տանիլ հետերնիս: Այդպէս ալ եղաւ, ու Դեւը կանանց ազատագրման մասին երկար դասախօսութիւն մը տուաւ:

Չեմ գիտեր թէ այդ դասախօսութենէն ի՞նչ շահեցան կնիկները, բայց գիտեմ, թէ ի՜նչ քրտինք թափեցի ես երկու ժամ անշարժ գամուելով աթոռի մը վրայ, մտքէս հազար ու մէկ անէծք թափելով Դեւի գլխուն, որ փոխանակ կարճ կապելու, հազար ու մէկ վկայութիւններ կը բերէր հաստատելու համար թէ կիներն ալ հաւասար ծնած են, եւ մարդը ստրկացուցեր է զանոնք... Խե՜ղճ Դեւ... ամուսնացած չլինելուն, հակառակ իր մտաւոր զարգացման այդ հարցի մէջ շատ տգէտ էր...

Ճիշդն ըսած, միայն այդ դասախօսութիւնը չէր պատճառը, որ Դեւի դէմ լարուած էի: Իմ մահճակալս ուղիղ սենեակի դրանը մօտ էր: Երբեմն գիշերները, ժամը 1-ին կամ 2-ին, Դեւը՝ սաստիկ հարբած՝ մեր սենեակը կուգար, եւ օրօրուելով, առա-

ջին պատահած անկողինը կը մտնար՝ առանց հանուելու ու չատ անգամ ցեխոտ կօշիկներով։ Ու, դժբախտաբար, այդ «առաջին հանդիպած անկողինն» ալ միշտ իմս կը լինէր, դրանը պինդ մօտիկը լինելուն համար։

Ես չէի կրնար տանիլ հարբած մարդու մօտիկութիւնը, ու բնականաբար սարսափելի կը բարկանայի, մինչ Սարգիսն ու Վահանը վեհանձնաբար Դեւի կողմը կը բռնէին, ինծի ընկերական վերաբերմունքի մասին խրատներ տալով...

Վերջէն խելքի եկայ ու ստիպմամբ անկողինս, հետեւաբար եւ հիւր ընդունելու պատիւը փոխանցեցի Սարգիսին։

Շատ անգամներ, մեր համեստ ընթրիքին, որու տիրապետող զարդը անխուսափելի կալպաճ (երշիկ) էր, ու առատ կանաչին, Դեւն ալ կը մասնակցէր։ Յափշտակութեամբ, մտիկ կ'ընէր Սարգսին ու Վահանին, երբ կը խօսուէր Երկրի, հայ ժողովուրդի, Նախիջեւանի հայ-թաթարական կռիւներու մասին։ Երեխայի մը ոգեւորուող բնաւորութիւնը ունէր ան, ու պարզութիւնը։

## ՄՐԳԱՍՏԱՆԻ ՇՐՋԱՆԸ

Հ. Յ. Դաշնակցութեան Ռայոնական ժողովէն վերջ, Սարգսի եւ Վահանի հետ միասին, գացի Երեւան՝ մինչեւ գարուն այդ շրջանը մնալու, մինչեւ որ, Երկրի ճամբաները բացուելով հնարաւոր լինէր Երկիր անցնիլ։

Երեւան տեղաւորուեցանք կիմնազիոնի դիմաց, Խարախանեաններու տունը, երեքով մէկ սենեակի մէջ։

Այդ ժամանակ դեռ Երեւան էր Նիկոլ-Դումանը, որ հայ-թաթարական կռիւներու ընթացքին այնքան ձեռնահասօրէն ու հըմտօրէն ղեկավարեց Արարատեան դաշտի պաշտպանութեան գործը։

Դժուար թէ՝ մեր ամբողջ յեղափոխական պատմութեան ընթացքին կը հանդիպինք Նիկոլի նման բազմազան յատկութիւններով օժտուած զինուորական ղեկավարի մը։ Հազիւ միջնակարգ կրթութեան տէր, ան բնածին զինուորական մ'էր, աւելի լայն հորիզոն ընդգրկող քան ոեւէ մէկը մեր յեղափոխական զինուորականներէն. միաժամանակ հաւասարակշռուած մտաւորական մը, հեռատես ու հաստատուն համոզմունքներով։

Ու զարմանալի կերպով այդ տաղանդաւոր մարդու մասին ժլատ է մեր յեղափոխական պատմութիւնը, եւ այնքան ժլատ, որ ոչ միայն հասարակական լայն խաւերը անծանօթ են անոր կեանքին ու գործին, այլ եւ յեղափոխական նոր սերունդը, որ կոչուած է հներու տեղը գրաւելու:

Կռիւներու ընթացքին, Սարգիս ու Վահանը, Նախիջեւանի առաջին կոտորածէն վերջ, Նիկոլի կարգադրութեամբ այդ չըրջանը ղրկուած էին, որպէս ղեկավարներ: Ջարայի գրաւումը, որ այդ չրջանի Թրքութեան միջնաբերդը կը համարուէր, անոնք էին ծրագրած ու իրագործած:

Թէեւ Նիկոլը դեռ Երեւան կը գտնուէր, բայց արդէն զգալի ճեղքուածք բացուեր էր անոր ու նոր ընտրուած Կ. Կոմիտէի միջեւ: Բանն այն էր որ, նախ քան Ռայոնական Ժողովը, նոր Կ. Կոմիտէ մը ընտրուեր էր, գրեթէ ամբողջովին նոր հասնող սերունդին պատկանող անդամներէ կազմուած, որոնք քիչ մը շատ թեւաւորուած էի ռուսական յեղափոխութեամբ, ու հեւ ի հեւ աճապարանքի մը մէջ՝ նոր ռեֆորմներով իտէյալ կեանք մը ստեղծելու հայ գիւղացիութեան համար:

Նոր ընտրուած Կ. Կոմիտէի անդամներուն համար առանց վարանումի պէտք է ըսել, թէ նոր սերունդի լաւագոյն ներկայացուցիչներն էին, շատ ոգեւորուած եռանդուն երիտասարդներ:

Մարմնի անդամներու եւ անոնց ընկերներու շնորհիւ մեծ շարժում մը սկսեր էր Դաշնակցական երիտասարդ մտաւորականներու մէջ: «Դէպի գիւղ», — ահա նոր նշանաբանը, որ խանդավառեր էր շատերը:

Եւ խօսքէն գործի անցնելով՝ տասնեակներով թարմ մտաւորական ուժեր գիւղերն էին գնացեր, որպէս ուսուցիչ անմիջականօրէն ծառայելու ժողովուրդին:

Ինծի կը թուի թէ, եթէ ոչ 1903–էն, ապա ուրեմն 1905–էն վերջը, հայ յեղափոխութեան գործունէութիւնը նոր շրջանի մը մէջ մտաւ: Մինչ այդ, Դաշնակցութիւնը, գերազանցօրէն Տաճկահայաստանի ազատագրման նուիրուած կուսակցութիւն մ'էր: Կովկասեան գործունէութիւն, Կովկասի յատուկ՝ գրեթէ գոյութիւն չունէր: Անշուշտ մանր մունր տեղական հարցեր կը հետաքրքրէին Դաշնակցականները, բայց Դաշնակցութիւնը որպէս յեղափոխական կուսակցութիւն, կովկասահայ կեանքը ղեկավարելու ուղեգիծ մը չունէր:

Այդպէս էր մինչեւ ռուսական յեղափոխութիւնը, կամ եթէ դաշնակցականօրէն ուզենք արտայայտուիլ, մինչեւ մեր «Նախագիծ»ը: Անկէ վերջը արդէն պատկերը փոխուեցաւ. «Երկրի» գործը մնալով գլխաւոր առանցքը, կովկասեան նոր գործունէութիւն մը, արագ թափով սկսաւ զարգանալ:

Երեւանի նոր ընտրութիւնը եւ հներէն շատերու մեկուսացումը հետեւանք էր այդ նոր հոգեբանութեան, որ այսպէս թէ այնպէս պէտք է իր արտայայտութիւնը գտնէր:

Ճիշդ է, որ հայ-թաթարական կռիւները գրեթէ դադրած էին, բայց դեռ լարուած, անհանդիստ տրամադրութիւն մը կար երկուստեք, բնական յոգնածութիւն մը ու բուռն ցանկութիւն մը վերադառնալու դէպի բնականոն խաղաղ կեանքը:

Այդ տրամադրութիւնը խոր արձագանգ էր գտած նոր Կ. Կոմիտէի անդամներու մէջ, որոնք կ'ուզէին վերջը տեսնել հայ-թաթարական կռիւներուն, ու լծուիլ շինարար աշխատանքի:

Երիտասարդ մտաւորականներու գալստ երթալովը եւ ժողովուրդի հետ անմիջական շփման մէջ գտնուելով, բնականաբար գիւղացիի ցաւերն ալ անոնց միջոցով ուժգին արձագանգ կը գտնէին Կ. Կոմիտէի նիստերուն մէջ: Նիկոլի գաժան զինուորական դիկտատուրան եւ այս նոր հովերը շատ ալ ներդաշնակ չէին կրնար երթալ, ոչ թէ որովհետեւ Նիկոլը չէր գնահատեր երիտասարդներու աշխատանքը, այլ որովհետեւ ան քիչ մը անժամանակ կը գտնէրատոնք ու դեռ վտանգը անցած չէր համարեր բոլորովին:

* * *

Երիտասարդներու «ռեֆորմներու» մասին ընդհանուր գաղափար մը տալու համար, պատմեմ դէպք մը, որուն ես ալ մասնակից էի:

Երեւանի Կեդրոնական Կոմիտէութեան բոլոր գաւառներէն, մեր երիտասարդ գործիչները, խորապէս վրդովուած, մատնացոյց կ'ընէին չարիք մը, որ մեծ համեմատութիւններ էր առեր, դառնալով ճշմարիտ աղէտ մը գիւղացիութեան համար: Այդ աղէտը վաշխառութիւնն էր, որ գրեթէ ամէն գիւղի մէջ ունէր իր ներկայացուցիչը՝ պզտիկ կամ մեծ:

Հայ գիւղացին, աւելի քան սակաւահող, հազիւ թէ իր արտադրութիւնը ծայրը ծայրին կը յաջողէր բերել: Բայց երբեմն բնութեան աղէտներու պատճառով, գիւղացու հաւասարակշռու-

թիւնը կորսնցուցած տնտեսութիւնը անհրաժեշտ պէտք կ'ունենար արտաքին օժանդակութեան, մէկ երկու տարուան ընթացքին ինքզինքը գտնելու համար: Ու բնականաբար կանգ պիտի առնէր դրամ փոխ տուողներու դրանը:

Գաւառներէն եկած անվերջ գանգատներուն արձագանգեց Կեդրոնական Կոմիտէն ու յղացաւ միտք մը, որով արմատապէս պիտի վերցնէր վաշխառութիւնը մեր գիւղերէն:

Կտրուկ որոշում մ'էր, գրաւել վաշխառուներու քով գտնըւած մուրհակները, փոխ տրուած դրամագլուխի վրայ աւելցնել պետական սակով տոկոսը եւ յանձնել նորէն անոնց, միաժամանակ սպառնալով պատժել բոլորը, եթէ օրինական սակէն աւելի առնէին:

Ղամարլուի շրջանի մաքրագործման գործը յանձնուեցաւ Արսէն Ամիրեանին: Այս երիտասարդը, Վահանի եւ Սարգսի մըտերիմ, յայտնի «Գիժ Թաղոս»ի եղբայրն էր, քապինէթի յեղափոխական մը, տկարակազմ ու կարծեմ թոյլ թոքերով: Վերջին պահուն հրաժարեցաւ երթալէ: Կ. Կոմիտէն որոշեց որ ես երթամ: Շատ լաւ ըսի, առանց մեծ ոգեւորութեան:

«Խենթ»ի տղան, Արսէնը, Սորբեցի Գուրգէնը ու ես կառքով գնացինք Ղամարլուի մօտիկ հայ գիւղ մը, իսկ զինուորները գիշերով պիտի գային մեզ գտնելու: Այդ իրիկուն քիչ մը մթնելուն, մենք երեքս, ու այդ գիւղի ներկայացուցիչը, գնացինք Ղամարլու տեղական կոմիտէի ժողովին, ուր ներկայ էին նաեւ մեր ուսուցիչ ընկերներէն շատեր, ինչպէս եւ Մամիկոնը, որ Երեւանէն՝ մօտիկ գիւղը եկած էր որպէս ուսուցիչ:

Երեք յայտնի վաշխառուներ կային, երկու վաճառական եղբայրներ, որոնց անունը մոռցեր եմ, ու մէկ ալ Սատանայ Մարտիրոսը, որ ամբողջ գաւառին մէջ հռչակուած էր: Բայց խնդիրը այն էր, որ Կեդրոնական Կոմիտէի որոշումը արդէն բերնէ բերան հասեր էր մինչեւ այդ մարդոց ականջը, որոնք բնականաբար արտաքոյ կարգի զգուշութիւններ ձեռք առած էին, մանաւանդ որ տրուած որոշումը չափազանցուած ձեւով մը հասած էր իրենց: Որպէս թէ վաշխառուներու ունեցածը ամբողջովին պիտի գրաւուէր կուսակցութեան կողմէ, ու որպէս թէ, որոշ մարդիկ ալ տեռորի պիտի ենթարկուէին:

Արսէնը ժողովի ժամանակ պնդեց, որ անպատճառ ինքը երթայ Սատանայ Մարտիրոսի տունը: Հետեւաբար ինծի կը մնար

երթալ երկու վաճառական եղբայրներէն մէկին տունը, որը մասնաւորաբար կը զբաղէր վաշխառութեամբ:

Թէեւ Մամիկոնը շատ հակառակեցաւ Արսէնի երթալուն, բայց Արսէնը չհամոզուեցաւ, եւ իրեն ուզածին պէս ալ եղաւ: Ես ալ խնդրի էութիւնը չհասկնալուս՝ բոլորովին անտարբեր էի ուր երթալուս մասին:

Երբ իրարմէ կը բաժնուէինք, այն հասկացողութիւնը ունէինք, որ ուէւէ բարդութեան պարագային, Արսէնը նշանակուած վայրը ինծի պիտի սպասէր զինուորներով եւ ձիերով, որպէսզի միասին մեկնէինք Երեւան:

Գուրգէնը, տեղական կոմիտէի անդամներէն քահանայ մը, որ այդ վաճառականի կնոջ եղբայրն էր, ու ես միասին գնացինք առանց ուրիշ զինուորներու: Ինչպէս որ ինձ բացատրած էին տեղական կոմիտէի անդամները, իմ երթալիք տեղս գիւղամէջը լինելուն, անյարմար էր բազմաթիւ զինուորներով երթալը: Վերջէն միայն հասկցայ, որ ղազախներու զօրանոցի ուղղակի քովն էր այդ մարդուն տունը, ուղիղ դէմ դիմաց:

Հին ձեւի դուռ մ՚ունէր այդ տունը, եկեղեցիներու դրան նման, կամարակապ, ու չեղակի ներս ընկած: Դուռը զարկինք: Ես ու Գուրգէնը դրան պինդ մը սեղմուեցանք, իսկ քահանան փողոցի մէջ մնաց: Հետեւաբար, երբ երկրորդ յարկի պատուհանէն ձայն մ՚ըհարցուց, թէ ո՞վ է, «Տօ ես եմ, էլի», պատասխանեց քահանան:

Վերէն հարցնողը, որ վաճառականը ինքն էր, միակ քահանան տեսնելով փողոցի մէջ, վար իջաւ, ու դուռը հազիւ բացած՝ դէմ դէմի եկաւ Գուրգէնին ու ինձ: Մենք անձայն ներս մտնելով գոցեցինք դուռը:

Դեփ դեղին կտրեցաւ մարդը. Թէեւ ձեռքը ատրճանակ մ՚ունէր ու գիտէր, թէ բաւական էր որ սկսէր բարձր պոռալ, դիմացի կազարմայէն տասնեակներով զինուորներ օգնութեան կը հասնէին, սարսափած՝ բայց կարծես թէ արդէն համակերպած գալիքին, ըսաւ.

— Վեր բարձրացէք, պարոններ:

Ես ու քահանան մտանք հիւրասենեակը, իսկ Գուրգէնը դուրսը մնաց որպէս պահակ:

Մեր հիւրասենեակը մտնելուն, մարդը ատրճանակը ինծի երկնցուց, յայտնելով որ մեզ դէմ չէ որ զինուած է ինքը, այլ

ժամանակները վատացեր են, ազգամիջեան կուեներ կան, ինքնապաշտպանութեան համար զէնք կը գործածէ միայն։

Զէնքը իրեն դարձուցի եւ ըսի, թէ ամէն հայ ինչ կ՚ուզէ լինի ան, պէտք է որ զինուած լինի։ Այս իմ խօսքերս քիչ մը ուժ տուին իրեն։

Ես Կ. Կոմիտէի նամակը կարդացի, երբ ներս մտան իր կինն ու աղջիկը։ Խեղճ կինը լաց ու կոծի մէջ էր, ծնկուըները կը ծեծէր, ու քանի մը նախատալից խօսքեր ըսաւ իր եղբօրը, քահանային, որը բաւական յիմար կացութեան մէջ էր։ Բայց ուշադրութիւնս գրաւեց աղջիկը. 18 տարեկան կը լինէր, Երեւանի Գիմնազիայի վերջին տարուան աշակերտուհի մը, որուն դէմքը ոչ թէ վախ, այլ հետաքրքրութիւն կ՚արտայայտէր։

Հոս պիտի խոստովանիմ, առանց ինքնագովութեան մեղքի, որ ես շատ քաղաքավարի վերաբերմունք մ՚ունեցայ այդ ընտանիքի հանդէպ։ Երբ խնդրեցի վաճառականէն, որ դրամարկղի բանալիները յանձնէ,— ինձ նախօրօք ամէն մանրամասնութիւն յայտներ էին արդէն ընկերներս,— մարդը կարկամեցաւ նորէն սպրթնեցաւ. ու ան ինչ յուսահատութիւն էր աչքերուն մէջ։ Քանի մը անգամ բերանը բացաւ խփեց, բայց ձայն դուրս չեկաւ։

Տէր Աստուած, կ՚ըսէի մտքիս մէջէն, սա ինչ փորձանքի հանդիպեցանք։ Հիմակ աս մարդը ելնէ եւ հակառակի պէս մեռնի. ալ մեր քաշելիքը տես ընկերներու ձեռքէն։ Բայց ժամանակ ալ չունէինք կորսնցնելիք։ Ժամը մէկին պայմանաւորուած էինք Արսէնի հետ իրար հանդիպելու։

Մօտեցայ տան տիրոջը ու ըսի, որ զուր է ընդդիմանալը, ու խելօքութիւն չէ հակառակիլը բանի մը, որ արդէն որոշուած է։

— Եթէ չկրնանք խնդրելով, ապա բռնութեամբ պիտի առնենք,— եզրակացուցի։

Մէկ ալ մեր մարդը ելաւ տեղէն ըսելով.

— Ո՛չ, չեմ տար։

— Լաւ,— ըսի ես ալ,— պատրաստուէ՛, մեզի հետ պիտի գաս։

Կինը վազեց մարդուն պլլուեցաւ։ Մարդուն թեւերը նորէն յուսահատ վար կախուեցան։ Աղջիկը շատ համարձակ մօտեցաւ ինծի ու ըսաւ.

— Հօրս որեւէ վնաս պիտի հասցնէ՞ք։

— Ո՛չ,— ըսի։

— Պատուոյ խօ՞սք։

— Պատուո՛յ խօսք։

Մէկ ալ աղջիկը քովի սենեակը մտնելով՝ քիչ ատենէն վերադարձաւ դրամարկղի բանալիներով, մինչդեռ հայրն ու մայրը իրար պլլուած կուլային։

Ամբողջով իջանք գետնայարկը, ուր կը գտնուէր դրամարկղը։ Ի՛նչ ազատ չունչ քաշել սկսաւ մարդը, երբ ես, գիզուած հարիւրնոցները մէկ կողմ դրի, նոյնպէս եւ զանազան զարդեղէնները, ու միայն մուրհակները ծրարելով թաշկինակի մը մէջ, բանալիները իրեն յանձնեցի։

Այս անգամ որ նորէն հիւրասենեակը ելանք, մարդուն բերանը բացուեցաւ.

— Տօ եղբայր, Ղամարլըու գաք ու բաժակ մը գինի, պատառ մը բան չուտէք, այ կնիկ, տէ չուտ սեղան դիր...

Շիտակը ափսոսացի, որ մենք ժամանակ չունէինք։ Մարդուն յայտնեցի, որ պէտք է երթանք եւ խուզարկենք իր խանութը, որ պազարին մէջ կը գտնուէր։

Վաճառականը ըսաւ որ հոն ոչ մէկ թուղթի կտոր չունի։

— Ազնիւ խօսք,— կը վստահեցնէր ան.— մէկ ալ որ եթէ կէս գիշերով դուրս գանք, ես որպէս տեղացի ոչինչ, բայց դուք, իբրեւ անծանօթ, ձեր արտաքինով աչքի կրնաք իյնալ։

Մարդու ըսածը չատ խելօք առարկութիւն էր. թէեւ ես աչքի զարնող բան մը չունէի, բայց տնաքանդ Գուրգէնը, արդէն բարձրահասակ, սխալմամբ ալ ամբողջ ոչխար մը դրեր էր գըլխուն փափախի տեղ, ինչպէս որ զարզանդ բան մ՚էր դարձեր եւ աչքի զարնող։

Վերջապէս, վաճառականին հետ միայն ես դուրս ելայ եւ, իրօք, խանութի մէջ ոչինչ գտայ։

Տուն կը վերադառնայինք, երբ գիւղի ծայրէն «հարսանիքը» սկսաւ։ Մէկ երկու մէկ ալ իրար յաջորդող համազարկեր... Ամբողջ Ղամարլըուի չները, խօսք մէկ ըրած, ձայն ձայնի տուին ու հաւարը փրթաւ, հա՛յ, հա՛յ, հա՛յ հաւա՛ր...

Ղազախները դուրս թափեցան, ոստիկանութիւնը նոյնպէս։

Վաճառականը թեւս մտաւ, որպէս թէ սրտակից ընկերներ լինէինք... Ասոր անոր հետ խօսեցաւ, իմացաւ որ գիւղի ծայրը ինչ որ կռիւ կայ։ Ու ապահով իր դռնէն ներս մտանք նորէն։

Գուրգէնը անմիջապէս հասկցաւ խնդիրը։ Արսէն աղան, որ վերջէն խառն ալ եղաւ, մեր բաժնուելէն վերջ, իր զինուորները

կը հաւաքէ «կազմ ու պատրաստ» ու կը շրջապատէ Սատանայ Մարտիրոսի տունը։ Ալ ան ինչ օրուան սատանի Մարտիրոս է որ չկռահէ լինելիքը։ Ինչպէս նախօրօք ալ ըսած եմ, մեր գալէն առաջ իսկ բանը ծայր էր տուեր. այնպէս որ Սատանի Մարտիրոսը նախապատրաստուած՝ կը սպասէ եղեր իր որդիներով՝ մեզ սիրալիր ընդունելութիւն մը ընելու։

Այդ պայմաններու մէջ, ինչ խօսք որ, դուռը չի բացուիր։ Եւ փոխանակ սիրալիր տեսակցութեան, երկուստեք կը սկսին գընդակներ տեղալ իրարու վրայ։

Ըսին, թէ առաջ Արսէնը սկսեր է հրացան արձակել, չեմ գիտեր, թերեւս։ Սխալը այն էր, որ աշկարէ զինուած, ու խմբով փորձեցին երթալ ու բռնութեամբ ներս մտնել։

Ես, ինչպէս ինծ հրահանգուած էր, պարտաւոր էի արձանագրութիւն կազմել, ստորագրել տալ վաճառականին ու այնպէս մեկնիլ։ Բայց այդ կռիւը իմ դեռ գիւղին մէջ մնալս վտանգաւոր դարձուց։ Ստիպուեցայ յայտնել, որ վաճառականը պէտք է մեզ հետ գայ մինչեւ մօտիկ գիւղը։ Նորէն մեր բարեկամութիւնը աւրուեցաւ։ Այս անգամ աղջիկն ալ վախեցաւ, որ դուրս տանինք, պիտի սպաննենք իր հայրը։

Հազար դժուարութեամբ համոզեցի, որ բան պիտի չպատահի, այսինքն՝ աղջիկը համոզուեցաւ, իսկ հայրը մինչեւ վերջն ալ, չկամութեամբ եկաւ մեզ հետ։ Աղջիկն էր որ ստիպեց գալու։

Այդ խօսակցութեան ժամանակ, սիրուն աղջիկը անունս հարցուց։ Ես ալ ըսի, թէ ինծ Ամերիկացի կ'ըսեն։

Քահանան հոն ձգելով, Գուրգէնը, ես ու վաճառականը դուրս ելանք եւ ապահով հասանք մեր ժամադրավայրը։ Ոչ ոք կար։ Արսէնը իր ձիաւոր խումբով գացած էր, զիս ձգելով պատասխանատուութեան։ Ինչ որ ալ եղած լինէր այդքան հապճեպ մեկնումի պատճառը ներելի չէր անոր նման վերաբերումը ընկերոջ հանդէպ, որ ոչ տեղին ծանօթ էր եւ ոչ ճամբաներուն։

Ինչ որ է, առտու ժամը 2–ը կար, երբ հասանք Մամիկոնի մօտ։ Մուրհակները յանձնեցի անոր, որ թուագրէ ու արձանագրութիւն մը կազմէ։ Ես ալ իր անկողնին վրայ երկննալով անմիջապէս քնացայ։

Երբարթնցայ, հազիւ թէ լոյսը սկսեր էր բացուիլ։ Վաճառականը թուղթը ստորագրած էր ու մեկնած Ղամարլու։ Մուրհակները գրպանս դրի եւ հակառակ Մամիկոնի պնդումներուն,

որ մնամ նախաճաշելու, դէպի քովի գիւղը մեկնեցայ այգիներով, Մամիկոնէն ուղղութեան մասին տեղեկութիւն վերցնելով, իսկ Գուրգէնը գիւղ հասնելնուս մեկներ էր քովի գիւղը:

Թէ ինչո՞ւ մեկնեցայ Մամիկոնի մօտէն, մինչեւ այսօր ալ չեմ կրնար բացատրել: Այդ շրջանի մէջ միայն Մամիկոնն էր, որուն առաջուընէ ծանօթ էի:

Քովի գիւղի Դաշնակցական ընկերը պետական վարժարանի ուսուցիչն էր, հասակեկ մարդ մը, որուն առաջին անգամ էի հանդիպած նախորդ գիշերը, ժողովի ժամանակ:

Հազիւ դուրս ելած եւ տանը անկիւնը դարձած էի, երբ ոստիկանութիւնը ներս կը խուժէ Մամիկոնի մօտ: Ու կը սկսին խիստ խուզարկութեան մը: Ի հարկէ, ոչինչ չեն գտներ: Ես ալ այգիներով, կը հասնիմ քովի գիւղը, որ հազիւ 5–10 վայրկեան հեռաւորութեան վրայ էր:

Կը տեսնեմ ուսուցիչը, որ այլայլած ինծի կը նայի դպրոցի սեմին վրայ կանգնած: Կ'ուզեմ մօտենալ, բայց աչք կ'ընէ: Կը հասկնամ, որ բան մը պատահած է: Ճարահատ կը դառնամ, որ Մամիկոնի մօտ վերադառնամ, բայց նորէն բացասական կերպով գլուխը կը շարժէ: «Աս չէ, ան չէ, հապա ի՞նչ, չան որդի», կը մտածեմ «երկու խօսք չէ՞ս կրնար ըսել»: Եւ ճարահատ կ'ուղղուիմ դէպի Ղամարլու:

Բարեբախտաբար, փոստի կայարանապետին ծանօթ էի: Կռահելով խնդիրը, անմիջապէս ինձ կառք մը կուտայ, ու ես կը վերադառնամ Երեւան:

Ինչպէս ինծի միշտ պատահեր է, Երեւան հասնելէս վերջն է որ կը սկսիմ մտահոգուիլ ու վախնալ: Հապա՞ եթէ ձերբակալէին, պարզ քրէական յանցագործութիւն մը պիտի համարէին եղածը, ու զիս ալ քրէական յանցագործ մը:

Երկու տարի վերջը, Տիլիճանի Ռաթօնդի մէջ՝ Սուսանան, Խաժակի կինը, քանի մը սիրուն օրիորդներու կը ծանօթացնէր զիս: Երբ պայմանադրական ձեւականութեամբ մեր անունները կը փոխանակէինք, օրիորդներէն մէկը, աշխոյժ ձեռքս թօթուելով, ըսաւ.

— Բայց մենք իրար ծանօթ ենք արդէն, չէ՞...

— Մի՞թէ... ներեցէք, չեմ յիշեր, օրիորդ:

— Դո՞ւք չէք Ամերիկացի ճէնթլմէն աւազակը...

Միւսները զարմացած ինծի կը նայէին:

* * *

Երեւանի մեր կեանքը խաղաղ անցաւ՝ պիտի ըսէի, եթէ երկու պարագաներ իրար չզուգադիպէին եւ զիս հոգեպէս ու ֆիզիքապէս չփոթորկէին:

Առաջինը իմ առողջութիւնն էր, զոր պէտք է հասկնալ հակառակ իմաստով: Մանկութենէս սկսած, առողջութեամբ ոչ փայլուն երեխայ մ'եմ եղած: Զարիքին արմատը իմ աջ թոքս էր, որ տեղի անտեղի, երբ բոլորովին չէի սպասեր, իր գոյութիւնը զգացնել կուտար, անախորժ կերպով մը:

Երեւան, թեթեւ ինֆլուէնցայէ մը վերջ, ես այնքան տկարացայ, որ Սարգիսն ու Վահանը՝ լուրջ մտահոգուած՝ բժ. Տէր Միքայէլեանը կանչեցին: Բժիշկը, կուրծքս քննելէ վերջ, խորաթափանց կերպով գլուխը թափահարեց: Երբ ընկերներս յայտնեցին, թէ գարնան Երկիր պիտի անցնիմ, բժիշկը կտրականապէս յայտնեց, որ այդ մասին խօսք չի կրնար ըլլալ եւ որ ես երկարատեւ հանգստի պէտք ունիմ:

Ինչպէ՜ս չարակամ կը նայէի բժիշկին, որմէ աւելի մեծ թըշնամի ինծի դէմ չէի կրնար երեւակայել, բայց որուն յայտնած կարծիքը ապագային բոլորովին ճշմարիտ դուրս եկաւ: Այդ դաւէն օգտուելով, այլեւս ոչ մէկ անգամ, բժիշկ կանչելու կողմնակից եղայ ես, բայց եւ այնպէս մօտ քսան օր անկողնէս չկըրցայ ելլել:

Ճիշդը ըսելով, շատ ալ չէի աճապարեր ելլելու: Եւ ինչո՞ւ աճապարէի որ: Սրտակից ընկերներով շրջապատուած, Խարախանեան ընտանիքի ջերմ խնամքին ենթակայ, ու շնորհալի օրիորդներու այցելութեան ու հետաքրքրութեան առարկայ:

Իրողութիւնը այն էր, որ այդ ժամանակ ես օրիորդով մը սաստիկ հետաքրքրուած էի: Այնպիսի տարիքի մը մէջ կը գտնուէի, երբ միայն միտքն ու գաղափարականութիւնը չէին կրնար գոհացում տալ, հարկ էր որ սիրտն ալ իր բաժինն ունենար կեանքէն: Ըսենք, որ վերի կարծիքս արդար վճիռ մը չէ սրտի մասին, որը անկախ տարիքէն, միշտ ալ իր գործն ունի:

Ատկէ ամիսներ առաջ, երեքով Ալեքսանդրապոլ կը գտնուէինք, ուր Դաշնակցական երեկոյթի մը հրաւիրուած էինք:

Վահանը ճարպիկ ու քաղաքին ծանօթ, ընկերոջմէ մը իրեն համար մարդավարի զգեստ մը գտաւ: Սարգիսը այդպիսի մանր

մունր բաներու մասին մտածողը չէր: Իսկ իմ փանթալոնս ալ այնպիսի տխուր կարկտան մը ունէր ճիշդ նստատեղիին վրայ, որ ամենայն հարազատութեամբ դուրս կը ցցուէր իր պայծառ գոյնի պատճառով:

Տուեալ պայմաններու մէջ, երեկոյթը ինծի համար կորսընցուցեր էր իր հրապոյրը, ու հակառակ որ որոշած էի չերթալ, ընկերներու ստիպումով սակայն գացի՝ նախօրօք պայմանաւորուելով որ ամենավերջին նստարանը պիտի գրաւէինք ու հոն ալ մնայինք մինչեւ վերջը:

Երեկոյթի մէջ ի միջի այլոց, հազիւ 17 տարեկան, թարմ ու սիրուն օրիորդ մը բարձրացաւ բեմը երգելու համար: Դահլիճը դղրդաց ծափահարութիւններով:

— Սոնիա, «Մաճկալը» կ՚ուզենք...

— «Սեւ մութ ամպեր»ը երգիր... Սոնիա...

— «Կուժն առա՛յ»... «Կուժն առա՛յ»...

Այսպէս ապսպրանքներու փոթորիկ մը ամէն կողմէ: Մէկ ալ այդ ժխորի մէջէն յստակ, բարձր ոսկի ձայն մը սկսաւ երգել՝

«Սե՛ւ, մո՛ւթ ամպեր ճակտիդ դիզուած,
Դուման հազար, Ալագեա՛զ»...

Ես յափշտակուած, վերացած կը դիտէի այդ սիրուն օրիորդը, որ առաջին իսկ վայրկեանէն գրաւեց զիս: Քանի մը երգէ վերջը, օրիորդը անվերջ ծափահարութիւններով վար իջաւ բեմէն:

Տէր Աստուած, մոռցեր էի ամէն ինչ, նոյնիսկ փանթալոնիս դժբախտ կարկտանը, եւ Վահանի հետ գացինք օրիորդի մօտ, որ կողմնակի սենեակի մը մէջ ծաղիկ կը ծախէր: Ծաղիկ մը գնելով՝ իրեն տուի.

— Մատօննա՛, ներեցէք ինծի, որ օտարական մը՝ ծաղկեփունջ մը նուիրեմ Ձեզի:

— Շնորհակալ եմ...

Ու ժպտեցաւ կարմրելով:

Այդ օրէն սկսեալ, այդ սիրուն աղջիկը մտքիս մէջն էր, երազ մը, ծիածան մը խաբուսիկ, թերեւս, բայց արդէն իմ ապրումներուս անխուսափելի մասը:

Այսպէս ուրեմն, հիւանդութեանս շրջանին, այս օրիորդն ալ, որ Գիմնազիայի վերջընթեր դասարանն էր, ինձ այցելողներու մէջ կը գտնուէր: Հասկնալի կը դառնայ չէ՞, թէ ինչո՞ւ

ես յօժարակամ կրնայի վեց ամիս եւս կռնակիս վրայ պառկիլ անկողնիս մէջ, առանց յոգնելու եւ ձանձրանալու:

Ըսենք երեքս ալ քիչ թէ շատ հոգեկան միեւնոյն վիճակին մէջն էինք.— Սարգիսը Պուլկարիա իր նշանածն ունէր, որ յետոյ իր կինը եղաւ, Վահանը սիրահարուած էր օրիորդի մը, որ նոյնպէս իր կինը եղաւ, ես ալ կը սիրէի այդ աղջիկը, առանց որ ան գիտնար այդ մասին, որ յետոյ կինս դարձաւ:

Բայց գարունը կը մօտենար... Դէպի Նորք պտոյտի կ՚երթայինք երկսեռ խումբով: Մանուշակները կիսախուփ մանկան աչքի նման հետզհետէ կը բացուէին, անհոգ, զուարթ ու ըսենք, երջանիկ օրեր էին... Բայց գարունը կը մօտենար եւ անոր հետ Երկիր անցնելու թուականը:

Դժգո՞հ էի արդեօք. դէպի այդ աղջիկը ունեցած սէրս կարո՞ղ էր պատճառ դառնալ դասալիք լինելու, դրժելու ինքզինքս, երազս որ Երկիր անցնիլն էր:

Տեղը եկաւ որ քիչ մ՚ալ արդար լինիմ ինքզինքիս նկատմամբ: Առանց հոգեբանօրէն վերլուծել ջանալու իմ Երկիր անցնելու ցանկութիւնը, պիտի ըսեմ, որ եւ ոչ մէկ վայրկեան չեմ տատամսած իմ որոշմանս մէջ: Ու այդ էր պատճառը, որ ես բարոյական պարտականութիւն մը կը համարէի լռել իմ զգացումներու մասին, մանաւանդ աշխատիլ թագցնել զանոնք օրիորդէն, քանի որ յեղափոխականի մը կեանքը աւելի քան վտանգներու ենթակայ էր, մասնաւորաբար Տաճկաստանի մէջ, ուր հարիւրներով գացեր էին բայց ուրկէ շատ քիչերուն վիճակուած էր ապահով դուրս գալ:

Ապրիլի վերջերն էր, որ երեքով նորէն Թիֆլիս գնացինք, մասնակցելու Ռայոնական Ժողովին:

Լաւ կը յիշեմ, որ շատ ձգձգուած Ռայոնական Ժողով մըն էր: Աւելի քան ջղայնացած ու յոգնած էին բոլորն ալ: Ու երբ Ռայոնական Ժողովէն վերջ, Դաշնակցութեան Խորհրդի նիստերը սկսան, ոչ մէկուն վրայ խօսելու տրամադրութիւն էր մնացեր:

Շիտակը, այդ Խորհուրդի ժողովը տեսակ մը հարկադրանքի հետեւանք էր: Երկիր պիտի անցնէինք, եւ պէտք էր Երկրի վերաբերեալ կարգ մը կարեւոր հարցեր կարգադրել: Խորհուրդի նիստերուն կը մասնակցէին Արեւելեան Բիւրօն, Թիֆլիսի Կ. Կոմիտէի ներկայացուցիչը, մէկը գալու էր Բագուի Կ. Կոմի-

տէէն, Վահանը որպէս Վասպուրականի կազմի անդամ, Սար-գիսն ու ես ալ, որպէս Երկիր անցնող գործիչներ:

Բայց նախ քան Խորհուրդի ժողովին անցնիլս, պատմեմ մի-ջադէպ մը, որ ինքնին կրնայ աննշան բան երեւալ շատերուն, բայց որը մեզի համար աւելի քան նշանակալից ու արժէքաւոր էր:

Դեռ Ռայոնականի նիստերու ժամանակ, կէս օրուան դադա-րէն վերջ, երբ երեկոյեան նիստը բացուեցաւ, Սիմոնը (Զաւար-եան)՝ Սարգիսն ու զիս իր քովը կանչեց ու գրպանէն հանեց խը-նամքով պահուած երկու տոմսակներ այդ իրիկուան պետական օփերայի համար:

— Տղերք, դուք էս երեկոյեան նիստին կարող էք չմասնակ-ցել: Երկու տոմսակ եմ գնել ձեզ համար, գնացէք հոն, հետա-քըրքիր խաղ է, կը սիրէք:

Շիտակը քիչ մը զարմացած, չատկեկ մ'ալ ուրախացած այդ անակնկալ արձակուրդով՝ դպրոցական աշակերտի փութկոտու-թեամբ կծիկը դրինք ժողովէն: Սակայն, իրողութիւնն այն էր, որ մեր ուրախութեան իսկական պատճառը այդ իրիկուն մեր ժո-ղով չերթալը չէր եւ ոչ ալ այն, որ օփերա պիտի երթայինք, այլ այն՝ որ մեր թանկագին Սիմոնը, ինքնայատուկ քնքշութեամբ, մտածեր էր այդ, որ մենք ժողովէն դուրս ալ կը շարունակէինք իր մտահոգութեան առարկայ լինիլ:

Տարիներ անցան, բայց Սարգիսն ու ես յուզումով կը յիշէ-ինք միշտ այդ միջադէպը, որ ճիշդ է, փոքրիկ բան մըն էր, բայց որքա՜ն խորն էր ազդեր մեր սրտերուն:

Ես շուտ շուտ Զաւարեանի տանը կը լինէի: Մայրը այն-քան հոգածու, տխրութեամբ գլուխը սկսաւ երերցնել, երբ օր մը յայտնեցի որ Երկիր պիտի անցնիմ:

* * *

Մեր Երկիր անցնելու հետ կապուած խնդիրներու մէջ կա-րեւոր տեղ կը բռնէր կուսակցութեան նիւթական օժանդակու-թեան չափը: Այդ հարցը, աւելի քան բուռն վէճերու տեղի տը-ւաւ:

Եթէ յիշողութիւնս ինձ չի դաւաճաներ, մեր պահանջը մօ-տաւորապէս երեսուն եւ հինգ հազար րուբլի էր որպէս տարեկան

պիւտճէ։ Ասոր բոլորն ալ համաձայն էին, բացի մէկէն, եւ այդ մէկը Սիմոնն էր, որ իրեն յատուկ մոլեռանդութեամբ կ՚ընդդիմանար եղած առաջարկին։

Ի հարկէ, եթէ հարցը գար քուէարկութեան, մէկի դէմ բազմաթիւ քուէներով խնդիրը կը փակուէր։ Բայց կասկածելի էր թէ ատով հարցը իրապէս պիտի փակուէր։ Այդ էր պատճառը, որ բուռն բանավէճ մը երկու նիստ գրաւեց։



Ս. ԶԱՒԱՐԵԱՆԻ ՄԱՅՐԸ ԵՒ ԶԱՒԱԿԸ

Սիմոնը ոչ թէ ըստ էութեան հակառակ էր գումարի քանակին, այլ այդ գումարը տալու եղանակին։ Ան կ՚առաջարկէր, որ Բիւրօն տայ քսան հազարը այն պայմանով, որ Երկրի կազմակերպութիւնն ալ իր միջոցներով լրացնէ մնացեալ տասնեւհինգ հազարը։

Ասոր՝ մերոնք կ՚առարկէին մօտաւորապէս հետեւեալ պատճառաբանութեամբ, թէ Վասպուրականի ժողովուրդը տնտեսական այնպիսի ծանր պայմաններու մէջ կը գտնուի, որ անոր համար գրեթէ անկարելի պիտի լինի կուսակցութեան՝ նիւթական օժանդակութիւն ընելը։

Սիմոնի առարկութիւնը մեր պատճառաբանութեան մօտաւորապէս հետեւեալն էր։

Ոչ մէկ յեղափոխական շարժում չի կրնար հիմնականօրէն արմատաւորուիլ ժողովուրդի մէջ, եթէ այդ ժողովուրդը հոգեպէս, ֆիզիքապէս եւ նիւթապէս իր կարելի զոհաբերութիւնը չբերէր այդ շարժման։ Առանց տեղական ժողովուրդի մասնակցութեան, եղածը կը լինի մակերեսային, արդիւնք միայն վաղանցիկ տրամադրութիւններու, որ չխորանար, չդառնար միս ու արիւն։ Ամէն բանէ աւելի անհրաժեշտ է, որ Վասպուրականի կազմակերպութիւնը, ինչպէս նաեւ Երկրի միւս շրջաններու մարմինները աշխատին տեղական միջոցներով լրացնել դրսէն ե–

կած օգնութիւնը։ Առանց ժողովուրդի զոհաբերութեան արտաքին օժանդակութիւնը ոչ միայն սպասուած արդիւնքը չի տար, այլ եւ շատ մը պարագաներու մէջ պատճառ կը դառնայ անբարոյականացման ու այլասերման։

Միջանկեալ հոս ըսեմ, որ այն չնչին գումարը, որ կը պահանջուէր մեր կողմէն, որպէս տարեկան պիւտճէ, առանց չափազանցութեան տասնապատկուեցաւ 1906-1907 թուականին։ Բացի նիւթականէն, Կովկասէն ղրկուած ապրանքները, ու անոնց համար եղած անհրաժեշտ ծախսերը, ապահովաբար երեք հարիւր հազարը անցան։ Միւս կողմէն, մենք որ Երկրի աննպաստ պայմանները միշտ առաջ կը քշէինք, թերագնահատած էինք Վասպուրականի ժողովուրդի զոհաբերութեան կարողութիւնը։

Վասպուրականի ժողովուրդը, միեւնոյն թուականին, անհատական թէ խմբական զէնքերու համար, կազմակերպութեան միջոցով, աւելի քան հարիւր հազար ռուբլի ծախսեց։ Այս կրնայ մեծ գումար մը չհամարուիլ ուրիշ վայրերու համար, բայց Վասպուրականի նման շրջանի համար, չափազանց խոշոր գումար մ'էր։

* * *

Ընդունուած սովորութեան համաձայն, մեր մեկնած գիշերը, ամբողջով հաւաքուեցանք բժիշկ Տէր-Դաւթեանի տունը, թէյասեղանի մը շուրջ։ Առուր պատշաճի բաժակաճառեր, ջերմագին համբոյրներ ու գրկախառնումներ, յաջողութեան մաղթանքներ, ու անխուսափելի արցունքներ երկուստեք։ Եւ այդպէս գիշերուան ուշ ժամանակ բաժնուեցանք մեր թանկագին ընկերներէն, անոնք կը մնային հոն, որպէս գործի պատասխանատուները, իսկ մենք կ'երթայինք որպէս նորահաս երիտասարդներ դէպի գործունէութեան վայրը, Երկիր։ Երեքով մեկնեցանք Երեւան։ Թէոսը, որ Վասպուրականի Կ. Կոմիտէի անդամ էր ու Երկրէն դուրս էր եկած որպէս թէ հանգստանալու համար, մնաց Թիֆլիս իր թափառումները շարունակելու համար, անխոնջ կերպով բոլոր մարմիններու դուռը ափ առնելով, ի խնդիր ամէն բանի, որ կրնար պէտք գալ Երկրին մէջ։

Երկար չմնացինք Երեւան։ Քանի մը օրէն անկէ մեկնեցանք դէպի Նախիջեւան, ուր քանի մը օր պէտք է մնայինք։

Նախ քան մեր մեկնիլը Երեւանէն, օր մը Սէյթօն եկաւ մեր մօտ. լսեր էր, որ Երկիր կ'անցնինք, եկեր էր խնդրելու, որ մեզ

հետ գայ։ Այդ ժամանակ խիստ կարգադրութիւն կար զինուոր Երկիր չուղարկել ու այդ մասնաւորաբար Դուրան-Բարձրաւանդակի մարմնի հրահանգով։ Սարգսի պերճախօսութիւնը ձայն բարբառոյ յանապատի մնաց։ Սէյտօն միալար կերպով իր գիտցածը կը կրկնէր․

— Վալլահ էստեղ էլ չիմ մինայ...

Միակ զիջողութիւնը, զոր ըրաւ Սէյտօն այն էր, որ համաձայնեցաւ Վասպուրականի շրջանը մնալ, Կոմիտէի տրամադրութեան տակ, չանցնիլ Դուրան-Բարձրաւանդակ, եթէ անկէ զինքը չկանչէին։ Ճիշդը ըսած, ան այս պայմանը շատ ալ անկեղծօրէն չէր ընդունած․ մաղէ կամուրջէն անցնելու տեսակ մը միջոց էր իր զիջողութիւնը, մէկ մը հասնէր Երկիր, անկէ վերջը ինքը գիտէր ընելիքը։ Աւելորդ է իսկ ըսել, թէ հազիւ քանի մը ամիս Վասպուրականի շրջանը մնալէ վերջ, Սէյտօն անցաւ իր սիրելի հայրենիքը, որու կարօտով կը տառապէր։

* * *

Երեւանէն մեզ միացաւ նոյնպէս Արմենակ Շալճեանը, որ Թէոսի նման Երկրէն դուրս եկած էր՝ հանգստանալու համար։ Այս երկուքին ալ պիտի անդրադառնամ վերջէն, պատմութեանս ընթացքին։

Զմոռնամ յիշատակել հոս, որ Երեւան եղած ժամանակնիս, խորհրդակցութեան մը ընթացքին որոշուեցաւ՝ փոխադրական գործին աւելի զարկ տալու համար Փայլակը կանչել Պարսկաստանէն, որ աշխատի Երեւան-Դաւալու-Մենաւոր գծի վրայ։ Ատկէ ամիսներ առաջ, Փայլակը այլեւս սաստիկ յոգնած, հեռացեր էր սահմանի գործունէութենէն, հաստատուելով Թէհրան, ուր եթէ չեմ սխալիր, փոքր դեղարան մ'էր բացած եւ հանգիստ ապրուստ մը ու խաղաղ կեանք մը ապահոված․— բան մը, որ իր աստանդական կեանքին երբեք չէր ունեցած։

Հակառակ այն բանին, որ երկուքս ալ ջղային մարդիկ էինք, մեր գործակցութեան շրջանին շարունակ կը կռուէինք իրարու հետ, բայց զարմանալի սերտ կապով կապուած էինք իրարու։ Ան միշտ մեծ եղբօր մը ներողամտութեամբ կը նայէր վրաս՝ ինչ որ ուրիշներուն թոյլ չէր տար, ես անպատիժ կերպով կրնայի ընել։

Հետեւաբար ընկերներու խորհուրդով, նամակ մը գրեցի

Փայլակին· ըսի, որ ես անմիջապէս Մենաւոր (Թադէոս առաքեալի վանք) կ'անցնիմ, հոն իրեն կը սպասեմ որ երկուքով Երկիր անցնինք· այնպէս որ նամակս ստանալուն պէս, իր խանութն ու գործը սատանայի բաժին հանէ ու ինքը անմիջապէս ճանապարհուի Երեւան, ուր պիտի գտնէ Վահանը:

Ինչպէս կը սպասէի, Փայլակը նամակս ստանալուն պէս, առանց այլեւայլի նոր սկսած գործն ու խաղաղ կեանքը մէկդի էր շպրտած եւ մեկնած Կովկաս:

Հոս բարոյական պարտք մ'ունիմ վճարելիք Փայլակի մաքուր յիշատակին: Մինչեւ այսօր իսկ, չեմ ներած ինքզինքիս, այդ ակամայ խաբէութիւնը: Ես բացարձակապէս վստահ էի, որ գործի սիրոյն, Փայլակը ոչ մէկ զոհողութեան առջեւ կանգ կ'առնէ եւ ամէն պարագայի տակ ընդառաջ կուգայ մեզ, երբ լուրջ գործ մը կար կատարելիք: Բայց կը վախնայի, որ, եթէ ըսեմ թէ նորէն սահմանի գործունէութեան համար էր որ զինքը կը կանչէինք, ան ոչ թէ չի գար, այլ ուշացնէր իր գալը· մինչդեռ ան պէտք էր որ անմիջապէս հոն գտնուէր, եւ հարկաւոր պատրաստութիւնները տեսնէր աշնան փոխադրութիւններուն համար:

Իմ Վան եղած ժամանակս, Փայլակէն մեզի յանդիմանական նամակ մը ստացայ: Չէր ցաւեր որ գործը ձգած եկած էր, այլ կը ցաւէր որ իրեն շիտակը չէի գրած: «Գիտէիր, որ կուգայի,— կը գրէր սքանչելի Փայլակը,— եթէ ուղիղը գրած ալ լինէիր, բայց այս նիւթական կորուստը չէի ունենար: Կ'երեւի Երկիր անցնելու մուրազիս պիտի չհասնիմ»:

Չէ, անմահ Փայլակ, այդ մուրազդ ալ կատարուեցաւ: Տարիներ վերջը, Արճէշի մէջ դուն վերջապէս տեղաւորուեցար, տուն տեղ կազմեցիր, խաղաղ աշխատանքի լծուեցար, մինչեւ որ ահաւոր փոթորիկը եկաւ, ու քու փայլակնային կեանքդ ալ նահատակութեամբ վերջ գտաւ: Եւ այսօր երկիւղածօրէն խոնարհած քու պայծառ յիշատակիդ առջեւ, երանի կուտամ քեզի, որ Կուկունեանի արշաւանքէն սկսած, Սիբիր–Պարսկաստան–Երկիր ոտքի տակ տուիր, խանդավառ, անկեղծ զինուոր մը յեղափոխական գործին, ու փառքի լուսապայծառ պսակը ստացար Հայաստանի ծոցին մէջ, որպէս առաջին նահատակներէն մէկը:

Քու յիշատակդ անմահ թող մնայ մեր մէջ, համեստ ու ժրաջան աշխատաւոր:

* * *

Նախիջեւան երկու օր մնացինք։ Սարգիսը, որպէս այդ շրջանի գործիչ, Վահանի հետ կարգ մը կարգադրելիք խնդիրներ ունէր։ Երկարատեւ ժողովներու շարան մը հոդ ունեցանք։

Վահանէն բաժնուեցանք Նախիջեւան, կոտրած սրտով։ Գիսակէն (Վարդգէս) վերջ, Վասպուրականի կազմակերպութեան գլխաւոր ղեկավարը ու ստեղծիչը ան էր եղած։ Որպէս փորձառու ընկեր, անոր վերջին խրատն էր մեզի. «Երկիր անցնելու ժամանակ չվտանգուելու համար մէկ օրէն աւելի երբեք տեղ մը չմնաք»։

* * *

Նորէն Արաքսը, նորէն Պարսկաստան, ու այս քանի՛երորդ անգամը։ Չէ, ալ նախկին սանթիմենթալ երիտասարդը չեմ, որ Մասիսը տեսնելուն լալկան մանուկի նման, արցունքի շատրուան կը բանայ, ու ոչ ալ Արաքսի ափերով ճայլամոլոր գնում եմ...

Բայց Արաքսի միւս ափը Պարսկաստանն է, Խայամներու, Հաֆիզներու սքանչելի երկիրը, որուն հանդէպ անվերապահ սէր մ'ունեցեր եմ, մանկութենէ սկսած, եթէ իսկ Յազկերտը պարսիկ մ'էր։

Հարազատ, տաք մթնոլորտի մէջ կը զգայի ամէն անգամ պարսկական հողը անցնելուս։ Բայց այս անգամ քէֆս շատ տեղը չէր. մաքսատնէն պիտի անցնէինք,— բան մը, որ շատ ցանկալի չէր, որովհետեւ մինչ այդ որպէս ամերիկեան քաղաքացի էի անցեր, իսկ այժմ, անցագիրս ուրիշի մը տուած լինելու պատճառով, ստիպուած էի կեղծ պարսկական անցագիր մը առնել ձեռքս։

Իմ փայլուն բախտէն՝ պաշտօնեան, որ ինչպէս կ'երեւի, ինձ կը յիշէ եղեր (բարով խերով չյիշէր) պարսկական անցագիրս տեսնելուն, հարցականօրէն դէմքիս նայեցաւ եւ իմ պատճառովս ալ ընկերներուս անցագիրները իրենց իսկական արժէքով գնահատեց. ըսել կ'ուզեմ, թէ անոնք ալ նոյնքան պարսկահպատակ էին որքան ես։

Խնդիրը սակայն անուշ տեղը կապեցինք, ու սիրալիր կերպով բաժնուեցանք անցագրի պաշտօնեայէն, երբ մեր գրպանը թեթեւցաւ անհարկի ծանրութենէ մը։ 30 թուման տուգանք տալով՝ փափախնիս ծուռ՝ շարունակեցինք մեր ճամբան։

## ԹԱՒՐԻԶ–ՍԱԼՄԱՍՏ–ԽՈՅ

*Երկրորդ օրը Սոֆիան հասնելուս, հեռախօսեցի Տոքթ. Տէր Ստեփանեանին, որ Ատրպատականի Կ. Կոմիտէի անդամ էր: Ան յայտնեց, թէ Թաւրիզի հայ կեանքը սաստիկ լարուած վիճակի մէջ է, թէ թեթեւ թիւրիմացութիւն մը կրնայ արիւնհեղութեան պատճառ դառնալ եւ թէ մեր գալը երկու զինուորներով կրնայ բարդացնել դրութիւնը: Ան խորհուրդ տուաւ, որ մեր ընկերները Սոֆիանէն ճամբենք ուղղակի դէպի Սալմաստ, իսկ մենք երկուքով միայն մտնենք Թաւրիզ:*

*Այդպէս ալ ըրինք:*

*Իսկապէս որ Թաւրիզը եռացող կուպրի կաթսայի նման, հազիւ զսպուած կատաղութեամբ կ'եռար: Ճնշող մթնոլորտ մը կար, որ փոքր կայծի կը սպասէր բոցավառելու համար:*

*Եղելութիւնը հետեւեալն էր.—*

*Զինագործ Պետրոսը, որ Դաշնակցութեան զինական արհեստանոցի պետն էր եւ միաժամանակ Կ. Կոմիտէի անդամ, այդ շրջանին Թաւրիզի մէջ Դաշնակցութեան ներկայացուցիչի դերք կը վայելէր: Հասարակութեան համար, Պետրոսը Դաշնակցութեան լիազօրն էր: Ատիկա ի հարկէ, իրողութիւն մը չէր, բայց այդ հասկացողութիւնը ինքնին կ'ապացուցանէ, թէ ան կուսակցութեան մէջ աչքառու դիրք ունէր եւ թէ անոր ամենաաքթիւ անդամն էր, ու գրեթէ միակը՝ Դաշնակցութեան կողմէ զանազան պարագաներու մէջ հրապարակով երեւցողը:*

*Գիշեր մը, Պետրոսը Թաւրիզի նեղ ու շատ վատ լուսաւորուած փողոցներէն մէկէն անցած ժամանակ, առանց ոեւէ անմիջական պատճառի յանկարծակի յարձակում կը կրէ Հնչակեան զինուորէ մը՝ Մհերի ոմէն, որը դաւադանով մէկ երկու հարուած կ'իջեցնէ Պետրոսի գլխուն:*

*Մհերը Հնչակեան կարիճ զինուոր մ'էր, որուն կը վերագրուէր Կովկասի փոխարքայ իշխան Կալիցինի տեռորի փորձը:*

*Թէ այդ անմիտ, խելագար յարձակումը ի՞նչ բանի հետեւանք էր՝ դժուար է ճշդելը: Ինծի կը թուի, թէ չենք սխալիր, եթէ ընդունինք, որ Հնչակեան կուսակցութեան պաշտօնական որոշման հետեւանք չէր կրնար լինել այդ յարձակումը, թէեւ կրնար անուղղակի կերպով հետեւանք լինել ու էր այն տրամադրութիւններուն, որ այդ կուսակցութիւնը ընդհանրապէս ունէր*

Դաշնակցութեան ու մասնաւորապէս Պետրոսի հանդէպ, որպէս Դաշնակցութեան աչքի ինկնող մարդու:

* * *

Տարիներու պայքարով սրուած յարաբերութիւնները եւ ասպարէզին ամբողջովին տիրապետելու համար երկու կուսակցութիւններու միջեւ շարունակուող յարատեւ կռիւները, բնականաբար պիտի առաջացնէին նախանձով ու վէճերով թանձրացած մթնոլորտ մը, որու մէջ նման չմտածուած յիմարութիւն փորձողներ պիտի գտնուէին: Բայց եղածէն աւելի ողբալին այն էր, որ նման մթնոլորտի մէջ սնուած հասարակութեան մէջ բացառիկ մարդիկ չէին միայն, որ կը համակրէին ու կը ծափահարէին նման քայլ մը:

Արդար լինելու համար, պէտք է խոստովանինք, որ Դաշնակցութիւնը, աւելի զուսպ, աւելի լրջահայեաց, աւելի կարգապահութեան ենթակայ հաւաքականութիւն մ՚էր: Իսկ Հնչակեան կուսակցութիւնը, Թաւրիզ ինչպէս եւ Երկիր, Կովկաս ու արտասահման, կ՚ապրէր քայքայման այն շրջանը, զոր այդ կուսակցութիւնը 96 թուականէն սկսեալ մինչեւ մեր օրերը ապրեցաւ, առանց մեռնիլ կարենալու:

Թաւրիզի մէջ իսկ, որ երբեմն Հնչակեան կուսակցութիւնը այնքա՜ն զօրաւոր էր, ուժեղ տեղատուութիւն մը օրհասական վիճակի էր հասցուցեր զայն, եւ այդ՝ շնորհիւ Դաշնակցութեան հետզհետէ զարգացող մակընթացութեան: Լիլաւայէն վերջ, Դաշնակցութիւնը Ղալայի մէջ իսկ սկսեր էր տիրապետող հասարակական արժէք մը դառնալ. Ղալայի, որ սկիզբէն իսկ կը համարուէր Հնչակեան միջնաբերդը:

Կուսակցութեան մը մէջ, ինչպիսին Հնչակեան կուսակցութիւնն էր, որու հմայքը ու գործնական արժէքը արդէն տկարացած էր, բնականաբար անգոյն ու անգործ կեդրոնական վարչութիւն մը ի վիճակի պիտի չլինէր սանձահարած պահելու իր շարքերէն անոնք, որ քիչ թէ շատ զօրաւոր անհատականութիւն ունէին, դիրք եւ անուն շիներ էին իրենց անցեալ գործունէութեամբ:

Տօնօ մը, կամ Համբարձում մը Փայաջուկ, կամ Մհեր մը Թաւրիզ անհրաժեշտ էր Հնչակեաններու դիրքը պահելու համար: Փոխադարձաբար, կուսակցական ղեկավար մարմինն ալ

այնքանով միայն հեղինակութիւն ունէր անոնց վրայ, որքանը որ կը համապատասխանէր իր եւ այդ անհատներու շահերու նոյնութեանը։ Այդ էր ահա հիմնական պատճառը այն պաշիպոզուկութիւններուն, որոնք Ուրմիոյ եւ Սալմաստի մէջ իրար կը յաջորդէին պարբերաբար։

* * *

Եթէ Հնչակեան կուսակցութիւնը իր վայրէջքի շրջանին էր որ կը ցուցադրէր նման հիւանդագին երեւոյթ մը, Դաշնակցութիւնն ալ, միւս ծայրէն սկսած, իր սկզբնաւորութեան շրջանին էր որ կը տառապէր նոյն ախտով։ Կուկունեանի խմբի պատրաստութենէն սկսեալ մինչեւ Խանասորի արշաւանքը եւ անկէ վերջ քանի մը տարիներ, իրար յաջորդող հերոս զինուորներու կատարած պաշիպոզուկութիւնները ատոր ապացոյց են։

Բարեբախտաբար, ատիկա տեղի կ՚ունենար Դաշնակցութեան մանկութեան շրջանին։ Հետզհետէ աճող, զօրացող կուսակցութիւնը կրցաւ ուժեղ կարգապահութիւն մը ստեղծել տարիներու ընթացքին ու սանձահարած պահել բոլորը՝ զինուոր, խմբապետ թէ խմբական անդամ։

Դաշնակցութեան երկարատեւ գործունէութեան ընթացքին, նման սանձարձակութիւններ անգամ մը Միհրանական շարժման հետեւանքով երեւան եկան, անգամ մ՚ալ, ո՛վ հեգնանք, ճիշդ այն ժամանակ, երբ ըստ երեւոյթին, Դաշնակցութիւնը իր ուժի գագաթնակէտին էր հասած. ըսել կ՚ուզեմ, անկախութեան սկզբի տարին։ Բայց ատոր մասին, իր կարգին պիտի խօսինք։

* * *

Անշուշտ որ նման դէպք մը, ինչպիսին էր Մհերի յարձակումը սաստիկ գրգռութիւն էր առաջացուցած Դաշնակցական շարքերու մէջ։

Դժբախտաբար, ինձ յայտնի չէ, թէ Դաշնակցութեան Կ. Կոմիտէն աշխատեցա՞ւ արդեօք Հնչակեան մարմնի հետ անմիջական բանակցութիւններով հասկացողութեան մը գալ։ Փաստն այն է, որ քանի մը օր վերջը, Դաշնակցութեան յայտնի զինուորներէն Զուլումաթը, օրը ցերեկով, հանդիպելով Մհերին տեղն ու տեղը կը սպաննէ զայն, մաուզերի ամբողջ գնդակները պարպելով անոր վրայ։

Յիշելէ վերջը Ձուլումաթի անունը, անկարելի է գէթ երկու խօսք չըսել այդ յայտնի հայդուկի մասին, որու անձնական արիութիւնը անօրինակ էր։ Շատ անգամ, երկմտանքով կը նայէի անոր յարաշարժ բոցավառ աչքերուն, որոնք իրենց բունին մէջ հոլի նման կը դառնային, եւ ինքնիրենս հարց կուտայի, թէ արդեօ՞ք նորմալ թիփ մ'էր ան։

Հայ յեղափոխական շարժման շքեղ եւ դիւցազնական զինուորներու շարքին մէջ, երկու ցցուն դէմքեր կը կանգնին աչքիս առջեւ, գրեթէ միեւնոյն խառնուածքով, միեւնոյն փանաթիք կատաղութեամբ, միեւնոյն անօրինակ անվախութեամբ, որ դլել անցեր էր հերոսութեան սահմանը ու պարզ չէր թէ ո՞ւր էր հասեր՝ մինչեւ հասարակ խենթութի՞ւն թէ նոր հոգեկան գոյավիճակ մը, որ մեզ՝ սովորական մահկանացուներուս համար անըմբռնելի էր։

Այդ երկուքէն մէկը Դալի–Ղազարն էր, միւսը՝ Ձուլումաթը։

Անկասկած որ, անոնք որպէս խմբապետներ կամ նոյնիսկ, սոսկական զինուորներ, զիրենք գերազանցողներ շատ ունէին, բայց այդ երկուքը գերազանցօրէն կ'անձնաւորէին ֆետայական խիզախութիւնը, անձնազոհութեան անհաշիւ պատրաստակամութիւնը, անսանձ կատաղութիւնը ու անփոյթ փութկոտութիւնը՝ խաչը բարձրանալու։

Սերոբ փաշայի նման հռչակաւոր խմբապետի մը աչքառու զինուորը, երկարատեւ տարիներ մասնակցած առասպելական դիւցազներգութիւն դարձած կռիւներու, Ձուլումաթի փոթորկալից կեանքը վերջ գտաւ Խոյի պարիսպներու տակ։ Կռուելով պարսիկ սահմանադրականներու հետ, ան ինկաւ, ինչպէս վայել էր ազատութեան նուիրուած մարտիկի մը։

Այսպէս ուրեմն, մեր Թաւրիզ երթալը զուգադիպեցաւ այդ տխուր դէպքերուն։ Հազիւ քանի մը օր մնացինք հոն։ Կ'աճապարէինք օր առաջ ճամբայ ելլել, քանի դեռ քրտերը չէին բարձրացած սարերը։

Մեր հասած օրն իսկ, Կ. Կոմիտէի նիստ ունեցանք։ Սարգիսը մանրամասն զեկուցում մը տուաւ Կովկասի դրութեան, ինչպէս նաեւ Ռայոնական Ժողովի մասին։ Այդ նիստին մէջ, Տոքթ. Տէր Ստեփանեանը, որ իմ վաղեմի ընկերս էր դեռ Ամերիկայէն, իր թեկնածութիւնը դրաւ Երկիր անցնելու համար։

Խոստացանք՝ Վան հասնելնուս՝ այդ առաջարկութիւնը ներ-

կայացնել Վասպուրականի Կ. Կոմիտէի հայեցողութեան:

Քանի մը անհրաժեշտ գնումներ կատարելէ վերջ, փայթօն




ՎՐԷԺԻ Կ. ԿՈՄԻՏԷՆ.— Ձախէն, նստողները. Տոքթ. Յ. Տէր Ստեփանեան, Պալա–ջան, Նիկոլ: Կանգնողներ՝ Տիգրան, Վահան Զաքարեան

մը վարձելով՝ ճամբայ ելանք դէպի Սալմաստ, Երկիր անցնելէ առաջ վերջին անգամ մ'ալ տեսնուելու սահմանի վեթերան ընկերոջ՝ Սամսոնի հետ:

Գնումներ ըսի, որ մէտքս ինկաւ դէպք մը, որ մեր Սարգիսը

մատի փաթթոց չինեց ու անսպառ աղբիւր մը՝ իր անզուսպ ծիծաղին:

Գնումներ կատարած ժամանակ,— աւելորդ է ըսել թէ Սարգիսը նման բաներու համար գլուխ չունէր,— չեմ գիտեր ի՞նչ սատանայ մտաւ մէջս, երկու չիչ քօնեակի հետ թիթեղէ տուփ մը պահածոյ բաթաfoq (լապսթըր) գնեցի, կ'երեւի ապացուցանելու համար որ ցամաքի վրայ ալ ես իսկական ծովեզերքցի էի մնացեր: Այս դժբախտ բաթաfoqի պատմութիւնը ամենայն հաւատարմութեամբ մեզի հետ ճամբորդեց Սալմաստ, Խոյ, Մենաւոր ու Վան՝ ամէն տեղ ալ միեւնոյն հռհռոցը բարձրացնելով:

— Հը՞, մեր տղայ, մէկ էլ սաս՛, էդ ի՞նչ բան էր գնածդ,— տեղի անտեղի կը հարցնէր Սարգիսը մանաւանդ երբ ուրիշներ ըլլային մեր չուրջը:

Ու որպէս թէ անկարող բառը արտասանելու, դէմքը ծամըռելով կ'ըսէր՝ «կու յիշեմ, կու յիշեմ... ստամոքս, հա–հա–հա, ստամոքս»: Ու անիրաւը այնպէս սրտանց կը սկսէր ծիծաղիլ, որ ես զինաթափ՝ ակամայ կը մասնակցէի անոր ծիծաղին, թէեւ ներքուստ սաստիկ կը բարկանայի ու առիթ մը կը փնտռէի վրէժ հանելու անկէ այն բոլոր ծիծաղներուն համար, որ իմ հաշուին ան կը վայելէր ուրիշներու հետ:

* * *

Երեք օրէն հասանք Սալմաստ՝ Ղալասար:

Մեր քօռ բախտէն, Սամսոնը գնացեր էր Խոյ, Մարզպետի բացակայութեան պատճառով, որ իմ մեկնումէս վերջ, Աւարայրի ներկայացուցիչ էր նշանակուած:

Հոս արժէ ներկայացնել Սարգիս Սարուխանեանը, մէկը պարսկահայ անխոնջ գործիչներէն, որը տարիներու աշխատանք ունի բերած յեղափոխական գործին, միշտ ալ մնալով ստուերի տակ: Սարգիսը՝ բնիկ Սալմաստցի՝ Ղալասար գիւղէն էր, որ կը համարուէր Դաշնակցութեան միջնաբերդը: Մանուկ հասակէն մասնակցած էր Սալմաստի յեղափոխական գործունէութեան: Տեղացիներու մէջ ան առաջիններէն մէկն էր որ իր բաժին մասնակցութիւնը բերեր էր գործին, այդպէս ալ մնաց ան, մինչեւ վերջը:

Դեռ հազիւ նորահաս երիտասարդ մը, ան մասնակցեցաւ Խանասորի արշաւանքին:

Միշտ համեստ, ան գերազանցօրէն սեւ աշխատանքի մարդը եղաւ. բան մը, որ դժբախտաբար ոչ աչքի կը զարնէ եւ ոչ ալ կը գնահատուի պէտք եղածին պէս: Չէ եղած յեղափոխական ձեռնարկ մը, գործ մը, որուն այսպէս թէ այնպէս ան մասնակցած չլինի: Մասնաւորաբար Սամսոնի գործունէութեան շրջանին, Սարգիս անոր աջ բազուկը եղաւ, ամէն տեղ հասնող, ամէն բանի ձեռնամուխ:

Եկող գացող Երկրի գործիչները, սուրհանդակները, զինատար խմբերը, կուսակցական ընկերները, չեն կրնար մոռնալ այդ գեղջուկ երիտասարդը, միշտ ժպտուն ու պատրաստակամ, ջերմ ընկերական վերաբերումով, ու ամբողջովին նուիրուած գործին:



ՍԱՐԳԻՍ ՍԱՐՈՒԽԱՆԵԱՆ

Ցաւալի է անշուշտ, որ Սամսոնի շատ համառօտ յիշողութիւններու մէջ, որ պարզապէս անճոռնի կմախք մ'էր, թէկուզ տաղանդաւոր գրագէտի մը կողմէ գրուած, մենք հազիւ թէ կը հանդիպինք այդ անունին. մինչդեռ Սամսոնի անբաժանելի գործակիցն էր ան տարիներ շարունակ, եւ ոչ ոք կրնար այնքան հեղինակօրէն ներկայացնել այդ նուիրուած երիտասարդը, անոր կատարած անփառունակ սեւ աշխատանքը, ինչպէս Սամսոնը:

Զարմանալի սխալ հասկցողութիւն մը կայ մեր մէջ արժանիքներ գնահատելու: Անպատճառ մէկը պիտի սպաննուի կամ յայտնի դէպքի մը մասնակցի որ գնահատուի անոր աշխատանքը, մինչդեռ ստուերի մէջ մնացող տիպերը, ծանր, սեւ աշխատանքին լծուած, կեանք մը կ'ապրին առանց գնահատուելու: Եթէ այս ներելի է հասարակութեան, բայց աններելի՝ եթէ չըսենք յանցանք մ'է ղեկավարներու համար, որոնք պէտք է գիտնան արժէքաւորել համեստ ուժերու կատարած աշխատանքը:

Անցեալ տարի, Համատանի մօտ, օթոմոպիլի արկածի զոհ գնաց մեր թանկագին Սարգիսը:

* * *

Գիշեր մը միայն մնացինք Ղալասար, ու յաջորդ օր մեր սիրելի Սարգիսին «մնաք բարեւ» ըսելով, նորէն ճամբայ ելանք դէպի Խոյ:

Ու այս քանի՛երորդ անգամն էր որ կ՚անցնէի այդ ճամբով. համրանքը կորսնցուցեր էի: Գիշեր ու ցերեկ, ընկերով թէ մինակ, Խոյ–Սալմաստ գիծը ջրի ճամբայ էի շիներ, երբեմն Սամսոնի հետ խորհրդակցելու, շատ անգամ ալ Խոյի սպաննիչ մինակութենէն փախչելով: Առանց չափազանցութեան, Խոյի գործունէութեանս շրջանին, հազիւ թէ մէկ շաբաթ նոյն անկողնին մէջ պառկած լինիմ. անվերջ ձիու վրայ էի ես, որ նոր Պարսկաստան գալուս հազիւ մէկ ժամ ձի էի նստած եւ որ ուրիշներու օգնութեամբ միայն կրցած վար իջնալ ձիէն, փայտացած ոտքերով:

Անցեր էինք արդէն Սալմաստի կէտուկը, Խոյի դաշտի վերի մասն ենք, չոր, անապատային ու արեւէն խանձուած աղային բլուրներով: Երկուքս ալ հազիւ նորահաս երիտասարդներ՝ ինչե՛ր ունինք իրար ըսելիք, ի՛նչ երազներ, ի՛նչ գործունէութեան նոր ծրագիրներ:

Ու ոգեւորուած կը բացատրեմ Սարգիսին, թէ պէտք է շահագործել Վանայ ծովը, թէ պէտք է աշխատիլ, որ մեզմէ մէկը նաւավար լինի, եթէ տեղացի ընկերներէն մէկը չկայ. որ կուսակցութիւնը ունենալու է իր նաւը, այլ եւ մնացեալ բոլոր առագաստանաւերը պահելու է կուսակցութեան հակակշռին տակ, եւ թէ, երբ ոեւէ լուրջ շարժում ծագի, ամբողջ նաւերը մեր տրամադրութեան տակ լինելով՝ մենք տիրապետելով Վանայ լճին, պիտի կրնանք ազատ ու արագ կերպով մէկ շրջանէ միւս շրջանն անցնիլ:

Սարգիսը, որ կը թուէր թէ մեծ ուշադրութեամբ մտիկ կ՚ընէր իմ փանթէզիիս, մէկ ալ ինծի դառնալով ըսաւ.

— Հա՛, հա՛, Մալխաս ջան, քեզ ալ որպէս Տրապիզոնցի, հայկական գրահաւորներուն ծովակալ կը նշանակենք,— ու անզուսպ սկսաւ ծիծաղիլ՝ զիս ալ վարակելով:

Ահա կը հասնինք Խոյի գետին, որ շատեր պատմական Տըղմուտը կը համարեն: Դիմացը կարմրաւուն բլուրի մը ծայրին կ՚երեւի մենաւոր գմբէթ մը, որը Աւարայրի հերոս՝ Վարդան Մամիկոնեանի ժամանակաւոր գերեզմանն է եղեր:



ՎԱՐԴԱՆ ԶՕՐԱՎԱՐԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ ՏՂՄՈՒՏ ԳԵՏԻ ՄՕՏ ԲԼՈՒՐԻ ՄԸ ԳԱԳԱԹԸ

Գետը անցնելով՝ կը մտնենք Խոյի բարեբեր դաշտը, որը գարնան՝ իր առատ բուսականութեամբ դրախտի մը տպաւորութիւնը կը ձգէ մարդուն վրայ, թէեւ նոյն այդ դաշտը ամառուան ամիսներուն դժոխքի իսկական մանրանկարն է։

Զարթուղի ճամբաներով, առանց քաղաք հանդիպելու, կը հասնինք Հայկական Թաղի Դաշնակցութեան տունը։

* * *

Մէկ տարի է բացակայեր եմ։ Ոչինչ, ոչինչ էր փոխուած։ Ըսենք՝ այս օրհնեալ երկրի մէջ, դարերու ընթացքին միայն հազիւ զգալի փոփոխութիւն մը կը հանդիպի մարդու աչքին։

Փոխուածը միայն սիրելի Պատուելիս էր, կարծես աւելի կարճցած, կուացած մէջքով, նիհարցած, եւ պատկառելի քիթը, ծածկած դէմքի գրեթէ կէսը։

Դրան առջեւ, մեր տան շունը ուրախ հաջոցով կը դիմաւորէ զիս։

Եկեղեցիի թաղէն վաղէ վաղ կը հասնի վարժարանի ուսուցիչը, վանեցի Կոստին (Աղիզ), որու մականունը դժբախտաբար մոռցեր եմ։ Այս շատ համակրելի երիտասարդը, իմ այդ շրջանը եղած ժամանակ, ինծի կ՚առաջկցէր, Դաշնակցութեան տան հաշիւները պահելով, ու երբեմն նամակագրութեամբ։ Անդրանիկի խմբի հոն եղած ժամանակ, Սասնոյ կռիւներու պատմութիւնը գրեց, որ եւ վերջէն «Դրօշակ»ի խմբագրութեան կողմէ հրատարակուեցաւ առանձին գրքոյկով մը։ Լուր չունիմ, թէ այդ համակրելի երիտասարդը ինչ վերջ ունեցաւ։

Երեխայի անհամբերութեամբ առաջին գործս եղաւ դէպի ախոռ վազել, իմ սիրական ձիս՝ Գոլոզը տեսնելու, որուն իմ կեանքս էի պարտական։ Ու շատ տխրեցայ, երբ Պատուելին ըսաւ, թէ ան արդէն փոխադրական ձի է դարձած Երկրի մէջ։

Հոս եւս չգտանք Սամսոնը, որ քանի մը օր առաջ անցեր էր Մենաւոր (վանքը)։ Մեզի կը մնար այնտեղ սպասել, մինչեւ վանքէն գային մեր զինուորները։

Բարեբախտաբար, երկար չսպասեցինք, մէկ երկու օրէն վանքէն եկան Մելքոնն ու Յովհաննէսը՝ ապրանքի փոխադրութեան համար։ Յաջորդ օրը մնաս բարով ըսինք Պատուելիին ու Աղիզին, եւ կէսօրէն վերջ, ժամը 5-ի ատենները դուրս եկանք Խոյէն դէպի Մենաւոր։

Ամէն մէկ ձիու բեռցած էինք հազարական փամփուշտ՝ տեղաւորուած խուրջիններու մէջ:

Ինչպէս ընթերցողս կը յիշէ, Կոռելլի չարաբաստիկ ձորը անցնելէ վերջ, ձիերը կէս ժամով մը կը հանգստացնէինք. բայց այդքան միայն: Աշնան քիչ մը աւելի տանելի էր այդ ճամբորդութիւնը. գիշերները երկար, դեռ չմթնած Խոյէն դուրս գալով, առանց ձիերը սպաննելու, տղաքը հանգիստ կրնային հասնիլ Մենաւոր:

Փոխադրութեան այս միակ ձեւը ե՛ւ դանդաղ էր ե՛ւ կապուած համեմատաբար մեծ ծախսերու հետ: Ես չեմ յիշեր, որ մէկ փոխադրական ձի երկու անգամ կորած լինի այդ ճամբան. առանց մէջքի վրայ ահագին վէրքեր ունենալու: Այդ պատճառով ալ ստիպուած՝ շատ մը ձիեր կը պահէինք, որպէսզի երբ վիրաւորները խնամէինք, միւսները գործը շարունակէին: Մէկ երկու անգամ փորձեր եղան ուղղակի Շայթախտ—Արապլու—Մենաւոր գիծը գործածել, որ թէ՛ աւելի կտրուկ էր եւ թէ՛ աւելի աժան: Բայց որովհետեւ այդ փոխադրութիւնը ամբողջովին պարսիկներու ձեռքով կը կատարուէր, որոնք ընդհանրապէս լռել չեն գիտեր, եւ քիչ մը շատ բանաստեղծական երեւակայութիւն ունին եւ պլպլան լեզու, Մենաւորը ինկաւ լուրջ կասկածի տակ: Մինչեւ անգամ, քաղաքավարի խուզարկութիւն մ'ալ տեղի ունեցաւ, Իգօ խանի կողմէ, երբ Տիգրանն ալ հոն գտնուելով, ըստիպուած, վարդապետի Փարաջաններէն մէկը հագեր էր որպէս նորընծայ մը:

* * *

Անգամ մը արդէն, այս ճանապարհը նկարագրած եմ: Լաւ է՝ չկրկնենք Քոռելլի դժոխք ճամբու նկարագրութիւնը: Առանց պատահարի այս անգամ անցանք ամբողջ ճանապարհը: Միայն Կոռելլի ձորէն երբ բարձրացանք ընդարձակ սարահարթը, յանկարծ հանդիպեցանք քոչուոր քրտերու, որոնք խուճապի մատնուած՝ սկսան իրար ձայն տալ, կարծելով թէ աւազակներ ենք: Բայց մենք անմիջապէս բացուեցանք ճամբայէն, ու ձիերը քշելով մութին մէջ կորանք:

Հազիւ լուսածագը բացուած՝ հեռուն կանաչորակ արտերու մէջ՝ տեսանք Շողակաթի մատուռը: Այլեւս հանդարտ մօտեցանք Թադէոս Առաքեալի նուիրական վանքին:

Վանքի ծառան՝ Հայոց Զորցի Թովմասը դիմաւորեց մեզ:

Պատուական ծերուկի ուրախութեանը չափ չկար :

Սամսոնը ու վարդապետը դեռ կը քնանային, երբ մենք ղալմաղալով ներս մտանք : Շուտով սամավարը շրջապատած՝ անուշ անուշ զրոյց կ՚ընէինք հնէն ու նորէն, մեծ բաւականութեամբ վայելելով վարդապետի հիւրասիրութիւնն ու տաք թէյը, որուն այնքա՜ն պէտք ունէինք :

## ՄԵՆԱՒՈՐ

Մայիսի 26–ին վանք էինք հասած : Եթէ երկու երեք օրէն չկրնայինք Երկիր անցնիլ, այն ժամանակ մինչեւ աշուն մեր երթալը պիտի յետաձգուէր : Թէ՛ Պարսկաստանի եւ թէ՛ Թուրքիոյ քրտերը, իրենց հօտերով կը բարձրանային սարերը, լեռ ու ձոր գրաւելով : Այդ ատենները եթէ Երկիր անցնիլը բացարձակապէս անկարելիութիւն մը չէր, բայց յաջողութեան հաւանականութիւնը այնքան քիչ էր, որ փորձելը՝ ինքնասպանութեան հաւասար բան մը կը լինէր :

Մեր բախտէն, մեր հասած առտուն իսկ, խաչանցի մը քիչ ապրանքով կը մեկնէր դէպի Կարէյնի, անկէ Կոբ Մէհմէտ բէկի խօլամներու հետ Խաչան երթալու համար : Վարդապետը լուր ղրկեց Խաչան, որ անմիջապէս երկու լաւագոյն վալաղներ ղրկուին վանք :

Այլեւս մեզ ոչինչ կը մնար ընելիք, բայց եթէ սպասել վալաղներուն, որ գան մեզ Երկիր անցնելու :

Կը մօտենար իմ երազած օրը, որուն ահա երեք տարիէն աւելի ինչ սպասած էի : ԵՐԿԻ՛Ր, այդ մոգական բառն ինքնին խանդավառ զգացումներու, անհասանելի երազներու երգ մ՚էր դարձած իմ մէջս : Երբ մանուկ էի, յուզուած ու պատկառոտ զգացումով կը դիտէի Տրապիզոնէն անցնող լայն շալվարներով վանեցիները, որոնք Պոլիս կ՚երթային մշակութեան : Հայաստանցիներ էին անոնք, ու այդքանը իսկ բաւական էր զանոնք սիրելու համար :

Ու հիմակ, արդէն երիտասարդ մը, այդ մանկութեան երազած Հայաստանը կ՚անցնէի ես, որոշ ձգտումներով ու ակնկալութիւններով : Ճիշդ է, իմ Հայաստանս հնէն ու նորէն խառնուրդն էր, իմ սէրս դէպի Հայաստան կը սկսէր Հայկով, Արամով ու կը

վերջանար Սերոբ փաշայով, Գուրգէնով, Պետոյով: Բայց եւ խանդավառ պաշտամունք մ'ունէի Երկրին հանդէպ, անոր հողին, ջրին, լճերուն եւ սարերուն, սրբատաշ քարերով բարձրացած վանքերուն ու հնէն մնացած ամրոցներուն: Եւ յուզումով կը սպասէի այն րոպէին, երբ ոտք պիտի դնէի հայրենի Երկրի հողին վրայ: Չէ՛, այդ սրբապղծութենէն առաջ, երկիւղածութեամբ ծնկաչոք պիտի երկրպագէի, համբուրէի սրբազան հողը իմ նախնիքներու, արցունքովս պիտի թրջէի զայն, իմ հայրենիքիս հողը, իմ Հայաստանս:

Բաւական ապրած էի սահմանին վրայ, քիչ թէ շատ արդէն փորձառու էի, այնպէս որ միայն վարդագոյն երազներ չէին որ կ'օրօրէին զիս: Գիտէի, թէ ընդհանրապէս ի՞նչ վերջաւորութիւն կ'ունենան Երկիր անցնելու փորձերը եւ թէ ի՞նչ է վիճակուած յեղափոխականի մը: Երբ դեռ Ամերիկա էի եւ ամէն անգամ «Դրօշակ»ի առաջի էջին վրայ սեւ գծերու մէջ յեղափոխականի մը նկարը կը տեսնէի, անհնարին յուզումով կը համակուէր հոգիս, մանաւանդ, երբ կենսագրականն ալ կը կարդայի՝ այնքա՜ն վսեմ ոճով գրուած: «Նա էլ ինկաւ...»

Ճիշդ է, որ երբ մօտեցայ Հայաստանի սահմանին, այդ վսեմ ոճը փոխուեցաւ բաւականին: Արդէն երբ ընկեր մը կամ խումբ մը կը ջարդուէր, անկասկած մենք կը համակուէինք տխրութեամբ. բայց երբ վերջէն կ'անդրադառնայինք սպաննուող անձին, սովորական դարձած ոճ մը կը գործածէինք՝ «ան ալ գնաց Հայաստանի կիւրիւլթիին»...

Անշուշտ մեծ սրամտութեան պէտք չկայ նկատելու այս դարձուածքի անվսեմութիւնը, որ առաջ կուգար անկէ, որ այդ «կիւրիւլթի»ին երթալու կարգը վաղը կրնար հասնիլ նաեւ մեզ:

Այնպէս որ, Երկրի անցնիլ փորձելով հոգեպէս պատրաստ էինք «Հայաստանի կիւրիւլթիին երթալու», թէեւ շատ երիտասարդ էինք, դեռ կեանքը չվայելած եւ անձնական ապրումներով դեռ սերտօրէն կապուած կեանքի հետ:

Մենաւորէն էին անցած մեր լաւագոյն յեղափոխական գործիչներն ու մարտիկները: Վանքի սրբատաշ քարերուն վրայ յեղափոխութեան պանթէոնի զարդերուն անունները քանդակուած կան մինչեւ այսօր: Սերոբ փաշա, Անդրանիկ, Տէրոյեան, Վազգէն, Արամ, Աղբէր, Սասնոյ Վահան, Հրայր, Վարդգէս, Պետօ, Իշխան, Կոմս, Պուլկարացի Պետօ, Արամայիս, Ռուբէն,

Շաւրօ, Պուլկարացի Գրիգոր, Սարգիս, Աւետիսեան, Փարամազ, Աչոտ, եւ դեռ ուրիչներ:

* * *

Յարմար համարեցինք Երկիր անցնիլ ծպտուած՝ ուրպէս տեղացիներ: Նախ՝ մեր վարդապետական մօրուքները ածիլեցինք:



ՇԱՄԻԼ — ՍԱՐԳԻՍ

Ածիլեցինք ըսելը հեշտ է, բայց Աստուած գիտէ թէ խեղճ Սարգիսը, որ երեսի չատ կարծր մազ ունէր ու երբեք չէր ածիլուած, ի՜նչ դժոխային տանջանքներ քաշեց: Սամսոնի ամբողջ փորձառութիւնը, ուրպէս թէինչ, հարկաւոր եղաւ խեղճ Սարգիսի «Փուրունճիի չէթէլէ» դարձած դէմքը լուացնելու համար:

Մինչեւ այժմ, կամաւ Սարգսի մասին ես յետաձգեցի ըսելիքս, ընթերցողս այդ չքնաղ ծաղիկին, որ Վասպուրականի գործունէութեան մեծագոյն անձնաւորութիւններէն մէկը եղաւ, պիտի հանդիպի Երկբորդ հատորին մէջ, որ երկարօրէն խօսած եմ անոր մասին:

Մեր սիրելի վարդապետը ինչ որ դաղթականներու ձգած զգեստները հագցուց մեզի: Տիտակը՝ այդ զգեստներով բաւական ցուցանք բաներ դարձանք: Ես Սարգիսի վրայ կը խնդայի, ան ալ իմ վրաս, ուրպէս թէ ինքը ինձմէ աւելի լաւ տեսք մը ունենար: Ջրեխ ալ հագցուցին մեզի, մէջն ալ լեցուցին յարդով,

որպէսզի քիչ մը տանելի բան մը դառնայ: Բայց երբ կը քալէի, ու ոտքիս տակը պզտիկ քարի կտոր մը կ'իյնար, վեր կը ցատկէի՝ ցաւէն պոռալով: Մինչեւ մեր ճամբայ ելլելը, տրեխները հագած ման կուգայինք, Սարգիսի հետ միասին որպէս թէ վարժուելու համար: Բայց այդ արդէն վարժուելիք բան չէր:

Ես բացարձակապէս վստահ էի, որ եթէ բանը մնար տրեխներուն, Վան չէի հասնիր քսան տարիէն: Չեմ կարծեր, թէ Սարգիսը աւելի հանգիստ կը զգար տրեխներով, թէեւ շատ չէր դժգոհեր ու վրաս կը խնդար. բայց կարծեմ շատ ուրախացաւ, երբ բոլորով միասին խորհրդակցելէ վերջ, որոշեցինք՝ մեր կօշիկները, ինչպէս նաեւ մեր տասնոց ատրճանակները երկու հարիւրական փամփուշտներով, տոպրակի մէջ դրած, շալկած մեզի հետ տանիլ:

Ու այդ՝ լաւագոյն կարգադրութիւնն էր որ կրնար ըլլալ: Եթէ մարդիկ մօտենային մեզ, ինքզինքնիս մատնելու մէկէ աւելի տուեալներ ունէինք: Նախ՝ մեր այլանդակ տեսքին մէջ իսկ, անմիջապէս աչքի կը զարնէինք: Տեղացիներու պղնձային գոյնին հետ համեմատած՝ մենք տարիներով բանտը մնացածի գունաթափութիւնն ունէինք: Եւ յետոյ, ոչ քրտերէն գիտէինք, ոչ ալ տեղացի հայերու նման կրնայինք խօսիլ, այնպէս որ մեր ծպտումը իսկապէս արժէք ունէր միայն, երբ մեզ հեռուէն տեսնէին:

Մեր բարեկենդանային զգեստաւորումը կատարեալ եղաւ, երբ մէկ մէկ քրտական աղտոտ ֆօլօգ անցուցին մեր գլուխներուն: Տեսնելու պատկեր էինք, Սամսոնը, Ընծայրը ու վանքի տղաքը խնդալէն կը կոտրուէին:

* * *

Ինչպէս ըսի, Սամսոնը հոն էր: Իրիկուն մը նստած կը խօսէինք գործի մասին, երբ Սամսոնը, որ գրեթէ 10 տարի արդէն մնացեր էր սահմանի վրայ եւ, աւելորդ է ըսել թէ այդ տասը տարուան մէջ ալ երազած էր Երկիր անցնիլ, վրդովուած՝ բերանը բացաւ եւ սկսաւ գանգատիլ իր վիճակէն, թէ ինք կարծես դատապարտուած է մնալ սահմանին վրայ, երբ բոլոր ընկերները կ'անցնին Երկիր, որ ինք ձանձրացած է արդէն ու լուրջ կերպով իր թեկնածութիւնը դրաւ Երկիր անցնելու:

Այս Երկիր անցնելու ցանկութիւնը համաճարակ հիւանդութեան պէս վարակեր էր ամէնքը: Ինչ խօսք որ Սամսոնը սահմա-

նի վրայ, շնորհիւ իր անցեալ փորձառութեան, ձեռք բերած հեղինակութեան անհրաժեշտութիւն մ՚էր դարձած, եւ սահմանի վրայ մնալով ոչ մէկ կերպով նուազ օգտակար էր եղեր գործին, քան Երկրի որեւէ գործիչ: Բայց եւ այնպէս Երկիր անցնիլը կը համարուէր յեղափոխական ցենզի լրացումը, եւ միակ յեղափոխականի վայել գործը, որ կրնար բաւարարութիւն տալ:

Մեր աշխատանքը տարհամոզելու Սամսոնը ի հարկէ զուր անցաւ: Զէ ու չէ, ինքը կշտացեր է սահմանի գործունէութենէն, քիչ մըն ալ ուրիշները թող այդտեղ մնան: Ստիպուած՝ համաձայնեցանք իր թեկնածութիւնը դնել, բայց կարծեմ, Սամսոնը մեզմէ աւելի անյարմար միջնորդ չէր կրնար ընտրել իր խնդիրքը ներկայացնելու: Երբ Վասպուրականի Կ. Կոմիտէի ժողովին ներկայացուցինք անոր թեկնածութիւնը, ինքներս եղանք առաջինները, որ դէմ խօսեցանք, ի նկատի ունենալով Սամսոնի անհրաժեշտութիւնը սահմանի վրայ, մանաւանդ յաջորդ տարուան համար, երբ մեծ փոխադրական գործունէութեան կը սպասէինք: Ատկէ դուրս Սամսոնը Ֆիզիքական անյարմարութիւն ալ ունէր· շատ դէր էր, ու դժուար թէ կարողանար սողալ այգիներու ջրի ծակերէն, ուրկէ մենք իսկ դժուարութեամբ կ՚անցնէինք:

* * *

Մայիսի 29–ին եկան այնքա՜ն անձկանօք մեր սպասած վալադները: Անոնց հետ եկաւ նաեւ Յակոբ անունով համագիւղացի մը զէնքի փոխադրութեան համար:

Մեր վալադները բարի լուր բերին, թէ քրտերը դեռ իրենց գիւղի շրջաններուն մէջ են Տաճկաստանի կողմը· իսկ պարսկական մասին մէջ անոնց բոլորովին չէին հանդիպած: Այդ կողմէն հանգստացած՝ անհամբեր կը սպասէինք արեւի մայրամուտին ճամբայ ելլելու համար:

Մայիսի 30–ն էր: Ես քչիկ մը ջղային, տեղ մը չէի կրնար նստիլ: Քանի մը նամակներ գրեցի· մէկը իմ մօրս, յայտնելով, թէ արդէն Երկիր կ՚անցնիմ, թէ գիտեմ որ այդ՝ իր սրտի փափաքն է, եւ թէ՝ եթէ այդ ճամբու վրայ իյնամ՝ թող ներէ ինծի իմ պատճառած ակամայ ցաւի համար:

Վարդապետը երկու հաւ խաշել տուած էր, հաց ու փոխինձ որպէս պաշար հետերնիս տանելու:

Մեր վալադները բեռ ալ պիտի տանէին, ըսել կ՚ուզեմ փամ-

փռշտ։ Ամէն ինչ պատրաստ էր. վանքի գիւղի մեր զինուորները հաւաքուած էին. չէ՞ որ միասին աշխատեր էինք։

Սեղանի չորս բոլորը նստած թէյ կը խմէինք, երբ յանկարծ, զորս դու պատուիրեցեր, փռշտացի... կարծես սառը ջուր մաղուեցաւ բոլորի գլխին։ Վալադները ու մեր գիւղացի զինուորները, շատ անհանգիստ, խորհրդաւոր կերպով իրար նայեցան. շառ (վատ նշան) էր մէկ անգամ միայն փռշտալը։ Ես անմիջապէս գլխի իյնալով՝ երկրորդ անգամ մ'ալ փռշտալու պէս բան մը ըրի, բայց պարզ էր, որ այդ երկրորդը կեղծ էր, ու ոչ ոք խաբուեցաւ։

Այս անժամանակ փռշտոցը վատ ազդեց եւ Սամսոնի, վարդապետի ու իմ վրաս։ Թէեւ նման նախապաշարումէ ազատ էինք, վատ ազդուեցանք անոր համար, որ մեր վալադները կարծես սառեցան։ Մէկ երկու րոպէ ոչ ոք խօսեցաւ, մինչեւ որ Գրիգորը մեզ դառնալով ըսաւ.

— Շառ է, լաւ է ճամբայ չելնենք. վաղը իրիկուն Աստուծով...

Մենք չորս կողմէն վրայ տուինք, թէ դատարկ բան է, փշռտոցով ոչ խէր, ոչ շառ յայտնի կը լինի։ Սարգիսն ալ իր բարձրաբարբառ քրքիջը փրցուց, կատակի տուաւ։ Դէմքերը նորէն շտկուեցան, միայն Գրիգորը մնաց մռայլ ու անհանգիստ։

— Ես իմս ըսի,— ըսաւ,— մնացածը ինչպէս որ կ'ուզէք, այդպէս թող ըլլայ. փորձանք մը պիտի պատահի անպատճառ...

Բայց որոշեցինք ինչ ալ որ լինի ճամբայ ելլել։

* * *

Մէկ ժամ մնացեր էր ճամբայ ելլելու։ Մենք կազմ ու պատրաստ կը սպասէինք։ Դեռ թէյի սեղանէն չէինք ելած, երբ մէկ ալ վանքի արեւմտակողմի բլուրը, որ ցից կը տնկուի վանքի դէմ, սեփ սեւ ամպերով պատեցաւ։ Մենք հազիւ ժամանակ ունեցանք վարդապետի խցիկը ապաստանելու։ Կաղինի մեծութեամբ սաստիկ կարկուտ մը սկսաւ։ Խեղճ վարդապետը, վանքի զանգակատան չուանները ձեռքն առած, բոլոր ուժով կը զանգակահարէր, որպէս թէ կարկուտը փախցնելու համար, որ դժբախտաբար փախչելու միտք չունէր։ Տասը վայրկեանի մէջ, սար ու ձոր ճերմակ թանձր սաւանով մը ծածկուեցաւ։

Առ քեզի «շառ»ին կարեւորութիւն չտալ, կարգը մեզի եկաւ

տխրելու: Միակ ուրախը մեր վալադ Գրիգորն էր, որ ժպտալով մեզ կը մխիթարէր.

— Էսպէս լաւ եղաւ՝ չարը կոտրուեցաւ. առաջ Աստուած, վաղը երեկոյ ճամբայ կ՚ելնենք, ու սաղ սալամաթ Խաչան կը հասնինք երկու օրէն:

Այսպէս, ուրեմն, մեր Երկիր անցնիլը ձախողանքով սկսաւ:

## ՎԵՐՋ Ա. ՀԱՏՈՐԻ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՆԿԱՐՆԵՐՈՒ ՑԱՆԿԸ

